*բանն, իբրու թէ զնոյն ինքն զյարուցեալն անդէն եւ անդ ընդ աւետարանական բանին ի դէմս մեր բերելով, հրամայեմք մի-մեանց, թէ «Ի գիշերի համբարձէք զձեռս ձեր ի սրբութիւն, եւ աւրհնեցէք զՏէր»*. վասն զի լուեալ ազաւթից մերոց՝ յարեաւ եւ ուգնեաց մեզ, փրկելով զմեզ ի մահուանէ եւ թագաւորելով մըշտըն-ջենաւորաբար ամենայն ախեզերաց։ Բայց գիշեր ոչ այնքան զժա-մանակն, որքան թէ զհրէական զանհաւատութիւնն անուանելով, որ զաղջամղջին խաւարի արդարեւ բերէ զաւրինակ, ըստ Եսայեայ պանծալի բանին, թէ «Ի գիշերաց կանխէ հոգի իմ առաւաւտել առ քեզ Աստուած»**. այսինքն թէ ի միջոյ ամպարշտաց համար-ձակիմ բարեպաշտել առ քեզ Աստուած։ Արդ՝ զայսոսիկ այսպէս եւ այսու աւրինակաւ յառաջ վարելով զկարգն՝ արժան է զկնի Փառք ի բարձանցն՝ զՅարութիւն ասել, իսկ զՍուրբ Աստուածն՝ հանդերձ սրբոյ Աստուածածնին կցորդիւն ի վերջն անցուցանել, որպէս եւ յայլ աւուրսն ըստ ասացելում պատճառին։ Եւ զկնի ամենեցուն՝*

* Սաղ. ՃԼԴ, 2 ** Ես. ԻԶ. 9

1 QÛhlo *իբր* bcefq *իբրեւ* ms *իբրու-թեան* փխ. *իբրու.* M *է* Ûb *նոյն* Ô *զտրուցեալն* Û *յարուցեալ* Ûhl *ըստ* փխ. *ընդ*

2 OW *աւետարանականն* abcefhklmop qrs *աւետարանին* Ubofq *բանի* bq չիք *ի*. BCDEFGHabcefhklmopq rs չիք *մեր* bq *բերանով* փխ. *բերե-լով* Rhl *հրամայիմք* Y *միմիեանց* o *միմիանց*

3 Û չիք *թէ* F *զձեռս* կրկնված է Û չիք *ձեր ի… տիեզերաց*՝ տող 6-րդ

4 DF չիք *զի* L *լըւեալ* abefhklmo pqs *լուաւ* c *լու*. y *աղօթիցն* lq *ի մերոց* b *իմոց* փխ. *մերոց*

5 bq *աւգնեա* Y *զմեզ* ps չիք *զմեզ* Ô *թագաորելով* oefmps *մշտնջե-նաբար*

6 bq *կա քան* փխ. *այնքան* Y *ժամա-նակն* Ô *զժամանակս* Û չիք *զժա-մանակն… անուանելով որ*՝ տող 8-րդ

7 BCDEFGHJYn *զանհաւանութիւնն* IKLMQRSTXZWÔ *զանհաւա-տութիւն* blq *անհաւատութիւն* e *հաւատութիւն* fhkmoprs *ան-հաւատութիւնն* Ô *առնելով* փխ. *անուանելով*

8 W *զաղջամղջեն* Û *զաղջամղջի* h *աղջամղջին* Y *խաւար* Û չիք *արդարեւ բերէ զաւրինակ* f *բերէր* Û *այլ ըստ* BDEFGHaps *եսայայ* befoq *եսայիայ*

9 Û *բանի* b *բանին որ ասէ թէ* Û չիք *թէ* efgy չիք *ի* Û *զհոգի* BC DEFGHRXYobcehloqr *առաւաւտ առնել* փխ. *առաւաւտել*

10 Ô չիք *առ քեզ* Û *աստուած եւ այլ ըստ կարգի*, չիք *այսինքն թէ… եզրի կա-թողիկոսի*՝ էջ 530 տող 2-րդ hlor *ե-թէ* Y չիք *թէ* BCDEFGH *ի մէջ* Y *ունպարշտաց* Ô *անպարշտաց* y *ամբարշտաց* obeq *համարձակիմք* f *համբարձակիմ* ps *համարձակին*

11 Y *բարեպաշտիլ* Ô *պաշտել* փխ. *բարեպաշտել* b *[ք]եզ* e *այսպէ* Y չիր *այսպէս*

12 բացի acefklmoprsy-ից մնացած Չեռ-երը *այս* Ô չիք *այսու* Ô *զ-զարքն*

13 OYWÔ *ի բարձանց* BCDEFGHIJ KLOPRTUVZ *զհարութիւնն* abcfh klmpqrsy *յարութիւն* FÔbeq *ասելով* n *զսուրբն* XÔhl *սուրբ*

14 abcefhklmopqrs *սուրբ* Y *աստո ւածածնի* Ô *կցորդիւն* kmps *կցոր-դին* M *անցուցանելով* befq չիք *եւ*

15 AU *յայդ* f չիք *յայլ* BEFJKLOPQ RSTVZWck *ըսասացելում* (qs *ըս-ասցելումն* DG *ըստայցելու*. H *ըսաայցելում*) փխ. *ըստ ասա-ցելում* q *կնի* abcefkmpqs չիք *ա-մենեցուն*

զԱրեւագալին նուագել սաղմոս, զոր Եղիցի անուն Տեառն ասել սկսեալ են ի ժամանակացն Եզրի կաթողիկոսի։

ՈՂԹ (ՈՂԴ) ԻԵ. Պարտ է ի գիշերապաշտաման զկանոնացն զհետ բերել զչորս զայս քարոզութիւն՝ Վասն ի վերուստ խաղաղութեան, Վասն ի գիշերի եւ ի տուընջեան, Վասն ուղղելոյ զգնաց մեր, Վասն գտանելոյ մեզ շնորհս, զոր արարեալ է վասն նորին իրի սրբոյն Սահակայ Հայոց կաթողիկոսի։ Եւ ըստ իւրաքանչիւրոցն զաղօթս զայսոսիկ հանգստիւք իւրեանց՝ Տէր Աստուած մշանջենաւոր. Հանգիստ, Շնորհատու բարեաց. Ի գիշերի եւ ի տուընջեան. Հանգիստ, Հովիւ քաջ. Անկեալ եմք առաջի քո. Հանգիստ, Քում ամենազաւր. Վերջին։

Աւրհնեալ ես տէր Աստուած մեր որ եւ զմեզ զմեղաւորսս

1 bq նուագելով afps զսաղմոս bcq զ-սաղմոսն m զսաղմոսս abcefhlo pqs տեառն աւրհնեալ (niop աւրհ-նել) ասել ů օրհնել (r օրհնեալ) փխ. ասել k ասել աւրհնեցեք ման-կունք զտէրն ասէ սկսեալ

2 ô ի ժամանակացն եզրի կաթողի-կոսին սկսեալ են b եզրն Y չկա-թուղիկոսի a կաթաղիկոսի m կա-թաղիկոսի զաւրհնեցէք մանկունք զտէրն ասէ

3 y պարտ եւ արժան է u զաղօթս կատարել ըստ կանոնաց որպէս գրեալն է յետոյ ասել մաղթանք սրբոյն Սահակայ կաթողիկոսի ա-սացեալ փխ. զկանոնացն... ամե-նազոր վերջին՝ տող 11-րդ Y զկա-նոնաց ô զզ կանոնացն զհետ բե-րել J բերե I չորս Y եւ զչորս

4 W աստքիկ փխ. զայս ô չիք զայս abccfkmpqs զքարոզութիւն (e զ-քարոզութիւնս q զքարոզութիւնն) զչորսս (e զ q զզ-ս b զզասս) զայս KLMQRSTXYZW քարոզու-թիւնս ô քարոզսն MZ խաղաղու-թեան եւ փրկութեան V խաղու Yabcefhklmnopqs չիք խաղաղու-թեան

5 ô տունջեա KMZ տուընջեան (K տըւն-ջեան) եւ յամենայն ժամ (K չիք ժամ) AJQUYabcefhklmnopqrs չիք եւ ի (JUafms ունի եւ ի) տու-ընջեան (r ունի տուընջեան) UXY bebnq չիք զգնաց բացի EIKM TZv-ից մնացած ձեռ-երը չունեն մեր MZ մեր ի ճանապարհ, չիք վասն (գտանելոյ) r զըտանել.

6 բացի AJKLOPRSTVXZWôlor-ից մնացած ձեռ-երը չունեն մեզ KQ զշնոր ôoy զշնորհ բացի JLO STVXZWIr-ից մնացած ձեռ-երը չունեն շնորհս Z զշնորհս եւ զողորմութիւնս F չիք վասն X նո-րոյ befq իրաց Yr սրբոյ BCDEF GHIZ չիք սրբոյն

7 Gabefkpqs չիք հայոց Aas կաթա-ղիկոսի p ըստ աջ լուսանցքում ho r իւրաքանչիւրոյն l իւրաքանչիւր իւրոյն BDEFJMThkosy զաղօ-թսս

8 Qôh զայնոսիկ Y զայսոսիկ bq զայ-սորիկ W հանգիստ V չիք հանգս-տիւք իւրեանց W չիք իւրեանց տէր Y չիք տէր աստուած... հովիւ քաջ՝ տող 10-րդ o մշտնջենա-ւորն

9 Wb չիք հանգիստ G չիք շնորհա-տու... ի տուընջեան հանգիստ ab cefkmpqs շնորհեալ (b նորհեա) տէր փխ. շնորհատու, չիք բարեաց ô բարեացն KL ի (L չիք ի) տըւ-ընջեան U ի տուընջեանն V հան-գիստ հովիւ քաջ շնորհատու b չիր հանգիստ (հովիւ)

10 Z չիք հանգիստ հովիւ... առաջի քո ô հովին c հովիւ քաջ հով ան-կեալ C անկանեալ DG անկանեմք H անկանիմք W եմ փխ. եմք բացի ôny-ից մնացած ձեռ-երը չու-նեն քո beq չիք առաջի քո հանգիստ r հանգոյ փխ. հանգիստ (քում)

11 e հանգիստ փխ. վերջին IJûabfqr չիք վերջին

12 Y օրհնես F է փխ. ես bq չիր մեր m չիք որ HWôbq չիք եւ Zô չիք զմեզ APaps մեղաւորսս IJKLMOQκSTXYWûfhklm մեղա-ւորս UZôceor զմեղաւորս Եq մե-ղաւորքս

արժանի արարեր փառաւորել զքեզ. ընկալ բարերար եւ մարդասէր Տէր զամենեցուն մեր զաղաւթս, զխնդրուածս, զխոստովանութիւնս եւ զգոհացողութիւնս. եւ շնորհեա ամենեցուն մեզ զքո առատ ողորմութիւնդ եւ զգթութիւնդ: Մի՛ թողուր Տէր զժողովուրդս քո, եւ մի՛ մատներ ի սպառ վասն անուան քո. մի՛ ըստ մեղս մեր առներ մեզ. եւ մի՛ ըստ անաւրէնութեան մերում հատուցաներ մեզ, այլ արա առ մեզ զողորմութիւն քո ի հազարս եւ ի բիւրս: Ձերձո զմեզ յամենայն որոգայթից սատանայի, եւ փոխեա զմեզ յարքայութիւն միածնիդ քո տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. Հանգիստ. Քեռ յանձն առնեմք զանձինս մեր, Աստուած ամենակալ, հայր տեառն մերոյ Յեսուսի Քրիստոսի, որ ի բարձունս բնակեալ ես, եւ զխոնարհս տեսանես, յերկինս եւ յերկրի: Հայեաց, տէր, յաղաւթս մեր եւ ի պաղատանս. մի՛ ցրեր զուխտ քո, եւ մի՛ մերժեր զմեզ ի ժառանգութենէ քումմէ, այլ ըստ առատ քում բարերարութեանդ՝ արժանաւորեա զմեզ զծառայս քո անճառելի լուսոյդ երկնից արքայութեանդ Յիսուսի Քրիստոսի տէրամբ

1 P արարել o զքեզ փառաւորել r զձեզ փխ. զքեզ

2 y չիք տէր Y զամենեցունց oc չիք մեր or յաղօթս y աղաչանս փխ. զաղաւթս բացի DGH-ից մնացած Ձեռ-երը աղաւթս bkmopqrs եւ խնդրուածս cefhlo եւ զխնդրուածս OWl զխոստովանութիւն

3 W զգոհացողութիւն y չիք զգոհացողութիւնս o շնորհեա մեզ ամենեցուն զքոյ HW քո

4 e զառատ c եւ զքո զթութիւնդ òbr չիք եւ զգթութիւնդ I թողոր զիս տէր BCDEFGHYackms զժողովուրդ

5 o մատներ զմեզ ի սպառ u անուանդ BCDGHPfh եւ մի (ըստ)

6 u մեղաց մերոց w̄ չիք մեղս մեր... եւ մի ըստ hl առնել ûy զմեզ q չիք մեռ Y անօրէնութեանն DH հատուցաներ I հատուցեր R հատուցուն

7 abcefkmq չիք մեզ (այլ) f յառ Y ողորմութիւն

8 b չիք ի Ay ի բեւրս o ի բիւրս Y զերցս lô ամենայն l յամենայնի b չիք յամենայն HIJLMQSTXYZ Wôle յորոգայթից ST սատանի b սատանայէ l փոփեա

9 ô մեզ D··lJoûq արքայութիւն b յարքայութիւնն F միածնի lor տեառնդ

10 JYoûbefq չիք հանգիստ û զքեզ GHQô անձն R յանձինս OU Wô առնեմ u մեր աստուած ամենակալ տէր մեր յիսուս քրիստոս փխ. մեր... քրիստոսի BCDE FGHQôh մեր տէր աստուած c մեր էր աստուած մեր աստուած

11 hlo ամէնընկալ G հայրապետն փխ. հայր տեառն U չիք աեառն c չիք քրիստոսի

12 hlor ընակեալդ û երկնի եւ՝ երկրի IJ երկրի cefkmpq հայեա s հայա û նայեաց փխ. հայեաց

13 Fa չիք աէր ô աղօթս մեր beq չիք մեր LY ի պաղատանս (Y պաղատս) FGOUWôûbehlnqr զուխաս y չիք մի (մերժ.)

14 abcefbklmoqrs յողորմութենէ (p ողորմութենէ) փխ. ի ժառանգութենէ VY քումէ BF այդ b ըստ անրաւ եւ առատ beq չիք քում

15 ô բարերարութենէ քումմէ մի արգելեր զշնորհս քո արժանաւորեա bq բարերարութեան y արժանաւորս արա BCDEFGHMRSTôbch lor զծառայքս akmpqs ծառայքս APV զծառայսս fy ծառայս ô չիք զծառայս քո abcefnklmopqrsy անճառ

16 DGH լոյս n լուսոյ IJOYr յերկնից b եւ երկնից q եւ յերկնից DGH չիք երկնից... որում քեզ՝ էջ 532 տող 1-ին IJKLMQRSTXY Zoûabcefbklmpqrs քրիստոսիւ յիսուսիւ o քրիստոսիւ եւ յիսուսիւ բացի APRTn-ից մնացած Ձեռ-երը տէրութեամբ

մերով, ընդ որում քեզ Հաւր եւ սուրբ Հոգւոյդ վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։

Զ (ՈՂԴ) ԻԶ. Պարտ եւ արժան է [ի] Յայտնութեանն աւուր կատարել զշրոյն աւրՀնութիւն ի վերայ ջուրցն ըստ պատշաճի ի տեղիսն Հանդիպեալ, ձէթ արկանելով ի նա եւ աղաւթս մատուցանելով, ի ձեռն այնորիկ յիշատակել զառ ի Փրկչէն վասն մեր ի Յորդանան զմկրտութիւննս Որպէս եւ ի գալստեան աւուրն ոստոն բառնալ եւ ճաւճանակս շարժել՝ զնմանութիւն բերելով մանկանց Եբրայեցւոց ծափելոյն եւ ոստսն մատուցանելոյ, զի եւ աշխարՀիս մերոյ մարդկան եւ ամենայն քրիստոնէից աւանդութեամբ կալեալ է զնոյնս

ԶԱ (ՈՂԵ) ԻԷ. Եթէ ոք խաչ արասցէ փայտեայ եւ կամ յինչ եւ իցէ նիւթոյ, եւ ոչ տացէ քաՀանային աւրՀնել եւ աւծանել զնա միւռոնովն սրբով, ոչ է պարտ զնա ի պատիւ ընդունել կամ երկրպագութիւն

1 ıo մերաւ b չիք քեզ q չիք սուրբ CD HIMYôhchloq Հոգւոյդ ams Հոգւովս p Հոգովդ BCDEFGH վայելեն b փայելէ բացի KLWðũam ps-ից մնացած Ձեռ-երը փառք... յաւիտենից ամէն՝ առդ 3-րդ կամ չունեն կամ բերված են կրճատումներով

4 W պարտ է եւ արժան յայտնութեան բոլոր Ձեռ-երը չունեն ի IJ MQRSabcefgkmnpqs յայտնութեան JKbq յաւուր eg աւուրն r Գրոյն

5 begpqs աւրՀնութիւնն y ջուրց Yb kmpqs ի (Ybq չիք ի) տեղիս (bq տեղիսն)

6 G ձեզ c արժանելով befghloqr նմա փխ. նա

7 b յիշատակ H յիշատակելով u առ k զատ փխ. զառ IJû ի փրկչին r չիք մեր q զմկրտութիւնն ի յորդանանէն efg մկրտութիւնն (ſ զմկրտութիւնն) ի յորդանէսն b զմկրտութիւնն ի յովաննէն ի յորդանան ISWoũl զմկրտութիւն RXY չիք զմկրտութիւնն

8 Qfks եւ որպէս եւ abcgmpq եւ որպէս ի He չիք եւ (ի գայ.) abcef ghklmopqrsy ի գալստեանն IJ յաւուրն acfkmpqsy աւուր BCDEF GHefgm ոստս Qp ոստն hlor ոստամ bq նոստ փխ. ոստսն

9 A ճոճանակս n ճոճանակն DGHacef ghloqr ճաճանակս kp ճաճանչ m ճաճա s ճաճանճ U չիք եւ ճաւճանակս շարժել o զնմանութիւնս CDGbefghloqry մանկանցն ackmps զմանկանցն CDGHYôh եբրայեցոց OVWams եբրայեցւոցն cefgk երրայեցոցն r եփրայեցոցն bq եւ երրայեցոցն

10 IJKLMOPQRSTVXZWoũbegq ծափելոցն Y ծափելով h ոստո Uln ոստս or ոստն B ոտսն (c ոստն նմա aefgkmpqs ոստ նմա b ոտ նմայ) փխ. ոստսն Uabcfgk mnpqs մատուցանելոյն begq չիք զի E աշխարհիւ kps աշխարհո I մերւոյ

11 J յամենայն b ամենայն ազգ քրիստոնէից s քրիստովնէից Y աւանդութիւն b աւանդութեան Y կալեալ ի նոյն ôb կալ զնոյն (o է զնոյն) y զսոյն

12 r որ փխ. ոք Y զխաչ g չիք եթէ ոք խաչ... մարտիւրոսս Համարեալ՝ է էջ 533 տող 10-րդ oabcefhklmo pqrs չիք եւ (կամ) o կամ այլ ինչ եւ որ իցէ LM եւ կամ եւ ինչ եւ (L չիք եւ) իցէ IJKQRSTXYZ ûe ինչ U նութոյ hlo չիք նիւթոյ՝

13 OW տայցէ X չտացէ վ տացցէ l առցէ փխ. տացէ k նիւթոյ եւ ոչ տացէ կրկնված է ô քաՀանային ոչ տացէ CDGIUVYabckmnpqs մեռոնովն ũehlo մեռոնով r միռօնսվն o մեռոնաւն

14 o սուրս hlor սրբել W չիք պարտ o ընդունիլ abcefhklmopqrsy եւ փխ. կամ JVWn յերկրպագութիւն

մատուցանել, զի դատարկ եւ ունայն է յաստուածային զաւրութե-նէն եւ արտաքոյ աւանդութեան առաքելական եկեղեցւոյ։

ԶԲ (ՌՂԶ) ԻԲ. Իսկ զայնոսիկ, զորս աւրհնութեամբ եւ աւծմամբ կատարեալ է, որք միանգամ եւ իցեն աստուածային խորհրդոցն գործարանք, պարտ է զնոսա պատուել եւ պաշտել, երկրպագել եւ համբուրել, զի ի նոսա բնակէ Հոգին սուրբ, եւ նոքաւք մատակարարէ ի մարդիկ զպահպանութիւնս եւ զշնորհս բժշկութեան ախտից հոգւոց եւ մարմնոց։ Այլ եթէ մեռանել հասցէ ի վերայ այնոցիկ ի ձեռն հեթանոսաց՝ մի հրաժարեսցէ, զի մեծագոյն այնպիսւոյն առաջի կայ յոյս եւ ընդ մարտիրոսս համարեալ է։

ԶԳ (ՌՂԷ) ԻԹ. Ոչ է պարտ ամենեւին անխտիր լինել եւ հաղորդութիւնս առնել ընդ հերձուածողաց, այլ խորշել ի նոցանէ, եւ ոչ հաւասարէ ընդ նոսա ի հոգեկան եւ ի մարմնական սեղանս, զի պատկառես-ցին եւ փափառեսցին միաբանել ընդ ուղղափառութեան աւան-դիչս։

1 ô ունայն eq յունայն u զաւրու-թենէ IJQYôûcer աստուածային
2 BCDEFGH առաքելական եկեղեցւոյ աւանդութեան Y աւանդութեանն h յաւանդութեան o չիք առաքե-լական IJKLMQRSTUXZn յեկե-ղեցւոյ Yôbrefhlo եկեղեցոյ
3 Y զայսոսիկ e որ n զոր befq աւծ-մամբ (b աւծման) եւ աւրհնու-թեամբ M եւ աւրհնութեամբ Q աւրհնութեան
4 K չիք է hlor չիք եւ u իցէ beq ե-ղիցին փխ. իցեն Un յաստուա-ծային b խորհրդին n խորհրդւոյն Uchlory խորհրդոյն
5 Y զնա փխ. զնոսա H չիք պատու-ել... ի նոսա G չիք եւ (պաշ-տել) MOW եւ երկրպագել b եր-կիր պագանել el երկիրպագել
6 KLMORSXYZ չիք ի (նոսա) DH բնակեալ է û բնակի b մար-գարէնակ է (q մարգարէնակ է) փխ. ի նոսա բնակէ o բնական է Yô չիք ի (մարդիկ)
7 E մարդ Obq մարդիք Y զմարդիկ Wh մարդիկք Ubefnq զպահպա-նութիւն Ybq շնորհս r բժըշկու-թեանս q չիք ախտից CDEHOR XYZôcemor հոգոց Unq հոգւոյ bfhl հոգոյ
8 Ubhlnq մարմնոյ BC այդ befq թէ n եւ մեռանել Yr մեռանիլ hfq հա-սանէ c չիք հասցէ BCDEGH չիք այնոցիկ hfq այնորիկ BCDEFG Hy ի ձեռաց D չիք ի (ձեռն)
9 Y հրաժարեսցի, չիք զի Y զմեծա-գոյն կայ այնպիսոյն յառաջի bq մեծագոյն է CDGHIJabc efq այնպիսոյն ô այնպիսին hl or չիք այնպիսւոյն h թանջի փխ. առաջի
10 I ըստ փխ. ընդ ACDGIJLMOPQR STVXûcefnpy մարտիրոսս YWb hlq մարտիրոս o մարտիրոսու-թիւն U չիք մարտիւրոսս bq չիք է
11 Yô լինիլ befgq հաղորդութիւն o հանապազորդութիւնս փխ. հա-ղորդութիւնս
12 I ըստ փխ. ընդ g հերձուածողացն ô չիք այլ begq եւ որոշել փխ. այլ խորշել û խորշիլ BF այդ բա-ցի BCDEFGHJKORbegkmpqs-ից մնացած ձեռ-երը չհաւասարել
13 g չիք ընդ, նոցա befgq չիք ի (հոգ.) CDGH ի հոգեկանս BCDE FGHKLbefgq չիք ի (մար.) g մարմնան befgq սեղանոյն BCD EFGHSôacefgkmnpqsy պատկա-ռեսցեն
14 X փափակեսցեն afkmps փափա-գեսցեն hcegnqry փափաքեսցեն CDGHn միաբանիլ abkmpqs միա-բան Y ուղղափառս beign ուղղա-փառութեամբ CHy ուղղափառու-թեանն IJ յաւանդիչս R աւանդիչ û զաւանիչս փխ. աւանդիչս Y չիք աւանդիչս

ՋԴ (ՈՂԸ) Լ. Արժան է Յայանութեան աւուր ի Մատթէոսի գլխոյն զմկրտութեան կարգին ընթեռնուլ զԱւետարան։ Այլ յամենայն իսկ աւթարեայսն խառնել պատշաճ վարկանիմ ընդ ծննդեան Աւետարանսն զմկրտութեան Աւետարանսն, զի որպէս տաւնն հասարակաց երկոցուն, հասարակաբար պարտին լինել կարդացմունքն եւ պաշտաւնն։

ՋԵ (ՈՂԹ) ԼԱ. Սովորեցին ոմանք զկիւրակէն աւր մինչեւ ցճաշն պատուել, եւ անտի լառաջ լուծանել զաւուրն զխորհուրդ։ Յաղագս նորին հրամայեցաք մինչեւ ցերեկոյն նովին պատուով պատուել զաւուրն՝ արգելուլ զինքեանս ի գործոյ եւ ի ճանապարհորդութենէ, եւ երեկունն ծունր չկրկնել եւ յարութեան պաշտել։

ՋԶ (Զ) ԼԲ. Ոչ է պարտ ի չարաղանդ մծղնէից տեղիս, որ կոչին պոլի-

1 BCDEFGHy յայանութեանն mp ի յայտնութեան JL յաւուր beg qr աւուրն q յայտնութեան աւուրն կրկնված է MYbefgq չիք ի Tg մաթէոսի Y զմատթէոսի û մատթէոս ackmps զմկրտութեանն

2 hlor կարգն CDGHIJKLMOQRSTXY Zeghklmoqr զաւետարանն b զաւետարանն քրիստոսի AF այգ BF այգ եւ CDEGHV այլ եւ IJM OSYWûegbklnq ամենայն a զամենայն OVW յուրօրեայսն bef gq ը-աւրեան

3 bq խառնիլ ô պատշեած bq վարկանեմ COQbegr ծնընգեանն Wh lo ծննդեանն b աւետարան hlr աւետարանն բացի UYacefgkmp sy-ից մնացած Ձեռ-երը աւետարանս

4 bq ըստ մկրտութեան Vkor զմկրտութեանն Y մկրտութեանն m զմկրտութեան աւետարանսն u աւետարանս bq աւետարանն ô որպէս զի û տօն bq տաւն DG H տանն (hmps տունն) փխ. տաւնն Y հասարակ y հասարակաց է

5 IJKLMQRSTXYôbghloq երկոցունց r հասարակարար DGH պարտ է բացի KLMQRSTXYZô-ից մնացած Ձեռ-երը պարտի or լինիլ XY bq կարդացմունք BCDEFGHK RW ընթերցմունքն (û ընթերցմունք) փխ՝ կարդացմունքն U եւ ի պաշտօնն Y պաշտամունքն ob պաշտօնք ûpqs պաշտաւն

7 Yb սովորեցան eg ոմանք CDGHIL MRSTXZ զկիրակին U զկեւրակին YW զկիրակի o զկիրագին û զկիւրակէ bq զկիրակէ բացի Aafhn ory-ից մնացած Ձեռ-երը զկիրակէն KLMRSTXZô աւուր Y աւուրն beg օրն eg ցճաշ

8 Uq առաջ oq զաւուր b զաւուրս bq խորհուրդն Wûacefgbklmopr sy խորհուրդ

9 DH հրամայեց E հրամայեցաւ G հրամայեաց u ցերեկոյ b ցերեկոյին hl յերեկոյն o յերիկոյն Wun պատուով o պատվօվն be gq պատուելով Mbcegkmpqs պահել փխ. պատուել KLRSTXY Zô չիք պատուել

10 DGHbcgq արգելով kmps եւ արգելուլ DGH զինքեանն GIJûbegq ի գործոց m ի գործով b չիք եւ (ի (ճան.), ի ճանապարհորդութենէն r ի ճանապարհորդութեան W ի ճանապարհ հագորդութենէ CDG երեկոյն H էրեկոյն IJRegbklop rs երիկունն Un երիկուն Y երեկուն V երեկոյնն û երեկոյ bq երեկոյին

11 q ծունրն M ոչ կրկնել ô չի կրկնիլ b չի կրկնել JKLMRTYeg յարութեանն bq յարութեան (b յարութիւն) որպէս պաշտել W պաշտելս

12 JKLMPQRSTUVXYûbefgnq չիք ի bkmq չարաղանդն M մծղնէիցս û մծղնէից L տեղի OWûa տեղիսն ô տեղիք q կոչի hn պաւլիկեանք bq մոլիկեանք փխ. պոլիկեանք

*կեանք, ուտել ումեք եւ կամ լարել եւ խաւսակից լինել եւ երթեւեկութիւն առնել, այլ ամենեւին հեռանալ ի նոցանէ, գարշել եւ ատել զնոսա. զի որդիք սատանայի են եւ լուցկիք յաւիտենական հրոյն, եւ աւտարացեալ են ի սիրոյ կամաց Արարչին։ Եթէ ոք իցէ, որ յարեսցի ի նոսա, եւ ի սիրելութիւն եւ ի բարեկամութիւն եկեսցէ, պարտ է զայնպիսիսն խոշտանգել եւ ծանր պատուհաս ի վերայ դնել, մինչեւ զգաստասցին եւ առողջասցին ի հաւատս։ Ապա եթէ դարձեալ ի նմին գացին վերստին, զայնպիսիսն հրամայեմք ամենեւին հատանել եւ արտաքս ընկենուլ իբրեւ զժանգ ախտս յանդամոց եկեղեցւոյ Քրիստոսի, զի «Մի՛ արմատ դառնութեան ի վեր երեւեալ նեղիցէ, եւ նովաւ բազումք պղծիցին»։**

* * *

*Լուսաշաւիղ ճանապարհ առ Աստուած՝ հնազանդութիւն ընդհանուր հաւատացելոց Քրիստոսի։ Կազմեցին սուրբ հարքն զկանոնական բանից դիտաւորութիւն, զի որք յերկնային հրաւիրեալ են*

* Եբր. ԺԲ, 15

1 b *աթել (o ասել թէ)* փխ. *ութել* u չիք *եւ (կամ)* U *յար եղեւ* փխ. *յարել եւ* u *յարդել* փխ. *յարել, կամ* փխ. *եւ (խաւս.)* o *լինիլ* bq *խաւսից* P *եւ խաւսակից... այլ* Սերբեի լուսանկարում hlo չիք *եւ խաւսակից... առնել* u *կամ* փխ. *եւ (երթեւ.)* YWbq չիք *եւ (երթեւ.)* b *երթեւեկութեանն* g *երթեւեկ* y *երթեւեկութիւնս*

2 ACF *այդ* bq *այլ եւ* eg *եւ գարշել եւ*

3 ô *ա[տել]* U *զոր* փխ. *զի* o *սատանայն* H *լուցեկք* RY *լուցկեցք* n *լուցկեկք*

4 KLMRSTXYZ *յօտարացեալ* bq չիք *են* Ob չիք *ի* ps *ի սիրոյն* efgq *ի կամաց սիրոյ* H *եւ կամաց* b չիք *կամաց, արարիչն* g չիք *եթէ*

5 g չիք *ոք իցէ.... բազումք պղծիցին՝* տող 11-րդ e *յարիցէ* Y չիք *եւ (ի սիրել.)* obeq չիք *ի (սիրել.)* ô *սիրելի,* չիք *եւ ի* bq չիք *ի (բարեկ.)*

6 X *արասցէ* փխ. *եկեսցէ* BCDEFGHI LMYQ *դայնպիսին* RX *խոշանդել* Z *խոշտանդանել* f *ծանրը* BCDE FGH չիք *եւ ծանր.... դնել*

7 abcefhklmopqrsy *ածել* փխ. *դնել*

8 BCDEFGHbefnopq *թէ* DGH *դտցեն* bq *գացի* q *ի վերրստին* u չիք *վերստին* p *դայնպիսիսն հրամայեմք վերստին* RXû *դայնպիսին* b *զայսպիսիսն* Y չիք *զայնպիսիսն* e *զայնպիսին ամէնեւին հրամայեմք*

9 bq *հաւանել* փխ. *հրամայեմք* Y չիք *ամենեւին* bq *իբր* u *ժանդ* hy *զժանտ*

10 hly *ախտ* OWôbefq *անդամոց* n *յանդամւոց* hl *յանդիման* փխ. *յանդամոց* CDHUYôbcefnoqs *եկեղեցոյ* KMQ *յեկեղեցւոյ* Xû *եկեղեցւոյն* hl *եկեղեցիս* bq չիք *մի* h *յարմար* MY *դառնութեանն*

11 a չիք *ի* b *ի վերն* r *ի վերայ* փխ. *ի վեր* q *երեւեալն* û չիք *նեղիցէ* F *նովաւք* û *բազում, պղծեսցին* abfkm pqs *պղծին* l *պղծեցին*

* * *

Հիշատակարանի ունեցած վերնագիրը ուրիշներն են ավելացրել ձեռագրյում, այդ պատճառով այն կնշենք տողատակ՝ eg *յոհանիսի* (b *յոհանու* f *յոհաննիսի*) *իմաստասիրի* (e *իմաստնասիրի*) *հայոց կաթողիկոսի* (b *կաթողիկոսին*) *յիշատակարան* (b *յիշատակարանն*). Y *տեառն յովհանու իմաստասիրի յիշատակարան*

12 ef *լուսայշաւիղ* f *հնազանդութիւնն* beg *ընթհանուր*

13 b *հաւատացելոցն*

14 b *բանիցդ դիտաւորութեան* f *դիտաւորութիւնն* B *յերկնայինն* bf *իցեն* փխ. *են*

ի բնակութիւն մարդկան տարակարծ խոհականութեամբ, նովաւ ընթացեալք ի նպատակն հասցեն բարեգործութեան. եւ յանդիմանեալ խոշտանկեսցեն ինքնակամութեամբ գնացեալն կամեցողքն: Եւ վասն զի ոմանք առ ոմանս եւ ոչ ամենեքին առ ամենեսեան առքս սերմանեալք, կամեցայ զբովանդակ զառ ի նոցանէն կանոնական սահմանեալ բան ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենիւ ի հայրապետանոցի աստ արմատացուցանել: Ուրանաւր եւ զիս աստուածային հոգին վերակարգեաց յաթոռ սրբոյն Գրիգորի ի կաթողիկոսութիւն աշխարհիս Հայոց, Յովհաննէս նուաստագոյն յիմաստասիրականաց խմբից, եւ ի բոլորից մեկին մնացեալ ըստ մարմնոյ յազգականաց:

Եւ ընկալեալ դայս ջան՝ նախկին. վասն հոգեկանաց իմոց զարմին, զի ըստ հրամայողական անուանն առընթեր կացցեն եւ հրամանացն զումարութիւնք. եւ թէ պարտ է սպասաւորաց բանին աստուածախաւսունակ հարցն բանիւք կնքեալ բանիւս Երկրորդ զի դաւսումնասիրաց անձանց իմով աշխատութեամբ սիրով կամեցայ հանգուցանել զբազմախոյզ խնդիրս: Քանզի գրեցաք ի սմա ոչ միայն զկանոնական սահմանեալն նոցա շարակարգութիւնս, այլ եւ զժամանակն եւ զպատճառն ի սոյն այս ի ներքս ածեալ լուեալք, ընդ նմին եւ զգլուխս անցնիւրոց համառաւտեալ բանիւք ի սկզբան անդ նախակարգեցաք, զի անաշխատաբար անդուստ զբանն յիւրում տեղւոջն գտցէ խնդրողն: Յաղագս որոյ անմոռա-

1 f ի րնակութիւնն. մարդիկան befg տարակած b խոհականութեամբն
2 b կացեն փխ. հասցեն, բարէգործութեանց f բարեգործութեամբ
3 b ինքնականութեան y դինքնակամութեամբ b դնալ f դնացեալ
4 Bbfg (ոչ) ամենեքեան
5 b ի նոցանէ
6 b սահմանեալս բանիւ efg բանի· b իմում փխ. ի միում beg տեղոջ f տեղոջ միով գեղեցկագիծ b դեղեցկայգիծ մատենիս
7 b ատանաւր մատուցանել (y արձանացուցանել) փխ. արմատացուցանել f ոտանաւոր փխ. ուրանաւր bf դի փխ. դիս
8 be վերագարդեաց f վերտկարգեց b ի կաթողիկոսութեան
9 befg յովաննէս b նուաստագուն ի իմաստայսիրականաց
10 b խնպից e խմպից f չիք մեկին... յազգականաց՝ տող 11-րդ
11 b յազգայկանաց
13 ı զարմից b զմարմին փխ. զարմին, հրայողական g հրամաողական b կանոնացն փխ. անուանն befg կացցէ f ի փխ. և
14 b դումարութիւն f թէպէտ փխ. թէ պարտ է
15 b աստուածայխաւսաց f աստուածախոսնակ b րանին (կնքեալ) f կընքիլ By կնքել b բանիւք (երկրորդ) f չիք բանիս, զի վասն
16 b ուսումասիրեաց b անձաց g անձանցն bf սիրութեամբ
17 cg հանկուցանել b դբազմայխոյ cg զբազխոյդ b խնդիր
18 bf սահմանեալ
19 b չիք և (զժամանակն) Bfy յայս
20 b զգլուխ անձանց իւրոց համառաւտեալ է
21 f անդնանախոտ կարգեցաք փխ. անդ նախակարգեցաք b նախայկարգեցաք, անտշխատայբար
22 g իւրում f յետում փխ. յիւրում bg տեղոջ cf տեղոջն b խնդալ փխ. խնդրողն

*ցաւար հայցեմ ընդունել ի ձէնջ զլիշողութեանն փոխարէնս. քանզի է այս գանձ եւ ոչ զոր ցեց եւ ուտիճ ապականէ, այլ որ ընդ ինքեան լերկնայինն ի վեր տանի գանձ տնանկ ստացողին զսիրս, յորմէ ապա ոչ է պարտ թափուր թողուլ որում եւ հաւատաց զսա զսրբարանս, զի մի զրկեալք ի սմանէ՝ զրկեսցին յԱստուծոյ կամ յանարդ լինել ի Քրիստոսէ՝ յանարգաց ուրուք ձեռս արկանել զսա։*

*Եւ այն որ պարգեւեաց ինձ ի վերայ երկրի տէրութիւն ընդ ամենազաւր իւրոյ տէրութեամբն, որոյ բարեզթութեամբն եւ ի հանդերձեալսն ի նոյն վստահանամ վայելել ի փառս, նա տացէ ձեզ միշտ ծարաւաբար մերձենալով ճաշակել ի հոգեկանս այս աղբիւրէ, զլարաբացուն ունելով զբերան մտաց առ ի լնուլ սովաւ զլորովայն ներքին մարդոյն սրբոյ աճել զաճումն Աստուծոյ եւ հաւասարել չափոյ հասակի կատարմանն Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն։*

1 b *ընդունելի ի մէնջ զյիշողութիւնն* f *զիշողութեանն*
2 b *այս է զանձն* B *գանձարան* Bfy չիք *եւ (ոչ)* bc չիք *ոչ* cfg *ուտիչ*
3 b *ի վերնատունն* փխ. *ի վեր տանի, ի գանձ* f *զանձանակ* փխ. *գանձ տնանկ* cg *տնանգ* By *զտնանկ* b *զսիրտն* f սկսած *զսիրտ* բառից շարունակությունը մինչև վերջ չի պահվել
4 cfg *յորում*
5 b *զսրբարարսն* b *զրկեսցեն աստուծոյ*
6 Bby *(կամ) անարդ* b *յանարգեցալուց* փխ. *յանարգաց ուրուք* bc ig *զձեռս* b *արկելով* B *արկանելով ի սա*
8 b չիք *ինձ. ի տէրութիւն*
9 b *ամենայզաւր* g *տէրութեանն* b չիք *որոյ* y *բարեզթութեամբ* b չիք *բարեզթութեամբն*
10 b *ի հանդերձեալքն*
11 B *յայս*
12 b *յարբեցուցանելով* փխ. *զլարաբացուն ունելով* By *յարարայ* b *զբերանս*
13 *զորովայնն* g *զյորովայ* B *զորովայն*
14 bq *չափու* B չիք *որում... փառք*
15 B չիք *յաւիտեանս ամէն*

## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 18: *Մի քանի ձեռագրերում այս վերնագիրը ունի տարբերակներ, ինչպես. «Յառաջաբանութիւնք առաքելական կանոնաց» (№№ 649, էջ 3ա, 3369, էջ 3ա). № 651 ձեռագրում «Սկիզբն կանոնիս» (էջ 1ա), № 659 ձեռագրում «Սահմանք և կանոնք զոր եդին աշակերտքն Քրիստոսի եկեղեցւոյ սրբոյ յետ վերանալոյ տեառն ժողովեալ ի վերնատ[ա]ննն» (էջ 3ա), ասորականը՝ «Վարդապետութիւն առաքելոց»: №№ 650, 651, 3369 ձեռագրերում այս վերնագրերով էլ սկսվում է առաջաբանը. «Սահմանք և կանոնք զոր եդին աշակերտք Քրիստոսի յետ վերանալոյ փրկչին մերոյ առ հայր ի յերկինս» և այլն: №№ 648, 2964, 3562 ձեռագրերում այս վերնագիրը չի պահվել:*

Առաջաբան, էջ 18—24: *Ասորական բնագրում ենթավերնագիրը և առաջաբանը համառոտ են. ահա այն. «Եթէ յորժամ վերացաւ Քրիստոս առ Հայր իւր և զիարդ ընկալան առաքեալքն զպարգև Հոգւոյն սրբոյ և զկարգս և զկանոնս եկեղեցւոյ և թէ յո՛ր կողմն չոգան մի մի յառաքելոցն, և ուստի ընկալան աշխարհք տանն Հռոմայ զաջ քահանայութեան:*

*Յամին 339 իշխանութեան Յունաց, յամսեան խէզիրան, որ աւր չորք էր ամսոյն որ էր միաշաբաթի և կատարումն Պենտակոստէին. ի նմին աւուր եկին աշակերտքն ի Նազարէթէ Գալիլէացւոց՝ ուր աւետարանեցաւ յղութիւն Տեառն մերոյ, ի լեառն՝ որ կոչի Ձիթենեաց. իբրև էր Տէրն մեր ընդ նոսա և ոչ երևէր նոցա. և ի ժամուն մեծի առաւօտուն՝ ամբարձ զձեռս իւր Տէրն մեր և եդ ի վերայ գլխոյ մետասան աշակերտացն, և շնորհեաց (բուն՝ «ետ») նոցա զպարգև երիցութեան: Եւ յանկարծակի ամպ լուսաւոր ընկալաւ զնա. և տեսին զնա իբրև վերանայր յերկինս, և նստաւ ընդ աջմէ Հօր իւրոյ. և փառաւորէին զԱստուած զի տեսին զվերանալ նորա՝ որպէս եւ ասէր ցնոսա. և ցնծային զի ընկալան զաջ քահանայութեանն տանն Մովսէսի և զԱհարոնի: Եւ անտի (ի լեռնէն Ձիթենեաց) ելին եկին ի վերնատունն, ուր եկեր Տէրն մեր զզատիկն (պասեք) ընդ նոսա. եւ ի տեղւոջն՝ ուր եղեն հարցմունք թէ ո՞վ իցէ որ մատնելոց իցէ զՏէրն մեր խաչահանուաց, ի նմին տեղւոջ եղեն և հարցմունք եթէ որպէս քարոզեսցեն զաւետարանն յաշխարհի. և զոր աւրինակ ի վերնատանն սկսաւ խորհուրդ մարմնոյ և արեան Տեառն մերոյ թագաւորել յաշխարհի, նոյնպէս և անտի սկսաւ վարդապետութիւն քարոզութեան նորա տիրել յաշխարհի:*

*Եւ մինչդեռ յայսմ զժուարութեան էին անկեալ աշակերտքն, թէ որպէս քարոզեսցեն զաւետարանն լեզուաց օտարաց՝ զոր ոչ գիտէին. և այսպէս ասէին առ միմեանս եթէ՝ Զզօրութիւնս և զսքանչելիս՝ յուսացեալ ենք՝ զի առնէ Քրիստոս առաջի ազգաց աւտարաց. (այլ) զի ոչ գիտեմք զլեզուս նոցա, և ոչ նոքա հմուտ են լեզուի մերում, ո՞վ ուսուցանէ նոցա և ցուցանէ, եթէ անուամբն Քրիստոսի՝ որ խաչեցաւ, լինին այս զօրութիւնք և սքանչելիք:*

*Եւ մինչդեռ յայսմ խորհրդի էին առաքեալքն, յոտն եկաց Սիմոն Պետրոս (Կեփա) և ասէ ցնոսա. Եղբարք, ոչ է մեզ (գիտել) եթէ որպէս քարոզեսցուք զաւետարան նորա, այլ Տեառն մերում, որ գիտէ թէ որպէս կարասցուք քարոզել զաւետարան իւր յաշխարհի. այլ յուսամք ի հոգաբարձութիւն նորա վասն մեր որ խոստացաւ մեզ և ասէ թէ՝ Յորժամ ելանեմ ես առ Հայր իմ՝ առաքեմ առ ձեզ զՀոգին մխիթարիչ, և նա ուսուսցէ ձեզ զամենայն որ ինչ արժան է ձեզ իմանալ և ուսուցանել: Եւ մինչդեռ Սիմոն Պետրոս ասէր զայս առաքելոց ընկերաց իւրոց և յիշեցուցանէր նոցա, հնչիւն ծածուկ լսելի լինէր նոցա, և հոտ անոյշ՝ որ անընդելական (օտար) էր աշխարհի, բուրէր նոցա և ի մէջ բարբառոյն և հոտոյն՝ լեզուք հրեղէ[ն]ք իջին առ նոսա յերկնից, և հանգեան ի վերայ միոյ միոյ ի նոցանէ*

և նոսան. և ըստ լեզուին՝ զոր ընկալաւ մի մի ի նոցանէ, այնպէս պատրաստեաց զանձն իւր զի երթիցէ յաշխարհն այն, ուր խօսիցին և լուիցեն այնու լեզուաւ։

Եւ նովին պարգեւաւ Հոգւոյն՝ որ առաւ նոցա ի նմին աւուր, եդին կարգս և օրէնս. որ միաբանին աւետարանին քարոզութեան նոցա և ճշմարիտ և հաւատարիմ ուսման վարդապետութեան նոցա» (Հ. Տաշյան, Վարդապետութիւն առաքելոց, Վիեննա, 1896. էջ 359—363)։

№ 3562 ձեռագիրը չունի Առաջաբանը։

Երկրորդ վերնագիր և ցանկ. էջ 24—27։ №№ 649, 650, 651, 3369, 3362 ձեռագրերը. ինչպես նաև ասորական բնագիրը չունեն երկրորդ վերնագիրը և ցանկը։ № 659 ձեռագրում երկու թերթ ընկնելու պատճառով, որի մասին ձեռագրի ծբ էջում նշել է Ս. Տիգրանյանը, չեն պահվել երկրորդ վերնագիրը, ցանկը և երրորդ վերնագիրը։ Սակայն մինչև հոդվածների ոկսվելը այս ձեռագրում պահվել է սկզբից թերի մի բնագիր, որը չունեն մյուս ձեռագրերը. ահա այդ բնագիրը. «...եւ յորժամ առեալ ի սկզբանէ եւ զուգեաց Աստուած զմարդն ի ստեղծմանն ժամանակի. եւ աւդնական արար միմիեանց եւ աւրհնեաց զնոսա։ Երեք ժամաւ յառաջ ստեղծ զԱդամ քան զԵւա, որ եւ աւագագոյն երեւեցի այրն. զի մի՛ կարծեսցէ զինքն կինն հաւասար առն։ Նոյնպէս հնդէտասան երեք հինգ է. կարգեցին առաքեալքն ըստ այնմն խորհրդոյ երեք ամաւ աւագ լինել փեսային քան զհարսն՝ հնգէտասան ամեայ փեսային և ԺԲ ամեա հարսինն լինել եւ ըստ բնութեանս շարժման. զի հընգէտասանամենիցն եւ ի վեր խորհրդոցն յուզմունք եւ ալէկոծումն բնութեանս եւ խռովութեան սրտին եւ աղտեղութիւն մարմնոյն յոյնժամ լինի։ Վասն այն պատճառի աւրէնս կարգեցին առաքեալքն եւ որ աւրինաւք զուգեսցին այս է կարգ և սահմանք եւ որք ոչ հնազանդին աւրինացն՝ նզովեսցին, այսինքն որոշեսցին յեկեղեցւոյ Աստուծոյ» (էջ ճար)։ Այս հատվածի սկիզբը համեմատել Առաքելական ԼԳ հոդվածի սկզբի հետ։

№ 2964 ձեռագրում նախ դրված է ցանկը (էջ 1ա—2ա), ապա առաջաբանը (էջ 3ա—6ա)։ Կանոնագրքի ունեցած ցանկից այս ձեռագրի ունեցածը տարբեր է և նոր է կազմվել. ահա այն.

«ա. Վասն աղօթից հրամանք թէ յարեւելս պարտ է կեալ եւ երկիր պագանել աստուածութեան։

բ. Վասն պատուականութեան աւուր կիւրակէի։

գ. Պատուէր պահոց աւուր չորեքշաբաթի։

դ. Նոյն հրաման եւ վասն աւուր ուրբաթուն։

ե. Վասն կարգի քահանայից եւ սարկաւագաց։

զ. Վասն յայտնութեան եւ ծննդեան տեառն մերոյ։

է. Վասն քառասնաւրեայ պահոց պնտութեան։

ը. Վասն կարդացման աւետարանին սրբոյ։

թ. Վասն վերանալոյն Քրիստոսի առ Հայր ի յերկինս։

ժ. Վասն նորահաւատից տգիտաց մի՛ վաղվաղակի առաջնորդ կացուցանել։

ժա. Վասն քառասուն աւուր Պենտակոստէից։

ժբ. Վասն հրա[մա]նի սուրբ մկրտութեան։

ժգ. Վասն ծոյլ քահանայիցն։

ժդ. Վասն որ սուտ երդնուն եւ հաւատան բախտից։

ժե. Վասն չհաղորդելոյ ընդ Հրէայսն։

ժզ. Վասն նորակնքաց որ յանդրէն յետս կացցեն։

ժէ. Վասն որ առնու վաշխ եւ տոկոսիս։

ժը. Վասն առաջնորդաց եկեղեցոյ թէ մի՛ արասցէ իրս ինչ առանց իւրոց պաշտօնէից։

ժթ. Վասն քահանայից եթէ ընտրեալքն եւ գիտունքն եղիցին յառաջնորդութիւն։

ի. Նոցին հրաման վասն անարատ վարուց։

իա. Վասն արբեցողաց և այլազդ վաթարութեան մի՛ մերձեցուցանել ի քահանայութիւն։

իբ. Հրաման պատուի մեծութեան քահանայից։

իգ. Վասն զինուորաց զի մի՛ արասցեն ինչ իբրև զքահանայ։

իդ. Վասն քահանայից զի մի՛ ոք արհամարհիցէ։

իե. Վասն դատաւորաց եւ դատաստանաց։

իզ. Վասն սուրբ ոսկերաց վկայիցն որ ի Քրիստոս։

իէ. Վասն չուառացեալ թաղաւորաց։
իը. Հրաման վասն կարգի պաշտօնէից։
իթ. Կարգաւոր հրաման վասն կարգացման։
լ. Վասն հացի սուրբ պատարագին զի առ ա.րին իցէ։
լա. Վասն սուրբ կուսանաց և նոցին կարգաց։
լբ. Հրաման վասն ամուսնացելոց եւ հեռի լինել յազգականութեանց յորենէ»։

Նաև հետը ձեռագրերում նախ գրված է ցանկը, ապա՝ առաջաբանը։

Երրորդ վերնագիր, էջ 27։ №№ 659, 3369, 3562 ձեռագրերը չունեն այս վերնագիրը։ Իսկ №№ 649, 650, 651, 2964 ձեռագրերը ունեն «Կանոնք (№ 650՝ կանոն) առաքելականք»։

Հոդ. Ա. էջ 27—28։ Համմ. ասորի բնագրի հետ. «Ա. Արդ կարգեցին (եղին) առաքեալքն եթէ ընդ արեւելս կացցեն յաղօթս, քանզի որպէս փայլակն զի փայլատակէ յարեւելից եւ երեւի մինչև յարեւմուտս, նոյնպէս եղիցի եւ գալուստ որդւոյ մարդոյ, եւ այսու գիտասցուք եւ ծանիցի մեզ եթէ յարեւելից երեւեսցի ի վախճանի» (էջ 364)։ Հոդվածի վերջին տողը մի քանի ձեռագրերում ընդարձակ է. «յաղաւթս կալ սպասել եւ ակն ունել գալըստեան նորա եւ երկիր պագանել արքային անմահի յաւիտենից» (№ 651, էջ 2 բ, տես նաև №№ 2964, էջ 6ա, 3369, էջ 4բ)։ Այս հոդվածի բովանդակությունը հիշում է Ան. Շիրակացին Ցայտնութեան ճառի մեջ. «Ընդէ՞ր ապա եւ ընդ արեւելս ուսուցին մեզ երկրպագել» (պրոֆ. Աշ. Աբրահամյան, Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 286)։

Հոդ. Բ. էջ 28—29։ Հայերենը շատ է շեղվում ասորերենից և ճոխացված է. համմ. ասորի բնագիրը. «Բ. Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ յաւուր միաշաբաթւոջ եղիցի պաշտօն եւ ընթերցումն գրոց սրբոց եւ պատարագ. զի յաւուր միաշաբաթւոջ յարեաւ Տէրն մեր ի մեռելոց եւ յաւուր միաշաբաթւոջ ծագեցաւ աշխարհի, եւ յաւուր միաշաբաթւոջ վերացաւ յերկինս եւ յաւուր միաշաբաթւոջ երեւի ի վախճանի՝ հրեշտակօք երկնից» (էջ 364)։ Ան. Շիրակացին այս հոդվածի մասին հիշում է այսպես. «Հի՞մ եւ զկիւրակէ տաւնախմբել» (նույն տեղում, էջ 286)։

Հոդ. Գ. էջ 30։ Հայերենը բավական ընդարձակ է. համմ. ասորի բնագրի հետ. «Գ. Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ յաւուր չորեքշաբաթւոջ եղիցի պաշտաւն. զի ի նմա յայտնեաց Տէրն մեր նոցա վասն զատատանին իւրոյ եւ չարչարանաց եւ խաչելութեան եւ մահուան եւ յարութեան, եւ էին առաքեալքն յայսմ տրտմութեան» (էջ 364—365)։ Այս և հաջորդ հոդվածի մասին Ան. Շիրակացին նույնպես հիշում է. «Պատուել եւ զատարկանալ, եւ զչորեքշաբաթի եւ զուրբաթ պահել» (անդ, էջ 286).

Հոդ. Դ. էջ 30։ Համմ. ասորի բնագրի հետ. «Դ. Դարձեալ կարգեցին առաքեալքն՝ եթէ յաւուր ուրբաթուն յիններորդ ժամու եղիցի պաշտօն. քանզի որ ինչ ասացաւ յաւուր չորեքշաբաթւոջ վասն չարչարանաց փրկչին մերոյ՝ յուրբաթուն կատարեցաւ, յորժամ շարժեցան աշխարհք եւ արարածք եւ խաւարեցան լուսաւորք յերկինս» (էջ 365)։

Հոդ. Ե. էջ 30—31։ Ինչպես ասորի բնագրում, այնպես էլ մի քանի ձեռագրերում՝ №№ 649, 650, 651, 659, 2964, 3369 այս հոդվածը չի պահվել։ Այս մասին մանրամասն տես Հ. Տաշյանի դիտողությունները («Վարդապետութիւն առաքելոց», էջ 56—59)։

Հոդ. Զ. էջ 31—32։ Համմ. ասորի բնագրի հետ. «Ե. Դարձեալ կարգեցին առաքեալքն՝ եթէ եղիցին երիցունք եւ սարկաւագունք որպէս զՂեւտացիս, եւ կիսասարկաւագունք որպէս զայնոսիկ որ կրէին զսպասս սրբոյ խորանին Տեառն. եւ զէտ որ լինիցի առաջնորդ ամենայն ժողովրդեան՝ իբրև զԱհարոն գլուխ եւ աւագ ամենայն քահանայից եւ Ղեւտացւոց ամենայն քաղաքին» (էջ 365)։

Հոդ. Է, էջ 32։ Համմ. ասորի բնագրի հետ. «Զ. Դարձեալ կարգեցին առաքեալքն՝ եթէ տրասցեն տօն ծննդեան փրկչին մերոյ, որ է գլուխ տօնից եկեղեցւոյ, ի Զ յունուարի (քանուն Բ) ըստ երկար թուոյ Յունաց» (էջ 366)։ Ան. Շիրակացին Ցայտնութեան ճառում մեջ է բերում այս հոդվածի բովանդակությունը. ահա այն. «Քանզի գրեալ է ի վեցերորդ գլուխ կանոնացն այսպէս. եթէ՝ կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, թէ եղիցի տաւն Ծննդեանն եւ Ցայտնութեանն Տեառն եւ Փրկչին մերոյ գլուխ եւ առաջնորդ տաւնից եկեղեցւոյ, որ աւր ԻԱ է տիբեթ ամսոյ, որ է Զ յունուարի ըստ հռոմայեցւոց» (նույն տեղում, էջ 283)։ Շիրակացին օգտվել է մի բնագրից, որի մի տարբերակը հետագայում մտել է Կանոնագրքի մեջ։ Շիրակացին նշում է. «ի վեցերորդ գլուխ». սա համապատասխանում է ասորական բնագրի համարակալմանը, քանի որ, ինչպես վերևում

նշեցինք, վերջինիս մեջ չի պահվել կանոնագրքում եղած Ե հոդվածը. այստեղից կարող ենք անել երեք ենթադրություն. ա. Ան. Շիրակացու ձեռքի տակ եղած առաքելական կանոնախմբի համապատասխան բնագրում պատահմամբ դուրս է ընկել Ե հոդվածը. բ. Շիրակացին է սխալմամբ հիշում «ի վեցերորդ գլուխ» փոխանակ նշելու «յեւթներորդ գլուխ». գ. Ան. Շիրակացու ձեռքի տակ եղած հայ բնագրում, ասորերենի հաջորդականությամբ, բացակայել է Ե հոդվածը, որը մտել է այս կանոնախմբի մեջ մինչև վերջինիս մուծվելը կանոնագրքում՝ Ա. Շիրակացու և Հ. Օձնեցու միջև ընկած ժամանակաշրջանում։ Մեզ հավանական Թվում է վերջինը։

Հոդ. Ը, էջ 32—33: Համմտ. ասորի բնագրի հետ. «Ը. Կարգեցին դարձեալ առաքեալքն՝ եթէ զքառասունն աւր պահեսցեն յառաջ քան զօր չարչարանաց փրկչին մերոյ, եւ ապա արասցեն (տօնել) զաւր չարչարանաց եւ զօր յարութեան, քանզի եւ ինքն իսկ Տէրն մեր՝ տէր տօնիս զքառասունն օր պահեաց. եւ Մովսէս եւ Եղիա՝ որ զգեցեալ էին զայս խորհուրդ, զքառասունն քառասուն օր պահեցին եւ նոքա, եւ ապա փառաւորեցան» (էջ 366)։ № 3369 ձեռագրում «Ի ձեռն պահոցն»-ի միջև կա մեկ բառ «ի ձեռն քառասնօրեայ պահոցն» (էջ 5բ)։

Հոդ. Թ, էջ 33—34։ Հայերենը դրեթե բառացի համապատասխանում է ասորի բնագրի Ը հոդվածին։

Հոդ. Ժ, էջ 34. Համմտ. ասորի բնագրի հետ. «Թ. Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ ի կատարման Ծ աւուրց յետ յարութեան՝ արասցեն զյիշատակ վերացմանն նորա առ Հայր իւր փառաւորեալ» (էջ 367)։

№№ 648, 3562 ձեռագրերում չի պահվել այս հոդվածը։

Հոդ. ԺԱ, էջ 34։ Ասորի բնագիրը չունի այս հոդվածը։ Այս մասին տես Հ. Տաշյանի նշված աշխատության 227—230 էջերը։ № 659 ձեռագրում հոդվածի վերջին մասը այսպես է. «Եւ դարձեալ ի յիսներորդն աւուն կատարեսցի իբրև զառաջին զատկին եւ վարդավառին զառս զենցի» (էջ 10բ)։

Հոդ. ԺԲ, էջ 34—35: Համմտ. ասորի բնագրի հետ. «ԺԱ. Դարձեալ կարգեցին առաքեալքն՝ եթէ որ ոչ գիտէ զհաւատս եկեղեցւոյ եւ զկարգս եւ զօրէնս՝ որ կարգեալ են ի նմա, մի՛ լիցի առաջնորդ եւ հրամանատար, եւ որ գիտէ զայնոսիկ՝ բայց անցանէ զնոքօք ոչ պաշտեսցէ. զի չէ ճշմարիտ ի պաշտամանն իւրում, ասէ» (էջ 367—368)։

Հոդ. ԺԳ, էջ 35—37։ Այս հոդվածը ասորի բնագիրը չունի։ Հ. Տաշյանը կարծում է, որ ասորերենի մեջ պետք է եղած լինի այս ձևով. «Կարգեցին առաքեալք և եդին հաստատութեամբ (...) եթէ ի ձեռն քահանայութեան կարգի՝ մանուկ ութօրեայ մկրտեսցի եւ եղիցի քրիստոսազգեաց, եւ վկայք՝ որ ոչ ունին զմկրտութիւն ջրոյն, արեամբն իւրեանց փրկեսցին» (էջ 226)։ Այս հոդվածի մասին տես Տաշյան, անդ, էջ 226—227։ Բնագրի «Զանարատ զտէր» բառերի միջև № 3369 ձեռագրում կարդում ենք երկու բառ ևս «զանարատ զառն Աստուծոյ զտէրն» (էջ 6բ)։

Հոդ. ԺԴ, էջ 37: Հայերենում ավելացումները քիչ են. համեմատի՛ր ասորի բնագրի հետ. «ԺԳ. Դարձեալ կարգեցին առաքեալքն, եթէ իցէ ոք երկմիտ ի պաշտաման եւ չիցէ ճշմարիտ ի նմա, այնպիսին դարձեալ մի՛ պաշտեսցէ, զի չէ նմա ճշմարիտ տէրն պաշտաման, նա զմարդիկ խաբէ եւ ոչ զԱստուած՝ այն որ ոչ հաստատին կամակորութիւնք առաջի նորա» (էջ 368)։

Կանոնագրքի «չիցէ ճշմարիտ ի պաշտաման Տեառն մի՛ ձեռնադրեսցի» հատվածի փոխարեն № 650 ձեռագրում կարդում ենք. «Զիցէ ճշմարիտ ի հաւատս տեառն մի՛ կարգեսցի նա յառաջնորդութիւն եկեղեցոյ» (էջ 10ա)։

Հոդ. ԺԵ, էջ 37—38: Համմտ. ասորի բնագրի հետ. «ԺԴ. Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ որ երդնու կամ ստէ, կամ վկայէ զվկայութիւն անօրէնութեան, կամ երթայ առ կախարդս և հարցուկս և քութեայս եւ վհուկս եւ հաւատայ բախտից եւ ծննդոց՝ զոր ընդունին այնոքիկ որ ոչ ճանաչեն զԱստուած, և՛ւ ինքն որպէս այլ՝ որ ոչ ճանաչէ զԱստուած, մերժեսցի ի պաշտամանէ եւ մի՛ պաշտեսցէ» (էջ 368)։ № 659 ձեռագրում պահվել է ասորերենի նման. «եւ հաւատայ բախտից եւ ծննդոց» (էջ 12բ)։

Հոդ. ԺԶ, էջ 38: Համմտ. ասորի բնագրի հետ. «ԺԵ. Դարձեալ կարգեցին առաքեալքն՝ եթէ որ սիրէ զՀրեայս՝ որպէս զՍկարիովտացին՝ որ սիրեաց զնոսա կամ զհեթանոսս որ երկիր պագանեն արարածոց փոխանակ արարչին, մի՛ մտցէ ի մէջ նոցա (յեկեղեցի) եւ պաշտեսցէ, այլ եթէ իցէ ի միջի նոցա՝ մի՛ թողցեն եւ մի՛ պաշտեսցէ դարձեալ ընդ նոսա» (էջ 368—369)։

Հոդ. ԺԷ. էջ 38—39։ *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԺԶ. Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ ոք ի հրեից կամ հեթանոսաց եկեսցէ եւ խառնեսցի ի նոսա (յեկեղեցի), եւ եթէ՝ իբրեւ խառնեալ էր ի նոսա, դարձցի և երթիցէ ի կողմն՝ ուր էրն. եւ եթէ դարձեալ կրկնեսցի եւ եկեսցէ առ նոսա, մի ընդունիցին զնա, այլ իբրեւ ի կողմն՝ ուր էր զառաջինն, այնպէս հայիցին ի նա՝ . որ ճանաչենն զնա» (էջ 369)։*

Հոդ. ԺԸ. էջ 39: *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԺԴ. Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ որ փոխ տայ եւ առնու տոկոսիս եւ փոյթ յանձին ունի զվաճառականութենէ եւ զագահութենէ այնպիսին մի՝ եւս պաշտեսցէ եւ մի՝ կացցէ ի պաշտաման» (էջ 369)։ Մի քանի ձեռագիր բնագրեր «ամին թողութեան»-ի փոխարեն ունեն «տօնին թողութեան» (№№ 648, էջ 145ա, 659, էջ 13բ, 3562, էջ 245բ)։ Հմմտ. վերևում, էջ 39, տողատակ։*

Հոդ. ԺԹ. էջ 39—40: *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԺԷ. Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ չէ իշխանութիւն առաջնորդին առանց իւրոց պաշտօնակցացն առնել զիրս ինչ եկեղեցւոյ, այլ խորհրդով ամենեցուն հրաման տացէ, եւ արասցէ՝ ընդ որում ամենեքին միաբան են եւ ոչ ընդդէմ դառնան» (էջ 369)։*

Հոդ: Ի. էջ 40: *Հ. Տաշյանը այս մասին գրում է. «Ասորին (կան. ԻԴ) բոլորովին ուրիշ բան է. այսինքն՝ պետուածներու վրայ կը խօսի, մինչ խմբագրեալ հայն կերպարանափոխ եղած է։ Բարեբախտութեամբ ճիշտ այս կանոնին նախնական հայ թարգմանութիւն հասած է մեզի «Կղեմայ» առաքելական կանոնաց մէջ մտնելով շփոթմամբ իբրեւ Կան. ԶԴ» (էջ 370 ընդգծումը Հ. Տաշյանինն է—Վ. Հ.)։*

Հոդ. ԻԱ, էջ 41: *Հմմտ. ասորի բնագրի հետ. «Ի. Դարձեալ եդին առաքեալքն եթէ որ լուկ են ի մամոնայէ եւ չերթան զկնի արծաթոյ շահից, նոքա ընտրեսցին եւ մերձեցուսցին ի պաշտօն սեղանոյ» (էջ 370)։*

Հոդ., ԻԲ. էջ 41—42. *Հմմտ. ասորի բնագրի հետ «ԻԳ. Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ որ ամբարտաւանքն են եւ հպարտութեամբ սնապարծութեան ուռուցեալ՝ մի՝ մերձեցուսցին ի պաշտօն, վասն այնր՝ թէ որ բարձրացեալ է առ մարդրկան՝ խոնարհեալ (խոտան) է առաջի Աստուծոյ, եւ ի վերայ նոցա ասացեալ է թէ՝ ես հատուցից նոցա որ ամբարհաւաճենն» (էջ 371)։*

Հոդ. ԻԳ. էջ 42—43: *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԻԱ. Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ որ կապիցէ տարապարտուց (բուն՝ ըստ պատահման) յանարժանս, պատիժս պատուհասի ընկալցի ըստ արժանի, բայց որ կապեցաւն՝ ընկալցի զկապանսն որպէս թէ ըստ արժանւոյն կապեցաւ» (էջ 371)։*

Հոդ. ԻԴ. էջ 43: *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԻԶ. Կարգեցին դարձեալ առաքեալքն թէ մի ոք հանդգնեսցի եւ առնիցէ ինչ մի իշխանութեամբ քահանայութեան առանց օրինաց (ըստ արժանւոյն) եւ իրաւանց, այլ արդարութեամբ եւ առանց դսրովանաց ակնառութեան» (էջ 371)։*

Հոդ. ԻԵ, էջ 43—44։ *Ասորերենը այս հոդվածը չունի։ Հ. Տաշյանը այս մասին գրում է. «Ահա կանոն մ՝ որ կարծես ամէն հաւանականութիւն ունի խմբագրէն ըլլալու, որմէ է՝ ինչպէս դիտենք արդէն՝ «թէեւ կարի յանարգաց իցէ» նախադասութիւնը։ Արդէն ալ կանոնս նորագոյն է ծագմամբ՝ համեմատութեամբ միւսներուն, եւ՝ կամ խմբագրէն մուծուած եւ կամ հնագոյնն՝ եթէ կար ասոր տեղ՝ անհետ կորսուելու չափ փոխուած։ Վերջին դէպքն հաւանական կ՝երեւայ» (էջ 225)։ Հ. Տաշյանը ենթադրում է, որ այս հոդվածի հիմքը հանդիսացած կլինի Կղեմեսի կանոնախմբի Ծ հոդվածը (էջ 226)։*

Հոդ. ԻԶ, էջ 44: *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԻԲ. Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ որք սովոր են լսել դատաստանս՝ եթէ աչառիցեն եւ պարտաւորիցեն զարդարն են արդարացուսցեն զպարտաւորն, մի եւս լուիցեն դատաստան այլ, եւ դարձեալ ընկալցին կշտամբանս վասն ակնառութեան ըստ արժանիս» (էջ 372)։*

Հոդ. ԻԷ, էջ 44—45: *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԺԸ. Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ վասն այնոցիկ որ ելանիցեն յաշխարհէ բարի վկայութեամբ հաւատոցն Քրիստոսի եւ ի նեղութեան՝ որ վասն անուան նորա, արասցեն զյիշատակ նոցա յաւուր մահուան նոցա» (էջ 372)։*

Հոդ. ԻԸ. էջ 45: *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԻԵ. Կարգեցին դարձեալ առաքեալքն, եթէ թագաւորք հանդերձեալ են հաւատալ ի Քրիստոս, իշխանութիւն լիցի նոցա, զի ելցեն և կացցեն առաջի սեղանոյն ընդ առաջնորդս եկեղեցւոյ. զի եւ Դաւիթ եւ որք իբրև զնայն էին՝ ելանէին եւ կային առաջի սեղանոյ» (էջ 372)։*

Հոդ. ԻԹ. էջ 45—46 *Հմմտ. ասորի բնագրի հետ. «ԺԹ. Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ ի պաշտաման եկեղեցւոյ ասասցեն զօրհնութիւնս Դաւթի օր ըստ օրէ, վասն այնր թէ՝ Օրհնեցից*

զՏէր յամենայն ժամանակի, յամենայն ժամանակի օրհնութիւնք նորա ի բերանի իմում. եւ դարձեալ՝ ի տուէ եւ ի գիշերի խորհեցայ եւ ասացի եւ լսելի եղեւ ձայն իմ առաջի քո» (էջ 373)։

Հոդ. Լ. էջ 46: Համա. ասորի բնագրի հետ. «Ժ. Կարգեցին դարձեալ առաքեալքն թէ մի ընթերցցի յեկեղեցւոջ ի վերայ բեմի (այլ գիրք), բայց միայն Հին Կտակարանք եւ Մարգարէք եւ Աւետարան եւ Գործք Առաքինութեանց նոցա» (էջ 373)։

Հոդ. ԼԱ, էջ 46։ Ասորական բնագրին բավական մոտ է և մասամբ փոփոխված. «ԻԷ. Դարձեալ եղին առաքեալքն, թէ հաց պատարագին յիւրում աւուր եփեսցի՝ ելիցէ ի սեղանն, և ոչ զկնի աւուրց՝ որ չէ օրէնս» (էջ 373)։ Վերջին հատվածը № 650 ձեռագրում այսպես է. «հաց ջերմ ի սեղանոյն երեսաց տեառն» (էջ 14բ)։

Հոդ. ԼԲ, էջ 46—47։ Ասորի բնագիրը այս հոդվածը չունի։ Հ. Տաշյանը կարծում է, որ այս հոդվածը էական մասով «ստուգիւ ասորի բնագիր մը մատնանիշ կ՚ընէ» (էջ 223). այդ բանի համար ենթադրաբար մատնացույց անելով Լարուբնան (էջ 225)։ Մի քանի ձեռագրերում «վանս շինելոյ» փոխված է «վասն շինելոյ» (№№ 648, էջ 147ա, 650, էջ 14բ, 651, էջ 6բ, 659, էջ 17բ, 3562, էջ 247բ)։

Հոդ. ԼԳ, էջ 47—49: Այս հոդվածը ասորի բնագիրը չունի։ Հ. Տաշյանը կարծում է, որ այս ավելացվել է հետագայում, հիմք ընդունելով Շահապիվանի ԺԳ հոդվածը, Աստվածաշունչը և ասորի մի բնագիր (էջ 203—204)։ Նա այդ գրում է նկատի ունենալով հոդվածի «նոյնպէս և սահմանեալ առաքելական կանոնաց» հատվածը։ Այս նշումով, ինչպես ենթադրում է Հ. Տաշյանը «խմբագրողը յայտնապէս կ՚ըսէ թէ «առաքելական կանոն» մ՚ ունեցեր է իր առջև եւ զոր իր յօրինած երկայն կանոնին նիւթոյն վկայ կը կոչէ» (էջ 204)։

Հոդ. ԼԴ, 49—66։ Վերջաբանը թեև ըստ Հ Տաշյանի «ընդհանրապէս քիչ փոխած է հայ խմբագիրը նախնական հայ թարգմանութիւնը» (էջ 374), համենայն դեպս այստեղ կբերենք ասորական բնագիրը ցույց տալու հայերեն բնագրի որոշ շեղումները, երբեմն Աստվածաշնչից բերված մեջբերումների ճոխությունը, կամ վերջին մասի փոփոխությունը, որոնք, ինչպես նշում է Հ. Տաշյանը, արված են «ազգային աւանդութեան չհակառակելու համար» (էջ 97—98, 382)։

«Արդ զայս ամենայն ոչ եթէ անձանց իւրեանց կարգեցին առաքեալքն, այլ այնոցիկ, որ զկնի իւրեանց գալոց իցեն. քանզի կասկածէին թէ պատրաստեալ (հանդերձեալ) էին գայլք զգենուլ զգեստ գառանց. քանզի բաւական էր ինքեանց Հոգին Մխիթարիչ՝ որ ի նոսա, զի՝ զոր աւրինակ նա կարգել ի ձեռն նոցա զօրէնսս ղայսոսիկ, առաջնորդեսցէ նոցա ըստ օրինաց. զի որք ընկալան ի տեառնէ զօրութիւն և զիշխանութիւն, չէր ինչ նոցա պէտք եթէ յայլոց դնիցին նոցա օրէնք։ Նա եւ Պաւղոս եւ Տիմոթէոս որ շրջէին ի կողմանս (յաշխարհին) Ասորւոց եւ Կիլիկեցւոց՝ զսոյն իսկ զայս օրէնս առաքելոցն եւ զերիցանց աւանդէին ամենեցուն՝ որ ընդ ձեռամբ առաքելոցն էին, յեկեղեցիս աշխարհացն՝ ուր քարոզէին եւ աւետարանէին.

Այլ աշակերտքն յետ դնելոյ զկարգս եւ զօրէնս, ոչ դադարէին ի քարոզելոյ զաւետարանն եւ ի նշանաց սքանչելեաց՝ զոր առնէր Տէրն մեր ի ձեռս նոցա. քանզի ժողովուրդ բազում ժողովէր հանապազ առ նոսա եւ հաւատայր ի Քրիստոս։

Եւ յայլոց քաղաքաց դային առ նոսա եւ՝ լսէին զբանս նոցա եւ ընդունէին. նաեւ Նիկոդեմոսի եւ Գամաղիէլ գլխաւորք ժողովրդեան Հրէից դային առ առաքեալսն ի ծածուկ եւ հաւանէին վարդապետութեան նոցա, այլ Յուդա եւ Ղեւի եւ Փեռի եւ Յուստոս որդիք Աննայի, եւ Կայիափա եւ Աղեքսանդրոս քահանայք դային եւ նոքա առ առաքեալս ի գիշերի եւ խոստովան լինէին ի Քրիստոս թէ որդի Աստուծոյ է. եւ երկնչէին յորդւոց ժողովրդեան իւրեանց յայտնել զխորհուրդս իւրեանց որ առ աշակերտսն։

Եւ ընկալեալ զնոսա առաքելոց սիրով՝ ասէին ցնոսա. Մի վասն պատկառանաց եւ երկիւղի մարդկան կորուսանէք զկեանսն ձեր՝ որ առաջի Աստուծոյ է. եւ պահանջիցիք ընդ հարսն ձեր զվրէժ արեանն Քրիստոսի զոր ընկալան ի վերայ իւրեանց. զի չէ ընդունելի առաջի Աստուծոյ, զի յորժամ իցէ ընդ երկրպագուս նորա՝ դարձեալ երթայցէք եւ խառնիցիք ընդ սպանողս որդւոյ նորա երկրպագելոյ. զիա՞րդ ակն ունիցիք ընդունելի լինել հաւատոց ձերոց ընդ ճշմարիտս, մինչդեռ իցէք ընդ սուտս.. այլ արժան է ձեզ որպէս արս որ հաւատան ի Քրիստոս, խոստովանել յայտնապէս զհաւատս զայս՝ զոր քարոզեմք մեք։

Իսկ իբրեւ լուան նոքա զայս յառաքելոցն՝ աղաղակեցին ամենեքին միաբան որդիքն քահանայից առաջի ամենայն ժողովրդեան առաքելոց թէ զհաւատս եալն Քրիստոս խոստովանիմք եւ հաւատամք թէ նա ի սկզբանէ է որդի Աստուծոյ եւ ուրանամք յայնցանէ՝ որ յանդգնեցան եւ խաչեցին զնա։ Քանզի եւ քահանայք ժողովրդեան խոստովանէին ի ծածուկ զՔրիստոս. եւ վասն գլխաւորութեան ժողովրդեանն՝ զոր սիրէին, ոչ կամէին յայտնապէս խոստովանել, եւ մոռացան

նորա զգրեալն թէ Տէր է գիտութեան (Տէր սրտագէտ է) եւ ոչ հաստատին կամակորութիւնք (արուեստք) առաջի նորա։

Եւ իբրեւ լուան հարք նոցա զայս յորդւոց նոցա՝ սպառնացան նոցա յոյժ, ոչ զի հաւատացին ի Քրիստոս. այլ զի յայտնեցին եւ առակեցին զխորհուրդս հարց իւրեանց առաջի որդւոց ժողովրդեան իւրեանց։ Բայց որք հաւատացինն յարեցան յաշակերտս եւ ոչ հեռանային ի նոցանէ. զի տեսանէին թէ զոր ինչ ուսուցանէին բազմութեան՝ զնոյն և արդեամբք առնէին առաջի ամենայն ուրուք։ Եւ յորժամ նեղութիւն եւ հալածանք զային ի վերայ աշակերտացն՝ ուրախ լինէին ընդ կցորդ լինել նեղութեանց նոցա, եւ խնդութեամբ ընդունէին զտանջանսն եւ զբանտսն վասն հաւատոցն ի Քրիստոս. եւ զամենայն աւուրս կենաց իւրեանց քարոզէին զՔրիստոս առաջի Հրէից եւ Սամարացւոց. եւ յետ վախճանելոյ առաքելոցն եղեն առաջնորդք եւ հրամանատարք յեկեղեցիս. եւ զոր ինչ աւանդեցին նոցա առաքեալքն եւ ընկալան նոքա ի նոցանէ՝ զամենայն աւուրս կենաց իւրեանց ուսուցանէին բազմութեան։

Նոյնպէս աւանդեցին եւ ետուն եւ նոքա ի վախճանի իւրեանց աշակերտաց իւրեանց զկնի իւրեանց զամենայն ինչ, զոր ընկալան յառաքելոց, եւ զոր ինչ գրեաց Յակոբոս յԵրուսաղէմայ, եւ Շմաւոն ի Հռոմ քաղաքէ եւ Յովհաննէս յԵփեսոսէ, եւ Մարկոս յԱղեքսանդրիայ մեծէ, եւ Անդրէաս ի Փռիւգիայ, եւ Ղուկաս ի Մակեդոնիայ, եւ Յուդա Թովմաս ի Հնդկաց. եւ թուղթքն Առաքելոյն ընթերցեալ լինին եւ ընկալեալ յամենայն եկեղեցիս ընդ ամենայն տեղիս, որպէս ընթեռնուն Գործք Առաքինութեանց նոցա, զոր գրեաց նոցա Ղուկաս, զի յայսմ ծանիցին Առաքեալք եւ Մարգարէք եւ Հին Կտակարանք եւ Նորքս, թէ մի ճշմարտութիւն քարոզեցաւ յամենեսին, մի Հոգի խօսեցաւ յամենեսեան ի միոջէ Աստուածոյ, որում երկիր պագին ամենեքեան եւ զոր աւետարանեցին ամենեքին. եւ ընկալան տիեզերք (աշխարհք) զվարդապետութիւն նոցա։ Եւ արդ ամենայն ինչ որ խօսեցաւ ի Տեառնէ ի ձեռն առաքելոց եւ առաքեալքն աւանդեցին աշակերտաց իւրեանց, հաւատացաւ եւ ընդունելի եղեւ յամենայն կողմանս՝ յակնարկել Տեառն որ ասէ զնոսա թէ Ես ընդ ձեզ եմ մինչեւ կատարի աշխարհ։

Եւ վիճէին ընդ Հրեայս առաջնորդքն ի գրոց մարգարէից, եւ մարտնչէին նաեւ ընդ հեթանոսս մոլորեալս զօրութեամբք նշանացն՝ զոր առնէին անուամբն Քրիստոսի։

Եւ ազգք ամենայն, նաեւ որ բնակեալ էին յաշխարհս հեռաւորս դադարեցին եւ լռեցին աւետարանաւն Քրիստոսի. եւ որ խոստովանէին՝ աղաղակէին ի հալածանս թէ Հալածանքս այսր աւուր եղիցին խաւսնակ փոխանակ մեր՝ զի էաք յառաջ հալածիչք. զի էին ոմանք ի նոցանէ որ մահ սրոյ հրամայէր վասն նոցա, եւ էին ոմանք ի նոցանէ, զորոց զինչս՝ բառնային ի նոցանէ եւ թողուին (զնոսա մերկս) եւ որչափ նեղութիւն կայր ի վերայ՝ այնչափ առաւելուին եւ աճէին ժողովք նոցա. եւ խնդութեամբ սրտից իւրեանց զամենայն ազգ մահու ընդունէին։

Եւ ձեռամբ քահանայութեանն՝ զոր ընկալան առաքեալքն ի Տեառնէ, թռեաւ վաղվաղակի աւետարան նոցա ընդ ամենայն կողմանս աշխարհի. եւ յորժամ այց առնէին միմեանց՝ պաշտէին զմիմեանս։

ա. Ընկալաւ զձեռն քահանայութեան Երուսաղէմ եւ ամենայն աշխարհ Պաղեստինացւոց եւ Սամարացւոց եւ տան Փղշտացւոց, եւ աշխարհ Արաբացւոց եւ Փիւնիկեցւոց եւ որդւոց Կեսարու՝ ի Յակոբայ առաքելոյ, որ եղեւ առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջ առաքելոցն՝ որ շինեցաւ ի Սիոն։

բ. Ընկալաւ զձեռն քահանայութեան յառաքելոց մեծն Աղեքսանդրիա եւ Թեբայիս եւ Եգիպտոս ներքին եւ ամենայն աշխարհն Պեղուսիոնի եւ մինչեւ ցսահմանս Հնդկաց՝ ի Մարկոսէ աւետարանչէ, որ եղեւ անդ հրամանատար եւ առաջնորդ յեկեղեցւոջն, զոր շինեաց անդ և պաշտեաց։

գ. Ընկալան զձեռն քահանայութեան առաքելոց Հնդիկք եւ ամենայն աշխարհք ի նմա եւ որ շուրջ զնովաւ են, մինչեւ ի ծովն վերջին ի Յուդայ Թովմայէ, որ եղև առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջն, զոր շինեաց անդ եւ պաշտեաց անդ։

դ. Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոց Անտիոք եւ Ասորիք եւ Կիլիկիա եւ Գաղատիա մինչեւ ցՊոնտոս՝ ի Սիմոնէ վիմէ, զի նա եդ զհիմունս եկեղեցւոյ անդ, եւ քահանայացաւ եւ պաշտեաց անդ մինչեւ ցժամանակն՝ յորում ել նա ի Հռովմ վասն Սիմոնի կախարդի, որ պատրէր զՀռովմայեցիս կարդութեամբք իւրովք։

ե. Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոց մեծն Հռովմ և Իտալիա և Սպանիա եւ Բրիտանիա եւ Գաղղիա հանդերձ այլովք աշխարհօք որ շուրջ զնոքօք ի Սիմեոնէ վիմէ, որ ել յԱնտիոքէ ի Հռովմ եւ եղեւ հրամանատար եւ առաջնորդ յեկեղեցւոջ, զոր շինեաց անդ եւ շուրջ զնովաւ։

*զ. Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոցն Եփեսոս եւ Թեսաղոնիկէ եւ ամենայն Ասիա եւ ամենայն աշխարհն Կորնթացւոց եւ Աքայեցւոյ եւ որ շուրջ զնովաւ, ի Յովհաննէ աւետարանչէ՝ որ անկաւ զլանջօք Տեառն, եւ շինեաց անդ եկեղեցի եւ պաշտեաց անդ յառաջնորդութեան իւրում որ անդ։*

*է. Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոցն Նիկիա եւ Նիկոմեդիա եւ աշխարհն Բիւթանացւոց եւ Գաղատիա ներքին եւ կողմանք որ շուրջ զնովաւ՝ յԱնդրէէ եղբօրէ Սիմոնի վիմի, որ եղեւ առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջ, զոր շինեաց անդ եւ քահանայացաւ եւ պաշտեաց անդ։*

*ը. Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոցն Բիւզանդիա եւ ամենայն աշխարհն Թրակացւոց եւ որ շուրջ զնովաւ մինչեւ ցգետն մեծ որ որոշէ ընդ սահմանս Բարբարոսին ի Ղուկասայ առաքելոյ՝ որ շինեաց անդ եկեղեցի, պաշտեաց անդ ի հրամանատարութեան և յառաջնորդութեան իւրում, որ անդ։*

*թ. Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոց Ուռհա և աշխարհ որ շուրջ զնովաւ յամենայն կողմանց, եւ Ծոփա եւ Արաբ եւ ամենայն Հիւսիս եւ կողմանք որ զնովաւ եւ Հարաւ եւ ամենայն սահմանք աշխարհին Միջագետաց՝ յԱդդէէ առաքելոյ, որ էր յեւթանասուն եւ երկուց աշակերտաց, որ աշակերտեաց անդ եւ շինեաց անդ եկեղեցի եւ քահանայացաւ անդ եւ պաշտեաց անդ յառաջնորդութեան իւրում, որ անդ։*

*ժ. Ընկալան զաջ քահանայութեան առաքելոց ամենայն Պարսք եւ աշխարհք Հայոց եւ Մարաց եւ աշխարհք որ շուրջ զԲաբելոնիւ եւ Խուժաստան եւ Գէղք մինչեւ ցսահմանս Հնդկաց, ցԳոդ եւ Մագոդ, եւ դարձեալ ամենայն աշխարհք որ շուրջ զամենայն կողմամբքն, յԱգգէէ կերպասագործէ յաշակերտէ Ադդէի առաքելոյ։*

*ժա. Իսկ այլ ընկերք առաքելոցն չոգան ի հեռաւոր աշխարհս բարբարոսաց, եւ պաշտեցին անդ յառաջնորդութեան իւրեանց, եւ անդ եղեւ ելանել նոցա յաշխարհէս, իբրեւ յաջորդէին աշակերտք նոցա յետ նոցա մինչեւ ցայսօր, եւ փոփոխումն կամ յաւելուած ոչինչ եղեւ ի քարոզութիւն նոցա։*

*Իսկ Ղուկաս աւետարանիչ կալաւ զայս հոգաբարձութիւն եւ գրեաց զամենայն Առաքինութիւնս Գործոց Առաքելոց եւ զԿարգս եւ զԿանոնս պաշտաման քահանայութեան նոցա եւ թէ յո չոգաւ մի մի ի նոցանէ. արդ հոգաբարձութեամբ Ղուկաս զայս ամենայն եւ բազում ինչ առաւել քան զայս գրեաց եւ ետ ի ձեռս Պրիսկեայ եւ Ակիւղեայ աշակերտաց իւրոց. եւ սոքա յարեալ էին ի նա մինչեւ յաւր մահուան իւրոյ, որպէս յարեալ էին ի Պաւղոս՝ Տիմոթէոս եւ Երաստոս ի Լիստրայ, եւ Մնէոս աշակերտ առաջին առաքելոց, մինչեւ ել նա (Պօղոս) ի Հռովմ քաղաք, եւ եկաց ընդդէմ Տերտիղոսի հռետորի. եւ Ներոն-կայսր ետ գլխատել սրով զնա եւ զՍիմոն վէմ ի Հռովմ քաղաքի» (էջ 374—383)։*

*№ 3369 ձեռագրում այս վերջաբանը դրված է Կղեմեսի կանոնախմբից հետո (էջ 17ա—21բ) և կարծես վերաբերում է և՛ առաջին և՛ երկրորդ առաքելական կանոնախմբերին։ №№ 648, 3562 ձեռագրերում չի պահվել վերջաբանի «առաւել եւ ուրախ լինէին... որ գայր ի վերայ առաքելոցն» հատվածը (էջ 54, տող 2—4)։*

*Վերջաբանի այն մասը, որը վերաբերում է առաքյալների առաքելությանը, տարբեր երկրներ, № 659 ձեռագրում տարբեր է։ Այդ ցույց տալու համար դեմառդեմ կնչենք երկու բնագրերի հաջորդականությունը.*

| Կանոնագիրք | № 659 ձեռագիր | Կանոնագիրք | № 659 ձեռագիր |
|---|---|---|---|
| ա | զ | ը | բ (?) |
| բ | գ | (չունի) | ը |
| գ | թ | թ | ժ |
| դ | զ | ժ | ժա |
| ե | ա | ժա | ժբ |
| զ | ե | ժբ | ժգ |
| է | է | | |

*Հենց այն հանգամանքը, որ առաքելությունը սկսվում է ոչ թե Հակոբ առաքյալի Երուսաղեմ և շրջակա երկրները կատարված ճանապարհորդությամբ, ինչպես ասորի բնագրում է և Կանոնագրքում, այլ Սիմոն առաքյալի Հռոմ և շրջակա երկրները գնալով, ցույց է տալիս, որ № 659 ձեռագրի գրիչ Մաղաքիան պետք է եղած լինի կաթոլիկ (հմմտ. նաև Կղեմեսի կանոնա-*

խմբի և հոդվածի ծանոթագրության հետ), որովհետև № 659 ձեռագրի գրիչը նախապատվությունը տալիս է Հռոմին և ոչ թե Երուսաղեմին։ Բացի այդ, անհրաժեշտ է նշել ոչ միայն վերևում նշված հաջորդականության խախտումը, այլև բովանդակության տարբերությունը. օրինակ.

1. 59 էջի դ. հատվածում «ի Սիմոնէ Վիմէ»-ի փոխարեն № 659 ձեռագիրը ունի «ի Ղուկասէ աւետարանչէ» (էջ 25ա). իսկ վերջին «եւ եղեւ անդ մինչեւ ի ժամանակն յորում ել նա ի Հռոմ վասն Սիմոնի կախարդի» մասը չունի։

2. Հմմտ. «Ե. Ընկալաւ ձեռնադրութիւն քահանայութեան յառաքելոցն Քրիստոսի Եփեսոս եւ ամենայն Ասիայ եւ ամենայն աշխարհն Կորընթացւոց եւ Բիւզանդիայ եւ ամենայն որ շուրջ զնովաւ ի Յովհաննէ աւետարանչէ որ անկաւ զլանջաւքն տեառն եւ եկն Տիմոթէոս աշ[ա]կերան Պաւղոսի եւ յաջորդեցաւ փոխանակ նորա, շինեաց եկեղեցի յառաջնորդութեան իւրում եւ հաստատեաց ի նմա սեղան եւ կարգեաց քահանայս եւ պաշտաւնեայս» (№ 659, էջ 25 աբ.)։

3. Հմմտ. «Բ. ընկալաւ ձեռնադրութիւն քահանայութեան յառաքելոցն Քրիստոսի Թեսաղոնիկէ եւ Լիւրիկիայ եւ ամենայն աշխարհն Լիւրեկացւոց եւ որ շուրջ զնովաւ մինչեւ ցգետն մեծ որ կոչէ սահման ընդ բաբբարոսսն ի Մաթէոսէ աւետարանչէ. նա շինեաց անդ եկեղեցի եւ կարգեաց քահանայս եւ պաշտաւնեայս» (№ 659, էջ 24բ)։

4. Կանոնագիրքը չունի № 659 ձեռագրի այս մասը. «Ը. Ընկալաւ ձեռնադրութիւն քահանայութեան յառաքելոցն Քրիստոսի Երապաւղիս քաղաքն ի Փիլիպոսէ առաքելոյ եւ ի Բարդուղիմէոսէ առաքելոյ Լիկոնիայ եւ ամենայն աշխարհն որ շուրջ զնովաւ, զի նա եղեւ անդ գլուխ եւ առաջնորդ եւ հրամանատար եւ քարոզ. շինեաց եկեղեցի եւ հաստատեաց ի նմա սեղան եւ կարգեաց քահանայս եւ պաշտաւնեայս» (№ 659, էջ 26ա)։

5. Կանոնագրքի Թ. հատվածի վերջից № 659 ձեռագիրը շարունակվում է. «Եւ չարչարեցաւ նա ի Սանատրկոյ յարքայէ Հայոց եւ կատարեցաւ ի Հայս եւ դադարեաց քարոզութիւնն առ ժամանակ մի եւ յարոյց Աստուած փոխանակ նոցա զսուրբն Գրիգոր, որոյ բազում չարչարանս կրեալ ի Տրդատայ արքայէն Հայոց, եւ ընկեցեալ ի գուբ եւ անդ լինել ամս երեքտասան, պահեալ ի զաւրութենէն Աստուծոյ եւ ապա ի վերուստ հասեալ պատուհաս ի վերայ թագաւորին եւ ամենայն իշխանացն, որոց մոլեգնեալ ի դիւացն տանջէին մինչև հրամանաւն Աստուծոյ երթեալ հանին զԳրիգորիոս ի Վիրապէն. եւ ածեալ զնա՝ ի նմանէ գտանէին զբժշկութիւն եւ դառնային յաստուածպաշտութիւն։ Եւ ապա առեալ տարան զսուրբն ի հայրապետութիւն Հայոց աշխարհին, որոյ ընկալեալ զձեռնադրութիւն հայրապետութեան եւ հասեալ ի Հայս՝ եդ հիմունս եկեղեցւոյ, հաստատեաց սեղան, ձեռնադ[ր]եաց քահանայս եւ կարգեաց պաշտաւնեայս» (էջ 26բ—27ա)։

Մի քանի ձեռագրերում՝ №№ 649, 650, 651, 2964, 3369 չի պահվել վերջաբանի վերջին մասը. «Եւ կատարեն զյիշատակս նոցա մեծաւ պատուով... Եւ զմխիթարիչն եւ զառաջնորդն ամենայնի զսուրբ հոգին» (էջ 65, տող 10, էջ 66, տող 8)։

f ձեռագրում առաքելական կանոնախումբը ընդօրինակված է երկու անգամ. նախ՝ ձեռագրի 21ա—36բ էջերում, այստեղ պահվել են առաջաբանը, Ա, Բ, ԼԳ, հոդվածները և վերջաբանը, իսկ երկրորդ անգամ, այլ ձեռագրով, 37ա—48բ էջերում, ուր պահվել է ԺԴ հոդվածից մինչև վերջաբանը, վերջից դարձյալ թերի։ Համեմատությունը կատարեցինք երկու ընդօրինակությունների հետ, փոխադարձաբար լրացնելով եղած թերին։

## ԿՂԵՄԵՍԻ ԿԱՄ ԵՐԿՐՈՐԴ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 67: *№ № 657, 659, 3369 ձեռագրերում չի պահվել այս վերնագիրը:*

Ցանկ էջ 67—75, հուն., էջ 8—12: *Վերևում նշված ձեռագրերում չի պահվել ցանկը:*

*Պիտրայի հունարեն հրատարակությունը ևս ունի ցանկ (էջ 8—12), թեև այստեղ էլ հոդվածների վերնագրերը 85 են, ինչպես հայերենում, սակայն, թեթևակի համեմատությունն ցույց է տալիս, որ հայերեն ցանկը կազմված է հունարենից անկախ. մի երկու օրինակն էլ բավական է դրանում համոզվելու համար.*

α'. περὶ χειροτονιων ἐπισκόπων.

β'. περὶ χειροτονιων πρεσβυτέρων καὶ διακονων.

γ'. περὶ ἱερέως γαλα, ἢ μελι ἢ σικερα ἡ ὀσπρια ἢ ζῶα τῷ θυσιαστηρίῳ προσαγοντος.

δ'. περὶ ὀπωρων οἴκοι πεμπομένων *(էջ 8):*

*ա. Եպիսկոպոսների ձեռնադրության մասին։*

*բ. Երեցների և սարկավագների ձեռնադրության մասին։*

*գ. Քահանայի մասին, որը զոհասեղան է մատուցում (բերում) կաթ կամ մեղր կամ ոգելից ըմպելիներ կամ ընդեղեն կամ անասուններ։*

*դ. Պտուղները տուն ուղարկելու մասին։*

*Բացառությամբ առաջին վերնագրի, մնացած հոդվածների վերնագրերը բոլորովին տարբեր են։ Ի դեպ, մեր ձեռքի տակ գտնվող հունարեն բնագրի երկու այլ հրատարակություններ չունեն այս ցանկը (տես* Σύνταγμα II, *էջ 1 և Լաուխերտի մոտ, էջ 7)։*

*Y ձեռագրում ցանկի ԽԶ հոդվածի վերնագիրը բաժանված է երկու մասի. «ԽԶ. Վասն որք անգոսնեն զամուսնութիւն։*

*ԽԷ. Վասն զմսակերութիւն և որք զգինի ճաշակեն» (էջ 17բ)։*

*Ցանկի ԽԶ վերնագրում (տես վերևում, էջ 71) մի անճշտություն կա։ Ինչպես պարզվում է համապատասխան հոդվածի բովանդակությունից, բնագրի «ճաշակեն»-ի փոխարեն պետք է լինի «ոչ ճաշակեն»։ Ոչ մի ձեռագիր նման ընթերցում չունի, այդ պատճառով այն թողեցինք այնպես, ինչպես ձեռագրերում է։*

Երկրորդ վերնագիր, էջ 75: *Հունարենի վերնագիրը շատ համառոտ է և տարբեր հայերենից.* Κανόνες ἐκκλησιαστικοί τῶν ἁγίων ἀποστόλων *(էջ 13), իսկ* Σύνταγμα*-ում* „Κανόνες τῶν ἁγίων καὶ πανσέπτων ἀποστόλων", (II, *էջ 1)։ Իսկ ձեռագրերից երկուսի այս վերնագիրը տարբեր է եղածից «Դարձեալ երկրորդ կանոն առաքելականի ի ձեռն Կղեմայ» (№ 3369, էջ 10ա) և «Հրամանք առաքելոցն ի ձեռն Կղեմայ, առաքելոյ հեթանոսաց, կանոնք եկեղեցականաց» (№ № 659, էջ 29բ, 657, էջ 95ա)։*

Հոդ. Բ. էջ 75: *№ 659 ձեռագրում այս հոդվածը այլ շարադասություն ունի. «Բ. Երեց ի միոջէ եպիսկոպոսէ, սարկաւագք և այլ ժառանգաւորքը» (էջ 29բ)։ Եթե այստեղ բայը ընկած չլիներ, ապա այն հունարենի տառացի թարգմանությունը կլիներ։*

Հոդ Դ, էջ 75 (հուն. հոդ. 3, էջ 13—14): *Լաուխերտի մոտ* μὴ ἐξὸν *բառերից սկսած դրված է առանձին հոդված։ № 659 ձեռագրում շարադասությունը մի փոքր այլ է. «Գ. Եթէ ոք եպիսկոպոս կամ երէց* (վերջին բառն ավելացրել են ընդօրինակելուց հետո—*Վ. Հ.) արտաքոյ տեառն հրամանին ի պատարագ կամ ի սեղան մեղր կամ կաթն կամ փոխանակ գինւոյ այլ ինչ անպատեհ իրս, կամ հաւս կամ կենդանի ինչ կամ ունդս արտաքոյ հրամանին բերեալ մատուցէ՝ լուծեալ լիցի ի քահանայութենէն։ Եւ ի դէպ ժամանակի բաց ի նոր հասկաց, այսինքն՝ եղի կամ խաղող միայն, այլ ոչ այլ ինչ իշխել մատուցանել առ սեղանն, իսկ ձէթ յաշտանակն սուրբ և խունկ ի ժամու պատարագին» (էջ 29բ, համա. № 657, էջ 95բ)։*

Հոդ. Դ, էջ 75—76: *№ № 657, 659 ձեռագրերում այս հոդվածը միացված է նախորդին։*

Հոդ. Ե, էջ 76 (հուն. հոդ. 5, էջ 14)։ Հունարենի ἐπίσκοπος բառը հայերենում չի պահվել, թեև № 657 և 659 ձեռագրերն ունեն այն (էջ 95բ. 30ա)։ Այս կապակցությամբ Ն. Մելիք-Թանգյանը գրում է. «Կանոնները (Կղեմեսի—Վ. Հ.) գրուած կամ թարգմանուած են այն ժամանակ, երբ եպիսկոպոսական ամուսնութիւնը բոլորովին վերացած էր հայոց մէջ կամ թե չէ վերջին արտագրողներն են հանել» («Հայոց եկեղեցական իրաւունքը», Ա գիրք, էջ 86—87)։

№ 657 ձեռագրում մինչև Ե հոդվածը՝ Դ համարի տակ նշված է. «Դ. Յաղագս ոչ հանելոյ եպիսկոպոսի կամ իրիցու զկին իւր» (էջ 95բ), իբր Ե հոդվածի վերնագիր, իսկ այստեղ դարձել է առանձին հոդված, բայց անիմաստ։ Իսկ № 3369 ձեռագրում բնագրի «զկին» բառի փոխարեն սխալմամբ գրել են «զկնի» (էջ 10բ)։

Հոդ. Ը, էջ 76—77 (հուն. հոդ. 8, էջ 14—15)։ Հունարենի „ἢ ἐκ τοῦ καταλόγου ἱερατικοῦ προσφορᾶς γενομένης. μὴ μεταλάβοι" հատվածի թարգմանությունը Կանոնագրքում ստացել է «որ ժողովոց ոչ հաղորդեսցի» ձևը։ № № 657 (էջ 95բ), 659 (էջ 30ա) ձեռագրերում եղածն ավելի մոտ է հունարենին. «այլ ոք ի քահանայական կարգէն ժողովելոց ոչ հաղորդեսցի»։

Հոդ. Ժ, էջ 77։ № 659 ձեռագրում բովանդակությունը թեև նույնն է, բայց շարադասությամբ տարբերվում է. «Թ. Եթէ ոք ոչ իցէ արժանի հաղորդութեան, եթէ ի տան անգամ հաղորդակից լիցի նմա՝ և սա ի բաց որոշեսցի» (էջ 30բ)։

№ № 648, 3369 ձեռագրերում Ժ հոդված գրված է ԺԱ հոդվածի տեղը և ընդհակառակը։

Հոդ. ԺԱ, էջ 77։ Երկու ձեռագրերում տարբերությունը շարադասության մեջ է. «Ժ. Եթէ ոք ընդ լուծելոյ ի քահանայութենէն այլ ոք ժառանգաւոր իբրև ընդ քահանայի աղաւթակից լիցի և նա ևս ի բաց լուծցի» (№ № 659, էջ 30բ, 657, էջ 95բ)։

Հոդ. ԺԲ, էջ 77 (հուն. հոդ. 12—13, էջ 15—16)։ Հայերենում հունարենի երկու հոդվածները միացրել են միմյանց, հավանաբար նկատի ունենալով, որ հուն. 13-րդ հոդվածը կազմում է 12-ոդի շարունակությունը։ Լաուխերտի մոտ այս երկու հոդվածները ևս միացված են։ Կանոնագրքում չի պահվել հուն.-ի ἢ λαϊκὸς բառը։ «Թէպէտ եւ էր ընդունելի» (էջ 77, տող 12) բառերից սկսվում է հուն.-ի 13-րդ հոդվածը։ Մինչդեռ երկու այլ ձեռագրերում եղածն ավելի մոտ է հունարենին. «ԺԱ. Եթէ ոք ժառանգաւոր կամ ժողովրդական ի բաց որոշեալ և յետոյ ընկալեալ և երթեալ յայլ քաղաք ընկալեալ եղև առանց ընծայական գրոց՝ ի բաց որոշեսցին որք ընկալանն և որ ընկալեալն եղև։ Իսկ եթէ ընդ բանիւ որոշմամբ էր՝ առաւել ևս դիցի ի վերայ նորա որոշումն, որպէս ստոյ և պատրողի զեկեղեցի Աստուծոյ» (№ № 659, էջ 30բ—31ա, 657, էջ 95բ—96ա)։

Հոդ. ԺԳ, էջ 77—78 (հուն. հոդ. 14, էջ 16)։ Կանոնագրքի ունեցածն ընդհանուր առմամբ ճիշտ է արտահայտում հունարենի միտքը, մասնավորապես հուն.-ի վերջին մասը՝ „τοῖς ἐκεῖσε λόγῳ τῆς (m. Συν., II. L., չիք τῆς) εὐσεβείας συμβάλλεσθαι, καὶ τοῦτο δὲ οὐκ ἀφ' ἑαυτοῦ, ἀλλὰ κρίσει πολλῶν ἐπισκόπων καὶ παρακλήσει μεγίστῃ" Կանոնագրքում խիստ համառոտ է՝ «որք անդն են... աղաչանաւք մեծաւք»։ Հուն.-ի այս հոդվածը համեմատաբար լավ է պահպանվել № № 659, 657 ձեռագրերում. «ԺԲ. Եպիսկոպոսի ումեք մի՛ եղիցի արժանաւոր թողուլ զիւր բնակութիւն եւ դայլոյ իշխանութիւն երթալ ունել. թէպէտ եւ ի բազմաց հարկաւորեալ լիցի, բայց եթէ իրաւացի ինչ պատճառք հարկեցուցանեն զնա զայս առնել, որպէս զի ավելի աւգտութիւն ինչ կարել առնել նմա. այնոցիկ որ երթան ի հոգևոր բըս բարէպաշտութեան. եւ սակայն զայս ոչ յինքենէ, այլ մեծապէս աղաչանաւք» (էջ 31ա, էջ 96ա)։

Հոդ. ԺԴ, էջ 78 (հուն. հոդ. 15—16, էջ 16)։ Հայերենում հունարենի երկու հոդվածները միացրել են միմյանց, նկատի ունենալով, որ հուն.-ի 16-րդ հոդվածը հանդիսանում է 15-րդի շարունակությունը։ «Ապա եթէ եպիսկոպոս» բառերից (էջ 78, տող 11) սկսվում է հուն.-ի 16-րդ հոդվածը։

№ № 659, 657 ձեռագրերում այս հոդվածը համապատասխանում է Կանոնագրքում եղածին, բայց ունեն առանձին բառերի թարգմանական տարբերություններ. հուն. „παροικία" բառը Կանոնագրքի բնագրում հանդիպում ենք երկու անգամ «պանդխտութիւնն» և «պանդխտութեան» ձևով, իսկ այս ձեռագրերում՝ «բնակութիւն» ձևով. այդ պատճառով էլ, որպես բանասիրական հետաքրքրության առարկա, № 659 ձեռագրից բերում ենք այդ հոդվածը ամբողջությամբ. «ԺԳ. Եթէ ոք երէց կամ սարկաւագ կամ բնաւ իսկ ի քահանայական կարգէ ի բաց ընկեցեալ զիւր բնակութիւնն, յայլ տեղիս երթիցէ եւ բոլորովին անտի փոխեալ օրջեսցի յայլոյ բնակութիւն՝ առանց իւրոյ եպիսկոպոսին, զայնպիսին հրամայեմք ոչ եւս իշխել պաշտել զքահանայութիւնն, մանաւանդ կոչեցեալ զնա իւրոյ եպիսկոպոսին՝ դառնալ յիւր տեղի և ոչ լուաւ, իբրեւ զժողովրդական հաղորդեսցի ընդ նոսա

ուր չոգաւն: Իսկ եթե եպիսկոպոս ուր է առ ոչինչ համարեսցի, զի ի վերայ որոշել նոցա պատուհաս եւ ընկալցի զնոսա ի վիճակ պաշտաման, ի բաց որեշեսցի եւ նա իբրեւ զվարդապետն անկարգութեամբ» (էջ 31ա, հմմ. № 657, էջ 96ա):

Հոդ. ԺԵ, էջ 79, (հուն. հոդ. 17, էջ 16—17): Բնագրի «յետ մկրտութեանն» համապատասխանում է հունարենի „μετα το βαπτισμα"-ին, մինչդեռ №№ 659, 657 ձեռագրերում այդ բառն աղճատվել և դարձել է «յերկմտութեանն» (էջ 31բ, էջ 96ա):

Հոդ. ԺԶ, էջ 79 (հուն. հոդ. 18, էջ 17): Հունարենի „η των επι σκηνής" հատվածը հայերենում չի պահվել: Ե ձեռագրում այս հոդվածը գրված է Ի և ԻԱ հոդվածների միջև:

Հոդ. ԺԷ, էջ 79: Հմմտ. №№ 659, 657 ձեռագրերում եղածը. «ԺԶ. Որ երկուս քորս կանայս էառ կամ զքեռորդի, ոչ կարէ գալ ի վիճակ քահանայութեան» (էջ 32ա, էջ 96ա):

Հոդ. ԺԸ, էջ 79: Հմմտ. №№ 659, 657 ձեռագրերում եղածը. «ԺԷ. Եթե միջնորդաւք ոք վիճակեսցի ի քահանայութիւն՝ ի բաց լուծեալ եղիցի» (էջ 32ա, էջ 96ա):

Հոդ. ԺԹ, էջ 79. Հմմտ. №№ 659, 657 ձեռագրերում եղածը. «ԺԸ. Ներքինի թէ ի մարդկան բռնութենէ եղեւ կամ ի հալածանս կարեցան արականքն կամ ի բնէ նոյնպէս ծնեալ եղեւ եւ արժանի իցէ վարուց լաւաց՝ եղիցի եպիսկոպոս» (էջ 32ա, էջ 96ա):

Հոդ. Ի, էջ 79 (հուն. հոդ. 22, էջ 17): Հմմտ. №№ 659, 657 ձեռագրերում եղածը. «ԺԹ. Որ ոք զինքն կրճատեաց՝ ոչ եղիցի քահանայ, զի անձնասպան է եւ Աստուծոյ արարածոյն թշնամի» (էջ 32ա, էջ 96ա):

Հոդ. ԻԳ, էջ 80: № 3369 ձեռագրում բացակայում է «զերիս ամս» հատվածը (էջ 11բ):

Հոդ. ԻԳ, էջ 80 (հուն. հոդ. 25, էջ 18): Հուն.-ի վերջին հատվածը Լաուխերտի մոտ գրված է որպես առանձին հոդված, որը նաև ընդարձակ է՝ „Ὁμοίως δε οι λοιποι κληρικοι τη αυτη αιρεσει υποκεισθωσαν". Տարբեր է միայն № 659 ձեռագրում եղածի վերջին մասը՝ «նմանապէս եւ ամենայն վիճակեալք ի պաշտաւն ժառանգութեան» (էջ32բ), իսկ սրան համապատասխան Կանոնագրքում եղածը № 657 ձեռագիրը չունի (էջ 96բ):

Հոդ. ԻԴ, էջ 80: № 659 ձեռագրում շարադասությունը տարբեր է. «ԻԳ. Որք եկեալ են ի վիճակն չեւ եւս ամուսնացեալք՝ հրամայեմք ամուսնանալ զգրակարդացս միայն եւ զսաղմոսողսն» (էջ 32բ): № 3369 ձեռագրում այս հոդվածը վերջից շարունակվում է. «Սաղմոսասացս մեան, ապա թէ չեն ամուսնանալ՝ լիցին եպիսկոպոս եւ կամ ժառանգաւոր» (էջ 11բ): Իսկ № 657 ձեռագրում չեն պահվել ԻԴ—ԽԷ հոդվածները:

Հոդ. ԻԵ, էջ 81 (հուն. հոդ. 27, էջ 18): Հուն.-ի αδικησαντας (անարդար վերաբերվողներին) բառը թարգմանված է «զկռուողս»:

№ 659 ձեռագրում սույն հոդվածն այսպես է. «ԻԴ. Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ թէ հարկանելով զհաւատացեալս մեղուցեալս կամ զանհաւատս ապիրատս, այսպէս կամեսցի երկեցուցանել, լուծանել զնոսա հրամայեմ, քանզի ոչ ուրուք զայս տէրն ուսոյց, այլ զնորին հակառակն, ինքն տանջեցաւ՝ այլ ոչ զոք եհար, թշնամանեցաւ եւ ոչ փոխարէն թշնամանեաց, չարչարեցաւ եւ ոչ սպառնացաւ» (էջ 32բ): Իսկ այս հոդվածի սկզբի «Զեպիսկոպոս եւ զերէց... լուծանել հրամայեմք» հատվածի փոխարեն № 3369 ձեռագիրը ունի «Եպիսկոպոս կամ քահանայ եւ կամ սարկաւագ հարկանօղսն կամ զանհաւատսն զկուռս եւ ի ձեռս այսոցիկ կեցուցանել հրամայեցաք» (էջ 11բ—12ա):

Հոդ. ԻԶ, էջ 81: Հմմտ. № 659 ձեռագրում եղածը «ԻԵ. Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ լուծաւ արդարապէս յաղագս յայտնի ըստգտանաց եւ իշխեսցեն յանդիմանել եւ մերձենալ ի նոյնպիսում, զոր երբեմն ընձեռեալ էր նմա ի սպասաւորութիւն պաշտաման, սա ամենեւին արտաքս հատեալ ընկեցեալ լիցի յեկեղեցոյն» (էջ 33ա):

Հոդ. ԻԷ, էջ 82: Հմմտ. № 659 ձեռագրում եղածի սկիզբը. «ԻԶ. Եթե ոք եպիսկոպոս ի ձեռն ընչից այս պատուոյ հասանել կարաց...» (էջ 33ա):

Հոդ. ԻԸ, էջ 82: Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԻԷ. Եթե ոք եպիսկոպոս զինուորական իշխանաւք վարեցեալ բռնութեամբ կալաւ զեկեղեցի՝ լուծցի եւ ի բաց որոշեսցի եւ ամենեքին որք հաղորդին ընդ նմա» (էջ 33ա): № 3369 ձեռագրում «բուռն» բառի փոխարեն սխալմամբ գրված է. «րեռն» (էջ 12ա). հմմտ. հունարենը՝ εγχρατης:

Հոդ. ԻԹ, էջ. 82—83: Ահա № 659 ձեռագրում եղածը. «ԻԸ. Եթե ոք երէց արհամարհեսցէ զիւր եպիսկոպոս եւ առանձինն ժողովս արասցէ եւ սեղան կանգնեսցէ, ոչ ինչ կարացեալ գտանել զեպիսկոպոսն ի բարէպաշտութեան եւ յարդարութեան ի բաց լուծցի, իբրեւ զիշխանութիւն սիրող, քանզի բռնաւոր է: Եւ այլ վիճակեալք որ ընդ նոսա միաբանեսցին՝ այսոքիկ յետ միանգամ եւ երկիցս և երիցս եպիսկոպոսին աղաչելոյ եղիցի նզովեալ» (էջ 33բ. վերջին բառն ավելացրել են ուրիշները):

Հոդ. Լ, էջ 83: *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԻԹ. Եթե երէց կամ սարկաւագ յիւր եպիսկոպոսէն ընդ բանիւ եղեւ որոշել զնա, ոչ եղիցի իրաւացի յայլմէ եպիսկոպոսէ ընդունել, այլ յայնմանէ որոշեաց զնա, բայց թե մեռանել դէպ լիցի՝ որոշեաց եպիսկոպոսն» (էջ 33բ):*

Հոդ. ԼԱ, 83 : *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «Լ. Ոչ զոք յաւտարաց եպիսկոպոսաց կամ երիցանց կամ սարկաւագաց առանց ընծայական թղթոյ արժանի առնել ընդունել, եւ թէպէտ եւ ունիցին թուղթ, սակայն քննիցին, զի թէ գացին քարոզք բարէպաշտութեան՝ ընկալեալք եղիցին. ապա եթե ոչ զպէտս նոցա տալով զի հաղորդութիւն մի՛ ընկալցին, քանզի բազում ինչ եւ խաբեութեամբ լինի» (էջ 33բ—34ա):*

Հոդ. ԼԲ, էջ 83—84: *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը «ԼԱ. Զեպիսկոպոսունս գիտել պարտ է զգաւառին առաջին եւ համարել զնա իբրեւ զգլխաւոր եւ ոչ ինչ աւելի գործել առանց նորա գիտութեանն իրաւացի, եւ գաւառին որ ընդ ձեռամբ նորա. այլեւ ոչ նա առանց նոցա կամաց, այսինքն է եպիսկոպոսացն արասցէ ինչ, զի այսպէս եղիցի միակամութիւն և փառաւորեսցի Աստուած ի ձեռն Յիսուսի եւ Հոգւոյն սրբոյ» (էջ 34ա):*

Հոդ. ԼԳ, էջ 84: *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԼԲ. Եպիսկոպոս մի՛ իշխեսցէ արտաքոյ իւրոյ սահմանաց ձեռնադրութիւնս առնել ի քաղաքս եւ ի գաւառս, որք ոչ են ընդ նորա իշխանութեամբ. իսկ եթե յանդգնեսցի արարեալ զայս առանց կամաց որ քաղաքաց եւ գիւղից եւ գաւառին իշխեսցէ՝ լուծեալ եղիցի» (էջ 34աբ):*

Հոդ. ԼԴ, էջ 84: *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԼԳ. Եթե ոք ձեռնադրեալ եպիսկոպոս ոչ առցէ յանձն զպաշտաւնն եւ զհոգս ժողովրդեանն ընձեռեց[ել]ոյ նմա՝ որոշեալ եղիցի մինչեւ յանձն առցէ. նմանապէս կամ երէց կամ սարկաւագ: Իսկ եթէ չոգաւ եւ ոչ ընկալան՝ չեղեւ ինքն պատճառ, այլ ժողովրդոյն չարութիւն, նա եպիսկոպոս եղիցի. բայց վիճակեալք քաղաքին որոշեսցին, զի այնպիսի անհնազանդ ժողովրդեան խրատիչք ոչ եղեն» (էջ 34բ):*

Հոդ. ԼԵ, էջ 84—85 (հուն. հոդ. 37, էջ 21): *Հունարենի վերջին* δεύτερον δὲ ὑπερβερεταίου δωδεκάτῃ *հատվածի դիմաց հայերենը ունի «Եւ երկրորդն՝ յաշնան»:* ὑπερβερεταῖος *ամիսը, համաձայն Ֆ. Գինցելի, մակեդոնական, եփեսական և մի քանի այլ վայրերի տոմարի վերջին ամիսն է և տևում է օգոստոսի 24-ից մինչև սեպտեմբերի 22-ը (տես* F. Ginzel, Handbuch der mathematischen und technischen chronologie, Leipzig, 1914, III Band, S. 1, 19—20): *Զոնարասը և Բալսամոնը իրենց մեկնություններում* ὑπερβερεταῖος*-ը նույնացնում են հոկտեմբերի հետ: Բալսամոնը գրում է.* „ὑπερβερεταῖος δὲ ὁ 'Οκτώβριος 'εστι μήν". *Հմմտ. նաև Զոնարասի կարծիքը* „ἤγουν τὸν 'Οκτώβριον· οὗτος γὰρ ὁ ὑπερβερεταῖος" (Σύνταγμα. II, *էջ 51, 125): Նշանակում է* ὑπερβερεταίου δωδεκάτῃ*-ն պետք է թարգմանել «հոկտեմբերի 12-ին»: Այդպես թարգմանել է Նիկոդիմը (տես* Правила (κανόνες) православной церквы, т. 1, СПб, 1911, стр. 101): *Տարին երկու ժողով լինելու մասին տես նաև Նիկիայի Ե և Անտիոքի Ի կանոններում և սրանց համապատասխան ծանոթագրություններում:*

*№ 659 ձեռագրում եղածը մի փոքր այլ է- «ԼԴ. Երկիցս ի տարւոջ ժողով լիցի եւ քննութիւնս արասցեն առ միմեանս կարգաց բարէպաշտութեան եւ զպատահեալ ընդդիմութիւնս եկեղեցականս լուծցեն, միանգամ ի չորրորդում շաբաթուն Պենտեկոստէին, իսկ երկրորդ անգամ ի հոռի ամսեան որ աւր ԺԷ» (էջ 34բ): Վերջին այս տվյալը հմմտ. Անտիոքի Ի կանոնի տվյալի հետ: Արդյո՞ք «ի հոռի... աւր ԺԷ»-ն առաջ չի եկել «Ժ-րդ ի հոռմի ամսոյ»-ից՝ սխալ կամ անուշադիր ընդօրինակելիս:*

Հոդ. ԼԶ, էջ 85: *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԼԵ. Ամենայն եկեղեցական իրաց եպիսկոպոսն հոգ տարցի եւ խնամակալ եղիցի իբրեւ առաջի աչաց Աստուծոյ, եւ մի՛ եղիցի նմա իրաւացի զողանալ ինչ յայնցանէ եւ կամ ազգականաց զԱստուծոյն շնորհել. իսկ եթե աղքատք իցեն, տացէ ինչ, այլ ոչ պատճառաւ նոցա զեկեղեցականսն վաճառել» (էջ 35ա): № 3369 ձեռագրում «աւցտել»-ի փոխարեն սխալմամբ գրված է «օրհնել» (էջ 13ա):*

Հոդ. ԼԷ, էջ 85: *№ 659 ձեռագրում այս հոդվածի վերջին մասը այսպես է. «քանզի նա է որում հաւատացեալ է զժողովուրդն Տեառն եւ վասն ոգւոց նոցա բան պահանջեալ լինի» (էջ 35ա):*

Հոդ. ԼԸ, էջ 85—86 (հուն. հոդ. 40, էջ 21—22): *Հունարենի* „κυριακά" *(տերունական) բառը հայերենում գրված է «եկեղեցւոյն» ձևով: Ուզում է ասել եպիսկոպոսի անձնական ունեցածը և եկեղեցու ունեցածը պետք չէ շփոթել: Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԼԷ. Եղիցի յայտնեալ եպիսկոպոսին իրք, եթե կայցէ իրք ինչ առանձինն, եւ եկեղեցականքն*

*յայտնի, զի իշխանութիւն կալցի եպիսկոպոսի վախճանելն իւրում, որո՛ց կամեսցի եւ ո՛ւմ կամեսցի թողուլ. եւ մի պատճառաւ եկեղեցական իրաց զրկեալ լինիցի յիւրոց եպիսկոպոսին, զի թերեւս կին եւ որդիս ունիցի առ ազգականս կամ ծառայս: Քանզի իրաւացի է այս առաջի Աստուծոյ եւ մարդկան, որպէս զի մի՛ եկեղեցին վնասեսցի անգիտութեամբ եպիսկոպոսին իրաց: Եւ մի՛ եպիսկոպոսն կամ ազգականք իւր պատճառաւ եկեղեցւոյն յիւրեանց իրացն զրկեալ եղիցին և կամ ի նեղութիւն ինչ արկանել իւրոց ազգականաց և մահ նորա հայհոյութիւն կրեսցէ» (էջ 35աբ): № 3369 ձեռագրում չի պահվել կանոնագրքի «Վնաս ինչ կրել... իւր պատճառանաւ ք եկեղեցւոյն» հատվածը (էջ 13ա):*

Հոդ. ԼԹ, էջ 86–87: *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԼԸ. Հրամայեմք եպիսկոպոսին իշխանութիւն ունել եկեղեցական իրաց. քանզի թէ զպատուական ոգիս մարդկան հաւատալի է նոցա, որչափ եւս առաւել զապականելի իրս ի նոսա թողուլ. որպէս զի նորա իշխանութեամբ եւ խնամակալութեամբ ամենայն ծախեսցի կարաւտելոց ի ձեռն երիցանց եւ սարկաւագաց բաժանել հանդերձ Աստուծոյ երկիւղիւն եւ ամենայն զգուշութեամբ կցորդութիւն կալցի եւ ինքն թէպէտ ինչս ունիցի հարկաւորս վասն աւտարաց եղբարց ընդունելութեան, որպէս զի ոչ միով աւրինակաւ կարաւտութիւն լինել նոցա. քանզի աւրէնք Աստուծոյ հրամայեցին, որք սեղանոյն պաշտաւնեայքն են, ի սեղանոյն անտի վայելեն: Քանզի և ոչ զինուորն յիւրոց թոշակացն զէն պատերազմի պատրաստէ» (էջ 35բ—36ա):*

Հոդ. Խ, էջ 87 (հուն. հոդ. 42, էջ 23): *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԼԹ. Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ թէ տապեղուլանց եւ արբեցութեանց պատրաստեսցեն՝ կա՛մ դադարեսցեն յիրացն կա՛մ լուծցին» (էջ 36ա): Ինչպես այս, այնպես էլ մյուս հոդվածներում № 659 ձեռագրից մեջբերվածները մեկ անգամ ևս ցույց են տալիս, որ սրանք ավելի պարզեցված են: Օրինակ հուն. „κύβοις" բառը, այստեղ հանդիպում ենք լատինացված ձևով «տապեղուլանց»* tabul—*տաբեղ=տախտակ: Իսկ № 3369 ձեռագիրը չունի կանոնագրքի «քուէից» բառը (էջ 13բ):*

Հոդ. ԽԱ, էջ 87: *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «Խ. Սարկաւագաց եւ կէսսարկաւագաց եւ գրակարդացո[ղ]ք և սաղմոսողոք, նմանապէս վարել կամ դադարեսցին կամ ի բաց որոշեսցին: Նոյն աւրինակ եւ ժողովրդականն» (էջ 36ա): № 3369 ձեռագրում բնագրի «սաղմոսերգաց»-ի փոխարեն կարդում ենք «երգեցողաց» (էջ 13բ):* a *ձեռագրում այս հոդվածը, թերևս սխալմամբ, կրկնված է նաև 38բ—39ա էջերում:*

Հոդ. ԽԲ, էջ 87. *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԽԱ. Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ թէ վաշխս պահանջեսցեն կամ տոկոսիս ի փոխառուացն՝ կա՛մ դադարեսցեն կա՛մ ի բաց լուծցին» (էջ 36բ):*

Հոդ. ԽԳ, էջ 87: *Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ԽԲ. Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ եթէ ընդ հրեսիոտս, այսինքն ընդ թերահաւատս աղաւթակիցք միայն եղեալք՝ ի բաց որոշեսցին, ապա թէեւ զնոսա յորդորեսցին աղաւթս կատարել իբրեւ վիճակելոց՝ լուծցին ի քահանայութենէ» (էջ 36բ):*

b *ձեռագրում այս հոդվածը դրված է սույն կանոնախմբի ԽԴ և ԽԵ հոդվածների միջև:*

Հոդ. ԽԴ, էջ 87—88 (հուն. հոդ. 46, էջ 23): *Հունարենը իրավամբ չունի «կամ սարկաւագ» բառերը: Հմմտ. № 659 ձեռագրի սկզբի մասը, որը մի փոքր ընդարձակ է. «ԽԳ. Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ թէ զհերետիկոսաց մկրտութիւնն ընկալցին կամ զպատարագ կամ զընծայ՝ լուծանել հրամայեմք» (էջ 36բ):*

Հոդ. ԽԵ, էջ 88: *№ 3369 ձեռագրում այս հոդվածը դրված է սույն կանոնախմբի ԽԸ և ԽԹ հոդվածների միջև:*

Հոդ. ԽԶ, էջ 89: *№ 659 ձեռագրում հոդվածի վերջին մասն է տարբեր. «այլ հայհոյելով և բամբասելով զարարածս՝ կա՛մ ուղղեսցէ զինքն կա՛մ ի բաց լուծցի եւ յեկեղեցւոյ արտաքս ընկեսցի. նմանապէս եւ ժողովրդականն» (էջ 37ա): № 3369 ձեռագրում չի պահվել այս հոդվածի «մոռացեալ թէ ամենայն... արու եւ էգ» հատվածը:*

Հոդ. ԽԸ, էջ 89 (հուն. հոդ. 53, էջ 26): *Հայերենի «գինւոյ լուծցի» բառերի միջև հունարենը ունի* „βδελυσσόμενος καὶ οὐ δι᾽ ἄσκησιν„ *հատվածը:*

*Հմմտ. № № 659, 657 ձեռագրերում եղածը. «ԽԷ. Եթէ ոք եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ յաւուրս տաւնից ոչ ճաշակէ ի մսոյ եւ ի գինւոյ՝ ի բաց լուծցի, իբրեւ խաւարեալ խղճի մտաւք. եւ պատճառք գայթակղութեան բազմաց եղեալ» (էջ 37բ, էջ 96բ):*

Հոդ. Ծ, էջ 89 (հուն. հոդ, 55, էջ 27): *Հայերենի «անիրաւաբար» բառը հունարենը չունի. մինչդեռ հունարենի մի այլ հոդվածում՝ 84 (հայերենը՝ ՀԸ) նշված է* παρὰ τὸ δίκαιον

*(անիրավարար)։ Թեև մի քանի ձեռագրերում «անիրաւարար»-ի փոխարեն հանդիպում ենք «իրաւարար» (№ № 648, էջ 157ա, 3369, էջ 14ա, 3562, էջ 254ա)։*

Հոդ. ԾԲ, էջ 89 (հուն. հոդ. 57, էջ 27)։ *Հուն.-ի* „ἢ τὸν τῆς θύσεως πεπληρωμένον χλευάσει“ *հատվածի դիմաց Կանոնագրքում կարդում ենք «կամ զդէմոն ֆռասեալ այպանեսցէ», որը սակայն, տարբեր բան է։*

*№ № 659, 657 ձեռագրերում տարբեր է հոդվածի երկրորդ մասը. «կամ զդէմոն ասել՝ այպանեսցէ եւ նշաւակեսցէ եւ պատրեսցէ՝ ի բաց որոշեսցի. նմանապէս եւ ժողովրդականն» (էջ 37բ—38ա, էջ 96բ)։ № 3562 ձեռագրում բացակայում է «որոշեսցի նմանապէս եւ ժողովրդականքն» հատվածը (էջ 254ա)։ Իսկ № 3369 ձեռագրում այս հոդվածը սկսվում է այսպես. «Եպիսկոպոս կամ քահանայ եւ կամ սարկաւագ անփոյթ» և այլն (էջ 14բ)։*

Հոդ. ԾԳ, էջ 89 (հուն. հոդ. 58, էջ 27)։ *Հուն.-ի վերջին* „ἐπιμένων δὲ τῇ ῥαθυμίᾳ“ *հատվածը Կանոնագրքում թարգմանված է. «ապա եթէ յամառեսցի չածել ուղղութիւն» ձևով, որը լրիվ չի արտահայտում հունարենի միտքը։ Հմմտ. № № 659, 657 ձեռագրերում եղածը. «ԾԲ. Եպիսկոպոս կամ երէց անփոյթ առնելով զժառանգաւորսն խրատել եւ զժողովրդականսն առ ի բարէպաշտութիւն՝ ի բաց որոշեսցի. իսկ եթե ի նմին յուղղութեան կացցեն՝ լուծեալ լիցին» (էջ 38ա, էջ 96բ)։*

Հոդ. ԾԻ, էջ 90 (հուն. հոդ. 59, էջ 27)։ *Հունարենի* ἐπιμένων δὲ καθαιρείσθω *հատվածը բացակայում է հայերենում։ Վերջինս պետք է լինի «որոշեսցի իբրեւ» բառերի միջև։*

*Հմմտ. № № 659, 657 ձեռագրերում եղածը. «Եթե ոք եպիսկոպոս կամ երէց կարաւտելոց ի պիտոյից ուրուք վիճակելոցն ոչ լցցէ զկարաւտութիւնն, ի բաց որոշեսցի, որպէս սպանաւղ եղեալ եղբաւր իւրոյ» (էջ 38ա, էջ 96բ)։ № 3369 ձեռագրում այս հոդվածը սկըսվում է այսպես. «Եթէ ոք եպիսկոպոս կամ երէց եւ կամ սարկաւագ ի ժառանգաւորաց» և այլն (էջ 14բ)։*

Հոդ. ԾԵ, էջ 90 (հուն. հոդ. 60, էջ 27)։ *Հայերենը բառացի համապատասխանում է հունարենին, միայն վերջինիս* „καὶ τοῦ κλήρου“ *հատվածը, որը պետք է լիներ «ժողովրդոց լուծցի» բառերի միջև, հայերենում չի պահվել։*

*№ № 659, 657 ձեռագրերում այս հոդվածը բավական ընդարձակ է. «Եթե ոք զսուտ* (sic) *անուն վերադրէ անգ, այսինքն ծածուկ կոչին իբրեւ զսուրբ եւ զուղիղ գրեն, համարձակ յեկեղեցւոյն ընթերցցե առ ի ֆռաս ժողովրդեանն՝ լուծեալ լուծցին» (էջ 38ա, էջ 96բ)։*

Հոդ. ԾԶ, էջ 90։ *Հմմտ. № № 659, 657 ձեռագրերում եղածը. «ԾԵ. Եթե ամբաստանութիւն եղիցի զհաւատացելոյ ումեքէ պոռնկութեան եւ կամ շնութեան կամ այլոյ ինչ անպատեհ եւ հրաժարական գործոյ եւ հանդիմանեալ գտցի ի ժառանգութիւն՝ վիճակի եկեղեցւոյ ի սպասաւորութեան ոչ լիցի արժանի յառաջ գալ» (էջ 38բ, էջ 96բ)։*

Հոդ. ԾԷ, էջ 90 (հուն. հոդ. 62, էջ 28)։ *Հունարենի* ἀρνήσηται *բառը հայերենում թարգմանված է. «կորուսցի»։ Հայերեն «կորուսցի» նշանակում է* բեքվի, ծռվի, *մինչդեռ հունարենում ունենք* ἀρνήσηται, *այսինքն* մերժի, հրաժարվի, ուրանա. *Հենց այդպես է գրված № № 659, 657 ձեռագրերում, «ուրասցի զանուն Քրիստոսի» (էջ 38բ, էջ 97ա)։ Հունարենը չունի նաև «լուծցի և» բառերը։ Հոդվածի վերջում հունարենի մի հատվածը* „μετανοήσας δέ, ὡς λαϊκὸς δεχθήτω“ *չի պահվել հայերենում։*

Հոդ. ԾԹ, էջ 91 (հուն. հոդ. 66, էջ 29)։ *Հայերենը բավական համառոտ է։ Այստեղ չի պահվել* πλὴν τοῦ ἑνὸς μόνου καθαιρείσθω· εἰ δὲ λαϊκὸς *հատվածը։*

Հոդ. Կ, էջ 91 (հուն. հոդ. 64, էջ 29)։ *Հունարենի* καὶ καθαιρείσθω καὶ ἀφοριζέσθω *հատվածը հայերենում արտահայտված է «լուծցի» բառով։*

Հոդ. ԿԲ, էջ 91։ *Հմմտ. № № 659, 657 ձեռագրերում եղածը. «Եթէ ոք զկոյս անխաւս բռնաբարեալ կալցի՝ ի բաց որոշեսցի եւ մի՛ լիցի նմա իշխանութիւն այլ առնուլ. այլ զնոյն զայն ունել ընդ որ հաճեցաւ, թէպէտ եւ կարի տառապեալ իցէ» (էջ 39աբ, էջ 97ա)։*

Հոդ. ԿԵ, էջ 92, (հուն. հոդ. 70, էջ 29—30)։ *Կանոնագրքում չի պահվել* ἢ διάκονος *և* εἰ δὲ λαϊκὸς ἀφοριζέσθω *հատվածները։*

*Սկսած այս հոդվածից՝ կանոնախմբի շարունակությունը չի պահվել № 657 ձեռագրում։*

Հոդ. ԿԶ, էջ 92 (հուն. հոդ. 71, էջ 30)։ *Հոդվածի վերջին «հրագունս՝ լուծցի» բառերի միջև հունարենն ունի* „ἢ ἐν ταῖς ἑορταῖς αὐτῶν λύχνους ἅπτοι“ *հատվածը։*

Հոդ. ԿԷ, էջ 92—93 (հուն. հոդ. 72—73, էջ 30)։ *Հունարենի 72-րդ և 73-րդ հոդվածներն հայերենում միացրել են միմյանց։ Հայերենի «անաւթով ոսկեղինաւ» հատվածից սկսվում է հուն.-ի 73-րդ հոդվածը։ Վերջինիս* „ἢ ὀθόνην μηδεὶς ἔτι εἰς οἰκείαν χρῆσιν σφετεριζέσθω“

(կամ վարագուրը, ոչ ոք իր տնային պետքի համար չսեփականացնէ (չօգտագործէ) հատվածի դիմաց հայերենն ունի «մի ոք յիւր պէտս ղողացեալ». այստեղ միտքը խիստ համառոտ է։ Հայերեն հոդվածի երկրորդ մասը (հունարեն 73-րդ հոդվածը) № 659 ձեռագրում այսպես է. «Կամ թե անաւթ ինչ ոսկեղէն կամ արծաթեղէն, որ բերաւ յեկեղեցին եւ սրբեցաւ. թէ [ի] պէտս առ կամ ղօղացեալ թաքուսցէ, այս անաւրէնութիւն է, եթե ոք ըմբռնեսցի յայսպիսի իրս՝ պատուհասեսցի և ի բաց որոշեսցի» (էջ 40ա).

Հոդ. ԿԸ, էջ 93 (հուն. հոդ. 74, էջ 30—31): Այս հոդվածի վերջին մասը «որպէս զի մի՛ շահել ինչ թուեսցի ի փախուցելոյն» բոլոր ձեռագրերում, բացի begq ձեռագրերից, սխալմամբ անջատել և գրել են հաջորդ՝ ԿԹ հոդվածի սկզբի մասում։ Այդ ձևով միտքը մնում էր աղավաղված, ուստի այն ուղղեցինք համաձայն հունարենի և վերևում նշված ձեռագրերի։ Հունարենի επι τινι παρα αξιοπιστων ανθρωπων հատվածը հայերենում գտնում ենք այս ձևով. «առաջի հաւատարմաց ոմանց կամ հաւատացելոց». Մնացածը համապատասխանում է հունարենին։

№ 659 ձեռագրում այս հոդվածի սկզբի մասը հետևյալ կերպ է շարադրված. «Կէ. Եպիսկոպոս ոք եթե ամբաստանեալ լիցի վասն անպատեհ իրաց առաջի հաւատարիմ մարդոց կամ հաւատացելոց՝ կոչել արժան է զնա և հարկաւոր ի ձեռն այլոց եպիսկոպոսաց. եւ եթե եկեսցէ եւ խոստովանեսցի՝ յանդիմանութիւն նորա որոշեսցի ի պատուհասն իւր» և այլն (էջ 40բ)։ Տարբեր է նաև հոդվածի վերջին հատվածը. «Որպէս զի մի՛ թուեսցի ի շահել հալածելոցն» (էջ 40բ—41ա)։

№ № 648, 3562 ձեռագրերում «որպէս» բառի փոխարեն հանդիպում ենք «եպիսկոպոս» (էջ 158բ, էջ 255ա), որը սխալ է։

Հոդ. ԿԹ, էջ 94 Հմմտ. № 659 ձեռագրում եղածի սկզբի մասի հետ. «Ի վկայութիւն զեպիսկոպոսէ զհերետիկոս ոք, այսինքն զթեւրհաւատ ընդունել» (էջ 41ա)։

Հոդ. ՀԱ, էջ 94։ (հուն. հոդ. 77, էջ 32): Հայերենի միայն վերջին մասն է մի փոքր շեղվում. հմմտ. „ου γάρ λώβη σώματος αυτον μιαίνει, αλλα ψυχής μολυσμος".

Հոդ. ՀԲ, էջ 94: Հմմտ. № 659 ձեռագրում եղածը. «ՀԱ. Խուլ և կոյր մի՛ եղիցին եպիսկոպոս ոչ իբրեւ զպիղծ եւ զաղտեղի, այլ զի եւ եկեղեցական գործոյն խափանումն մի՛ եղիցի» (էջ 41բ)։

Հոդ. ՀԳ, էջ 95 (հուն. հոդ. 79, էջ 32): Հունարենի „αλλα μηδε τοῖς πιστοῖς συνευγέσθω" հատվածը, որը պետք է լիներ «եղիցի իսկ» բառերի միջև, չի պահվել հայերենում։

Հոդ. ՀԵ, էջ 95 (հուն. հոդ. 81, էջ 32—33): Հունարենում հոդվածի սկզբին «եպիսկոպոս» բասի հետ նշված է նաև «կամ երեց» (επισκοπον ἢ πρεσβύτερον), որը հայերենը չունի։ Այնուհետև հունարենի εις δημοσιας διοικησεις չի թարգմանված բառացի, այլ իմաստի տեսակետից թարգմանված է ճիշտ՝ «յերկրաւոր հոգս»։ Իսկ հայերենի «պիտոյիցն ապա» բառերի միջև հունարենն ունի ἢ πειθέσθω οὖν τουτο μη ποιειν հատվածը։

Հոդ. ՀԹ, էջ 96 (հուն. հոդ. 47, էջ 33): Միայն երրորդ «մկրտեսցէ» բառը (տող 12) հունարենում հանդիպում ենք ժխտական՝ μη βαπτιση ձևով։

Այս հոդվածը չի պահվել № 659 ձեռագրում։

Հոդ. Ձ, էջ 96—97 (հուն. հոդ. 49, էջ 24): Հունարենի αλλα εις τρεῖς αναρχους ἢ εις τρεῖς υἱους ἢ εις τρεῖς παρακλήτους, καθαιρεισθω հատվածը թարգմանված է «այլ յերիս հարս և յերիս որդիս եւ յերիս հոգիս՝ անկցի ի քահանայութենէն» ձևով։ Հուն.-ի αναρχους-ին համապատասխան դրված է «հարս», որպես «անսկիզբ» բառին նույնանիշ, նույնը և παρακλήτους-ին՝ «հոգիս», որպես «մխիթարիչ» բառին նույնանիշ։

Այս հոդվածը ևս չի պահվել № 659 ձեռագրում։

Հոդ. ՁԱ, էջ 97—98 (հուն. հոդ. 50, էջ 24—25): Հունարենում 50-րդ հոդվածը ընդգրկում է հայերեն սույն հոդվածի սկզբից մինչև «եւ Հոգւոյն սրբոյ» բառերը։ Այս մասում հունարենի παντα τα εθνη-ի դիմաց հայերենում դրված է «զնոսա» բառը։ Մնացած մասը՝ սկսած «Բայց որ մկրտելոցն է»-ից մինչև ՁԱ հոդվածի վերջը գտնում ենք հունարենում Τίτλου λς' καν. μθ'. վերնագրի տակ, որը դրված է հուն. 50 և 51-րդ կանոնների միջև որպես հավելվածի նման մի բան։ Վերջինս սկսվում է Διδασκέσθω μεν ο βαπτιζόμενος և վերջանում ως αγνοουντες το μυστηριον τῆς εὐσεβειας καθαιρεισθωσαν բառերով։ Այս ամբողջ հատվածը չի պահվել Σύνταγμα (II)-ում և Լաուխերտի մոտ։

Հոդ. ՁԲ, էջ 98—99 (հուն. հոդ. 50, էջ 25—26): Այս հոդվածը Պիտրայի հունարեն հրատարակությամբ կազմում է Նախորդի շարունակությունը և այդտեղ նշված է των αυτων κανων ν'. Այս ամբողջ հատվածը չի պահվել Σύνταγμα (II)-ում և Լաուխերտի մոտ։

*Ն. Մելիք-Թանգյանը սխալվում է, երբ ՁԱ հոդվածի երկրորդ մասի և ՁԲ հոդվածի մասին գրում. «Չկան հունա-սլավոնականում» («Հայոց եկեղեցական իրավունքը», Ա գիրք, էջ 105). Ինչպես ցույց տվեցինք վերևում՝ այս երկու հոդվածներն էլ կան հունարենում և հայերեն թարգմանությունը միանգամայն համապատասխանում է վերջինիս։*

Հոդ. ՁԳ, էջ 99: *Այս, ինչպես նաև հաջորդ երկու՝ ՁԴ, ՁԵ հոդվածները հունարենը չունի, ըստ երևույթին դրանք հետագայի ավելացումներ են, վերցված հավանաբար սույն գրքի Հավելվածի Ի՝ բնագրի որևէ տարբերակից։ Մի քանի ձեռագրերում՝* befgq *ՁԵ հոդվածից հետո գրված է. «Այս Զ գլուխս ոչ կա յայլ աւրինակ» և բերում է վեց հոդված։ Նույն վեց հոդվածները գտնում ենք նաև № 659 ձեռագրում. նախ անխորագիր և երկրորդ՝ ՁԲ հոդվածից հետո։ Ուշադիր համեմատությունը ցույց տվեց, որ այդ վեց հոդվածներից առաջինը համապատասխանում է Կանոնագրքում եղած Կղեմեսի կանոնախմբի ՁԳ հոդվածին, իսկ երկրորդը՝ ՁԴ։ Մնացած չորս հոդվածները նոր բան են և բերում ենք ամբողջությամբ։ «Ձ. Եթէ աստճնորդ ոք իցէ՝ մի՛ իշխեսցէ առանց իւրոց պաշտաւնակցացն իրս ինչ առնել յեկեղեցւոջն, բայց կամաւք եւ միաբանութեամբ արասցէ զինչ կամին, զի մի՛ լիցի տրտմութիւն ի միջի իւրեանց։*

*Ձա. Եւ քահանայ որ կապէ (*բնագրում *կարգէ—Վ. Հ.) զոք տարապարտուց յանարժանս, ընկալցի պատիժ պատուհասի ըստ արժանի, բայց զոր կապեացն ընկալցի զկապանսն, որպէս թէ յարժանի։*

*Ձբ. Եթե ամբարտաւանք եւ հպարտք եւ ոէզք եւ սնապարծ մի՛ մերձեսցին ի պաշտաւն քահանայութեան, վասն այնր թե ամենայն ամբարտաւան ի մէջ մարդկան՝ պիղծ է առաջի Աստուծոյ. եւ վասն նոցա է ասացեալ «Եթե հատուցից զհատուցումն ամբարտաւանից» (№ 659, էջ 43ար, հմմտ.* b *էջ 41բ,* e *էջ 33բ,* f *էջ 58բ—59ա,* g *էջ 29բ,* q *էջ 25ա)։* befgq *ձեռագրերի վեցերորդ հոդվածը այստեղ չենք նշում. այն տես հաջորդ ծանոթագրության մեջ։*

Հոդ. ՁԵ, էջ 100 (հուն. հոդ. 85, էջ 34—36). *№ 659 ձեռագրում հոդվածը մի փոքր ընդարձակ է և միացված է վերևում նշված վեց հոդվածներից հինգերորդին (№ 659 ձեռագրի համարակալմամբ Ձբ-ին, տես վեր). «Այսուքիկ և յաղագս կանոնաց կարգեալ է հրամայեցաւ ձեզ առ ի մէնջ, իբր եպիսկոպոսաց, դուք կացեալք մնացեալք յայսոսիկ ապրեալք եղիջիք եւ խաղաղութիւն կալջիք, ապա եթ[է] տնհաւանեսջիք, տանջանաց մատնեսջիք և պատերազմ ընդ միմեանս հանապազորդ ընկալջիք զարժանաւոր պատուհաս տանջանաց յաղագս անհնազանդութեան կրել։ Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն» (էջ 43բ—44ա)։*

*Ինչպես վերևում արդեն նշել ենք, հայերեն ՁԵ հոդվածը հունարենը չունի, սակայն որպես 85-րդ հոդված հունարենն ունի բոլորովին այլ բան, թե՝ հոգևորականներին և աշխարհականներին «սուրբ գրքեր»-ից ինչ է հանձնարարվում կարդալ։ Վերջինս գտնում ենք* befgq *ձեռագրերում Կղեմեսի կանոններին ավելացված, վերևում նշված վեց հոդվածներից վերջինում, որը նպատակահարմար գտանք բերել այստեղ. «Եղիցի ձեզ ամենեցուն եկեղեցականաց եւ աշխարհականաց պաշտել գիրք սուրբք եւ Հին եւ Նոր կտակարանաց՝ Մովսէսի գիրք՝ Ծնընդոց, Ելիցն, Ղեւտական, Թիւքն, Երկրորդ աւրէնք, Յեսու Նաւեա, Դատաւորքն, Հռութն, Թագաւորութեանցն Դ, Մնացորդացն գիր, երկու Եզրի բանք Ի, Որ Ա, Սաղմոսաց գիրք Ա, Սողոմոնի գիրք Ա, Եսայի, Երեմիայ, Եզեկիէլ, Դանիէլ, եւ արտաքուստ պատգամաւորեոցի առ ի յուսացուցանել զձեզ մանկունսն զուսման բազում զՍիրաք իմաստնոյ» (*b, *էջ 41բ—42ա, հմմտ.* e, *էջ 33բ.* f, *էջ 58ա,* g, *էջ 29ա,* q, *էջ 25ա)։*

*Այս հոդվածը կրում է խմբագրման հետքեր. դա երևում է մեջբերումը ուշադիր քննելիս և հունարենի հետ համեմատելիս։*

*Նոր Կտակարանի վերաբերյալ հատվածը (էջ 35—36) չի պահվել* befgq *ձեռագրերում։ Այսպիսով, վերջիններում պահվել է Հին Կտակարանին վերաբերող մասը միայն։ Սակայն հետաքրքիրն այն է, որ հայերենի այս մասը համարյա նույնությամբ անցել է «Հարանց հետևողաց» կանոնախմբի վերջին (ԻԷ) հոդվածում (տես էջ 112—113). ըստ երևույթին այդ խանգարումը հնից է գալիս մինչև Հովհաննես Օձնեցին, հմմտ. նաև Լավոդիկեի կանոնախմբի ԾԵ հոդվածը (տես վերևում, էջ 240—242)։*

## «ՀԱՐԱՆՑ ՀԵՏՆԻՈՂԱՑ» ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 101: *№№ 648, 649, 650, 651, 2964, 3362 ձեռագրերում վերնագիրը այսպես է. «Կանոնք զոր եդին սուրբ հարքն ղկնի առաքելոցն գլուխք ԻԵ» (№ 650 ձեռագրում՝ Ի և Է, № 651, Ի և Ե), իսկ №№ 648, 3362 ձեռագրերը չունեն ԻԵ։ Սակայն № 3369 ձեռագրում հետևյալ վերնագիրն ենք կարդում. «Կանոնք սրբոց հարցն զոր եդին զկնի սրբոց առաքելոցն Քրիստոսի Աստուծոյն մերոյ» (էջ 28բ)։ Թեև վերևում նշված մի շարք ձեռագրերում վերնագրի վերջում նշված է հոդվածների ԻԵ կամ ԻԷ քանակը, իրականում այդ ձեռագրերում պահվել են ընդամենը 14 հոդված։ Նշանակում է այդտեղ կատարվել է հոդվածների մեխանիկական կրճատում։ Այդ մասին մենք իմանում ենք վերոնշյալ ձեռագրերի այս կանոնախմբի վերնագրի տակ գրված մի ծանուցումից, ուր ասված է. «Ցորոց ղաւգտակարն քաղեալ եդից հրամանաւ սուրբ հայրապետացս» (№ 649, էջ 25ա, 650, էջ 28բ, 651, էջ 18ա, 2964, էջ 35ա, 3369, էջ 28բ. հմմտ. №№ 648, էջ 6բ, 3362, էջ 275ա)։ Ինչպես տեսնում ենք այս կրճատումը կատարվել է նպատակահարմարության տեսակետից։*

Ցանկ, էջ 101—103: *Վերևում նշված բոլոր ձեռագրերն էլ այս ցանկը չունեն։ Բ խմբին պատկանող մի քանի ձեռագրերում բացակայում է երեք հոդվածի վերնագիր, օրինակ,* bdefgıqr *ձեռագրերի ցանկում չեն պահվել Բ, Ե, Է հոդվածների վերնագրերը, թեև այդ հոդվածները բուն ձեռագրում գտնում ենք։* kmps *ձեռագրերում ցանկի միայն Ե-Թ հոդվածների վերնագրերի հաջորդականությունը չի համապատասխանում Կանոնագրքում եղածին, այսպես.*

| *Կանոնագիրք* | kmps |
|---|---|
| *Ե* | *Է* |
| *Զ* | *Թ* |
| *Է* | *Ե* |
| *Ը* | *Զ* |
| *Թ* | *Ը* |

*Այնուհետև՝ ինչպես Կանոնագրքում, Z ձեռագրում ԺԲ հոդվածի ցանկի համապատասխան վերնագիրը սխալմամբ բաժանել են երկու մասի. «Վասն պանծացեալ իրիցու որ սպանողի ողջ։ Վասն ապաշխարութիւն ոչ գնէ» (էջ 29բ). թեև վերջին մասը կարգահամար չունի։*

Հոդ. Ա, էջ 103: *№№ 648, 649, 650, 651, 2964, 3362 ձեռագրերում չեն պահվել Ա, Բ, Գ հոդվածները. իսկ № 3369 ձեռագրում հոդվածներն ունեն հետևյալ հաջորդականությունը.*

| *Կանոնագիրք* | *№ 3369 ձեռագիր* | *Կանոնագիրք* | *№ 3369 ձեռագիր* |
|---|---|---|---|
| *Ա* | *Բ* | *ԺԵ* | *ԺԷ* |
| *Բ, Գ* | *Դ* | *ԺԶ* | *ԺԳ* |
| *Գ* | *Ա* | *ԺԷ* | *ԺԳ* |
| *Ե* | *Գ* | *ԺԸ* | *ԺԵ* |
| *Զ* | *Ե* | *ԺԹ* | *ԺԸ* |
| *Է* | *Զ* | *Ի* | *Ի* |
| *Ը* | *Է* | *ԻԱ* | *ԺԹ* |
| *Թ* | *Ը* | *ԻԲ* | *ԻԳ* |
| *Ժ* | *Ժ* | *ԻԳ* | *ԻԱ* |
| *ԺԱ* | *ԺԱ* | *ԻԳ* | *ԻԳ* |
| *ԺԲ* | *ԺԲ* | *ԻԵ* | *ԻԲ* |
| *ԺԳ* | *Թ* | *ԻԶ* | *ԻԵ* |
| *ԺԳ* | *ԺԶ* | *ԻԷ* | (չունի) |

Հոդ. Բ, էջ 103: Բ խմբի մի շարք ձեռագրերում Բ հոդվածը կցված է Գ հոդվածի շարունակությանը և այդ երկուսն էլ նշված են որպես Բ հոդված։ Նույն խմբի որոշ ձեռագրերում էլ, օրինակ՝ befgq, Բ հոդվածը դրված է Գ-ի տեղը, իսկ Գ-ն՝ Բ-ի, որպես առանձին հոդվածներ։ № 3369 ձեռագրում Բ և Գ հոդվածները միացված են միմյանց և դրված Գ համարի տակ։

Հոդ. Գ, էջ 104: kmps ձեռագրերում այս հոդվածը վերջից շարունակվում է. «Մեղականութիւն և գիղին առացաւ կամ որոշէ եկեղեցի մահու, կամ մեռցին, որպէս տէրունական աւրէնքն հրամայեն» (էջ 34ա, 46ա, 38ա, 42ա)։ Այս մեջբերումը Բ հոդվածի վերջին մասն է, որը, գուցե, սխալմամբ այնտեղից փոխադրվել և միացվել է Գ հոդվածի վերջին։

Հոդ. Ե, էջ 104։ abcdfghikloqt ձեռագրերում այս հոդվածը դրված է Ը հոդվածի վերջում, իսկ er ձեռագրերում՝ Է հոդվածի վերջում, որպես շարունակություն։ Երբեմն նշված Ե համարի տակ, երբեմն առանց համարի։

Հոդ. Զ, էջ 104—105։ acdhilort ձեռագրերում այս հոդվածը դրված է Թ հոդվածի վերջում որպես շարունակություն։ Իսկ abed ձեռագրերում մի շարք հոդվածների հերթականությունը ուղղակի փոխված է, օրինակ e ձեռագրում Է հոդվածը դրված է Ե-ի տեղը, Զ-ն՝ Ը-ի, Թ-ն՝ Է-ի, Ժ-ն՝ Թ-ի և հակառակը, g ձեռագրում Զ հոդվածը դրված է Ը հոդվածի տեղը, Է-ն՝ Ե-ի, Թ-ն՝ Է և հակառակը։ Մոտավորապես նման բան նկատում ենք ab ձեռագրերում։

Հոդ. Ը, էջ 105—106: «Եկեղեցի այլ» բառերի միջև մի քանի ձեռագրերում գտնում ենք փոքրիկ հավելում. «Եկեղեցի, իսկ եթէ ի մահուանէ ապրեսցի այլ» № 648, էջ 7ա, համմտ. №№ 649, էջ 25բ, 650, էջ 29ա, 651, էջ 19ա, 2964, էջ 36ա, 3369, էջ 29բ, 3562, էջ 276ա)։

Հոդ. Ժ, ԺԱ, ԺԲ, ԺԴ, ԺԵ, էջ 106—109: №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում այս հոդվածները չեն պահվել։ g ձեռագրերում ԺԱ, ԺԲ, ԺԳ հոդվածները միացված են միմյանց, իսկ q ձեռագրում միմյանց միացված են Ժ—ԺԱ հոդվածները։

Հոդ. Ի, ԻԲ, ԻԴ, ԻԶ, ԻԷ, էջ 109—113: №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում չեն պահվել այս հոդվածները։

# ՆԻԿԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 114: *Մի շարք ձեռագրերում, որոնք օգտագործված են համեմատությունների համար, նախքան վերնագիրը նշված է. «Դնի Դ», իսկ №№ 649 (էջ 27ա), 651 (էջ 20ա), 2964 (էջ 38ա), 3362 (էջ 277ա) ձեռագրերում՝ «Դ»: Եթե «Դ»-ն շփոթված չէ «Գ»-ի հետ, նշանակում է Հովհաննես Օձնեցու կազմած կանոնագրքում Նիկիայի ժողովի կանոնախումբը գրված է 4-րդ տեղում՝ Առաքելական, Կղեմեսի և Հարանց հետևողացից հետո:*

*Այս վերնագիրը համեմատությունների համար չօգտագործված ձեռագրերում ունի տարբերակներ. օրինակ՝ «Կանոնք Նիկիայ գլուխք Ի» №№ 648 (էջ 8բ), 649 (էջ 27ա), 3562 (էջ 277ա), «Կանոնք Նիկիականք գլուխք Ի (ԺԹ՝ № 651, Ծ՝ № 650)», 2964 (էջ 38ա), 650 (էջ 30բ), 651 (էջ 20ա): Երկու ձեռագրում առաջաբանի սկզբի տողը դարձրել են վերնագիր. «Սահմանք և կանոնք որ եղաւ ի սուրբ կաթողիկէ եկեղեցի ի մեծ ժողովն Նիկիայ» №№ 8459 (էջ 29բ), 9311 (էջ 27բ), իսկ № 3369 ձեռագրում կարդում ենք՝ «Կանոնք սրբոց հարցն որք եղին ի սուրբ կաթողիկէ եկեղեցոյն» (էջ 31բ): № 659 ձեռագիրը այս վերնագրի փոխարեն ունի ցանկի վերնագիրը. «Ցանգս կանոնաց Նիկիոյ է» (էջ 61բ):*

Ցանկ, էջ 114—115: *Ցանկը և երկրորդ վերնագիրը №№ 648, 649, 656, 651, 2964, 3562, 8459, 9311 ձեռագրերը չունեն: Իսկ № 659 ձեռագիրը թեև ունի ցանկ, բայց այն չի վերաբերում միայն Նիկիայի ժողովի կանոնախմբին. վերջինիս անվան տակ ցանկում և այնուհետև ձեռագրում նշված են նաև Անկյուրիայի, Կեսարիայի, Նեոկեսարիայի ժողովների կանոնախմբերը. ցանկում և թե բուն ձեռագրում բերված չեն վերևում նշված կանոնախմբերի բոլոր հոդվածները. օրինակ, Նիկիայի ժողովից չի բերված յոթ հոդված, Անկյուրիայից՝ 9, Նեոկեսարիայից՝ 7: Ահա այդ ցանկը.*

*Ցանգս կանոնաց Նիկիոյ է*

*ա. Կտրողաց գերկուրիս:*
*բ. Այլադենաց:*
*գ. Մատաղաւրէից:*
*դ. Եպիսկոպոսաց:*
*ե. Կարգընկեցաց:*
*զ. Սրբոց եւ անսրբոց:*
*է. Քահանայից:*
*ը. Հրաժարողաց յաշխարհէս:*
*թ. Երախայից:*
*ժ. Եպիսկոպոսաց:*
*ժա. Քահանայից:*
*ժբ. Կարգընկեցաց:*
*ժգ. Սարկաւագաց:*
*ժդ. Սարկաւագաց:*
*ժե. Երիցանց:*
*ժզ. Անասնագիտաց:*
*ժէ. Կուսանաց:*
*ժը. Արամրից:*
*ժթ. Այրեաց:*
*ի. Կուսանաց:*
*իա. Գոռնըկաց:*
*իբ. Արդար դաւակաց:*
*իգ. Սպանողաց:*
*իդ. Դիւթողաց:*
*իե. Կախարդաց:*
*իզ. Բռնաւորաց:*
*իէ. Մանկանց եկեղեցւոյ:*
*իը. Ձոհողաց:*
*իթ. Տանց հեթանոսաց:*
*լ. Ծառնակերաց:*
*լա. Ձոհողաց:*
*լբ. Ծառնակերաց:*
*լգ. Ի խաւսել աղջկանց:*
*լդ. Կնոջ երկու եղբարց:*
*լե. Ցանկացողաց:*
*լզ. Երկրորդ ամուսնացողաց:*
*լէ. Որ մինն կուսան իցէ և միւսն երկեակ:*
*լը. Երրորդ ամուսնացողաց:*
*լթ. Չորրորդից և հնգից:*
*խ. Կնաթողաց:*
*խա. Կնաթողաց:*
*խբ. Քահանայից:*
*խգ. Քահանայից:*
*խդ. Կարգի քահանայից:*
*խե. Հիւանդաց*
*խզ. Դողից (էջ 61բ—62ա):*

*Այս ցանկի հաջորդականությամբ էլ № 659 ձեռագրում դասավորված են համապա-տասխան հոդվածները։ Ցանկն ունի 46 հոդվածի վերնագիր, իսկ բուն ձեռագրում հոդված-ները 48-ն են, երկու հոդված՝ ԼԶ և ԽԷ՝ համապատասխան վերնագիր ցանկում չունեն։*

*Թեև №№ 8459, 9311 ձեռագրերում չի պահվել վերոհիշյալ ցանկը, սակայն նույն ձեռագրերում Նիկիայի, Անկյուրիայի, Կեսարիայի և Նեոկեսարիայի ժողովի կանոնախմբե-րի հոդվածները դրված են Նիկիայի ժողովի անվան տակ, ինչպես № 659 ձեռագրում։ Այս հանգամանքը մեզ ենթադրել է տալիս, որ այդ երկու ձեռագրերը հավանաբար ծագել են № 659 ձեռագրից։ Առանձին հոդվածների մասին անհրաժեշտության դեպքում կխոսվի հա-մապատասխան տեղում։ Սակայն, այստեղ, ցանկանում ենք նշել №№ 659, 8459, 9311 ձե-ռագրերում պահված այս նույն կանոնախմբի հոդվածների հաջորդականության մասին։ Եթե նկատի ունենանք կանոնագրքի մեջ պահված Նիկիայի, Անկյուրիայի, Կեսարիայի և Նեոկեսարիայի հոդվածների հաջորդականությունը, ապա այս ձեռագրերում եղածը կունե-նա հետևյալ պատկերը.*

| | Կանոնագիրք | № 659 | №№ 8459, 9311 |
|---|---|---|---|
| Նիկիա | Ա հոդված | Ա հոդված | Ա հոդված |
| | Բ " | Բ " | Բ " |
| | Գ " | Գ " | Գ " |
| | Դ " | Դ " | Դ " |
| | Ե " | Ե " | Ե " |
| | Զ " | (չունի) | (չունի) |
| | Է " | (չունի) | (չունի) |
| | Ը " | Զ հոդված | Զ հոդված |
| | Թ " | Է " | (չունի) |
| | Ժ " | Է " | Ը հոդված |
| | ԺԱ " | (չունի) | (չունի) |
| | ԺԲ " | ԺԱ հոդված | ԺԲ հոդված |
| | ԺԳ " | Ը " | Թ " |
| | ԺԴ " | Թ " | Ժ " |
| | (չունի) | Ժ " | (չունի) |
| | ԺԵ հոդված | (չունի) | ԺԱ հոդված |
| | ԺԶ " | ԺԲ հոդված | ԺԳ " |
| | ԺԷ " | ԺԴ " | ԺԴ " |
| | ԺԸ " | ԽԷ " | ԽԹ " |
| | ԺԹ " | (չունի) | (չունի) |
| | Ի " | " | " |
| Անկյուրիա | Ա, Բ " | ԻԶ հոդված | ԻԷ հոդված |
| | Դ " | ԻԷ " | ԻԸ " |
| | Գ " | ԻԸ " | ԻԹ " |
| | Ե, Զ " | (չունի) | (չունի) |
| | Է " | ԻԹ հոդված | Լ հոդված |
| | Ը " | Լ " | ԼԱ, ԼԲ " |
| | Թ " | ԼԱ " | ԼԲ " |
| | Ժ " | ԼԲ " | ԼԳ " |
| | ԺԱ " | ԺԴ " | ԺԵ " |
| | ԺԲ " | (չունի) | (չունի) |
| | ԺԳ " | " | " |
| | ԺԴ " | " | " |
| | ԺԵ " | ԺԵ հոդված | ԺԶ հոդված |
| | ԺԶ " | (չունի) | (չունի) |
| | ԺԷ " | ԺԶ հոդված | ԺԷ հոդված |
| | ԺԸ " | (չունի) | (չունի) |
| | ԺԹ " | " | " |
| | Ի " | ԺԷ հոդված | ԺԸ հոդված |
| Կեսարիա | Ա " | ԺԸ " | ԺԸ " |
| | Բ " | Ի " | ԻԱ " |
| | Դ " | ԻԱ " | ԻԲ " |
| | Դ " | ԻԲ " | ԻԳ " |
| | Ե " | ԻԴ " | ԻԴ " |
| | Զ " | ԺԹ " | Ի " |
| | Է " | ԻԴ " | ԻԵ " |
| | Ը " | ԻԵ " | ԻԶ " |
| | Թ " | ԼԴ " | ԼԳ " |

| | | | |
|---|---|---|---|
| | Ժ հոդված | ԽԶ հոդված | Ծ հոդված |
| Նեոկեսարիա | Ա " | (չունի) | (չունի) |
| | Բ " | ԼԳ հոդված | ԼԵ հոդված |
| | Գ " | (չունի) | (չունի) |
| | Դ " | ԼԵ հոդված | ԼԶ հոդված |
| | Ե " | ԼԶ " | ԼԷ " |
| | Զ " | (չունի) | (չունի) |
| | Է " | ԼԷ հոդված | ԼԸ հոդված |
| | Ը " | ԼԸ " | ԼԹ " |
| | Թ " | ԼԹ " | Խ " |
| | Ժ " | Խ " | ԽԱ " |
| | ԺԱ " | ԽԱ " | ԽԲ " |
| | ԺԲ " | ԽԲ " | ԽԳ " |
| | ԺԳ " | ԽԳ " | ԽԴ " |
| | ԺԴ " | ԽԴ " | ԽԵ " |
| | ԺԵ " | ԽԴ " | ԽԶ " |
| | ԺԶ " | ԽԵ " | ԽԷ " |
| | ԺԷ " | ԽԶ " | ԽԸ " |
| | ԺԸ, ԺԹ, Ի " | (չունի) | (չունի) |

*(Այս համարակալման մեջ գրիչը սխալմամբ բաց է թողել ԺԹ, ԼԲ, ԼԴ համարները)։*

Առաջաբան, էջ 115—116: *Հունարենը և №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերը առաջաբան չունեն։*

Հոդ. Ա, էջ 116—117 (հուն. հոդ. 1, էջ 427): „Εἴ τις ἐν νόσῳ ὑπὸ ἰατρῶν ἐχειρουργήθη ἢ ὑπὸ βαρβάρων ἐξετμήθη, οὗτος μενέτω ἐν τῷ κλήρῳ· εἰ δέ τις ὑγιαίνων ἑαυτὸν ἐξέτεμεν, τοῦτον καὶ ἐν τῷ κλήρῳ ἐξεταζόμενον πεπαῦσθαι προσήκει, καὶ ἐκ τοῦ δεῦρο μηδένα τῶν τοιούτων χρῆναι προάγεσθαι ὥσπερ δὲ τοῦτο πρόδηλον, ὅτι περὶ τῶν ἐπιτηδευόντων τὸ πρᾶγμα καὶ τολμώντων ἑαυτοὺς ἐκτέμνειν, εἴρηται, οὕτως εἴ τινες ὑπὸ βαρβάρων ἢ δεσποτῶν εὐνουχίσθησαν, εὑρίσκοιντο δὲ ἄλλως ἄξιοι, τοὺς τοιούτους εἰς κλῆρον προσίεται ὁ κανών".

*Հայերենն ընդհանուր առմամբ արտահայտում է հունարենի միտքը, բայց ավելի ընդարձակ է, ուր ավելացված են նաև պատժի տեսակները և չափերը։*

Հոդ. Բ, էջ 117—118 (հուն. հոդ. 2, էջ 428): „Ἐπειδὴ πολλὰ ἤτοι ὑπὸ ἀνάγκης ἢ ἄλλως ἐπειγομένων τῶν ἀνθρώπων ἐγένετο παρὰ τὸν κανόνα τὸν ἐκκλησιαστικόν, ὥστε ἀνθρώπους ἀπὸ ἐθνικοῦ βίου, ἄρτι προσελθόντας τῇ πίστει, καὶ ἐν ὀλίγῳ χρόνῳ κατηχηθέντας, εὐθὺς ἐπὶ τὸ πνευματικὸν λουτρὸν ἄγειν, καὶ ἅμα τῷ βαπτισθῆναι προάγειν εἰς ἐπισκοπήν, ἢ εἰς (տե. L., չկա εἰς) πρεσβυτερεῖον (Σύν., II, πρεσβυτέριον) καλῶς ἔδοξεν ἔχειν τοῦ λοιποῦ μηδὲν τοιοῦτον γίνεσθαι. Καὶ γὰρ καὶ χρόνου δεῖ τῷ κατηχουμένῳ, καὶ μετὰ τὸ βάπτισμα δοκιμασίας πλείονος. σαφὲς γὰρ τὸ ἀποστολικὸν γράμμα τὸ λέγον. Μὴ δὲ (տե. Σύν., II, L., չկա δὲ) νεόφυτον, ἵνα μὴ τυφωθεὶς εἰς κρῖμα ἐμπέσῃ καὶ παγίδα τοῦ διαβόλου. Εἰ δὲ προσιόντος (տե. Σύν., II, L., προϊόντος) τοῦ χρόνου ψυχικόν τι ἁμάρτημα εὑρεθείη (տե. L., εὑρεθῇ) περὶ τὸ πρόσωπον, καὶ ἐλέγχοιτο ὑπὸ δύο ἢ τριῶν μαρτύρων, πεπαύσθω ὁ τοιοῦτος τοῦ κλήρου· ὁ δὲ παρὰ ταῦτα ποιῶν, ὡς ὑπεναντία τῇ μεγάλῃ συνόδῳ θρασυνόμενος, αὐτὸς κινδυνεύσει περὶ τὸν κλῆρον".

*Հայերենը շատ համառոտ է և եղածն էլ ընդհանուր նմանություն ունի հունարենի համապատասխան հոդվածի հետ։ Իսկ հունարեն հոդվածի վերջին ընդարձակ մասը՝ սկսած* Εἰ δὲ προσιόντος τοῦ χρόνου *հատվածից մինչև հոդվածի վերջը կանոնագրքում չի պահվել։*

*№ 659 ձեռագրում «յայլ ազանդացն»-ի փոխարեն կարդում ենք «այլադենաց» (էջ 63ա), իսկ 8459, 9311-ում՝ «յայլազգաց» (էջ 31բ, էջ 29ա)։*

Հոդ. Գ, էջ 118–119 (հուն. հոդ. 3, էջ 428): *Հայերենը բոլորովին այլ բան է, հունարենն այլ։ Վերջինս հոգևորականներին արգելում է իրենց մոտ ուրիշ կանայք պահել, բացի արյունակից կանանցից՝ մայր, քույր, հորաքույր կամ մորաքույր։*

Հոդ. Դ, էջ 119 (հուն. հոդ. 4, էջ 428—429): *Հուն.-ի միայն վերջին* τὸ δὲ κῦρος τῶν γινομένων δίδοσθαι καθ' ἑκάστην ἐπαρχίαν τῷ μητροπολίτῃ *հատվածի միտքը կանոնագրքում պահված է համառոտ ձևով՝ «բայց զպատիւն եւ զշնորհն... կամելով՝ սուրբ ժողովոյն»։*

Հոդ. Ե, 119–120 (հուն. հոդ. 5, էջ 429): „Περὶ τῶν ἀκοινωνήτων γινομένων, εἴτε τῶν ἐν κλήρῳ, εἴτε τῶν ἐν λαϊκῷ τάγματι τεταγμένων (տե. Σύν., II, L., չկա τε-

ταγμένων) ὑπὸ τῶν καθ' ἑκάστην ἐπαρχίαν ἐπισκόπων κρατείτω ἡ γνώμη κατὰ τὸν κανόνα τὸν διαγορεύοντα. τοὺς ὑφ' ἑτέρων ἀποβληθέντας, ὑφ' ἑτέρων μὴ προσίεσθαι. Ἐξεταζέσθω δέ, μὴ μικροψυχίᾳ ἢ φιλονεικίᾳ ἤ τινι τοιαύτῃ ἀηδίᾳ τοῦ ἐπισκόπου ἀποσυνάγωγοι γεγένηνται· ἵνα οὖν τοῦτο τὴν πρέπουσαν ἐξέτασιν λαμβάνοι (m. L., λαμβάνῃ). καλῶς ἔχειν ἔδοξεν ἑκάστου ἐνιαυτοῦ καθ' ἑκάστην ἐπαρχίαν δὶς τοῦ ἔτους συνόδους γίνεσθαι, ἵνα κοινῇ πάντων τῶν ἐπισκόπων τῆς ἐπαρχίας ἐπὶ τὸ αὐτὸ συναγομένων, τὰ τοιαῦτα ζητήματα ἐξετάζηται (m. L., ἐξετάζοιτο), καὶ οὕτως οἱ ὁμολογουμένως προσκεκρουκότες τῷ ἐπισκόπῳ κατὰ λόγον ἀκοινώνητοι παρὰ πᾶσιν εἶναι, δόξωσι, μέχρις ἂν τῷ κοινῷ τῶν ἐπισκόπων δόξῃ τὴν φιλανθρωποτέραν ὑπὲρ αὐτῶν ἐκθέσθαι ψῆφον. Αἱ δὲ σύνοδοι γινέσθωσαν, μία μὲν πρὸ τῆς τεσσαρακοστῆς, ἵνα πάσης μικροψυχίας ἀναιρουμένης, τὸ δῶρον καθαρὸν προσφέρηται τῷ θεῷ. δευτέρα δὲ. περὶ τὸν τοῦ μετοπώρου καιρόν".

Հունարենի այս հոդվածը կանոնագրքում մասամբ համառոտ և փոփոխված է ներկայանում։ Որ տարին երկու ժողով է լինելու, նշված է նաև Կղեմեսի կանոնախմբի ԼԵ և Անտիոքի ժողովի Ի հոդվածներում։ Սակայն, կանոնագրքում նշված է տարին երեք ժողով։ Այսպես է սահմանում նաև Կոստանդին Բարձրբերդցին կանոնական իր թղթերից մեկում. «Հրաման է այս սաքրելագիր որ ի տարոյն երիցս անգամ առաջնորդք եկեղեցոյ ժողով[ով] տեսանեն զկարգս եկեղեցոյ» (№ 3519, էջ 22բ, տես նաև Կիրակոս Գանձակեցի, Պատմություն Հայոց, աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961, էջ 301)։

Տարին երեք ժողով հրավիրելը, որ Ն. Մելիք-Թանգյանը համարում է սխալ («Հայոց եկեղեցական իրավունքը», գիրք Ա, էջ 151), դուցե տեղական պայմաններից ելնելու նպատակով է արված, որովհետև կանոնագրքի համապատասխան հոդվածում նշվում է նաև ժողովների հրավիրման ժամանակը. «Մի յաչնան ժամու եւ մի զոր մատուռնն կոչեն եւ մի յառաջ քան զքառասնորդսն»։ Իսկ № 659 ձեռագրում պահվածը համապատասխանում է հունարենին. «Եթե ի տարւոջն երկիցս ժողով արասցեն՝ մի յաշունն ժամու, զոր մատուռնս կոչեմք եւ մի յառաջ քան զքառասնորդսն» (էջ 64բ—65ա, հմմտ. 8459, էջ 33բ, 9311, էջ 31բ)։ Մինչդեռ մեզ թվում է կանոնագրքի սկզբնական բնագրում եղել է «ի տարւոջն երկիցս ժողովս արասցեն՝ մի յաշնան ժամու, զոր մատուռնն կոչեն, եւ մի յառաջ քան զքառասնորդսն»։ «Երկիցս» բառը անուշադիր ընդօրինակելու հետևանքով «կ» տառը բաց են թողել և «երկիցս»-ը գրել «երիցս»։ Այս կատարվելուց հետո նախադասության հաջորդ մասում «մի յաշնան ժամու եւ մի զոր մատուռնն կոչեն...» պետք է հանդես գար ընդգծված՝ «եւ մի» հատվածը, որպեսզի նախադասությունը կարգավորեր. որովհետև չէր կարող «երիցս» հանդես գալուց հետո նախադասության շարունակությունը մնալ նույնը՝ «մի յաշնան ժամու, որ մատուռնն կոչեն եւ մի յառաջ քան զքառասնորդսն», այսինքն երկու անգամ, ուստի մինչև «զոր»-ը ավելացրել են «եւ մի» հատվածը, այսինքն «եւ մի զոր մատուռնն կոչեն». այն ինչ որ հանդիպում ենք կանոնագրքում։ Քանի որ այդ անճշտությունն ունի նաև կանոնագրքի հնագույն ընդօրինակությունը՝ 1098 թ., պետք է ընդունել որ Կոստանդին Բարձրբերդցու ձեռքի տակ եղել է նման մի կանոնագիրք, որից էլ օգտվելով նա նշել է տարեկան երեք ժողով։

Հոդ. Զ, էջ 120—121 (հուն. 6, էջ 429—430)։ Կանոնագրքում միայն սկզբի հատվածը համառոտ է. հուն.-ի Τὰ ἀρχαῖα ἔθη κρατείτω τὰ ἐν Αἰγύπτῳ, καὶ Λιβύῃ, καὶ Πενταπόλει հատվածի դիմաց կանոնագրքում կարդում ենք. «Նախնեաց սովորութիւն կացցէ»։

Մի քանի ձեռագրերում սկզբի ընդարձակ հատվածը՝ «Նախնեաց սովորութիւն կացցէ... եւ ամենայնէս այն յայտ լիցի» չի պահվել (№№ 648, էջ 9բ, 649 էջ 29ա, 650 էջ 32ա, 651 էջ 21բ, 2964 էջ 40բ, 3562 էջ 278բ)։ Կանոնագրքի վերջին փոքր մասի՝ «լինիցին, բազմաց ընտրութիւնն հաստատեսցի»-ի փոխարեն մի քանի ձեռագրեր ունեն «լինիցին բազմացն ընտրութեան հաստատեսցի բազմացն եւ նոքայ ամաչեսցեն» (№ 2964, էջ 40բ, հմմտ. №№ 650, էջ 32ա, 651 էջ 21բ, 649 էջ 29ա)։ Իսկ №№ 659, 8459, 9311 ձեռագրերը այս և Է հոդվածները չեն պահել։

Հոդ. Է, էջ 121 (հուն. հոդ. 7 էջ 430)։ Հունարենում գրված է ոչ թե Երուսաղեմ, այլ վերջինիս նոր անունը Αἰλία. Այսպես կոչված էր ի պատիվ Հռոմի կայսեր Էլիոս Անդրիանի։ Մի քանի ձեռագրերում՝ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562, չեն պահվել այս և Ը հոդվածները։

Հոդ. Ը, էջ 121—123։ №№ 659, 8459, 9311 ձեռագրերում սույն հոդվածը, որ նշված է որպես Զ հոդված, բավական փոփոխված և համառոտված, միմյանցից աննշան տարբերություններով, հետևյալ ձևն ունի. «Զ. Որք անուանին զինքն սուրբ երբեմն, եւ երբեմն ոչ

*մերձանալ ի սուրբ կաթողիկէ եկեղեցի և ի կատարեալ խորհուրդն, այսինքն յաւրէնսն, վասն այնպիսեացն կամ եղեւ սուրբ ժողովոյն զի ջերմեռանդն սրտիւ ձեռնադրութեամբ ապաշխարութիւն ընկալցին եւ ըստ խոստովանութեան եւ ըստ վաստակոցն քահանայն ընտրութիւն արասցէ, մարդասիրութեամբ ի վերայ հայեսցի եւ որպէս իւր կամք են ապաշխարութիւն դիցէ եւ ի փոխածն այլ մի եւս դարձցի» (№ 659 էջ 65ար, հմմտ. №№ 8459 էջ 34ա բ, 9311 էջ 31բ—32ա)։ № 3369 ձեռագրում էլ, այլ ձեռագրերի օրինակով, «Վասն այնոցիկ» բառերից բաժանված է առանձին հոդվածի, այսպիսով Ը հոդվածը դարձրել են երկու հոդված։*

Հոդ. Թ, էջ 123 (հուն. հոդ. 9, էջ 431)։ „Εἴ τινες ἀνεξετάστως προσήχθησαν (տ., L., προηχθησαν) πρεσβύτεροι, ἢ ἀνακρινόμενοι ὡμολόγησαν τὰ ἁμαρτήματα (տ., L., չիք ἁμαρτήματα) ἡμαρτημένα (տ. Συν., II. չիք ἡμαρτημένα) αὐτοῖς, καὶ ὁμολογησάντων αὐτῶν, παρὰ κανόνα κινούμενοι οἱ ἄνθρωποι τοῖς τοιούτοις χεῖρα ἐπιτεθείκασιν, τούτους ὁ κανὼν οὐ προσίεται. Τὸ γὰρ ἀνεπίληπτον ἐκδικεῖ ἡ καθολικὴ ἐκκλησία".

*Հայերենը թեև մի փոքր շեղվում է, բայց ընդհանուր առմամբ արտահայտում է հունարենի միտքը։*

Հոդ. Ժ, էջ 123—124 (հուն. հոդ. 10, էջ 431)։ *Հայերենը մի փոքր ընդարձակ է, թեև արտահայտում է հունարենի միտքը։*

*№ 650 ձեռագրում «Կամ եղեւ մեծ ժողովոյն՝ ամենեւին բարձցի ի նմանէն եւ կարգօքն ընդ պատուհասիւք» հատվածը չի պահվել։ Իսկ № 3369 ձեռագրում «բարշեցաւ. հշմարտութիւննս»-ի փոխարեն կարդում ենք. «Յարդեցաւ ճշմարտութիւնն» (էջ 33բ)։ № 659 ձեռագրում Ժ և Թ հոդվածները միացված են միմյանց և դրված է համարի տակ (էջ 65բ—66ա)։*

Հոդ. ԺԱ, էջ 124, (հուն. հոդ. 11, էջ 431—432)։ *Հունարենի միայն վերջին* οἱ πιστοὶ καὶ ἑπτὰ ἔτη ὑποπεσοῦνται· δύο (տ. Συν., II, δύω) δὲ ἔτη χωρὶς προσφορᾶς κοινωνήσουσι τῷ λαῷ τῶν προσευχῶν *հատվածը հայերենում դուրս է ընկել և այս ամբողջն արտահայտված է «հաւասարեսցեն աղաւթիցն ժողովրդեանն» հատվածով։*

Հոդ. ԺԲ, էջ 124—126 (հուն. հոդ. 12. էջ 432)։ „Οἱ δὲ προσκληθέντες μὲν ὑπὸ τῆς χάριτος καὶ τὴν πρώτην ὁρμὴν ἐνδειξάμενοι, καὶ ἀποθέμενοι τὰς ζώνας, μετὰ δὲ ταῦτα ἐπὶ τὸν οἰκεῖον ἔμετον ἀναδραμόντες ὡς κύνες, ὡς τινὰς καὶ ἀργύρια προέσθαι, καὶ βενεφικίοις κατορθῶσαι τὸ ἀναστρατεύσασθαι, οὗτοι δέκα ἔτη ὑποπιπτέτωσαν, μετὰ τὸν τῆς τριετοῦς ἀκροάσεως χρόνον· ἐφ' ἅπασι δὲ τούτοις, προσήκει ἐξετάζειν τὴν προαίρεσιν καὶ τὸ εἶδος τῆς μετανοίας. Ὅσοι μὲν γὰρ καὶ (տ. Συν., II, չիք καὶ) φόβῳ καὶ δάκρυσι καὶ ὑπομονῇ καὶ ἀγαθοεργίαις, τὴν ἐπιστροφὴν ἔργῳ καὶ οὐ σχήματι ἐπιδείκνυνται, οὗτοι πληρώσαντες τὸν χρόνον τὸν ὡρισμένον τῆς ἀκροάσεως, εἰκότως τῶν εὐχῶν κοινωνήσουσι, μετὰ τοῦ ἐξεῖναι τῷ ἐπισκόπῳ καὶ φιλανθρωπότερόν τι περὶ αὐτῶν βουλεύσασθαι· ὅσοι δὲ ἀδιαφόρως ἤνεγκαν, καὶ τὸ σχῆμα τοῦ εἰσιέναι εἰς τὴν ἐκκλησίαν ἀρκεῖν αὐτοῖς ἡγήσαντο πρὸς τὴν ἐπιστρέφειαν (տ. Συν., II, L., ἐπιστροφήν), ἐξ ἅπαντος πληρούτωσαν τὸν χρόνον".

*Հայերենը ընդհանուր նմանություն ունի հունարենին, տեղ-տեղ էլ նկատում ենք ավելացումներ, օրինակ՝ հունարենի* ὡς κύνες *(որպես շներ) թարգմանված է «ի շնութիւն». հետևելով այս թարգմանությանը՝ այնուհետև ավելացրել են դրա նման այլ բառեր՝ «ի պոռնկութիւն, ի գողութիւն, յագահութիւն, յոխակալութիւն» և այլն։*

Հոդ. ԺԳ, էջ 126, (հուն. հոդ. 13, էջ 432—433)։ *Հայերենը մի փոքր ընդարձակ է. ավելացված է ապաշխարության տևողությունը։*

Հոդ. ԺԴ, էջ 126—127, (հուն. հոդ. 14, էջ 433)։ *Հայերենը ընդարձակ է, քան հունարենը։ Հայերենի «մարդասիրութիւն ցուցցեն առ այնպիսիսն» հատվածից մինչև վերջ հուն.-ը չունի։*

Հոդ. ԺԵ, էջ 127—128 (հուն. հոդ. 15, էջ 433)։ „Διὰ τὸν πολὺν τάραχον καὶ τὰς στάσεις τὰς γινομένας ἔδοξε παντάπασι περιαιρεθῆναι τὴν συνήθειαν τὴν παρὰ τὸν κανόνα (տ. Συν., II, τὸν ἀποστολικὸν κανόνα) εὑρεθεῖσαν ἔν τισι μέρεσιν, ὥστε ἀπὸ πόλεως εἰς πόλιν μὴ μεταβαίνειν, μήτε ἐπίσκοπον, μήτε πρεσβύτερον, μήτε διάκονον. Εἰ δὲ τις μετὰ τὸν τῆς ἁγίας καὶ μεγάλης συνόδου ὅρον, τοιούτῳ τινὶ ἐπιχειρήσειεν, ἢ ἐπιδοίη ἑαυτὸν πράγματι τοιούτῳ, ἀκυρωθήσεται ἐξάπαντος κατασκεύασμα, καὶ ἀποκατασταθήσεται τῇ ἐκκλησίᾳ ἐν (տ. L., չիք ἐν) ᾗ ὁ ἐπίσκοπος ἢ ὁ πρεσβύτερος ἐχειροτονήθη".

*Հայերենում հունարենը ոչ թե թարգմանված է, այլ վերաշարադրված և ընդհանուր ձևով է արտահայտում վերջինիս միտքը։*

*№ 650 ձեռագրում այս հոդվածն ունի այլ տարբերակ Ժ համարի տակ. «Որք եպիսկոպոս լինին եւ գայլոյ վիճակ յափշտակել ջանան եւ որք երիցունք լինին եւ այլոյ քաղաքի եւ ժողովրդեան ցանկան յափշտակել, կամ եղեւ մեծ ժողովոյն, զի զայնպիսիսն դադարեցուսցեն յիւրաքանչիւր վիճակի։ Ապա եթէ ի բռնութենէ ոք եւ կամ ի լեզուանութենէ եւ կամ կաշառաւք զգործն զայն յանդգնեսցի գործել, ընդդէմ եկեսցէ առաքելական կանոնաց, կամ եղեւ սուրբ ժողովոյն զի զայնպիսին ընկեսցեն ի բաց յաթոռոյն եւ ի կարգէ քահանայութեանն եւ ընաւ ի պաշտաւնէն իսկ ի բաց մերժել եւ այնուհետեւ եղիցի քեզ իբրեւ զմի յանզգամաց, զի որում տուեալն է՝ տացի եւ յաւելցի, եւ որ ոչն գիտիցէ ունել եւ զոր ունին՝ հանցէ ի նմանէ» (էջ 66բ—67ա)։ № 3369 ձեռագրում թեև գտնում ենք այս հոդվածը, սակայն, վերջինս ուրիշ տեղ է դրված՝ Կանոնագրքի ԺԹ և Ի հոդվածների միջև ԻԱ համարի տակ։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել. իսկ №№ 8459, 9311 ձեռագրերում չի պահվել «կամ եղեւ մեծ ժողովոյն... եկեսցէ առաքելական կանոնիս» հատվածը (էջ 36բ, էջ 34ա)։*

*Հունարեն բնագրի 16-րդ հոդվածը Կանոնագրքում չի պահվել, գուցե նրա համար, որ այն և նախորդ՝ ԺԵ հոդվածների բովանդակությունը համարյա նույնն է, դրա համար էլ այդ երկու հոդվածներից Կանոնագրքում պահվել է ԺԵ հոդվածը միայն։*

Հոդ. ԺԶ, էջ 128 (հուն. հոդ. 17, էջ 434) „Ἐπειδὴ πολλοὶ ἐν τῷ κανόνι ἐξεταζόμενοι τὴν πλεονεξίαν καὶ τὴν αἰσχροκέρδειαν διώκοντες, ἐπελάθοντο τοῦ θείου γράμματος λέγοντος. Τὸ ἀργύριον αὐτοῦ οὐκ ἔδωκεν ἐπὶ τόκῳ· καὶ δανείζοντες ἑκατοστὰς ἀπαιτοῦσιν· ἐδικαίωσεν ἡ ἁγία καὶ μεγάλη σύνοδος, ὡς εἴ τις εὑρεθείη μετὰ τὸν ὅρον τοῦτον τόκους λαμβάνων ἐκ μεταχειρήσεως (տ. Σύν., II, L., μεταχειρίσεως), ἢ ἄλλως μετερχόμενος τὸ πρᾶγμα, ἢ ἡμιολίας ἀπαιτῶν, ἢ ὅλως ἕτερόν τι ἐπινοῶν αἰσχροῦ κέρδους ἕνεκα, καθαιρεθήσεται τοῦ κλήρου, καὶ ἀλλότριος τοῦ κανόνος ἔσται".

*Հայերենը թեև բառացի թարգմանություն չէ, սակայն արտահայտում է հունարենի միտքը։ Հայերենում կան շեղումներ և լրացումներ։*

Հոդ. ԺԷ, էջ 129 (հուն. հոդ. 18, էջ 434—435)։ „Ἦλθεν εἰς τὴν ἁγίαν καὶ μεγάλην σύνοδον, ὅτι ἔν τισι τόποις καὶ πόλεσιν, τοῖς πρεσβυτέροις τὴν εὐχαριστίαν οἱ διάκονοι διδόασιν, ὅπερ οὔτε ὁ κανών, οὔτε ἡ συνήθεια παρέδωκεν, τοὺς ἐξουσίαν μὴ ἔχοντας προσφέρειν, τοῖς προσφέρουσι διδόναι τὸ σῶμα τοῦ Χριστοῦ. Κἀκεῖνο δὲ ἐγνωρίσθη, ὅτι ἤδη τινὲς τῶν διακόνων καὶ πρὸ τῶν ἐπισκόπων τῆς εὐχαριστίας ἅπτονται. Ταῦτα οὖν πάντα (տ. L., μὲν οὖν ἅπαντα) περιῃρήσθω (տ. Σύν., II, περιῃρείσθω), καὶ ἐμμενέτωσαν οἱ διάκονοι τοῖς ἰδίοις μέτροις, εἰδότες ὅτι τοῦ μὲν ἐπισκόπου ὑπηρέται εἰσίν, τῶν δὲ πρεσβυτέρων ἐλάττους τυγχάνουσι (տ. Σύν., II, չիք τυγχάνουσι). Λαμβανέτωσαν δὲ κατὰ τὴν τάξιν τὴν εὐχαριστίαν μετὰ τοὺς πρεσβυτέρους, ἢ τοῦ ἐπισκόπου διδόντος (տ. Σύν., II, μεταδιδόντος) αὐτοῖς, ἢ τοῦ πρεσβυτέρου. ἀλλὰ μηδὲ καθῆσθαι ἐν μέσῳ τῶν πρεσβυτέρων ἐξέστω τοῖς διακόνοις· παρὰ κανόνα γὰρ καὶ παρὰ τάξιν ἐστὶ τὸ γινόμενον. Εἰ δέ τις μὴ θέλοι πειθαρχεῖν καὶ μετὰ τούτους τοὺς ὅρους, πεπαύσθω τῆς διακονίας".

*Հայերենը բառացի չի թարգմանված հունարենից, այլ հունարենին համապատասխան վերաշարադրված է, կիսով չափ համառոտ, թեև հունարենի միտքն արտահայտում է բավական պարզ։*

Հոդ. ԺԸ, էջ 129։ *Այս հոդվածը հունարենը չունի և ինչքան հայտնի է գրականությունից՝ Նիկիայի ժողովում այդ հարցը քննության չի ենթարկվել։ Ըստ երևույթին այս հոդվածը հետագայի (թե՞ թարգմանիչի) ավելացում է։*

Հոդ. ԺԹ, էջ 130 (հուն. հոդ. 19, էջ 435)։ *Խոսքը Պողոս Սամոսատացու և նրա հետևորդների մասին է։ Հայերենում նկատելի են խմբագրման աննշան հետքեր, իսկ վերջին՝ սարկավագուհիներին վերաբերող մասը մի փոքր համառոտ է, քան հունարենը։ Ահա այդ մասը.* „Ὡσαύτως δὲ καὶ περὶ τῶν διακονισσῶν, καὶ ὅλως περὶ τῶν ἐν τῷ κανόνι (տ. Σύν., II, ἐν τῷ κλήρῳ) ἐξεταζομένων ὁ αὐτὸς τύπος παραφυλαχθήσεται. Ἐμνήσθη μὲν (տ. Σύν., II, L., ἐμνήσθημεν) δὲ τῶν (տ. L., չիք τῶν) διακονισσῶν τῶν ἐν τῷ σχήματι ἐξετασθεισῶν, ἐπεὶ μηδὲ χειροθεσίαν τινὰ ἔχουσιν, ὥστε ἐξάπαντος ἐν τοῖς λαϊκοῖς αὐτὰς ἐξετάζεσθαι".

*Ինչպես տեսնում ենք, հունարենում խոսքը սարկավագուհիների մասին է, իսկ հայերենում մի դեպքում «սարկաւագացն», մյուսում՝ «սարկաւագաց կանանցն»։ Երկու դեպքում էլ պետք է հասկանալ սարկավագուհիներ։*

*№№ 659, 8459, 9311 ձեռագրերում այս և Ի հոդվածները չեն պահվել։*

Հոդ. Ի, էջ 131 (հուն. հոդ. 20, էջ 435)։ *Ձեռագրում այս հոդվածը միացված է նախորդին։*

Համահավաք բնագրի համար օգտագործած համարյա բոլոր ձեռագրերն էլ ունեն Կոստանդիանոսի ուղերձը. Հավատամքը և Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկը:

Կոստանդիանոսի ուղերձը, էջ 131—132. Կոստանդիանոսի ուղերձի երկու այլ տարբերակներ ևս մեզ հայտնի են. մեկը պահվել է Սոկրատի Եկեղեցական պատմության մեջ, մյուսը՝ մեր մատենադարանի №№ 1905, 1490 ձեռագրերում: Նպատակահարմար ենք գտնում վերևում հիշված երկու տարբերակներն ամբողջությամբ բերել այստեղ.

1. «Զարաց և ամբարշտաց նմանեալ Արիոս, իրաւացի է զնոյն զնոցունց ունել անարգանս. որպէս զի և այսուհետև Պորփիւրիոս աստուածպաշտութեանն թշնամի՝ կարգս անիրաւս և անաւրէնս հակառակ կրաւնից և կանգնեալ գարժանն էգիտ զվարձ. և այսպիսի որպէս զի զնախատող ինքն զնոյն հետայն լինիլ ժամանակին. և առավել լնուլ չարափառութեամբ. այժմ հաճոյ թուեցաւ զԱրիոս և զնորուն համակամսն զՊորփիւրիանոսս կոչեցեալսն որոց յեղանակացն նմանին, զոյսոսիկ ունելով զյորջորջումն: Առ այս և եթ ինչ շարադրումն յԱրիոսէ կարգեալ գտանիցի. զայս հրոյ մատնեալ, զի մի ընդ վայր միայն նորա վարդապետութիւնն ապականիցի, այլ զի և ոչ յիշումն նորա ընաւին մնասցէ: Զնոյն պատմեմ և այժմ, եթէ ոք շարագրեալս ինչ յԱրիոսէ ունիցի համակարգութիւնս որպէս զի թագուցեալ լինչ և ոչ նոյն ժամայն մատուցանել և հրով կիզուլ և զայսպիսիս սպանանել մահու վնասու: Քանզի առ ժամայն այլոցն ի սորա իսկ գլխսյս կտցցէ պատիժն: Եւ այսպիսի և ոչ միոյ թողութեան արժանաւորեսցի ամենեւիմբ» (Սոկրատայ Սքոլաստիկոսի եկեղեցական պատմութիւն, հտ. Ա, Վաղարշապատ, 1897, էջ 27):

2. «Թուղթ Կոստանդիանոսի կայսերն առ ամենեսեան.

Ցաղթօղ Կոստանդիանոս մեծ և օգոստոս եպիսկոպոսացդ և ժողովրդոցդ.

Քանզի չար և ամբարիշտ մարդկանց հետեակ եղև Արիոսն, վասն այսորիկ արդար իսկ է, զի նախատանօք ամբարիշտն նախատիցի, որպէս Պորփիւրոս աստուածպաշտութեան թշնամին, որոյ զրազում գարշելի գիրս հանեալ էր ընդդէմ բարեպաշտ հաւատոյս մերոյ, եգիտ զիւրեան արժանի պատիժս. և իսկ զայնպիսի իւր ամբարշտութեան արժանի վարձս ընկալաւ, որ մինչև ցապագայ ժամանակս ոչ միայն պարսաւանօք և վատահամբաւիւք լնանեցեալ եղև, այլ և ամբարիշտ գիւտնքն նորա ընաջինջ եղեն. նմանապէս ևս այժմ հաճոյ թուեցաւ զԱրիոսն և զհետևօղսն նորին Պորփիւրիտնոսս անուանակոչել. զի որոց վարուցն հետևօղք եղեն նոցին ևս մականուամբքն անուանեսցին. զարձեալ եթէ գործ ինչ գրեցեալ ի յԱրիոսէ գտանիցի, շուտով ի հուր արկանիցի. զի ոչ միայն զարշելի վարդապետութիւնն նորա արմատախիլ լինիցի, այլ և զի ոչ ոք յիշատակ գրոցն նորա մնասցէ, զայս ևս հրամայեմք, զի եթէ ոք գգիր ինչ ի յԱրիոսէ շարադրեալ պահեսցէ և զնա յառաջ բերեալ ի հուրն ոչ ձգեսցէ և եթէ յետոյ յայտնեսցի, այնպիսին ի վտանգի մահու լիցի, քանզի եթէ ոք ի յայնպիսի պատուիրազանցութեանն ըմբռնեսցի՝ առ ժամայն գլխապարտ եղիցի: Աստուած զձեզ պահեսցէ» (№ 1905, էջ 43ար, հմմտ. նաև № 1490, էջ 33բ):

Հավատամք, էջ 133: Կանոնագրքում պահվել է Հավատամքի սկզբի տողը. «Հաւատամք ի մի Աստուած հայր ամենակալ» (էջ 149, տող 3, հմմտ. հունարենը. πιστεύομεν εἰς ἕνα Θεὸν πατέρα παντοκράτορα (էջ 436): Հավատամքը հայտնի բան է, ուստի մնացածը չենք բերում, սակայն կարևոր է նշել, որ մի քանի կանոնագիրք-ձեռագրերում (b, էջ 65ա, d էջ 46ա, e, էջ 51բ, f էջ 82բ, g, էջ 40բ, զ, էջ 38բ) պահվել է Հավատամքի լրիվ բնագիրը: Ըստ երևույթին վերջինս հետագայի ավելացում է:

Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկը, էջ 133—150: Նիկիայի ժողովի մասնակիցների Կանոնագրքում եղած ցանկում չի նշված Կուրդուբե քաղաքի եպիսկոպոսի անունը Հոսիոս, որը Սարդիկեի ժողովում մեծ դեր խաղաց:

Մ. Խորենացու «Պատմութիւն Հայոց»-ում նշվում են ժողովի մի քանի գլխավոր մասնակիցների անունները. «Եւ ժողովեցան Բիտոն և Բիկենդ երիցունք ի Հռոմ քաղաքէ՝ ձեռնարկութեամբ սրբոյն Սեղբեստրոսի, Աղեքսանդրոս Աղեքսանդրի, Եւստաթիոս Անտիոքայ, Մակարիոս Երուսաղէմի, Աղեքսանդրոս Կոստանդնուպօլսի եպիսկոպոսք» (Մ. Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1913, գիրք Բ, գլ. ՁԹ, էջ 239. հմմտ. Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, Ս. Պետերբուրգ, 1879, էջ 129): Նիկիայի ժողովի մասնակիցներից մի քանիսի անունների ցանկը մի փոքր ընդարձակ գտնում ենք նաև Սոկրատի Եկեղեցական պատմության հունարեն և լատիներեն բնագրերում: Այդ հատվածը հայ թարգմանիչ Փիլոն Տիրակացին զեղ է նետել: Բերում ենք այս հատվածը ըստ Ռոբերտ Հուսեի հրատարակության. Ὅσιος ἐπίσκοπος Κορδούβης Ἱσπανίας· οὕτως πιστεύω ὡς προγέγραπται. Ῥώμης Βίτων καὶ Βικεντῖνος πρεσβύτεροι· Αἰγύπτου Ἀλέξανδρος· Ἀντιοχείας τῆς μεγάλης

Εὐστάθιος· Ἱεροσολύμων Μακάριος· Ἁρποκρατίων Κύνων· και των λοιπων· ων εἰς πλῆρες τα ονοματα κεῖται εν τω Συνοδικω Ἀθανασιου του Ἀλεξανδρειας επισκοπου". (Socratis Scholastici Ecclesiastica historia, edidit Robertus Hussey, tomus I. Oxonii, 1853, p. 96):

Մեր օգտագործած ձեռագրերից միայն Γ-ը ունի «Բիտոն», համապատասխան հունարենին և Մ. Խորենացուն, բայց որովհետև այդ ընթերցումը կարող է հետագայի սրբագրություն լինել, ուստի այն թողեցինք տողատակ, բնագրում նշելով «Բիկտոր» համաձայն ձեռագրերի մեծ մասի ընթերցանության։

ABCFPUn ձեռագրերում բնագրի «Սուրբ եպիսկոպոսն քաղաքին Կուադուբէ... ի Հռոմ ռազաբէ» (էջ 134, տող 5—7) հատվածի դիմաց, աջ կամ ձախ լուսանցքում, միևնույն ձեռագրով և ուղղագրական աննշան տարբերություններով, ավելացված է «Ցարեմտեան եպիսկոպոս ոչ ոք եղեալ է ի թիւ անուանց, բայց յերիցանցն Հռովմայ» (A, էջ 60բ) հատվածը։ Այդ նույն հատվածը iKLMNOQRSTVXYZWê ձեռագրերում գրված է բնագրի «Բիկտոր և Բէկենտ երիցունք ի Հռոմ քաղաքէ» տողին որպես շարունակություն. այսպես. «Բիկտոր և Բէկենտ երիցունք ի Հռովմ քաղաքէ։ Ցարեմտեան եպիսկոպոս ոչ ոք եղեալ է ի թիւ անուանց, բայց երիցանց Հռովմայ» (ըստ I ձեռագրի, էջ 55բ)։ Eabefgkmprst ձեռագրերը չունեն այդ ավելացումը։ ôcdlhloq ձեռագրերում չի պահվել կամ չի ընդօրինակվել Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկը, հետևապես մեզ ոչինչ հայտնի չէ ավելացված հատվածի մասին։ GHDձեռագրերում այդ հատվածը բնագրի այլ հատվածների հետ խառնիխուռն է գրված. բերում ենք ըստ G ձեռագրի. «Բիկտոր և Բեկէնտ երիցունք ի Հռովմ քաղաքէ յերիցանցն Հռովմա. Ցեղիպտացւոց յարեմտեան եպիսկոպոսք եղեալ են անուանք Աղեքսանդրոս» (էջ 16ար), J ձեռագրում անկանոնությունը այլ ձևով է արտահայտվել, «Սուրբ եպիսկոպոսն քաղաքին Կուադուբէ այսպէս հաւատամ որպէս յառաջագոյն գրեալ է։ Ցարեմտեան եպիսկոպոս ոչ ոք եղեալ է ի թիւ անուանց, բայց երիցանց Հռովմայ. Բիկտոր և Բեկենտ երիցունք ի Հռովմ քաղաքէ» (էջ 45ա), շարունակությունը ինչպես բնագրում։ Վերջապես U ձեռագրում թեև Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկը չի պահվել, բայց մեզ հետաքրքրող հատվածը գտնում ենք այն ձևով, ինչ որ J ձեռագրում է, միայն վերջինիս «Բիկտոր և Բեկենտ երիցունք ի Հռովմ քաղաքէ» հատվածը չի պահվել այստեղ։

Նիկիայի ժողովի մասնակիցների թիվը թեև ընդունված է 318, բայց Կանոնագրքում պահված է 212 անուն։ Մասնակիցների թվի առթիվ մեջ ենք բերում Սոկրատի Եկեղեցական պատմության հրատարակիչ Մեսրոպ Տեր-Մովսիսյանի մի ծանոթագրությունը. «Այստեղ ունենք 318 թիւը, որ ունին նաև Խոր. և մեր միւս պատմագիրները, և շատ յոյն հեղինակներ, իսկ բնագ. (իմա հունարենը— Վ. Հ.) ունի. «եպիսկոպոսների թիւը 300-ից անց էր» (հմմտ. հունարենը επισχοπων μεν πληθύς τριαχοσίων άριθμον նույն տեղում, էջ 38— Վ. Հ.) Եւսեբ. 250, Անտիոքի եպիսկոպոս Եւստաթիոսը 270, իսկ ընդհանուր կարծիքը համաձայն է 318 թւի հետ։ Արաբացի հեղինակ Իբն-Ալի յիշում է, որ բոլոր ժողովուածների թիւը հաւասար էր 2408-ի, որոնցից Կոստանդինը ընտրեց 318 եպիսկոպոսներ» (էջ 17, ծանոթ. 1)։ Հմմտ. Hefele, Conciliengeschichte, Erster Band, S. 257—258:

Կանոնագրքում եղած այս ցանկը որոշ տեղեր ունի շեղումներ № 1905 ձեռագրի համապատասխան ցանկից, իսկ մի տեղ էլ Կանոնագրքում ուղղակի խանգարված է, օրինակ, Պաղեստինի կողմից եկածների ցանկում, ընդօրինակությունների հետևանքով, դուրս է ընկել մի տեղի անուն և մի քանի եպիսկոպոսների վայրի անունը խանգարվել է, բացի դրանից այս մասում չի պահվել նաև 3 եպիսկոպոսների անուն։ Այդ բանը ցույց տալու նպատակով համեմատության համար կբերենք № 1905 ձեռագրի ունեցածը.

«Ի գաւառէն Պաղեստինոյ.

| | |
|---|---|
| Մակարիոս Երուսաղէմայ։ | Պօղոս, որ է Պօղինոս Մաքսիմիանուպօլսոյ։ |
| Գերմանոս Նէապօլսոյ։ | Ցունվարիոս Հիերիգունտինոյ։ |
| Մարիոս Սէբաստիոյ։ | Հէղիօգորոս Զաբուղօնիոյ։ |
| Գայիանոս Կատարիսյ։ | Աէտիոս Լիւդդիոյ։ |
| Եւսէբիոս Կեսարիոյ։ | Սիգուանոս Ազոտիոյ։ |
| Սաբինոս Ասքալօնիոյ։ | Պատրուփիլոս Սքիւթոպօլսոյ։ |
| Ղունկինոս Նիկոպօլսոյ։ | Ասքղեպիոս Գազայու։ |
| Պետրոս Իամնիոյ։ | Պետրոս Անիլայու։ |
| Մաղրինոս, որ է Մարինոս Էլեթէրուպօլսոյ։ | Անտիոքոս Գապիտոլիոյ» (էջ 31բ—32ա, տես նաև № 1490, էջ 25բ—26ա)։ |
| Մաքսիմոս Մաքսիմիանուպօլսոյ։ | |

*Մասնակիցների ցանկի այլ մասերում ես կան տեղեր, ուր մասնակիցների անունները կանոնագրքում պակաս են նշված, օրինակ, Փյունիկացիների կողմից եկածների շարքում չեն նշված «Մարտինոս որ է Մարինոս Պալմիւրիոյ։ Թալասիոս որ է Թաղոնիոս Աղաղիոյ» (էջ 32ա, տես նաև № 1490, 26ա)։ Իսկ № 1905 ձեռագրի ցանկում չի նշված կանոնագրքի ունեցածը «Պաւղինոս ի Ցաղմիրոսէ»․ կամ Պիսիդացիների կողմից եկածների ցանկում կանոնագրքում չեն նշված «Թէոդորոս Ուղիլիոյ», «Ուրանիոն, որ է Ուրանիոս Սէլկիոյ կամ Սուտէննէսի։ Ապակամոս Լիսինիոյ» (№ 1903, էջ 34ա, տես նաև № 1490, էջ 27ա)։ Իսկ կանոնագրքի ունեցած «Գրամիւս յՆմովնէ» նշումը չի պահվել №№ 1905 և 1490 ձեռագրերում։*

*Նման շեղումներ տես նաև Միջագետքից, Իսավրիայից և մի քանի այլ կողմերից եկածների ցանկերում։ Այդ տարբերությունները, ըստ երևույթին, պետք է բացատրել մասնակիցների ցանկերի տարբեր խմբագրությունների, օգտագործման փաստով։*

## ԱՆԿՅՈՒՐԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 151: *Համեմատությունների համար չօգտագործված մի քանի ձեռագրերում այս վերնագիրն ունի տարբերակներ, օրինակ. «Անկիւռեա կանոնին գլուխ Ի (№ № 648, էջ 12բ, 3562, էջ 282ա), «Անկիւրոեա կանովք (№ 649՝ կանոնք) գլուխք Ի» (№ № 649, էջ 32ա, 650, էջ 36ա, 651, էջ 24բ, 2964, էջ 45բ), «Կանոն Անկիւրիոյ, զոր եդին սուրբ հարքն» (№ 3369, էջ 40բ):*

Ցանկ, էջ 151—152: *Վերևում նշված ձեռագրերը ցանկ չունեն: № 059 ձեռագրում եղած ցանկը, քանի որ տրված է այլ կանոնախմբերի ցանկերի հետ միասին, այստեղ չենք նշի, հետաքրքրվողները կարող են այն գտնել վերևում, էջ 561—562: Մի այլ՝ № 657 ձեռագրում Կեսարիայի, Անկյուրիայի, Նեոկեսարիայի, Նիկիայի հաջորդականությամբ կազմված է այդ ժողովների որոշումներից վերցված 31 հոդվածների վերնագրերի ցանկ, յուրաքանչյուր կանոնախմբից վերցնելով լրիվ կամ մի քանի, նույնիսկ մեկ հոդվածի վերնագիր: Ահա այդ ցանկը իր վերնագրով.*

*«Նիկայ կանոնացն*

*ա. Վասն խոստանալոյ կուսութեան:*
*բ. Վասն ընդ արամբ շնալոյ:*
*գ. Վասն այրեաց մնացելոց:*
*դ. Վասն կուսանաց:*
*ե. Վասն կանանց պոռնկաց:*
*զ. Վասն պոռնկաց և սպանողաց:*
*է. Վասն ակամայ սպանողաց:*
*ը. Վասն դիւթից:*
*թ. Վասն չար կախարդաց:*
*ժ. Վասն երիցանց:*
*ժա. Վասն աշխարհականաց:*
*ժբ. Վասն բռնութեամբ զոհելոյ:*
*ժգ. Վասն ի տունս հեթանոսաց:*
*ժդ. Վասն խառնակեցան եւ կերան:*
*ժե. Վասն որ չհեռացան ի զոհելոյ:*
*ժզ. Վասն ուտելոյ զհեթանոսաց:*
*ժէ. Վասն աղջկան խօսելոյ:*
*ժը. Վասն կնոջ երկուց եղբարց:*
*ժթ. Վասն ցանկանալոյ կնոջ:*
*ի. Վասն երկրորդաց:*
*իա. Վասն միւսն կուս էցէ եւ միւսն ոչ:*
*իբ. Վասն երրորդացն:*
*իգ. Վասն չորրորդացն:*
*իդ. Վասն արձակելոյ զկին:*
*իե. Վասն ոչ վասն պոռնկութեան:*
*իզ. Վասն քահանայի կնոջ:*
*իէ. Վասն պղծութեան քահանայի:*
*իը. Վասն կարգի քահանայից:*
*իթ. Վասն որ ի նեղութիւն անկանին եւ մկրտին:*
*լ. Վասն գողոց մարդասպանաց:*
*լա. Վասն արուագիտաց» (էջ 100բ—100ա):*

*Այս հաջորդականությամբ էլ ձեռագրում դասավորված են հոդվածները: Առանձին հոդվածների մասին կխոսվի իր տեղում, սակայն, այստեղ ցանկանում ենք նշել № 657 ձեռագրում պահված Անկյուրիայի կանոնախմբի հոդվածների հաջորդականության մասին. եթե նկատի ունենանք Կանոնագրքի ներկա հրատարակության մեջ պահված Նիկիայի, Անկյուրիայի, Կեսարիայի և Նեոկեսարիայի կանոնախմբի հոդվածների հաջորդականությունը, ապա № 657 ձեռագրում եղածը կունենա հետևյալ պատկերը:*

| | Կանոնագիրք | № 657 |
|---|---|---|
| Նիկիա | ԺԸ հոդված | ԼԱ հոդված |
| Անկյուրիա | Ա, Բ " | Ժ " |
| | Գ " | ԺԱ " |
| | Դ " | ԺԲ " |
| | Ե, Զ " | (չունի) |

| | | | | |
|---|---|---|---|---|
| | Է | հոդված | ԺԳ | հոդված |
| | Ը | „ | ԺԴ | „ |
| | Թ | „ | ԺԵ | „ |
| | Ժ | „ | ԺԶ | „ |
| | ԺԱ—ԺԹ | „ | (չունի) | |
| | Ի | „ | Ա | հոդված |
| Կեսարիա | Ա | „ | Բ | „ |
| | Բ | „ | Գ | „ |
| | Գ | „ | Ե | „ |
| | Դ | „ | Զ | „ |
| | Ե | „ | Է | „ |
| | Զ | „ | Գ | „ |
| | Է | „ | Ը | „ |
| | Ը | „ | Թ | „ |
| | Թ | „ | ԺԷ | „ |
| | Ժ | „ | Լ | „ |
| Նեոկեսարիա | Ա | „ | (չունի) | |
| | Բ | „ | ԺԸ | հոդված |
| | Գ | „ | (չունի) | |
| | Դ | „ | ԺԹ | հոդված |
| | Ե, Զ | „ | (չունի) | |
| | Է | „ | Ի | հոդված |
| | Ը | „ | ԻԱ | „ |
| | Թ | „ | ԻԲ | „ |
| | Ժ | „ | ԻԳ | „ |
| | ԺԱ | „ | ԻԴ | „ |
| | ԺԲ | „ | ԻԵ | „ |
| | ԺԳ | „ | ԻԶ | „ |
| | ԺԴ | „ | ԻԷ | „ |
| | ԺԵ | „ | (չունի) | |
| | ԺԶ | „ | ԻԸ | հոդված |
| | ԺԷ | „ | ԻԹ | „ |
| | ԺԸ, ԺԹ, Ի | հոդված | (չունի) | |

*Այսպիսով, Նիկիայի ժողովից վերցված է մեկ հոդված, Անկյուրիայից՝ 8, Կեսարիայից՝ 16, Նեոկեսարիայից՝ 12։ Իհարկե այս բոլորը կապ չունի կանոնագրքի սկզբնական կառուցվածքի հետ և կատարվել է հետագայում, ուրիշների կողմից։*

Երկրորդ վերնագիր *և առաջաբան,* էջ 152—153։ *Այս չունեն №№ 648, 649, 650, 651, 657, 659, 2964, 3369, 3562 ձեռագրերը։*

Հոդ. Ա, էջ 154 (հուն. հոդ. 1, էջ 441)։ Πρεσβυτέρους τοὺς ἐπιθύσαντας, εἶτα ἐπαναπαλαισαντας (տ. Σύν., III, ἀναπαλαισαντας), μήτε ἐκ μεθοδου τινος ἀλλ' ἐξ ἀληθείας, μήτε προκατασκευασαντας καὶ ἐπιτηδεύσαντας καὶ πείσαντας, ἵνα δοξωσι μὲν βασανοις ὑποβαλλεσθαι, ταύτας δὲ τῷ δοκεῖν καὶ τῳ σχηματι προσαχθῆναι· τούτους ἔδοξε τῆς μὲν τιμῆς τῆς κατα τὴν καθέδραν μετέχειν, προσφέρειν δὲ αὐτούς, ἡ ὁμιλεῖν, ἡ ὁλως λειτουργεῖν τι των ἱερατικῶν λειτουργιῶν μὴ ἐξειναι".

*Հայերենը ոչ թե հունարենի թարգմանությունն է, այլ վերջինիս մոտի ճիշտ վերաշարադրումը։*

Հոդ. Բ, էջ 154 (հուն. հոդ. 2, էջ 441—442)։ „Διακονους ὁμοιως θύσαντας, μετα δὲ ταῦτα αναπαλαίσαντας, την μὲν ἄλλην τιμην ἔχειν, πεπαῦσθαι δὲ αὐτοὺς πασης της ιερας (տ. L., ιερατικῆς) λειτουργιας, τῆς τε τοῦ ἄρτον ἡ ποτήριον ἀναφέρειν, ἡ κηρυσσειν. Εἰ μέντοι τινὲς τῶν ἐπισκοπων τουτοις συνείδοιεν καματον τινα ἡ ταπεινωσιν πραοτητος, και ἐθέλοιεν πλεῖον τι διδοναι ἡ ἀφαιρειν, ἐπ' αὐτοῖς ειναι την ἐξουσίαν".

*Այս հոդվածը ևս թարգմանություն չէ, այլ հունարենի մոտիկ վերաշարադրումն է ճշտությամբ։*

*№№ 659, 657 ձեռագրերում այս հոդվածը միացված է նախորդին։*

Հոդ. Գ, էջ 154—155 (հուն. հոդ. 3, էջ 442). „Τοὺς φευγοντας καὶ συλληφθέντας, ἡ ὑπο οἰκείων παραδοθέντας, ἡ ἄλλω τα ὑπαρχοντα ἀφαιρεθέντας, ἡ ὑπομείναντας βασανους, ἡ εἰς δεσμωτηριον ἐμβληθέντας, βοῶντας τε ὀτι εισὶ χριστιανοὶ, καὶ περισχισθέντας, ἤτοι εἰς τας χεῖρας πρὸς βιαν ἐμβαλλοντων τῶν βιαζομένων, ἡ βρωμα τι προς ἀναγκην δεξαμένους, ὁμολογουντας δὲ διόλου ὀτι εἰσὶ χριστιανοί, καὶ το πένθος τοῦ συμβαντος αεὶ ἐπιδεικνυμένους τῇ πασῃ καταστολῃ καὶ τῷ σχήματι, καὶ τῃ τοῦ βίου ταπεινοτητι, τούτους, ὡς ἔξω ἁμαρτήματος ὀντας, τῆς κοινωνιας μὴ

κωλύεσθαι. Εἰ δὲ καὶ ἠκολούθησαν ὑπό τινων (ու. L. τινος) περισσοτέρας ἀκριβείας ἕνεκεν ἢ καὶ τινων ἀγνοίᾳ, εὐθὺς προσδειχθῆναι. Τοῦτο δὲ ὁμοίως ἐπί τε τῶν ἐκ τοῦ κλήρου καὶ τῶν ἄλλων λαϊκῶν. Προσεξητάσθη δὲ κἀκεῖνο, εἰ δύνανται καὶ λαϊκοὶ τῇ αὐτῇ ἀνάγκῃ ὑποπεσόντες προσάγεσθαι (ու. Συν. III. L.. προάγεσθαι) εἰς τάξιν. Ἔδοξεν οὖν καὶ τούτους, ὡς μηδὲν ἡμαρτηκότας, εἰ καὶ ἡ προλαβοῦσα εὑρίσκοιτο ὀρθὴ τοῦ βίου πολιτεία, προχειρίζεσθαι".

Հայերենը հունարենի շատ համառոտ վերաշարադրումն է։ № 659 ձեռագրում բացակայում է «վասն… եկեղեցւոյ» հատվածը։ Իսկ մի քանի ձեռագրերում չի պահվել հոդվածի վերջին՝ «եւ մանաւանդ թէ առաջին… մեծ ժողովոյն» մասը (№ № 648, էջ 13ա, 649 էջ 32ա, 650 էջ 30ա, 651 էջ 25ա, 2964 էջ 46բ, 3369 էջ 41ա, 3562 էջ 282բ)։ Վերջին հատվածը՝ «կամ եղեւ մեծ ժողովոյն» № № 659, 657 ձեռագրերը չունեն (էջ 75ա, էջ 102ա),

Հոդ. Դ, էջ 155 (հուն. հոդ. 4, էջ 443)։ „Περὶ τῶν πρὸς βίαν θυσάντων, ἐπὶ δὲ τούτοις καὶ τῶν δειπνησάντων εἰς τὰ εἴδωλα· ὅσοι μὲν ἀπαγόμενοι, καὶ σχήματι φαιδροτέρῳ ἀνῆλθον, καὶ ἐσθῆτι ἐχρήσαντο πολυτελεστέρᾳ, καὶ μετέσχον τοῦ παρασκευασθέντος δείπνου ἀδιαφόρως, ἔδοξεν ἐνιαυτὸν ἀκροᾶσθαι, ὑποπεσεῖν δὲ τρία ἔτη, εὐχῆς δὲ μόνης κοινωνῆσαι ἔτη δύο, καὶ τότε ἐλθεῖν ἐπὶ τὸ τέλειον".

Հայերենը հունարենի ճիշտ վերաշարադրումն է։ № № 648, 649, 650, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերում չեն պահվել Դ, Ե, Զ հոդվածները։ № 657 ձեռագիրը չունի միայն Դ հոդվածը։

Հոդ. Ե, էջ 156։ № 659 ձեռագրում չեն պահվել Ե և Զ կանոնները։

Հոդ. Է, էջ 157—158, (հուն. հոդ. 7, էջ 444)։ Հայերենը համապատասխանում է հունարենին, միայն առաջինը մի փոքր ընդարձակ է. օրինակ՝ հունարենը չունի հայերենում եղած մեջբերումը։

Հոդ. Ը, 158—159 (հուն. հոդ. 8, էջ 444)։ Հայերենը մի փոքր ընդարձակ է հունարենից, բայց վերջինիս միտքն արտահայտում է լրիվ։

Հոդ. Թ, 159—160 (հուն. հոդ. 9, էջ 444)։ Հայերենը բավական ընդարձակ է, համեմված Աստվածաշնչից վերցրած մեջբերումներով։

Հոդ. Ժ, էջ 160—161։ Այս հոդվածը հունարենը չունի։ Հոդվածի՝ «ուխտի սրբոյ եկեղեցւոյ» փոխարեն № 3369 ձեռագրում կարդում ենք. «առաջի խոգի սեղանոյ սրբոյ» (էջ 41բ)։ Այս պատահական սխա՞լ է, թե թերահավատ մարդու հեգնանք։

Հոդ. ԺԱ, էջ 161—162 (հուն. հոդ. 10, էջ 445)։ Հայերենը թեև ճիշտ է արտահայտում հունարենի միտքը, բայց ունի հատվածներ, որոնք հունարենում չենք գտնում, դա հատկապես վերաբերում է պատժի չափերին։ Այս հատվածները ցույց թարգմանիչի տեսակետն են արտահայտում կապված տեղի պայմանների կամ տեղերում արդեն հաստատված կարգի հետ։

№ 657 ձեռագրում չեն պահվել ԺԱ—ԺԹ հոդվածները։

Հոդ. ԺԲ, էջ 162—163 (հուն. հոդ. 11, էջ 445)։ Հայերենը միանգամայն ճիշտ է թարգմանված, միայն հունարենի վերջին εἰ καὶ βίαν ὑπ' αὐτῶν πάθοιεν հատվածը հայերենում դրված է «եւ թէ ի բռնութիւն ապստամբ իցէ՝ մի՛ թողցեն» ձևով։

№ № 648, 649, 650, 651, 659, 2964, 3369, 3562 ձեռագրերում չեն պահվել ԺԲ, ԺԳ, ԺԴ հոդվածները։

Հոդ. ԺԴ, էջ 163 (հուն. հոդ. 13, էջ 445)։ Հայերենի սկզբի մասը մինչև «կամ թըղթով»՝ միանգամայն համապատասխանում է հունարենին, միայն «կամ բանիւք» բառերի փոխարեն հունարենն ունի ἐν ἑτέρᾳ παροικίᾳ. իսկ հոդվածի մնացած մասը, սկսած «բանգի յայնժամ»-ից մինչև հոդվածի վերջը, կապ չունի հունարեն բնագրի հետ և ավելացվել է հավանաբար թարգմանչի կողմից, որպես բացատրություն հունարեն χωρεπίσκοπος (քորեպիսկոպոս) բառի. բնագրի «զի քորեպիսկոպոսդ տեսուչ գաւառի ասի ըստ Հոռոմին» (ընդգծումը մերն է Վ. Հ.) բառերը հենց այդ են հաստատում։

Հոդ. ԺԵ, էջ 163—164 (հուն. հոդ. 14, էջ 445)։ Հայերենը համապատասխանում է հունարենին, միայն հունարենը չունի հայերենի «ընդունին կանոնքս զերկոսին» հատվածը։ Իսկ հունարենի վերջին καὶ εἰ μὴ ὑπείκοιεν τῷ κανόνι հատվածը հայերենը չունի։ Այդ հատվածը պետք է լիներ բնագրի «իցէ ոչ» բառերի միջև։ Հենց այսպես էլ պահվել է № 659 ձեռագրում «մսոտ իցէ եւ ստունգանեսցէ կանոնիս ոչ ընդունի» (էջ 69բ—70ա)։ Տարբեր է նաև πεπαῦσθαι αὐτοὺς τῆς τάξεως (թող իր աստիճանից զրկվի) հատվածի թարգմանությունը։

Հոդ. ԺԶ, էջ 164 (հուն. հոդ. 15, էջ 446)։ *Հայերենը չունի հունարենի միայն վերջին՝* δια το πολλακις την προσοδον των πεπραμένων αποσεδωκεναι αυτοῖς τουτοις πλείονα την τιμην *մասը, մնացածը նույնն է։ №№ 648, 649, 650, 651, 659, 2964, 3369, 3562 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։*

Հոդ. ԺԷ, 164—165 (հուն. հոդ. 16, էջ 446)։ „Περὶ των αλογευσαμένων η και αλογευσαμένων· οσοι πρὶν εικοσαετεῖς γενέσθαι, ήμαρτον, πέντε καὶ δέκα ετεσιν υποπεσοντες, κοινωνιας τυγχανέτωσαν της εις τας προσευχάς. Εἶτα ἐν τη κοινωνια διατελέσαντες ἔτη πεντε, τοτε καὶ της προσφορας ἐφαπτέσθωσαν. Ἐξεταζέσθω δὲ αυτων καὶ ο ἐν τη υποπτωσει βίος, καὶ ουτως τυγχανέτωσαν της φιλανθρωπίας. Εἰ δὲ τινες κατακορως ἐν τοῖς αμαρτημασι γεγόνασι, την μακραν ἐχετωσαν υποπτωσιν. Ὅσοι δὲ υπερβαντες την ηλικίαν ταυτην, καὶ γυναῖκας ἔχοντες περιπεπτωκασι τω αμαρτήματι, πεντε καὶ εἴκοσιν ετη υποπεσοντες, κοινωνιας τυγχανέτωσαν τῆς εις τας προσευχας, εἶτα ἐκτελέσαντες πέντε ἔτη ἐν τη κοινωνία των ευχῶν, τυγχανέτωσαν της προσφορας. Εἰ δὲ τινες καὶ γυναῖκας ἔχοντες, καὶ υπερβαντες τον πεντηκονταετη χρονον ημαρτον, ἐπὶ τη ἐξοδω τοῦ βίου τυγχανέτωσαν της κοινωνίας".

*Հայերենը մի փոքր ընդարձակ է և զգալի շեղումներ ունի հունարենից, թեև վերջինիս միտքն ընդհանուր առմամբ ճիշտ է տրված հայերենում։*

Հոդ. ԺԸ, էջ 165 (հուն. հոդ. 17, էջ 446)։ „Τους αλογευσαμένους καὶ λεπρους οντας, ήτοι λεπρώσαντας, τουτους προσέταξεν η αγια συνοδος, εις τοὺς χειμαζομένους ευχεσθαι".

*Հայերենն ավելի ընդարձակ է և պարզեցված, իսկ հուն.-ի վերջին մասը տարբեր է։ Հուն.* τους χειμαζομένους *բառի մասին Ն. Մելիք-Թանգյանը գրում է. «Ցունաց մեկնիչները զանազանակերպ են հասկանում դիւահար խոսքը. ոմանք ըմբռնում են իսկական մտքով, այսինքն այնպիսի անձինք, որոնք ոգիներով լիքն են, այնպիսի հիւանդութիւն ունին, որ ներս թողնել եկեղեցին չի կարելի. ոմանք հասկանում են իբրև դրսի ունկնդիրներ, որոնք չնայելով անձրևին, քամուն, պիտի կանգնէին և աղօթէին» (Հայոց եկեղեցական իրաւունքը, Ա գիրք, էջ 189)։*

*№№ 648, 649, 650, 651, 659, 2964, 3369, 3562 ձեռագրերում ԺԸ և ԺԹ հոդվածները չեն պահվել։*

Հոդ. ԺԹ, էջ 166 (հուն. հոդ. 18, էջ 447)։ *Հայերենի «և կալել յեկեղեցւոյ», ինչպես նաև վերջին «զի ամենայն ոք գիտակ լինիցի» հատվածները հունարենը չունի. մնացածը համապատասխանում է վերջինիս։*

Հոդ. Ի, էջ 166—167 (հուն. հոդ. 19, էջ 447)։ *Հայերենը ընդարձակ է, որի սկզբի և վերջի մասերում է արտահայտված հունարենի միտքը. իսկ մնացած մասը հունարենը չունի։*

*№ 657 ձեռագրում չի պահվել կանոնագրքում եղածի վերջին «այլ վասն... զի մի՛ եւս լիցին» հատվածը (էջ 101ա)։*

*Հունարենի հաջորդ՝ 20, 21, 22, 23, 24, 25-րդ հոդվածները Կանոնագրքի սույն կանոնախմբում բացակայում են, դրանք սովորաբար գրված են Կեսարիայի կանոնախմբի հոդվածների շարքում (տես ներքևում, էջ 573—574)։*

## ԿԵՍԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 168: *Այս վերնագիրը № 659 ձեռագիրը չունի, բայց ձեռագրի բովանդակած նյութերի ցանկում Կեսարիայի ժողովի կանոնախումբը անվանված է «Ժ. Տասն պատգամքն» (էջ 1բ)։ № № 649, 650, 2964 ձեռագրերի ցանկի վերնագրում թեև նշված է «Գլուխք Ժ», իսկ № 651-ում՝ «Գլուխք Ի», բայց իրականում բերված են յոթ հոդվածներ, մինչդեռ № № 648, 3562 ձեռագրերում նշված է ուղղակի «Գլուխք Է», այնքան, որքան հոդված բերվում է բնագրում։ Սակայն № 3369 ձեռագրում ցանկի վերնագիրն այսպես է. «Կանոն Կեսարիայ զոր եդին սուրբ հարքն մեր» (էջ 43ա)։*

Ցանկ և առաջաբան, 168—169: *№ № 648, 649, 650, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերը չունեն ցանկը և առաջաբանը։ Առաջաբանը չունեն նաև № № 657, 659 ձեռագրերը, սակայն ցանկը, ինչպես արդեն նշել ենք վերևում (էջ 561—562) Կեսարիայի ժողովի կանոնախմբին անմիջապես չի նախորդում, այլ թեև լրիվ, մի քանի այլ կանոնախմբերի հոդվածների վերնագրերի հետ, գրված է Նիկիական ժողովի կանոնախմբի ցանկում։ Թե կանոնագրքում պահված այս կանոնախմբի հոդվածների վերնագրերի ցանկի և բուն հոդվածների հաջորդականությունը ինչքանով է համապատասխանում № № 657, 659 ձեռագրերի ունեցածներին, դարձյալ ցույց ենք տվել վերևում (էջ 569—570)։*

Հոդ. Ա, էջ 169 (Անկյուրիա, հուն. հոդ. 20, էջ 447): *Այս կանոնախմբի հունարեն բնագիր գոյություն չունի։ Եվ ընդհանրապես Կեսարիայի ժողովի կանոնագրքում գտնվող կանոնների ինքնության հարցը երկրայելի է, թեև այլ օրակարգով Կեսարիայում ժողով լինելու մասին կան տեղեկություններ, օրինակ, մինչև Գանգրայի ժողովը Կեսարիայի մի ժողովում նզովել են Սեբաստիայի եպիսկոպոս Եվստաթեոսին (տես «Սոկրատայ Սքոլաստիկոսի եկեղեցական պատմութիւն», Ա, էջ 205—206, կարդա նաև Հեֆելեի* Conciliengeschichte, Erster Band, § 48, *էջ 442—443)։*

*Վերևում նշեցինք (էջ 572), որ Անկյուրիայի ժողովի 20—25-րդ կանոնները չեն պահվել կանոնագրքի Անկյուրիայի կանոնախմբի բնագրում, այլ արտահայտվել են Կեսարիայի կանոնախմբի մի քանի կանոններում։*

*Կանոնագրքի Կեսարիայի ժողովի Ա կանոնը Անկյուրիայի ժողովի հունարեն բնագրի 20-րդ հոդվածն է, թեև հայերենը մի փոքր ընդարձակ է և զգալի տարբերություններ ունի վերջինիս նկատմամբ։ Հայերենի ներկա հոդվածը մեծ չափով խմբագրման է ենթարկվել։ Ահա հուն.-ը.* „'Εάν τινος γυνή μοιχευθῇ, ἢ μοιχεύσῃ τις, ἐν ἑπτὰ ἔτεσιν δεῖ αὐτὸν τοῦ τελείου τυχεῖν, κατὰ τοὺς βαθμοὺς τοὺς προάγοντας“.

Հոդ. Բ, էջ 169—170: *Հունարենի բնագրում (Անկյուրիա) այս հոդվածը չենք գտնում, բայց քանի որ կանոնագրքի Անկյուրիայի ժողովի ԺԲ (հուն. հոդ. 11-րդ) հոդվածը առևանգված աղջիկների մասին է, իսկ Կեսարիայի Ա հոդվածը (Անկյուրիայի հուն. հոդ. 20-րդ)՝ ամուսնացածների, կարելի է ենթադրել, որ սա էլ այս երկու հոդվածների շարունակությունն է, այստեղ խոսվում է նշանված աղջիկների մասին։*

*№ 3369 ձեռագրում այս հոդվածը, հակառակ կանոնագրքում եղածի, շարադրված է հոգնակի թվով, օրինակ «շնացան», «կոչեսցին» և այլն։*

Հոդ. Գ, էջ 170 (Անկյուրիա, հուն. հոդ. 21 էջ 447): *Հայերենը հունարենի նկատմամբ ունի փոքրիկ շեղումներ. օրինակ, հայերենը սահմանում է երկամյա պատիժ 5-ական տարով, իսկ հուն.-ը մեկ անգամից 10 տարի։*

*Հոդվածի երկրորդ մասում № 659 ձեռագիրն ունի փոքր շեղում, ահա այն. «Բայց երկրորդս վասն մարդասիրութեան կամ եդև մեծ ժողովոյն Ժ ամ ընդ պատժաւք լինել ընդ*

*ունկնդիրսն, իսկ վասն պոռնկութեանն Ե ամ ես ընդ ձեռամբ առ դրանն տրովք ողորմութեամբ սրբեսցի և հաղորդեսցի աւրինաց» (էջ 72աբ)։*

Հոդ. Դ, էջ 170 (Անկյուրիա, Ճուն. Ճող. 22, էջ 447)։ „Περὶ ἑκουσίων φόνων. ὑποπιπτέτωσαν μέν. τοῦ δὲ τελείου ἐν τῷ τέλει τοῦ βίου καταξιούσθωσαν".

*Հունարենում խոսքը նախամտածված սպանության մասին է և հակառակ հայերենի՝ բավական սեղմ է։*

Հոդ. Ե, էջ 170—171 (Անկյուրիա, Ճուն. Ճող. 23. էջ 448)։ *Հայերենն ընդարձակ է. օրինակ, վերջինիս «և ոչ գիտութեամբ... եւ ընկերացն» հատվածը հուն.-ը չունի, այդպես նաև վերջին «ընդ ապաշխարողս...֊ հաղորդեսցի աւրինաց» հատվածը։ Սակայն, հուն.-ի միտքը ամբողջովին արտահայտված է հայերենում։*

Հոդ. Զ, էջ 171։ *Հունարենը չունի այս հոդվածը։ Վերջինս թերևս կարելի է Անկյուրիայի ժողովի հուն. բնագրի 20-րդ հոդվածի լրացում համարել (տես վերևում, էջ 573)։ Հունարենում խոսքը ամուսնացածների մասին է, իսկ հայերենում այրիների։ Մի քանի ձեռագրերում այս հոդվածը բերված է բավական համառոտ. «Զ. Ոյք այրիք մնացեալ իցեն յետ ամաց ինչ կամ բնաւ առն չիցէ լեալ և ի մեղս անկանիցին ի պոռնկութիւն՝ Գ ամ ընդ ունկնդիրս եւ Բ ամ ընդ ապաշխարողս մտեալ յեկեղեցի և ելցեն։ Ապա թէ ի նոյն մեղս թաւալին՝ Է ամ ապաշխարեսցեն» (№ 648 էջ 15ա, հմմտ. №№ 649, էջ 35աբ, 650, էջ 39բ, 651, էջ 27բ, 2964, էջ 50բ, 3562, էջ 285)։ Իսկ № 3369 ձեռագրում «եւ գթով տնանկաց... եւ գլոյս բարեաց անդադար սփռեսցէ» հատվածը չի պահվել։*

Հոդ. Է, Ը, էջ 172—173 (Անկյուրիա, Ճուն. Ճող. 24, էջ 448)։ „Οἱ καταμαντευόμενοι καὶ ταῖς συνηθείαις τῶν ἐθνῶν ἐξακολουθοῦντες, ἢ εἰσάγοντές τινας εἰς τοὺς ἑαυτῶν οἴκους ἐπὶ ἀνευρέσει φαρμακειῶν, ἢ καὶ καθάρσει, ὑπὸ τὸν κανόνα πιπτέτωσαν τῆς πενταετίας κατὰ τοὺς βαθμοὺς ὡρισμένους· τρία ἔτη ὑποπτώσεως, καὶ δύο ἔτη εὐχῆς, χωρὶς προσφορᾶς".

*Հայերենն ընդարձակ է և ունի շեղումներ, ըստ երևույթին հայերենը թարգմանություն չէ, այլ խմբագրված։ Իսկ Ը հոդվածը նախորդի շարունակությունն է, որ չենք գտնում Անկյուրիայի ժողովի հունարեն բնագրում։*

*Այս հոդվածները չեն պահվել №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում, իսկ № 3369 ձեռագրում դրանք թեև կան, բայց հոդվածների հաջորդականությունը տարբեր է, օրինակ. Կանոնագրքի ունեցած Է հոդվածը այստեղ դրված է Ը համարի տակ, Ը-ն՝ Թ-ի, Թ-ն՝ Ը-ի։*

Հոդ. Թ., էջ 173—174 (Անկյուրիա, Ճուն. Ճող. 25, էջ 448)։ *Հայերենը մի փոքր ընդարձակ է, մանավորապես «իսկ վասն» հատվածից հետո կան լրացումներ։ Իսկ հունարենի միտքն արտահայտված է հայերեն հոդվածի առաջին մասում։*

Հոդ. Ժ, էջ 174—176։ *Այս հոդվածը ևս չի պահվել հունարենում և №№ 648, 619, 656, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերում։ Ըստ էության սա կանոն չէ, այլ խրատ զղջության, մարդասպանության և նման բաների մասին։*

## ՆԵՈԿԵՍԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 177: *Համեմատությունների համար չօգտագործված ձեռագրերից մի քանիսում այս վերնագիրն ունի տարբերակներ, օրինակ, «Նիոյկեսարեա կանոնք գլուխք» (№ № 648, էջ 15բ, 3582, էջ 286ա), «կանոն (№ 650՝ կանոնք) Նիոյկեսարոյ գլուխք (№ 2964՝ գլուխ) Ի» (№ № 650, էջ 39բ, 651, էջ 28ա, 2964, էջ 31ա), «Նեոկեսարեա կանոնին գլուխք Ի» (№ 649, էջ 35բ), «Կանոնք Նոյնոյկեսարիոյ զոր եդին սուրբ հարքն մեր» (№ 3369, էջ 44բ)։*

Ցանկ, էջ 177—178: *№ № 848, 649, 650, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերը չունեն ցանկը և երկրորդ վերնագիրը: Իսկ երկու ձեռագիր՝ № № 659, 657 ունեն այդ ցանկը, սակայն այն միահյուսված է այլ կանոնախմբերի ցանկերի հետ (տես վերևում՝ № 659 ձեռագրի ցանկի համար, էջ 561--562, № 657 ձեռագրի ցանկի համար, էջ 569—570)։ № 659 ձեռագրի ցանկում նշված են 12 հոդվածների վերնագրեր, յոթ հոդվածների վերնագրեր չկան, իսկ երկու հոդվածի վերնագիրն էլ՝ ԺԴ, ԺԵ, գրված է ԺԴ վերնագրի տակ. նույնն էլ հանդիպում ենք 657 ձեռագրում, միայն թե այստեղ տարբեր է հոդվածների համարակալումը: Օ ձեռագրում ցանկը ունի հետևյալ հաջորդականությունը.*

| *Կանոնագիրք* | Օ *ձեռագիր* | *Կանոնագիրք* | Օ *ձեռագիր* |
|---|---|---|---|
| Ա | Ա | ԺԱ | Ը |
| Բ | Բ | ԺԲ | Թ |
| Գ | ԺԸ | ԺԳ | Ժ |
| Դ | ԺԹ | ԺԴ | ԺԱ |
| Ե | Ի | ԺԵ | ԺԲ |
| Զ | Գ | ԺԶ | ԺԳ |
| Է | Դ | ԺԷ | ԺԴ |
| Ը | Ե | ԺԸ | ԺԵ |
| Թ | Զ | ԺԹ | ԺԶ |
| Ժ | Է | Ի | ԺԷ |

*Սակայն բուն ձեռագրում, հոդվածների հաջորդականությունը համապատասխանում է կանոնագրքի ունեցածին և ոչ թե իր ցանկի հաջորդականությանը:*

Առաջաբան, էջ 179: *№ № 659, 657 ձեռագրերը չունեն առաջաբան, իսկ մի շարք ձեռագրերում այն համառոտ է. «Այս կանոնք յետոյ եղան քան որ յԱնկիւրեայն, բայց քան զնիկիայն յառաջագոյն է. քանզի ժողովեալ ի Նիոյկեսարեան եպիսկոպոսք ԺԶ, վասն պոռնկական աղանդոյն, որ թոյլ տային քահանայից վասն պղծության գործոյ» (№ 646, էջ 15բ, հմմտ. նաև № № 649, էջ 35բ, 650, էջ 39բ, 651, էջ 28ա, 2964, էջ 51ա, 3369, էջ 44բ, 3562, էջ 285ա)։*

Հոդ. Ա, էջ 179 (ճուճ. ճոդ. 1, էջ 451): *Հայերենը հուն.-ին համապատասխանում է, միայն տարբեր է սկիզբը: Հուն.-ի* πρεσβύτερος ἐὰν γήμῃ, τῆς τάξεως αὐτὸν μετατίθεσθαι *(երեցը եթե ամուսնացած է թող վտարվի իր աստիճանից) հատվածի դիմաց կանոնագրքում կարդում ենք «Երէց այր եթէ ամուսնաւ իցէ՝ ընդունելի լիցի ի կարգս»։*

*№ № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում չի պահվել Ա, Բ, Գ հոդվածները: Այս կանոնախումբը նշված ձեռագրերում սկսվում է կանոնագրքի Դ հոդվածով: № № 659, 657 ձեռագրերում չեն պահվել Ա հոդվածը: Իսկ № 3369 ձեռագրում թեև բոլոր հոդվածները կան, սակայն հոդվածների հաջորդականությունը տարբեր է.*

| Կանոնագիրք | № 3369 | Կանոնագիրք | № 3369 |
|---|---|---|---|
| Առաջաբան | Ա հոդված | ԺԱ հոդված | Թ հոդված |
| Ա հոդված | ԺԵ " | ԺԲ " | Թ, ԺԸ " |
| Բ " | ԺԶ " | ԺԳ " | Ժ " |
| Գ " | ԺԷ " | ԺԴ " | ԺԱ " |
| Դ " | Բ " | ԺԵ " | ԺԹ " |
| Ե " | Դ " | ԺԶ " | ԺԲ " |
| Զ " | Գ " | ԺԷ " | ԺԳ " |
| Է " | Ե " | ԺԸ " | ԺԳ " |
| Ը " | Զ " | ԺԹ " | Ի " |
| Թ " | Է " | Ի " | ԻԱ " |
| Ժ " | Ը " | | |

Հոդ. Բ, էջ 179—180 (հուն. հոդ. 2, էջ 451)։ „Γυνὴ ἐὰν γήμηται δύο ἀδελφοῖς, ἐξωθείσθω μέχρι θανάτου, πλὴν ἐν τῷ θανάτῳ εἰποῦσα, ὡς ὑγιάνασα λύσει τὸν γάμον, διὰ τὴν φιλανθρωπίαν (տ. Συν., III, L., διὰ τὴν φιλανθρωπίαν εἰποῦσα, ὡς ὑγιάνασα λύσει τὸν γάμον) ἕξει τὴν μετάνοιαν. Ἐὰν δὲ τελευτήσῃ ἡ γυνὴ ἐν τοιούτῳ γάμῳ οὖσα, ἤτοι ὁ ἀνήρ, δυσχερὴς τῷ μείναντι ἡ μετάνοια".

*Հայերենը ընդհանուր առմամբ արտահայտում է հունարենի միտքը, թեև առավել ընդարձակ է։*

Հոդ. Գ, էջ 180 (հուն. հոդ. 3, էջ 451)։ *Բացի «Թէ փութութեամբ ինչ իցեն» հատվածից, որը չի պահվել հունարենում, մնացածը բառացի համապատասխանում է վերջինիս։*

*№ № 657, 659 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։*

Հոդ. Դ. էջ 180—181 (հուն. հոդ. 4, էջ 452)։ *Բացի «սրտիւ ահա շնացաւ ըստ Աւետարանին» հատվածից, որը հունարենը չունի, մնացածը բառացի համապատասխանում է վերջինիս։ № 3369 ձեռագրում չի պահվել «բայց գործոյն ի գլուխ չերթալն յայտ է թէ ի շնորհաց անտի պահեցաւ» հատվածը։*

Հոդ. Ե, էջ 181 (հուն. հոդ. 5, էջ 452)։ „Κατηχούμενος ἐὰν εἰσερχόμενος εἰς τὸ κυριακὸν ἐν τῇ τῶν κατηχουμένων τάξει στήκῃ, οὗτος δὲ φανῇ ἁμαρτάνων (տ. Συν., III, իր φανῇ, ἁμαρτάνῃ), ἐὰν μὲν γόνυ κλίνων, ἀκροάσθω μηκέτι ἁμαρτάνων. Ἐὰν δὲ καὶ ἀκροώμενος ἔτι ἁμαρτάνῃ, ἐξωθείσθω".

*Հայերենը թարգմանություն չէ, այլ վերաշարադրված է և խմբագրված։ № 637 ձեռագրում Ե և Զ հոդվածները չեն պահվել։*

Հոդ. Զ, էջ 181 (հուն. հոդ. 6, էջ 452)։ *Հայերենի վերջին «առ ի խոստովանութիւն ընդունելութեան մկրտութեանն» հատվածը հունարեն չունի. մնացածը բառացի համապատասխանում է վերջինիս։ № 659 ձեռագիրը Զ հոդվածը չունի։*

Հոդ. Է, էջ 181—182 (հուն. հոդ. 7, էջ 452)։ „Πρεσβύτερον εἰς γάμους διγαμούντων μὴ ἑστιᾶσθαι, ἐπεὶ μετάνοιαν αἰτοῦντος τοῦ διγάμου, τίς ἔσται ὁ πρεσβύτερος, ὁ διὰ τῆς ἑστιάσεως συγκατατιθέμενος τοῖς γάμοις".

*Հայերենն ընդարձակ է և ունի ավելի հատվածներ։*

Հոդ. Ը—ԺԲ, էջ 182—184։ *Այս հինգ հոդվածները հունարենը չունի։ Ահա թե ինչ է գրում այդ մասին Ն. Մելիք-Թանգյանը. «Հայոց ձեռագրերում 8, 9, 10, 11, 12 կանոնները նոր են մուծված և խոսում են միևնույն նյութի մասին, կազմում են շարունակություն 7-րդ կանոնի։ Ներմուծողը կարդալով 7-րդ կանոնը, որը արգելում է քահանային երկակների ամուսնական խնջույքին երթալ, և չգտնելով եռապսակների ու քառապսակների համար շարունակաբար գրված կանոններ, քաղելով Բարսեղ Մեծի և այլոց կանոններից այդ մասին գրվածները՝ բերել 7-րդ կանոնի շարունակություն է կազմել։ Այս մուծված կանոնները չկան իսկականի մեջ» («Հայոց եկեղեցական իրավունքը», գիրք Ա, էջ 201)։ Ն. Մելիք-Թանգյանի ենթադրությունը կարող է հավանական լինել. համենայն դեպս այստեղ նշենք այն կանոնախմբերը, որոնք ունեն նման հոդվածներ. օրինակ՝ Ը հոդվածը տես և համա. Գրիգոր Լուսավորիչի կանոնախմբի Ե հոդվածի, Ներսեսի և Ներշապուհի կանոնախմբի ԺԵ հոդվածի հետ, Թ-ն՝ Բարսեղի կանոնախմբի Դ հոդվածի հետ, ԺԱ-ն և ԺԲ-ն՝ Շահապիվանի ժողովի կանոնախմբի Դ և Ե հոդվածների հետ։*

*№ 3369 ձեռագրում ԺԲ հոդվածը կրկնված է մեկ՝ 43ր էջում, Թ համարի տակ, մեկ էլ՝ 46ր էջում, ԺԸ համարի տակ։*

Հոդ. ԺԳ, 184—185 (հուն. հոդ. 8, էջ 452)։ „Γυνή τινος μοιχευθεῖσα λαϊκοῦ ὄντος, ἐὰν ἐλεγχθῇ φανερῶς, ὁ τοιοῦτος εἰς ὑπηρεσίαν ἐλθεῖν οὐ δύναται. Ἐὰν δὲ καὶ μετὰ τὴν χειροτο-

-νίαν μοιχευθῇ, ὀφείλει ἀπολῦσαι αὐτήν. Ἐὰν δὲ συζῇ, οὐ δύναται ἔχεσθαι τῆς ἐγχειρισθείσης αὐτῷ ὑπηρεσίας".

*Հայերենը ընդհանուր առմամբ ճիշտ է արտահայտում հունարենի միտքը, երբեմն տեղի տալով ազատ թարգմանության, երբեմն էլ բաց թողնելով կամ ավելացնելով առանձին հատվածներ. օրինակ՝ հունարեն* λαϊκοῦ *(աշխարհականի) բառը թարգմանված է «պատրաստեալ են ի քահանայութիւն» ձևով։ Վերջինս նույնպես հասկացվում է աշխարհական իմաստով։ Հունարեն* Ἐὰν δὲ καὶ μετὰ τὴν χειροτονίαν μοιχευθῇ *հատվածը, որը պետք է դտնվեր «շնայցէ արձակեսցի» բառերի միջև, հայերենը չի պահել, իսկ վերջինիս «զի ոչ ընդունի զնա եկեղեցի եւ կանոն» հատվածը հունարենը չունի։*

Հոդ. ԺԴ, էջ 185 (հուն. հոդ. 9, էջ 452—453)։ *Հայերենը մի փոքր համառոտ է։ Հուն.-ի* ὅτι ἥμαρτε πρὸ τῆς χειροτονίας μὴ προσφερέτω, μένων ἐν τοῖς λοιποῖς διὰ τὴν ἄλλην σπουδήν. Τὰ γὰρ λοιπὰ ἁμαρτήματα ἔφασαν οἱ πολλοὶ καὶ τὴν χειροθεσίαν ἀφιέναι *հատվածը հայերենը չունի։*

*№ 659 ձեռագրում այս և ԺԵ հոդվածները միացված են միմյանց և դրված են ԽԴ համարի տակ։*

Հոդ. ԺԵ, էջ 185 (հուն. հոդ. 10, էջ 453)։ „Ὁμοίως καὶ διάκονος ἐὰν τῷ (տ. L., ἐὰν ἐν τῷ) αὐτῷ ἁμαρτήματι περιπέσῃ, τὴν τοῦ ὑπηρέτου τάξιν ἐχέτω". *Հայերենը ընդարձակ է և լրացված Աստվածաշնչից վերցրած ասույթով։ №№ 648, 649, 656, 651, 657, 2984, 3582 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։*

Հոդ. ԺԶ, էջ 186 (հուն. հոդ. 11, էջ 453)։ „Πρεσβύτερος πρὸ τῶν τριάκοντα ἐτῶν μὴ χειροτονείσθω, ἐὰν καὶ πάνυ ᾖ ὁ ἄνθρωπος ἄξιος, ἀλλὰ ἀποτηρείσθω. Ὁ γὰρ κύριος Ἰησοῦς Χριστὸς ἐν τῷ τριακοστῷ (տ. L., τριακοστα) ἔτει ἐφωτίσθη (տ. Σύν., III, ἐβαπτίσθη), καὶ ἤρξατο διδάσκειν".

*Հայերենում ընդհանուր առմամբ հունարենի միտքը ճիշտ է արտահայտված, սակայն ընդարձակ է և խմբագրված։*

*№ 650 ձեռագրում այս հոդվածը, որը դրված է ԽԵ համարի տակ, սկսվում է վերնագիր հիշեցնող փոքրիկ հատվածով. «Վասն կարգի քահանայից» (էջ 82ա), այնուհետև՝ այնպես, ինչպես Կանոնագրքում։ Նույնը տես և 657 ձեռագրում (էջ 164ա), միայն այստեղ համարը նշված է ԻԸ։ Մի քանի ձեռագրերում այս հոդվածը խիստ համառոտ է. «ԺԶ. Կամ եղեւ. մեծ ժողովայն երեսնամեա օծանել ի քահանայութիւն ըստ օրինակի Փրկչին մերոյ և Ը-ամեա մկրտել» (№ 648, էջ 17ա, հմմտ. №№ 649, էջ 37բ, 656, էջ 41բ, 651, էջ 29բ, 2964, էջ 53բ—54ա, 3369, էջ 46ա, 3562, էջ 288ա)։*

Հոդ. ԺԷ, էջ 186, (հուն. հոդ. 12, էջ 453)։ „Ἐὰν νοσῶν τις φωτισθῇ, εἰς πρεσβύτερον (տ. Σύν., III, πρεσβυτέριον) ἄγεσθαι οὐ δύναται, οὐκ ἐκ προαιρέσεως γὰρ ἡ πίστις αὐτοῦ, ἀλλ' ἐξ ἀνάγκης· εἰ μὴ τάχα διὰ τὴν μετὰ ταῦτα αὐτοῦ σπουδὴν καὶ πίστιν, καὶ διὰ σπάνιν ἀνθρώπων".

*Հայերենն ունի շեղումներ և ընդարձակ է։*

*№№ 649, 656, 651 ձեռագրերում ԺԷ և ԺԸ հոդվածները միացված են միմյանց։*

Հոդ. ԺԸ, էջ 187 (հուն. հոդ. 13 էջ 453)։ *Հայերենը սկզբից մինչև «յաղագս տալ» բառերը միանգամայն համապատասխանում է հունարենին, իսկ հաջորդ «եւ ոչ բաժանել եկեղեցւոյ» հատվածից մինչև վերջ տարբեր է հունարենից։ Այս հատվածի փոխարեն հունարենն ունի.* οὐδὲ ποτήριον· ἐὰν δὲ ἀπῶσι, καὶ εἰς εὐχὴν κληθῇ μόνος δίδωσιν.

*Բնագրի «եւ ոչ բաժանել»-ը ճիշտ չէ, պետք է լինի «եւ ոչ բաժակ», այսպես ունեն №№ 648, էջ 17ա, 649, էջ 38բ, 659, էջ 41բ, 651, էջ 30ա, 2964, էջ 54ա, 3562, էջ 288ա, ձեռագրերը։ №№ 657, 659 ձեռագրերը չունեն ԺԸ, ԺԹ, Ի հոդվածները։ Այս հոդվածում, ինչպես տեսնում ենք, քորեպիսկոպոսները, գյուղական քահանաներն ավելի ստորադաս են, քան քաղաքի երեցները և եպիսկոպոսները։ Աստիճանականության այս կարգը, որպես ավատական աստիճանականության արտացոլում հոգևոր իշխանության մեջ, արդյո՞ք կապ չունի Մովսես Խորենացու Պատմության այն տեղի հետ, ուր առավել մանրամասնությամբ խոսում է գյուղի և քաղաքի բնակիչների հարաբերության մասին. «Հրաման տայ՝ (Վաղարշ Ա—Վ. Հ.) և քաղաքացեաց մարդկան արգոյ և պատիւ լինել առաւել քան զգեղջկաց և գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս...» (Պատմութիւն Հայոց, գիրք Բ, գլ. Թ, էջ 117—118)։*

Հոդ. ԺԹ, էջ 187, (հուն. հոդ. 14, էջ 454)։ *Հայերենը բառացի նման է հունարենին, միայն չունի հունարենի վերջին* προσφέρουσι τιμώμενοι *բառերը, դրա փոխարեն ունի «կա-*

տարբերոց է։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում այս և Ի հոդվածները չեն պահվել։

Հոդ. Ի, էջ 187, (Յուն. հոդ. 15, էջ 454). „Διάκονοι ἑπτὰ ὀφείλουσιν εἶναι κατὰ τὸν κανόνα, κᾶν πανυ μεγαλη εἴη (տ. Σύν., III, -ῇ) ἡ πολις· πεισθεισῃ (տ. L., πεισθήσῃ) δε ἀπὸ τῆς βίβλου των Πραξεων".

Հունարենի միտքը հայերենում տրված է ընդհանուր ձևով և ազատ թարգմանությամբ։

## ԳԱՆԳՐԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 188: *Համեմատությունների համար չօգտագործված մի քանի ձեռագրերում այս վերնագիրը ունի տարբերակներ. օրինակ՝ «Գանգրական կանոնին գլուխ ԻԳ» (№ № 648, էջ 17ա, 3562, էջ 288ա), «Գանգրա կանոնքին գլուխ (№ 2964՝ գլուխք) ԻԳ (№ 2964՝ ԻԳ ուղնեա Ցիսուս)» (№ № 649, էջ 38ա, 2964, էջ 54բ), «Գանգրա կանոնք գլուխք ԻԳ (№ 650՝ ԻԳ ուղնա Ցիսուս)» (№№ 650, էջ 42ա, 651, էջ 30ա), «Կանոնք Գանգրացոց զոր եղին սուրբ հայրապետքն» (№ 3369, էջ 47ա)։*

Ցանկ, էջ 188—189: № № *659, 657 ձեռագրերում սկզբում գրված է առաջաբանը, այնուհետև հոդվածների վերնագրերի ցանկը։ Վերջինս № 659 ձեռագրում կազմված է այբբենական կարգով, դիմացը նշելով հոդվածների հաջորդական համարները։ Ահա ցանկը.*

*Ցանկ Գանգրայ կանոնաց*

| | | | |
|---|---|---|---|
| *Ամուսնութեան* | *ա* | *Հաւր և մաւր* | *ժե* |
| *Ադաբաց* | *ժգ* | *Մսակերաց* | *բ* |
| *Գողից* | *ժ* | *Մարտիրոսաց* | *իբ* |
| *Երիցանց* | *դ, ը, իգ, իգ* | *Ուսուցչաց* | *է* |
| *Եկեղեցւոյ* | *թ, իե* | *Որդւոց* | *ժզ* |
| *Եպիսկոպոսաց* | *իգ* | *Պահոց* | *ժթ* |
| *Ծառայից* | *գ* | *Պարսից* | *ժէ* |
| *Կուսանաց* | *ժա, ժբ* | *Տէրանց* | *ե* |
| *Կնաթողաց* | *ժդ* | *Տանապատղամաց* | *իթ* |
| *Կիրակէի* | *ժը* | *Քառասնորդաց* | *ի, իա* |
| *Հեղձուցիկ* | *զ* | *Քահանայից* | *իէ, իը (էջ 98ա)։* |

*Ցանկում 22 վերնագրերի տակ գրված է 29 հոդված, մինչդեռ Գանգրայի ժողովի որոշումները Կանոնագրքում գտնում ենք 24 հոդվածով։ Այս ցանկը նոր է և կազմել է 659 ձեռագրի գրիչը, որը Գանգրայի ժողովի կանոնախմբին կցել է մի այլ բնագիր՝ «Կանոն Անտիոքացւոց». սրան համապատասխան՝ վերևում նշված ցանկում մուծված են այդ բնագրի հոդվածների վերնագրերը։*

№ *657 ձեռագրում ես ցանկը և՛ Կանոնագրքի և՛* № *659 ձեռագրի ունեցածից տարբեր է. այն ես նոր է կազմվել.*

*«ա. Վասն անգոսնելոյ զամուսնութիւն։*
*բ. Վասն որք պիղծ համարին զմիսն։*
*գ. Վասն հեղձուցելոյ և մեռելոտոյ։*
*դ. Վասն ծառայից։*
*ե. Վասն տերանց։*
*զ. Վասն որք խորշին յերիցուէ։*
*է. Վասն ուսուցանելոյ զորէնս։*
*ը. Վասն երիցու ըստ կանոնաց եպիսկոպոսն։*
*թ. Վասն պտղոյ եկեղեցւոյ։*
*ժ. Վասն գողանալոյ զպտուղ եկեղեցոյ։*
*ժա. Վասն զամուսնութիւն պիղծ համարին։*
*ժբ. Վասն զեր ի վերոյ տեսանելոյ զանձն։*
*ժգ. Վասն ագարս առնելոյ։*
*ժդ. Վասն կնոջ թողլոյ զայր իւր։*
*ժե. Վասն խրատելոյ զաւակսն։*
*ժզ. Վասն ոչ պատուելո զծնօղսն։*
*ժէ. Վասն կանանց որ փոքրեն զգլուխ։*
*ժը. Վասն կիրակոյ արհամարհելոյ։*
*ժթ. Վասն պահս քարոզելոյ վարդապետաց։*
*ի. Վասն քառասնորդաց պահոց։*
*իա. Վասն զատկ[ա]չաբաթոյն հինգշաբաթու։*
*իբ. Վասն ի ժողովս մարտիրոսաց։*
*իգ. Վասն սպասաւորելոյ սեղանոյն» (էջ 105բ)։*

Առաջաբան, էջ 190—192 (հուն. էջ 487—488): *Թե՛ հունարեն և թե՛ հայերեն բնագրերում Գանգրայի ժողովի հոդվածներին, որպես առաջաբան, դրված է ժողովի ուղերձը՝ հասցեագրված հայ եպիսկոպոսներին: Այս ուղերձը մեզ հասել է երկու խմբագրությամբ. մեկը՝ Կանոնագրքում (տես վերևում, էջ 190—192), մյուսը՝ Պետական Մատենադարանի մի քանի ձեռագրերում: Ահա վերջինս. «Այս կանոնք յետ Նիկիոյ ժողովոյն եղան եւ կարգեցան ի Գանգրա քաղաքի ի ԺԵ եպիսկոպոսաց: Վասն զի ժողովեցաւ սուրբ ժողով եպիսկոպոսաց յեկեղեցին Գանգրացւոց վասն ինչ պիտոյից եկեղեցւոյ եւ խնդրոյ վասն Եւստաթիացւոց հերձուածոյն, զի գտանէր իբրեւ բազում ինչ գիրս և կարգս որոշեալ էին ի նմանէն յիրաւի սահմանեցին զարձեալ եւ յայտ կամեցան առնել զնոսա ամենայն փութութեամբ, զի բարձցին իրքն որ չարաչար լինէին ի նմանէ, զի ի մեզադրութենէ նորա որ մեղադիր առնէր զամուսնութիւն եւ ասէր. «Զի ոչ ոք եւս որ ընդ ամուսնութեամբ իցէ եւ յանցանիցէ՝ յոյս զաանի այնպիսոյն զառնալոյ եւ կենաց հասանելոյ»: Վասն այսպիսի իրաց բազում կանայք հեռացան յարանց իւրեանց եւ արք ի կանանց իւրեանց, և մինչդեռ ի նոյն իրս էին, չկարացին հանդուրժել վասն այսպիսի իրաց եւ շնացան: Այլ և այլ եւս մեծամեծս անարգէին զեկեղեցի եւ արհամարհեն զկարգս եկեղեցւոյ. եւ ոյք յեկեղեցւոյ անգ էին՝ եւ որոշեալ իւրեանց ժողովս առնէին եւ պաշտօն եւ վարդապետութիւն այլ իմն ընդդէմ կարգաց եկեղեցւոյ, նոր իմն ազանելիս ազանէին և ժողովէին զպտուղ եկեղեցւոյ եւ յանձինս իւրեանց ազանէին եւ անձանց դարդ առնէին. եւ ոյք ընդ նոսա էին պէսպէս եւ այլ ընդ այլոյ կերպարանս նկարէին. իբրեւ յայսպիսի ինչ ազանելիս յուսացեալ էին իբրեւ զքաւութիւն այսպիսի ինչ իրաւք ընդունիցին: Եւ յայսպիսի իրս ծառայք ի տերանց հեռացան եւ անարգեցին զտեարս իւրեանց եւ կանայք արտաքս քան զսովորութեան հանդերձ կարգի կանանց, զարանց զգեստ ազանէին եւ աստի կարծէին արդարանալ. եւ այլ բազում ինչ առնէին, զհերս փոքրէին ի պատճառս աստուածպաշտութեան արտաքս քան զկարգ բնութեան կանանց, պահս ի կիւրակէի պահէին եւ զսուրբ զազատութեանն աւրն անգոսնէին, եւ զպահս որ ըստ կարգի եկեղեցւոյ սրբոյ կարգեալ էր եւ պահէին՝ նոքա անկոսնէին եւ անփոյթ առնէին իբրեւ ոչ ուղիղ եղեալ, եւ ոմանք ի նոցանէն ի միս ճաշակելոյ խորշէին եւ կասկածէին, եւ ի տունս յորում ամուսնութիւն կրէր՝ աղաւթս անգ ոչ կամէին առնել, եւ ուր լինէր աղօթք՝ զայնպիսիսն անգոսնէին եւ արհամարհէին, բազում անկամ առնել յիշատակ աշխարհականի ումեք, իբրեւ այն թէ պգծեալ յամուսնութենէ անտի էր՝ չմերձենաին եւ ոչ ճաշակէին. եւ յերիցանց որ ամուսնացեալ էին՝ ամբարհաւաճէին ի վերայ. եւ վերագոյն ինչ միտս սաանաին եւ պաշտօնն, որ ի նոցանէ պաշտէր չհպէին: Եւ ի տեղիս ուր մարտիւրոսք եղեալ էին՝ արհամարհէին, եւ որ ի մատրունս ժողովէին եւ պաշտօն պաշտէին՝ մեղադիր առնէին: Եւ վասն մեծատանց, որ ոչ ամենայն իրօք յ[ը]նչից հեռանային՝ իբրեւ անյոյս համարէին Աստուծոյ: Եւ բազում այլ ինչ, զոր թուել ոք ոչ բաւեսցէ, քանզի ամենայն ոք ի նոցանէն հեռացան ի կարգաց Աստուծոյ եւ ելին արտաքս քան զկանոնս, ըստ իւրեանց մտաց իւրաքանչիւր իմն աւրէնս կարգեցին եւ ընկալան եւ ոչ կամօք ինչ հաւասար առնէին, այլ իւրաքանչիւր զինչ եւ ի միտս արկանէր՝ զայս յաւելոյր, եւ հաճոյ թուէր նոցին իբրեւ անթագաւոր խորհուրդս ինչ ընկալան վասն թշնամանաց եկեղեցւոյ եւ ֆնասելոյ անձանց իւրեանց: Վասն այսպիսի իրաց հարկ եղեւ ժողովոյն» (№ 648, էջ 17ա—18բ. տես նաև № № 649, էջ 38ա—39ա, 650, էջ 42ա—43ա, 651, էջ 30ա—31ա, 2964, էջ 54ա—56ա, 3369, էջ 47ա—48ա, 3562, էջ 288ա—289բ):*

*Առաջաբանի սկզբի տողը միայն «Այս կանոնք յետ Նիկիոյ ժողովոյն եղան» կապ չունի վերջինիս հետ, այն ավելացրել է Օձնեցին, որպես ծանոթագրություն, որը չի պահվել № № 659, 657 ձեռագրերում:*

*Առաջաբանի երկու խմբագրություններից հունարենին անհամեմատ մոտ է վերոբերյալ բնագիրը:*

*Սակայն, վերևում նշված ձեռագրերի բնագրերում չեն պահվել Գանգրայի ժողովի մասնակիցների անունները և առաջաբանի հունարեն բնագրի վերջին մասը, սկսած* καταψηφίσασθαι αὐτῶν, καὶ ὅρους ἐκθέσθαι, ἐκτὸς αὐτοὺς εἶναι τῆς ἐκκλησίας*-ից մինչև առաջաբանի վերջը (էջ 488): Մինչդեռ Կանոնագրքի համապատասխան հատվածում գտնում ենք ժողովականների անունները ոչ թե առաջաբանի սկզբում, ինչպես հունարեն բնագրում է, այլ վերջում: Ի դեպ Պիտրայի մոտ հունարենն ունի ժողովականների 14 անուն,* Συν.*-ում և Լաուխերտի մոտ 13, իսկ հայերենը՝ 15: Այսպիսով, Գանգրայի ժողովի որոշումների թարգմանությունից հետո, սկզբնական բնագրի վրայով հավանաբար օտար ձեռք է սահել, և այն խմբագրվել է, թեև առաջաբանի հայերեն թարգմանության երկու խմբագրություն-*

ները միմյանց լրացնելով, ընդհանուր առմամբ, արտահայտում են ուղերձի հունարեն բնագրի միտքը, ինչպես ճիշտ նկատել է Ղ. Խաչիկյանը («Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից (IV դար)», էջ 99)։

Երկրորդ վերնագիր. էջ 199· Վերևում նշված ձեռագրերում այս վերնագիրը չի պահվել։

Հոդ. Ա, էջ 192—193 (հուն. հոդ. էջ 489)։ Հունարենը չունի «և անգոսնեն» բառերը, իսկ հունարենի κατὰ τὴν καθεύδουσαν μετὰ τοῦ ἀνδρὸς αὐτῆς (և իր ամուսնու հետ քնող (զուգավորվող) կնոջը) հատվածը հայերենում դրված է «կամ որ ոչ ննջէ ընդ առն իւրում» ձևով։ Հունարենի միտքն արտահայտված է, բայց մի փոքր այլ ձևով։ Ընդհանրապես հայերենը համապատասխանում է հունարենին։

Որոշ ձեռագրերում այս հոդվածը մի փոքր ընդարձակ է. «Որք զամուսնութիւն մեղադրեն և անկոսնեն կամ որ ոչ ննջէ ընդ առն իւրում առանց կամաց առն, որպէս [թէ] ի հաւատս կացեալ իցէ կամ թէ այր [որ] ոչ ննջէ ընդ կնոջ եւ զարշ համարի զամուսնութիւն, իբրեւ թէ ոչ կարեն մտանել յարքայութիւնն, այնպիսիքն նզովեալ լիցին» (№ № 648, էջ 18բ, 649, էջ 39բ, 650, էջ 43ա, 651, էջ 31ա, 2964, էջ 56բ, 3369 էջ 48ա, 3562, էջ 289բ. հմմա. № № 659, էջ 98ա, բ, 657, էջ 106ա)։

Կանոնագրքի համեմատությամբ՝ հոդվածների հաջորդականությունը տարբեր է նաև 3369 ձեռագրում.

| Կանոնագիրք | | № 3369 | | Կանոնագիրք | | № 3369 | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Ա | հոդված | Ա | հոդված | ԺԳ | հոդված | ԺԳ, ԺԸ | հոդված |
| Բ | » | Բ | » | ԺԴ | » | ԺԴ | » |
| Գ | » | Գ | » | ԺԵ | » | ԺԵ, ԺԹ | » |
| Դ | » | Դ | » | ԺԶ | » | ԺԶ, ԻԱ | » |
| Ե | » | Ե | » | ԺԷ | » | ԺԷ | » |
| Զ | » | Ը | » | ԺԸ | » | ԻԴ | » |
| Է | » | Ժ | » | ԺԹ | » | Ի | » |
| Ը | » | Զ | » | Ի | » | ԻԳ, ԻԵ | » |
| Թ | » | Է | » | ԻԱ | » | ԻԶ | » |
| Ժ | » | Թ | » | ԻԲ | » | ԻԷ | » |
| ԺԱ | » | ԺԱ | » | ԻԳ | » | ԻԲ | » |
| ԺԲ | » | ԺԲ | » | ԻԴ | » | ԻԸ | » |

Հոդ. Բ, էջ 193 (հուն. հոդ. 2, էջ 489)։ Հայերենի միայն «առ Աստուած»-ը չենք գտնում հունարենում։ № № 659 657 ձեռագրերում սրա փոխարեն ունենք երկու հոդված. «Բ. Որք զմիսն պիղծ համարին ուտել, որպէս թէ որ ուտենն՝ զրկիցին ինչ յարքայութենէն, նզովեալ լիցին։ Գ. Որք ուտեն զմիս հեղձուցիկ եւ կամ զմեռելոտի եւ ույք ուտեն զմիս զէնծոյ եւ արիւն խառն ընդ նմին, նզովեալ լիցին» (էջ 98բ, էջ 106ա)։ Մինչդեռ մի քանի ձեռագրերում այս հոդվածը մասամբ ընդարձակ է. «Բ. Որք ուտեն միս հեղձուցիկ կամ մեռելոտի, կամ զենածոյ եւ զարիւնն ընդ նմին, եւ կամ որք ուտեն միս առանց արեան եւ զոհելոյ եւ մեռելոտւոյ, եւ ամենայն երկիւղածութեամբ եւ հաւատովք և դատապարտեսցեն զայնպիսին վասն ուտելոյն, թէ որք ուտենն զրկին յարքայութենէն, նզովեալ լիցին» (№ № 648, էջ 18բ, հմմտ. նաև № № 649, էջ 39բ, 650, էջ 43բ, 651, էջ 31ա, 2964, էջ 56բ, 3369, էջ 48ա, 3562, էջ 289բ—290ա)։

Հոդ. Գ, էջ 193 (հուն. հոդ. 3, էջ 489)։ Հայերենի «իբրև իցեն տերքն քրիստոնեայք և երկիւղածք» հատվածի դիմաց հունարենում կարդում ենք τῷ ἑαυτοῦ δεσπότῃ ἐξυπηρετεῖσθαι (իր տիրոջը ծառայել) բառերը։

Այս հոդվածն ունի երկու խմբագրություն.

ա) № № 659, 657 ձեռագրերում, ուր Գ հոդվածը բաժանված է երկու մասի և ավելի ընդարձակ է՝ «Դ. Որ աստուածպաշտութեան կերպարանովք անհնազանդին տէրանց իւրոց իբրեւ այն թէ ծառայքն քրիստոնեայք եւ գտեարս արհամարհեն, նզովեսցին։ Ե. Եթէ տեարք քրիստոնեայք են, աղաւթականք, խոնարհք, մարդասէրք, հեզք, լինք վասն Աստուծոյ եւ ծառայքն արհամարհեն, նզովեալ լիցին» (էջ 98բ—99ա, էջ 106ա)։

բ) Գ հոդվածի վերջին մասը ընդարձակ է մի քանի այլ ձեռագրերում. «Եւ երկիւղածք եւ խոնարհք, մարդասէրք եւ ծառայն արհամարհիցէ, նզովեալ լիցի» (№ 648, էջ 18բ, հմմտ.

նաև № № 649, էջ 39բ, 650, էջ 43բ, 651. էջ 31ա, 2964, էջ 56բ, 3369, էջ 48բ, 3362, էջ 290ա)։ Այս կերպարանափոխմանը հիմք է հանդիսացել հավանաբար մի երրորդ ձեռագիր, որը մեզ չի հասել կամ № 659 ձեռագիր խմբագրությունը. Թեև բոլոր դեպքերում էլ այս խմբագրությունները շատ են հեռացած հունարենից։

Հոդ. Դ, էջ 193 (հուն. հոդ. 4, էջ 489)։ Հայերենն ունի փոքրիկ շեղում։ Հունարենի διακρίνοιτο բառը հայերենում գրված է «երկմտեն և խորշեն», Թերևս «և խորշեն»-ը ավելորդ է։ Իսկ λειτουργήσαντος-ը հայերենը չի պահել։ Ամբողջական առումով հայերենը ճիշտ է արտահայտում հունարենի միտքը։

№ 649 ձեռագիրը սույն հոդվածը չունի։

Հոդ. Ե, էջ 194։ № № 659, 657 ձեռագրերում այս հոդվածը ընդարձակ է. «Ե. Որք ուսուցանեն զաւրէնս և զկարգս տան Աստուծոյ եւ ոմանք արհամարհեն եւ անգոսնեն զժողովուրդն եւ զուսանելն, նզովեալ լիցին» (էջ 99ա, էջ 106ա)։

Ինչպես այս, այնպես էլ Զ, Է հոդվածները № № 648, 649, 650, 651, 2964, 3362 ձեռագրերը չունեն։

Հոդ. Զ, էջ 194։ № № 659, 657 ձեռագրերում այս հոդվածը վերաշարադրված է այսպես. «Ը. Թէ երէցն չիցէ ըստ կանոնաց եպիսկոպոսին եւ ժողովուրդն արհամարհիցէ զերէցն եւ արտաքոյ քան զեկեղեցին եւ քան զերէցն ժողովս առնիցեն եւ կամիցին զպէտս եկեղեցւոյ արտաքոյ վճարել, նզովեալ լիցին» (էջ 99ա, էջ 106ա)։

Հոդ. Է, էջ 194 (հուն. հոդ. 7, էջ 490)։ Հայերենի միայն «և չզործիցէ»-ն հունարենում չենք գտնում։ № № 659, 657 ձեռագրերում այս հոդվածը համառոտ է և շեղվում է նաև հունարենից. «Թ. Որք զպտուղ եկեղեցւոյ արգելցեն եւ արտաքս քան զեկեղեցին տան առանց հրամանի երիցուն, այսպիսիքն նզովեալ լիցին» (էջ 99ա, էջ 106ա)։

Հոդ. Ը. 194։ Այս հոդվածը ևս ունի երկու խմբագրություն.

ա) № № 659, 657 ձեռագրերում եղածը. «Ժ. Որք գողանան ի պտղոյ եկեղեցւոյն առանց հրամանի եպիսկոպոսին եւ կամ ոի կարգեալ իցէ ի տնտեսութեան եւ ոք առցէ իրս եւ կամ այլում տացէ, եթէ ի կերակրոց եւ եթէ յայլմէ մտոց, եւ տալին եւ ընդունելին նզովեալ լիցի» (էջ 99ա, բ, էջ 106ա)։

բ) Մյուս ձեռագրերն ունեն. «Ը. Որ տացէ կամ առցէ զպտուղ եկեղեցւոյ կամ որք գողանան ի պտղոյ եկեղեցւոյն առանց հրամանի եպիսկոպոսին կամ որք կարգեալ են ի տնտեսութիւն, առցէ կամ այլում տացէ թէ ի կերակրոց կամ յայլ մտից, տալին եւ ընդունելինն, նզովեալ լիցին» (№ 648, էջ 19ա, հմմտ. նաև № № 649, էջ 39բ—40ա, 650, էջ 43բ, 651, էջ 31բ, 2964, էջ 57ա, 3369, էջ 48բ, 3362, էջ 290ա)։ Այս երկու խմբագրություններն էլ հունարենից բավական հեռացած են։

Հոդ. Թ, էջ 194։ Մի քանի ձեռագրերում միայն վերջին մասն է ընդարձակ. «Եւ պարկեշտութեան կուսութեան որ ասէ. «Կուսանն զՏեառն հոգայ», այլ պիղծ համարի զամուսնութիւն, նզովեալ լիցին» (№ 651, էջ 31բ, հմմտ. նաև № № 649, էջ 40ա, 650, էջ 43բ, 3369, էջ 48բ, 3362, էջ 290ա—290բ), իսկ № № 659, 657 ձեռագրերում այս հոդվածը ձևափոխված է. «ԺԱ. Որք կուսանան թէ պիղծ է ամուսնութիւն եւ ոչ վասն պարկեշտութեան եւ անսրբութեան (№ 657՝ անսրբութեան) բարւոյ ըստ առաքելոյ, որ ասէ թէ «Կուսան հոգայ զՏեառն, այլ որ պիղծ համարին զամուսնութիւն, նզովեալ լիցին» էջ 99բ, էջ 106ա)։

Հոդ. Ժ, էջ 195 (հուն. հոդ. 10, էջ 490)։ Հունարենը չունի միայն «զեր ի վերոյ են» և երկրորդ «և»-ը։

Ահա № № 659, 657 ձեռագրերի ունեցածը, «ԺԲ. Որք կուսանան վասն հաւատոյ (հուն.-ում՝ διὰ τὸν Κύριον) եւ զանձինս զեր ի վերոյ ունին քան զամուսնացեալս, նզովեալ լիցին» (էջ 99բ, էջ 106բ)։

Հոդ. ԺԱ, էջ 195 (հուն. հոդ. 11, էջ 490)։ Հայերենի «հաւատաբել և յանձն առնուլ»-ի դիմաց հունարենը ունի κοινωνεῖν ταῖς κλήσεσι (մասնակցություն ունենալ հրավերներին), իսկ հունարենի διὰ τὸ ἐξευτελίζειν τὸ γινόμενον (ցածր համարելով արվածը) հատվածը հայերենում գրված է «և արհամարհիցեն» ձևով։

Այս հոդվածը № № 659, 657 ձեռագրերում ունի ընդմիջարկություն, որը մի քանի այլ ձեռագրերում գտնում ենք հոդվածի վերջում. «ԺԳ. Որք ագարս առնեն հաւատով սրբութեամբ եւ կամ որք կատարեն զյիշատակս վկայից եւ կոչեն զեղբարս իւրեանց յագարսն կամ ի ժողովս վկայիցն, ըստ առաքելոյ, որ ասէ թէ. «Մի՛ թողուլ զժողովս միաբանութեան», որպէս սովոր են ոմանք եւ արհամարհէ ոք եւ ոչ երթան, նզովեալ լիցին» (էջ

*59բ, էջ 100բ. հմմտ. №№ 648, էջ 19ա, 649, էջ 40ա. 650, էջ 44ա, 651, էջ 31բ, 2964, էջ 57բ, 3369, էջ 49ա, 3562. էջ 296բ)։*

Հոդ. ԺԲ, էջ 195 (հուն. հոդ. 12, էջ 490)։ *Այս և հաջորդ մի քանի հոդվածներում հուն. ἀσκητῶν բառը թարգմանված է «պահս»։ «Պահ» իմաստով հունարենը ունի ἡ νηστεία բառը՝ իմա՛ ժուժկալություն։ Հետևապես այս բնագրում ἀσκητῶν=պահս թարգմանությունը կամ անհաջող է, կամ դրա տակ պետք է հասկանալ «ճգնություն»։ Հունարեն բնագրի περιβόλαιον բառի դիմաց Լ. Խաչիկյանը գրել է «զարտուղն», փոխանակ «զտրտուղ» (տես «Փոքր Հայքի...», էջ 106) և տողատակ ավելացրել «կոպիտ վերարկու»։ Մեր ուսումնասիրած ձեռագրերից մեկը միայն՝ k ունի «զարտուղ», բայց մենք չհամարձակվեցինք այդ բառը դնել Կանոնագրքում, որպես περιβόλαιον-ի իմաստն արտահայտող նորագյուտ մի բառ, քանի որ «զտրտուղ»-ը արտագրությունների հետևանքով շատ հեշտությամբ կարող էր դառնալ «զարտուղ», «ա» և «տ» տառերի շփոթման հետևանքով։ Հունարենում նշված բառը հայերենում ունենք ազատ թարգմանությամբ՝ «զտրտուղ և զոխուր հանդերձ», այսինքն սև վերարկու կամ թիկնոց իմաստով։*

*Հունարենի վերջին* καταψηφίζονται τῶν μετ' εὐλαβείας τοὺς βήρους φορούντων, καὶ τῇ ἄλλῃ κοινῇ καὶ ἐν συνηθείᾳ οὔσῃ ἐσθῆτι κεχρημένων *(ովքեր երկյուղածությամբ կրում են մետաքսյա զգեստ և գործածում են ընդհանուր և սովորական ընդունված զգեստը) հատվածը հայերենում արտահայտված է համառոտ՝ «ոյք ահիւ և երկիւղիւ... ագանին և զըսրովիցեն» հատվածով։*

*Այս հոդվածն ընդհանուր առմամբ թարգմանված է ազատ։ ԺԲ և ԺԳ հոդվածները №№ 659, 657 ձեռագրերը չունեն։*

Հոդ. ԺԳ, էջ 195 (հուն. հոդ. 13, էջ 491)։ *Հայերենի «կամ զկերպարան ինչ այնպիսի (իմա տղամարդու—Վ. Հ.) առացուէ» հատվածը հունարենում համառոտ է՝* ἀνδρεῖον ἀναλάβοι *(հագնում է տղամարդու ձևով)։*

*Այս հոդվածը № 3369 ձեռագրում կրկնված է 49ա և 49բ էջերում, ԺԳ և ԺԸ համարների տակ։*

Հոդ. ԺԴ, էջ 196 (հուն. հոդ. 14, էջ 491)։ *Հունարենի միտքը հայերենում արտահայտված է առաջին երկու տողում, մնացածը հուն.-ը չունի։*

Հոդ. ԺԵ, էջ 196. (հուն. հոդ. 15, էջ 491)։ *Հուն.-ը չունի «հարկանեն», «և սննդեանն մինչև ի կատարմանն հասակին» բառերը։*

*Սակայն մի քանի ձեռագրերում այս հոդվածը այլ կերպ է շարադրված և հեռավոր նմանություն ունի հունարենի հետ. «ԺԵ. Հայր ոք կամ մայր եթէ ոչ խրատեսցեն զորդիս իւրեանց եւ զգաստս իմաստութեամբ եւ երկիւղիւ Տեառն, այլ հարեւթող առնիցէ կամ վասն սիրոյ կամ վասն ատելոյ, կամ գի ի հաւատին չկացեալ իցէ, որպէս առաքեալ ասէ, թէ «Մանկունս սնուցեալ իցէ եւ նոքա անտես առնեն», այնպիսիքն նզովեալ լիցին» (№ 659, էջ 100ա, հմմտ. նաև №№ 648, էջ 19բ, 649, էջ 40բ, 650, էջ 44բ, 651, էջ 32ա, 657, էջ 106բ, 2964, էջ 58ա, 3369, էջ 49բ, 3562, էջ 291ա)։*

Հոդ. ԺԶ, էջ 196—197 (հուն. հոդ. 16, էջ 491)։ *Հայերենն ընդարձակ է. «և առաքինի ի կարգս Աստուծոյ», «և արհամարհիցէ և ոչ զարժանն», «մեծ և ահաւոր թուեսցի» հատվածները հուն.-ը չունի։*

*Մինչդեռ № 659 և մյուս ձեռագրերում տարբերությունը շատ մեծ է. «ԺԶ. Թէ հաւրն վարժեալ իցէ եւ խրատեալ եւ նոքա զհարսն ի պատուի չունին եւ ըստ հրամանի ծնաւղին ոչ գնան, եւ զարժանաւորն պատիւ ծնաւղացն ոչ հատուցէ եւ ծնաւղքն հաւատացեալք եւս են, նզովեալ լիցին, բայց հարքն մի՛ զայրացուսցեն վայրապար զորդիս» էջ 160ա, հմմտ. նաև №№ 648, էջ 19բ, 649, էջ 40բ, 650, էջ 44բ, 651, էջ 32ա, 657, էջ 106բ, 2964, էջ 58ա, բ, 3369, էջ 56ա, 3562, էջ 291ա)։*

Հոդ. ԺԷ, էջ 197։ *Այս հոդվածը № 659 ձեռագրում պահվել է այսպես. «ԺԷ. Կանայք որ փոքրեն զվարս գլխոյ իւրեանց, որպէս թէ ի հաւատս (հուն.* ἀσκητῶν *բառի փոխարեն) կայցեալ իցէ եւ այնու աւրինակաւ ազաւթական կամին լինել, անարգեաց նա զկանոն առաքելական, որ ասէ. «Կինմարդ մի՛ գերձցի եւ նա ընդ ոտն եհար զհրաման», նզովեալ լիցի» (էջ 100բ, հմմտ. № 657, էջ 106բ)։ Մինչդեռ մի քանի այլ ձեռագրերում սկիզբը համապատասխանում է Կանոնագրքի ունեցածին, իսկ վերջին մասը ընդարձակ է. «իբրեւ թէ ոտն եհար եւ արհամարհեաց զհնազանդութիւնն եւ անարգեաց զկանոն առաքելական՝ եթէ «կինմարդ մի՛ գերծցի եւ նա ընդ ոտն եհար զհրամանն», նզովեալ լիցի» (№ 648, էջ*

19բ, հմմտ. նաև № № 649, էջ 40բ, 650, էջ 44բ, 651, էջ 32ա, 2964, էջ 58բ, 3369, էջ 50ա, 3562, էջ 291ա)։

Հոդ. ԺԸ, էջ 197 (հուն. հոդ. 18, էջ 491). Հայերենն ընդարձակ է, այստեղ ավելի է «և ի պահոց... մեծ ժողովս» հատվածը։ Սակայն № 659 և 648 ձեռագրերի խմբի նույն հոդվածը չափազանց ընդարձակ է. ահա վերջինս այդ ձեռագրերում. ա) «ԺԸ. Որք արհամարհեն եւ ընդոտնեն զհրամանս եւ զսահման Առաքելին զկանոնս Նախնականս զկիւրակէ, քանզի ի հանգիստ եւ յուրախութիւն վասն մարդասիրութեան իւրոյ տուեալ է որդւոց մարդկան, եւ նոքա ի պահս արկանեն եւ ի տրտմութիւն եւ ի գործ իբրեւ զայլ աւուրս, քանզի զվեց աւուրս զգործեալ զմեղսն՝ պահելով զպատուիրանսն եւ աղաւթիւքն պարապելով ջնջեսցես ի բաց զմեղսն. ապա եթէ ի գործ արկցես ի պահս եւ ի տրամութիւն՝ ոչ գտցես հանգիստ յարքայութեանն Աստուծոյ, եւ մեծ ժողովս Նիկիայ նզովէ եւ արտաքս մերժէ» (№ № 659, էջ 100բ, 657, էջ 106բ—107ա)։ բ) «ԺԸ. Որք անարգեն եւ ընդոտնեն զհրամանս Առաքելին զկանոն Նախնականս, քանզի ի հանգիստ եւ յուրախութիւն ետ վասն մարդասիրութեան իւրոյ որդւոց մարդկան զմեծ աւր կիւրակէի. եւ նոքա ի պահս արկանեն եւ ի տրտմութիւն եւ ի գործ, որպէս զայլ աւուրս, քանզի զայլ աւուրց զմեղս գործեալս պահելով զկիւրակէն եւ աղօթից պարապելով ջնջեսցին զմեղքն։ Ապա թէ ի գործ արկցես ի պահս եւ ի տրտմութիւն՝ ոչ գտցես հանգիստ յարքայութեանն Աստուծոյ. եւ մեծ ժողովս նզովէ եւ արտաքս հանէ, զի են ոմանք որ յաւուր կիւրակէի ծունր դնեն եւ կամ յաւուրս Պենտէկոստէիցն. կամ եղեւ զի ամենապէս ամենայն իշխանութեան միաբան արժան է զկարգ, զոր ինչ եզ սուրբ ժողովս պահել, զի յոտն կալով մատուցեն զաղօթս Տեառն ամենայնի» (№ 648, էջ 19բ—20ա, հմմտ. նաև № № 649, էջ 40բ—41ա, 650, էջ 44բ—45ա, 651, էջ 32ա, բ, 2964, էջ 58բ, 3369, էջ 50ա, 3562, էջ 291ա, բ)։

Հոդ. ԺԹ, էջ 197—198 (հուն հոդ. 19, էջ 491—492). Հայերենը մի փոքր ընդարձակ է. «այսինքն է ցաւոց և վշտաց ամբարհաւաճեաց եւ», «և զկարգեալս», «և արհամարհեաց», «և խորհուրդք» հատվածները և բառերը հուն.-ը չունի, թեև ճիշտ է արտահայտում հունարենի միտքը։ Այս հոդվածը՝ մի քանի ձեռագրերում, այլ խմբագրություններ ունի՝ ա) «ԺԹ. Եթէ վարդապետ պահս քարոզեսցէ ժողովրդեանն եւ ոչ ոք իցէ հիւանդ եւ ախտաժէտ, այլ առողջ մարմնով եւ կատարեալ մտաւք, եւ ամբարտաւանել ընդ ոտն հարկանիցէ զպահսն եւ անարգիցէ զհրամանս քարոզին՝ նզովեսցէ զնոսա սուրբ ժողովս» (№ № 659, էջ 100բ—101ա, 657, էջ 107ա)։ բ) «ԺԹ. Եթէ վարդապետն պահս քարոզեսցէ ժողովրդեան եւ ոչ ոք իցէ հիւանդ, այլ առողջ մարմնով եւ կատարեալ հասակաւ, եւ ամբարտաւանեալ ընդ ոտն հարկանիցէ զպահսն եւ անարգեաց զհրաման քահանային իբրեւ կրեսցին ի նմա կատարեալ միտք եւ խորհուրդք՝ նզովեալ լիցի» (№ 648, էջ 20ա, հմմտ. նաև № № 649, էջ 41ա, 651, էջ 32բ, 2964, էջ 59ա, 3369, էջ 50ա, 3562, էջ 291բ)։

№ 650 ձեռագիրը չունի ԺԹ և Ի հոդվածները։

Հոդ. Ի, էջ 198։ Միայն № № 659, 657 ձեռագրերում այս հոդվածին նախորդում է մի ընդարձակ հատված. «Ի. Զոր ոչ մարդ ոք այլ Հոգին սուրբ բերանով մարգարէին, թէ «սրբեցէք պահս, քարոզեցէք պաղատանս եւ վայ կարդացէք անձանց»։ Եւ արդ եթէ ոք գացի ի մարդկանէ, որ զայս հրամանս ստունգանիցէ, քանզի ետ առաքիչն Յիսուս Է աւր ուրախանալ ի փառս Աստուծոյ, եւ զայս Խ աւր եկեալ զայսչափ աւուրց զգործեալ զմեղսն ի բաց լուալ, զոր ասեն. «Լուացարուք, սրբեցարուք, ընկեցէք զչարիս ձեր յանձանց. ոչ եթէ ես կարաւտ ինչ եմ ձեր պահաւք կամ պիտոյ ինչ է ինձ, այլ զձեր զաւգուտն խորհիմ, զի դուք նորափետուր զարդարիցիք յարքայութեան իմում»։ Արդ եթէ ոք ի մարդկանէ կատարեալ հասակաւ եւ ողջ մարմնով քրիստոնէ անուն ի վերայ եւ Խ աւր զպահսն ի գլուխ ոչ տարցի, նզովեալ լիցին ի սուրբ ժողովոյս» (№ 659, էջ 101ա, բ, 657, էջ 107ա)։

Այս ինչպես և ԻԱ, ԻԳ, ԻԴ հոդվածները հունարենը չունի, սրանք հավանաբար կազմվել և մուծվել են կանոնագրքում հետագայում։ № 649 ձեռագիրը ևս չունի ԻԱ, ԻԲ հոդվածները։

Հոդ. ԻԲ, էջ 198 (հուն. հոդ. 20, էջ 492)։ „Εἴ τις αἰτιῷτο ὑπερηφάνῳ διαθέσει κεχρημένος, καὶ βδελυσσόμενος τὰς συνάξεις τῶν μαρτύρων, ἢ τὰς ἐν αὐτοῖς γινομένας λειτουργίας, καὶ τὰς μνήμας αὐτῶν, ἀνάθεμα ἔστω“.

Այս հոդվածը հունարենում դրված է 20-րդ համարի տակ և դրանով էլ ավարտվում է հունարեն բնագիրը։ Հոդվածի հայերեն բնագիրը մասամբ ընդարձակ է և այլափոխված։

№ 659 և դրան հարող ձեռագրերում ԻԲ և ԻԳ հոդվածները միացված են նշված որ-

*պես մի հոդված (№ № 659, էջ 101բ, 648, էջ 20բ, 650, էջ 45բ, 651, էջ 32բ, 657, 107ա, բ, 2964, էջ 59բ, 3369 էջ 50բ, 3562, էջ 292ա)։*

Հոդ. ԻԴ, էջ 198։ *Մի քանի ձեռագրեր մինչև հոդվածի սկսվելը ունեն վերնագիր՝ «Վասն սպասաւորաց եւ պաշտօնէից սրբոյ եկեղեցւոյ» (№ № 648, էջ 20բ, 650, էջ 45բ, 651, էջ 33ա, 2964, էջ 59բ, 3369 էջ 50բ, 3562, էջ 292ա), այնուհետև ԻԴ հոդվածը։*

Վերջաբան, էջ 199—201 (հուն. էջ 492)։ *Հունարենում՝ Պիտրայի և Հառլեխերտի մոտ ինչպես և Σύνταγμα-ում վերջաբանը դրված է որպես 21-րդ հոդված։ Կանոնագրքում եղած վերջաբանը համապատասխանում է հունարենին, միայն թե հայերենում, սկսած 291-րդ էջի 5-րդ տողի «Զայս կանոնս» հատվածից մինչև վերջաբանի ավարտը հունարենում չկա, այդ, թերևս, հետագայի ավելացում է։ Հնարավոր է սակայն, որ հայերենի թարգմանության համար հիմք հանդիսացող հունարեն բնագիրն այս հատվածը ունեցել է։ № № 659, 657 ձեռագրերը չունեն վերջաբանի սկզբից մինչև 291-րդ էջի 5-րդ տողի «զի կատարեսցի» բառերը, իսկ այնուհետև ունեն վերջին փոքր մասը (էջ 102ա, բ, 107բ)։ Մյուս ձեռագրերն ունեն վերջաբանի ավելի փոքր մասը՝ 201-րդ էջի ութերորդ տողի «Քանզի են ոմանք» բառերից մինչև վերջ (№ № 648, էջ 20բ, 650, էջ 45բ, 651, էջ 33ա, 2964, էջ 69ա, 3369, էջ 51ա, 3562, էջ 292բ)։*

## ԱՆՏԻՈՔԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 202: *Մի քանի ձեռագրերում այս վերնագիրը չունի առանձին տարբերություն, սակայն տարբեր է նշված հոդվածների քանակը՝ ԻԳ (23) (№ № 648, էջ 20բ, 649, էջ 42ա, 650, էջ 46ա, 651, էջ 33ա, 2964, էջ 60ա, 3562, էջ 292բ)։*

Ցանկ, էջ 202—204: *Վերևում նշված, ինչպես նաև № 3369, ձեռագրերում չի պահվել ցանկը։* t *ձեռագրում Ժ հոդվածի վերնագիրը ցանկում գրված է Ն և Ջ հոդվածի վերնագրերի միջև։*

*Ի դեպ այս ցանկը* t *ձեռագրում մի փոքր խանգարված է. այդ նկատելով՝ ձեռագրի 103բ և 104ա էջերի միջև ամրացված փոքրիկ թղթի վրա գրիչը գրել է. «Այս գլխոյս (իմա Անտիոքի ժողովի հոդվածների ցանկը—Վ. Հ.) գհամար տանց գլխոցն լաւ որոնելով քննեա՛, զի ծուռն և սխալն բազում է»։*

Երկրորդ վերնագիր, էջ 204: *Վերևում նշված ձեռագրերը չունեն այս վերնագիրը։*

Առաջաբան էջ 204 (հուն., էջ 455): *Հունարենը (միայն Պիտրայի մոտ) ես ունի առաջաբան, որը սակայն ընդարձակ է։ Հայերեն և հունարեն առաջաբանները բոլորովին տարբեր բնագրեր են։*

*Կանոնագրքում եղած այս առաջաբանը մի քանի ձեռագրերում վերջից շարունակվում է. «Վասն որոյ ժողովեալ յԱնդիոք եպիսկոպոսք ԼԱ յիշխանութենէ հովտաց Ասորւոց, ի Փիւնիկեցւոց, ի Նախնեաց, յԱրաբացւոց, ի Միջագետաց, ի Կիւլիկեցւոց, ի Սուրեցւոց սահմանեցին ԻԳ բան» (№ 648, էջ 21ա. տես նաև № № 649, էջ 42ա, 650, էջ 46ա, 651, էջ 33ա, 2964, էջ 60ա, 3562, էջ 292բ)։ № 3369 ձեռագրում այդ մասը նույնությամբ գտնում ենք, սակայն այստեղ վերոբերյալ հատվածի վերջին «ԻԳ բան» բառերի փոխարեն կարդում ենք. «Զայս մի մաս կանոնքս» (էջ 57բ). դրանով իսկ, հավանաբար, այս տողերի հեղինակը հասկացնել է տալիս, որ № 3369 ձեռագրում Անտիոքի ժողովի կանոնախումբը չի բերվում լրիվ, այլ որոշ հոդվածներ համառոտելով, որոշ հոդվածներ էլ բաց թողնելով։ Առաջաբանի՝ վերևում նշված շարունակությունը սերտ աղերս ունի առաջաբանի հունարեն բնագրի հետ. այստեղից էլ ենթադրում ենք, որ այս կանոնախմբի սկզբնական թարգմանության ժամանակ հոդվածների հետ թարգմանված է եղել նաև առաջաբանը, իսկ երբ Հովհաննես Օձնեցին կազմել է իր ժողովածուն, դուրս է նետել այդ առաջաբանը՝ փոխարեն մի համառոտը գրելով, որին և կցել է հոդվածները։ № 648-ի խմբին պատկանող ձեռագրերում եղած առաջաբանը, որ բերեցինք. վերևում, մեր կարծիքով բաղկացած է երկու մասից. նախ՝ Հովհաննես Օձնեցու գրածից, երկրորդ՝ հունարեն առաջաբանի հայ թարգմանությունից վերցված որոշ տեղեկություններից։*

Հոդ. Ա, էջ 205—206 (հուն. հոդ. 1, էջ 456): *Հայերենը հունարենի բառացի թարգմանությունն է, եթե նկատի չունենանք հետևյալ երեք փոքրիկ տարբերությունները. ա) հունարենը չունի հայերենի «եւ զառաքելոցն իբրեւ» հատվածը, բ) հայերենի «կապել» բառի փոխարեն հունարենն ունի* πάσχα ἀκοινωνήτους *(զատկի հաղորդություն չտալ)։ Այս հատվածը պետք է լիներ այսպես. «Վասն ամենասուրբ տաւնից փրկութեան զատկի հաղորդութիւն չտալ (կամ անմասն առնել հաղորդութեան) եւ մերժել յեկեղեցւոյ»։ գ) հայերենն ունի «եւ ընդ Հրէայս կատարեսցէ զտաւնս», իսկ հունարենը* καὶ μετὰ τῶν Ἰουδαίων ἐπιτελεῖν τὸ πάσχα: *Զատիկը՝* τὸ πάσχα *արտահայտված է «տաւն» բառով։*

*Մի քանի ձեռագրերում այս հոդվածը խիստ համառոտ է. «Ա. Ամենայն ոք որ եւ իցէ որ համարձակեսցի եւ լուծցէ զսահմանս սուրբ ժողովին Նիկիա որ յաղագս ամենասուրբ տօնից (№ 3369՝ տաւից) փրկութեան՝ այսպիսին հատցի եւ որոշեսցի ի պաշտամանէն» (№ 648, էջ 21ա. տես նաև № № 649, էջ 42ա, 650, էջ 46ա, 051, էջ 33բ, 2964, էջ 60բ, 3369, էջ 57բ—58ա, 3562, էջ 292բ)։*

Հոդ. Բ. էջ 206—207 (հուն. հոդ. 2, էջ 456—457): Բացառությամբ հետևյալ մի քանի շեղումների, մնացածը հունարենի բառացի թարգմանությունն է. հունարենը չունի «ընդ ոտն հարկանիցեն եւ հեռանայցեն» և «ի ժողով կամ յիշխանութիւն» հատվածները, իսկ հունարենի μὴ ἐξεῖναι δὲ κοινωνεῖν τοῖς ἀκοινωνήτοις (նույնպես պետք չէ թույլատրել հաղորդակցություն (շփում) ունենալ չհաղորդվածների հետ) հատվածի փոխարեն հայերենն ունի «իբրեւ ոչ իցէ նոցա մարթ հաւասարել այնոցիկ որ ազատեալ են ի կապանաց եկեղեցւոյ եւ որ ընդ եկեղեցեաւն իցեն»:

№№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերը չունեն Բ, Գ, Դ, Ե հոդվածները:

Հոդ. Դ, էջ 207—208 (հուն. հոդ. 3, էջ 457): Հունարենը չունի «եւ զբնակութիւնն» բառերը, մնացածը հունարենի բառացի թարգմանությունն է:

Հոդ. Ե, էջ 209 (հուն. հոդ. 5, էջ 458): Հայերեն բնագրից եթե հանելու լինենք որոշ բառեր, որ, ըստ երևույթին թարգմանիչն է ավելացրել հունարենի միտքը պարզ արտահայտելու համար, օրինակ, «զհրաման իբրեւ», «կամ ժողովեսցին», «եւ ընդդէմ եղեն եւ անարգեցին», «զբանս նորա յանձն առնուլ եւս», «եւ ի զաւրութենէ ուստեք», «եւ սանձարձակ առնել արժան է», ապա մնացածը բառացի համապատասխանում է հունարենին:

Հոդ. Զ, էջ 209—210 (հուն. հոդ. 6, էջ 458): Բացառությամբ մի երկու բառի, օրինակ՝ «եպիսկոպոսաց», «կամ պատուհասի», որ հունարենը չունի, իսկ «եւ ապաշխարիցէ առաջի նոցա» հատվածը, որ գրված է հունարենի ἀπαντήσας ἀπολογήσεται (ներկայացնելով արդարացում) բառերի փոխարեն, մնացածը բառացի հունարենի թարգմանությունն է:

Հոդ. Է, էջ 210 (հուն. հոդ. 7, էջ 458): „Μηδένα ἄνευ εἰρηνικῶν δέχεσθαι τῶν ξένων“. Ինչպես տեսնում ենք հայերենը մի փոքր ընդարձակ է: Հայերենը չունի τῶν ξένων (օտարականներից), իսկ հուն.-ը՝ «յեպիսկոպոսէն յեպիսկոպոս» բառերը:

Հոդ. Ը, էջ 210 (հուն. հոդ. 8, էջ 458—459): Հայերենում երկու հատված ավելի է՝ «կամ ի քաղաքի», «որպիսիս էր ապաստան համարձակիցին և տայցեն»: Հուն.-ի ἀνεπιλήπτους (անբասիր, անպարսավ)-ի դիմաց գրված է «աւծեալս»: №№ 648, 649, 650, 651, 2964, 3564 ձեռագրերում չեն պահվել Ը և Թ հոդվածները:

Հոդ. Թ, էջ 210—211 (հուն. հոդ. 9, էջ 459): Հունարենի միտքը հայերենում լրիվ արտահայտված է, միայն թե մի երկու տեղ նախադասությունները ետևառաջություն ունեն: Հունարենի διὰ τὸ ἐν τῇ μητροπόλει πανταχόθεν συντρέχειν πάντας τοὺς τὰ πράγματα ἔχοντας հատվածի դիմաց, թեև ոչ բառացի, հայերենն ունի «և ամենայն ոք զինչ և պատասխանի կամի առնել, առ նա ընթանայ». և այնուհետև թվում է, թե ինչ գործերի համար պետք է գնալ՝ «թէ մուրհակ արքունի և իշխանաց, վասն իրաց եկեղեցւոյ և կարգաց հասարակաց»: Այս հատվածը հուն.-ը չունի:

Հոդ. Ժ, էջ 211—212 (հուն. հոդ. 10, էջ 459—460): Բացի հայերենի «զոր արժանի համարեսցի» հատվածից, որ հունարենը չունի և «մեծ» բառից, որը հունարենում արտահայտված է ἁγίᾳ (սուրբ) բառով, մնացածը բառացի համապատասխանում է հունարենին:

Մի քանի ձեռագրերում այս հոդվածը բավական համառոտ է. «Ժ. Որ ի գիւղս կամ ի գաւառս իցեն, այսինքն քորեպիսկոպոսք, արասցեն դրակարդացս և կէսսարկաւագաց եւ կշտամբիչս եւ սմին իրաց շատ լիցին առ ի մերձեցուցանել եւ յառաջ ածել յայսպիսի աշտիճան, այլ ոչ եւս երէց կամ սարգաւակ աւծանել: Ապա թէ համարձակեսցի ոք՝ անկցի ի պատուէն զոր յառաջն ունէր» (№ 648, էջ 21ա, բ, հմմտ. №№ 649, էջ 42բ, 650, էջ 46բ, 651, էջ 33բ, 2964, էջ 61ա, բ, 3562, էջ 293ա): № 3369 ձեռագրում «քորեպիսկոպոսք»-ի փոխարեն գրված է «եպիսկոպոսք» (էջ 60բ):

Հոդ. ԺԱ, էջ 212—213 (հուն. հոդ. 11, էջ 460): Հուն.-ը չունի հայերենի միայն «կամ սարկաւագ» բառերը, մնացածը համապատասխանում է միմյանց:

Հոդ. ԺԲ, էջ 213 (հուն. հոդ. 12, էջ 460): „Εἴ τις ὑπὸ τοῦ ἰδίου ἐπισκόπου καθαιρεθεὶς πρεσβύτερος, ἢ διάκονος ἢ καὶ ἐπίσκοπος ὑπὸ συνόδου, ἐνοχλῆσαι τολμήσειε τὰς βασιλέως ἀκοάς, δέον ἐπὶ μείζονα ἐπισκόπων σύνοδον τρέπεσθαι, καὶ ἃ νομίζει δίκαια ἔχειν, προσαναφέρειν πλείοσιν ἐπισκόποις, καὶ τὴν παρ᾽ (m. L., չիք παρ᾽) αὐτῶν ἐξέτασίν τε καὶ ἐπίκρισιν ἐκδέχεσθαι· ὁ (m. L., ει) δὲ τούτων ὀλιγωρήσας, ἐνοχλήσειεν τῷ βασιλεῖ· καὶ τοῦτον μηδὲ μιᾶς συγγνώμης ἀξιοῦσθαι, μηδὲ χώραν ἀπολογίας ἔχειν, μηδὲ ἐλπίδα μελλούσης (m. L., չիք μελλούσης) ἀποκαταστάσεως προσδοκᾶν“.

Հայերենը ուղղակի թարգմանություն չէ, թեև ճիշտ է արտահայտում հուն.-ի միտքը: Հուն.-ի ἢ καὶ ἐπίσκοπος ὑπὸ συνόδου հատվածը կանոնագիրքը չունի:

Հոդ. ԺԳ, էջ 213—214 (հուն. հոդ. 13, էջ 461): Բացի հայերենի «կամ համարձակեսցի» բառերից, որ հուն.-ը չունի, մնացածը համապատասխանում է հունարենին:

Հոդ. ԺԴ, էջ 214—215 (հուն. հոդ. 14, էջ 461): Մի քանի ձեռագրերում հոդվածը վերջից շարունակվում է. «անդի են և մայրաքաղաքաց եպիսկոպոսն յիւրում առենին լուծցէ զկարծիս խարդախութեանն» (№ № 648, էջ 22բ, 649, էջ 43բ, 656, էջ 48բ, 631, էջ 34բ, 2964, էջ 63ա, 3369, էջ 59ա, 3562, էջ 294բ)։

Հոդ. ԺԵ, էջ 215 (հուն. հոդ. 15, էջ 461): Բացառությամբ հայերենի երկու հատվածների՝ «և չարախաւսիցի», «կամ իբաւ ոք իշխեսցէ առնել այնպիսւոյն», որ հունարենը չունի, մնացածը համապատասխանում է հունարենին։

Մի քանի ձեռագրերում բնագրի «այսպիսին մի» բառերի միջև գտնում ենք հետևյալ հատվածը. «արտաքս ընկեսցի, զի ոչ յերկիր եւ ոչ յաղբէ պիտանացու ըստ բանին տեառն եւ» (№ № 648, էջ 22բ, 649, էջ 43բ, 650, էջ 48բ, 651, էջ 34ո, 2964, էջ 63բ, 3369, էջ 59բ, 3562, էջ 294բ)։

Հոդ. ԺԶ, էջ 215—216 (հուն. հոդ. 16, էջ 462). Հայերենն ունի աննշան մի երկու շեղում. օրինակ՝ հունարենի τον θρόνον (գահ, աթոռ) բառը հայերենում դրված է «զասհմանն», կամ հուն. τελειας (կատարյալ)՝ հայերենում «բազում»։ Իսկ հոդվածի վերջին «կատարեալ ես ժողով լիցի՝ եթէ ւ չիցէ նա ընդդէմ մաւր քաղաքաց եպիսկոպոսին» մասը հունարենում այսպես է. τελειαν σε εκεινην εἶναι σύνοδον ἡ συμπαρέστι καὶ ὁ τῆς μητροπόλεως (կատարյալ ժողով է այն, որին ուրիշների հետ մասնակցում է և մետրոպոլիտը). № № 648, 649, 656, 651, 2964, 3592 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։

Հոդ. ԺԸ, էջ 216—217 (հուն. հոդ. 18, էջ 462): Հունարենը չունի «և ոչ հեռանալ» հատվածը։ Հունարենի εις παροιχίαν μη ἀπέλθοι εἰς ἣν ἐχειροτονήθη հատվածը դրված է «ի գաւառ ուրեք և յիշխանութիւն իւր չեղև երթալ» ձևով, իսկ վերջին ὅ ἂν ἡ τῆς ἐπαρχίας τελεία σύνοδος κρίνασα το παριστάμενον ὁρίση հատվածը՝ «մինչև իշխանութեանն կատարեալ ժողով ժողովիցի իբաւունս առնել և ի վեր բառնալ զինչ արժանն իցէ որոշել, սահմանել, կարգել վասն նորա»։

Հոդ. ԺԹ, էջ 217—218 (հուն. հոդ. 19, էջ 462—463): Բացառությամբ հայերենի «ի տեղւոջ իւրում յոր տեղի աւծաւն», «որ արտաքոյ», «եւ անհաստատ», «ամենայն իմաստութեամբ եւ երկիւղածութեամբ» հատվածների, որ հունարենը չունի, մնացածը նույնությամբ գնում է հունարենի հետ։

№ № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում չեն պահվել ԺԹ, Ի, ԻԱ հոդվածները։ Ծ ձեռագրում այս և հաջորդ հոդվածները միացված են միմյանց։

Հոդ. Ի, էջ 218—219 (հուն. հոդ. 20, էջ 463): Հայերենը հոդվածի միջին մասում մի փոքր շեղում ունի. այստեղ գրված է. «մին յերրորդ շաբաթու տաւնից Զատկին», մինչդեռ հունարենն ունի μεν μετα την τριτην εβδομαδα της εορτης του Πάσχα. Հայերենում չի պահվել «հետոո» (μετα)։ Այնուհետև, հուն.-ի ὥστε τῇ τετάρτῃ ἑβδομάδι τῆς πεντηκοστῆς ἐπιτελεῖσθαι τὴν σύνοδον, ὑπομιμνήσκοντος τοὺς ἐπαρχιώτας τοῦ ἐν τῇ μητροπόλει հատվածի դիմաց հայերենն ունի «իբրև կատարիցի ի չորրորդումն շաբաթու Պենտակոստէին, ժողովին առ ի յիշատակել ժողովոյն զիրս իշխանութեանն»։ Մի փոքր տարբեր է երկրորդ ժողովի ամսաթիվը։ Հայերենում նշված է «և զերկրորդ անգամ՝ ժողով լինել յելս հոկտեմբերի, որ է Ժ-րդ հոռոմի ամսոյ», իսկ հուն.-ում՝ τὴν δὲ δευτέραν σύνοδον γίνεσθαι ἴδοις Ὀκτωβρίαις, ἥτις ἐστὶ δεκάτη ὑπερβερεταίου. Հուն.-ում նշված է հոկտեմբերի 15-ը, որ է հյուպերբերետայի 10-ը, մինչդեռ հայերենում նշված է «յելս հոկտեմբերի, որ է Ժ-րդ հոռոմի ամսոյ»։

Տարին երկու ժողով լինելու մասին տե՛ս նաև Կղեմեսի ԼԵ և Նիկիայի Ե հոդվածները և համապատասխան ծանոթագրությունները (էջ 553, 563)։ Տարբեր է նաև վերջին մասը. հմմտ. ἄνευ τῶν πεπιστευμένων τὰς μητροπόλεις և «առանց կամաց և հաւանութեան որ իցէ մաւր քաղաքաց եպիսկոպոսն»։ Հունարենը չունի «և մերձեսցին», «և ճաշակել», «զանձինս իւրեանց» բառերը։ Մնացածը համապատասխանում է հունարենին։

Հոդ. ԻԱ. էջ 219 (հուն. հոդ. 21, էջ 463—464): Եթե նկատի չունենանք հայերենի «և աւծաւ», «կամակարել ուրեք յեկեղեցւոյ» հատվածները, որ հուն.-ը չունի, մնացածը համապատասխանում է հունարենին։

Հունարենի 22-րդ հոդվածը (էջ 464), որը վերաբերում է եպիսկոպոսներին, որոնց արգելում է օտար թեմում ձեռնադրություն կատարել, Կանոնագրքում չի պահվել։

Հոդ. ԻԲ, էջ 219—220 (հուն. հոդ. 23. էջ 464): Մի քանի ձեռագրերում այս հոդվածի երկրորդ մասը տարբեր է և ընդարձակ՝ Կանոնագրքի ունեցածից, ուստի այն բերում ենք ամբողջությամբ. «Ի. Եթէ եպիսկոպոսի չէ արժան զոք փոխանակ իւր նստուցանել, եթէ անա մերձեալ իցէ ի մահ։ Եթէ այսպիսի ինչ լինիցի, անհաստատ լիցի հաստատու-

*թիւնն այն, այլ պահել արժան է զիրս եկեղեցոյն եւ ոչ վրիպանաւ զիղձսն աստիճանել, բայց եթէ հանդերձ այլօք եպիսկոպոսօք եւ նոցին ընտրութեամբ յետ հանգստեան եպիսկոպոսին զարժանաւոր ընտրել առաջնորդեսցեն, զի մի յանդիտութենէ եւ անընտրողութենէ բարոյ եւ չարի տղէտ հովուին մտցէ ի հօտն ապականիչք գազանն վտարեսցէ զգառինս աջակողմանն չարափառ հաւատով կամ զզտանելի գործով կամ աղանդախուռմբ մոլորութեամբ կախարդս արանց առ աչօք ցնորից թովչացն, դիւացն, գեղահատուացն, ձեռնածուացն, աջազկոտացն, յուռթիցն, դիտացն, հմայիցն, հատահարցն, գրաբարացն, յորս եմուտ ուխտի մանկունս: Քանզի եւ լսեմք իսկ եթէ քահանայք ի կողմանս կողմանս լքեալ եւ անարգեալ դաստուածապատիւ իշխանութիւնն իւրեանց գիր առնելով եւ պահպանակս հմայկանս առ ի բժշկութիւնս պղծեն, զժողովուրդս իւրեանց գիւաց նվիրեն: Վասն այսորիկ պարտ է եպիսկոպոսացն ամենահաս մտաւորութեամբ զգուշանալ հաւասիս իւրեանց, զի ընդունիցին զանթառամ փառաց պսակն պահելով զժողովուրդս իւրեանց ի մեքենագործ խորամանկութեանց սատանայի, այս անցնեցաւ ամենայն եպիսկոպոսաց ի ձեռն սուրբ եւ մեծ ժողովոյն» (№ 3369, էջ 62ա, հմմտ. №№ 648, էջ 23ա, բ, 649, էջ 44—45ա, 650, էջ 49ա, բ, 651, էջ 35ա, բ, 2964, էջ 65ա, 3562, էջ 205ա, բ):*

Հոդ. ԻԴ, էջ 220—221 (հուն. հոդ. 24, էջ 464—465). *Հայերենի «ընիկ սեպհականէ», «և տնհեա յինիցին» բառերը հուն.-ը չունի: Կան նաև շեղումներ, օրինակ հուն.* καλῶς-*ը թարգմանված է «արժան», մինչդեռ հարմար է «բարի» կամ «արդարացի» բառը: Հուն.-ի* καὶ ἀγαθῆς συνειδήσεως καὶ πίστεως τῆς εἰς τὸν πάντων ἔφορον καὶ κριτὴν Θ-ον *հատվածը հայերենում դրված է բավական համառոտ՝ «այլ առնելով բարւոք և հաւատովք յԱստուածս»: Հուն.-ի վերջին* τὰ μέν τοι τῆς ἐκκλησίας αὐτῇ φυλάττεσθαι· καὶ μήτε τὴν ἐκκλησίαν ὑπομένειν (տ. Συν., III, ὑπομένειν τινὰ) ζημίαν, μήτε τὸν ἐπίσκοπον προφάσει τῆς ἐκκλησίας δημεύεσθαι, ἢ καὶ εἰς πράγματα ἐμπίπτειν τοὺς αὐτῷ διαφέροντας, μετὰ τοῦ καὶ αὐτὸν μετὰ θάνατον δυσφημίᾳ περιβάλλεσθαι *ընդարձակ հատվածը հայերենում գտնում ենք «կամեսցի և մի եպիսկոպոսն ի պատճառս եկեղեցւոյն . . . զարովեսցի և հայհոյեսցի» ձևով, ուր* τὰ μὲν τοι τῆς ἐκκλησίας . . . ὑπομένειν ζημίαν *հատվածը հայերենը չունի, իսկ մնացած մասը հայերենում համառոտ է:*

*№№ 648, 649, 650, 651, 2964, 3502 ձեռագրերում ԻԳ, ԻԴ, ԻԵ հոդվածները չեն պահվել:*

Հոդ. ԻԴ, էջ 221—223 (հուն. հոդ. էջ 25, էջ 465—466): *Եթե նկատի չունենանք հայերենի «եւ ի հանգիստ», «ձեռնամուխ առնէ դո եւ կամի», «եւ ագահիցեն» հատվածները, ապա մնացածը համապատասխանում է հունարենին:*

Հոդ. ԻԵ, 223: *Այս հոդվածը հունարենը չունի, շատ հավանական է, որ այն ծագել է հնից, պատմական որևէ հիշատակարանի հիման վրա և ներշնչում է հավաս այս կանոնախմբի հավաստիության նկատմամբ:*

# ԼԱՎՈԴԻԿԵԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

ՑաՆկ, էջ 224—228: NO ձեռագրերում ցանկի ԽԱ և ԽԲ հոդվածների վերնագրերից առանձին բառեր հանելով՝ այդ երկու հոդվածի վերնագիրը միացրել են այսպես. «Վասն չհանելոյ շաբաթու պահոցն»:

ԱռաջաբաՆ. էջ 228, հուՆ., էջ 494: № 648 և սրան հարող ձեռագրերում առաջաբանն ունի շեղումներ, այդ ցույց տալու համար՝ այն կբերենք ամբողջությամբ. «Իսկ յետ այսորիկ գաւրանայ Աւստացող (№ № 649, 651, 2964 ձեռագրերում՝ Նաւատացող, իսկ № 3369 ձեռագրում՝ անհաւատացող) հերձուածն, որ չորրորդքն կոչին, որ բազմայեղ այլայլութիւնս գաւանէին ի լըլկանս եկեղեցւոյ ժողովեալք Լաւոդիկէա Փռիւգացւոց եպիսկոպոսք Ի, որք ժողովեալք ի Պատկիանէս ի պէսպէս իշխանութենէ արիանոսաց ընդդէմ առնել նոցա խիթմանց լուծումն, սահմանեցին կանոնս ԾԵ» (№ 648, էջ 24ա, հմմտ. նաև № № 649, էջ 45ա, 650, էջ 49բ, 651, էջ 36ա, 2964, էջ 66ա, 3369, էջ 63ա, 3562, էջ 296բ): Այս ձեռագրերում առաջաբանը բաժանված է երկու մասի և գրված է որպես Ա և Բ հոդվածներ. իսկ բնագրի Ա և Բ հոդվածները վերևում նշված ձեռագրերը չունեն, բացառությամբ № 3369-ի, ուր առաջաբանը գրված է որպես Ա, Բ հոդվածներ, իսկ բնագրի Ա, Բ, Գ, Դ հոդվածները՝ Ե, Զ, Գ, Դ համարների տակ:

Հունարենը ևս ունի առաջաբան, բայց շատ համառոտ, որը, հավանաբար, ատաղձ է հանդիսացել այս կանոնախմբի Հովհաննես Օձնեցու գրած առաջաբանին:

Հունարենի առաջաբանը գտնում ենք Պիտրայի հրատարակությունում (էջ 494, ծանոթ 1), որ բերում ենք Դիոնեսիոս Կրտսերի լատիներեն համապատասխան վկայության հետ միասին. Ἡ ἁγία σύνοδος ἡ κατὰ Λαοδικείαν τῆς Φρυγίας Καπατιανῆς, συγκροτηθεῖσα ἐκ διαφόρων ἐπαρχιῶν τῆς Ἀσιανῆς, ὅρους ἐξέθετο ἐκκλησιαστικοὺς ὡς (ш. L., οὓς) ὑποτέτακται". „Sancta synodus guae apud Laodiceam Phrygiae Pacatianae (sic, rectins quam graece) canvenit ex diversis regionibus Asiae, definitiones, exposuit ecclesiasticas, quae subter annexae sunt": Այս առաջաբանը գտնում ենք նաև Լաուխերտի մոտ (էջ 72): Հայերեն առաջաբանի «Ի Պաականիանէս»-ը Պիտրայի մոտ գրված է Καπατιανῆς: Այս տեղանվան ուղղական հոլովաձևը ըստ Հեֆելեի Πακατιανῆς է (Conciliengeschichte, Erster Band, էջ 721, 723, հմմտ. նաև Դիոնեսիոս Կրտսերի տվյալը, տես Պիտրա, էջ 494, ծանոթ. 1, Լաուխերտ, էջ 72): Այստեղից էլ՝ հայերենի «Պատկանիանէս» ձևը: Բացի դրանից՝ նույն առաջաբանի «յարիոնոսաց»-ի փոխարեն ձեռագրերի մեծ մասն ունեն «յարինիսաց». բառն անհասկանալի է: Հունարենում նշված է ἐκ διαφόρων ἐπαρχιῶν τῆς Ἀσιανῆς (ասիական տարբեր գավառներից (թեմերից): Մեզ թվում է հունարեն τῆς Ἀσιανῆς (ասիական) տեղանունն ընդօրինակությունների հետևանքով աղճատվելով հեռացել է իր սկզբնական իմաստից և հայերենում դարձել «յարինիսաց» և ապա «յարիանոսաց»:

Հոդ. Ա, էջ 229 (հուՆ. հոդ. 1, էջ 495): Հունարենի վերջին ἀποδίδοσθαι αὐτοῖς τὴν κοινωνίαν հատվածը հայերենում թարգմանված է «համարձակել» բառով, մնացածը համապատասխանում է հուն.-ին: Հունարենի 1—19-րդ հոդվածները սկսվում են περὶ τοῦ որը հայերենի Է և Ը հոդվածներում է թարգմանված ճիշտ «վասն այնոցիկ», մնացած դեպքերում թարգմանված է՝ «չէ մարթ», «ոչ է արժան» և նման ձևերով:

Հոդ. Դ, էջ 229: Սույն հոդվածը № 3369 ձեռագիրը չունի:

Հոդ. Ե, էջ 229 (հուՆ. հոդ. 4, էջ 495): Հունարենի καὶ τὰς λεγομένας ἡμιολίας λαμβάνειν (և այսպես ասած մեկուկես վերցնել) հատվածը հայերենում թարգմանված է ընդարձակ «ոչ ընաւ փոքր ինչ ղտոկոսեաց մասն առնուլ» ձևով:

Հող. Զ, էջ 229 (հուն. հող. 6, էջ 495)։ Հունարենի τοῖς αἱρετικοῖς բառը հայերենում թարգմանված է «այլազգւոյն և հերձուածողին» ձևով։ Այս կանոնախմբում, ինչպես հետո կտեսնենք, αἱρετικός-ին համազոր միշտ գրվում է «այլազգի» բառը։

Հող. Է, էջ 230 (հուն. հող. 7, էջ 496)։ Հայերենի «Նաւատացիք կամ»-ի մեջ հուն.-ն ունի ἤτοι Φωτεινιανῶν բառերը, իսկ եզակի αἵρεσιν-ը գրված է հոգնակի ձևով՝ «հերձուածողս»։

Հող. Թ, էջ 231 (հուն. հող. 9, էջ 496)։ Հայերենում ավելացված է «և ընդս» հատվածը, մնացածը համապատասխանում հունարենին։

Այս հոդվածը չի պահվել № № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում։

Հող. Ժ, էջ 231 (հուն. հող. 10, էջ 496)։ „Περὶ τοῦ μὴ δεῖν τοὺς τῆς ἐκκλησίας ἀδιαφόρως πρὸς γάμου κοινωνίαν συνάπτειν τὰ ἑαυτῶν παιδία αἱρετικοῖς“. Հայերենը մի փոքր ընդարձակ է և թարգմանված ազատ։

Հող. ԺԱ, էջ 231 (հուն. հող. 11, էջ 496)։ Հայերենի «ծերք» և «որպէս ի հրապարակի կամ ընաւին կնոջ մարդոյ» հատվածը հունարենում չենք գտնում։

Հող. ԺԳ, էջ 232, Այս և ԺԵ, ԺԶ հոդվածները չեն պահվել № № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում։

Հող. ԺԸ, էջ 233 (հուն. հող. 18, էջ 497)։ Հայերենը չունի հուն.-ի περὶ τοῦ սկիզբը։ Հունարենի καὶ ἐν ταῖς ἐννάταις (9-րդ ժամին) հատվածը հայերենը չունի. այն պետք է լինի «ժամ Ե»-ի միջև։

№ 3369 ձեռագրում ԺԵ, ԺԶ, ԺԸ հոդվածները միացված են միմյանց և նշված ԻԸ համարի տակ։

Հող. ԺԹ, էջ 233—234 (հուն. հող. 19, էջ 497—498)։ Հունարենում չկա հայերենի «եւ որ յաշտինանին, եւ ոչ եթէ կէսսարկաւագաց թէ սաղմոսողաց» հատվածը, մնացածը համապատասխանում է հունարենին։ Մինչդեռ մի քանի ձեռագրերում, այդ հատվածը այսպես է. «Եւ որ աշտինանին և ոչ կէսսարկաւագաց և դրակարդացաց և սաղմոսողացս» № 648, էջ 24բ, համտ. նաև № № 649, էջ 46բ, 650, էջ 49բ, 651 էջ 37ա, 2964, էջ 67բ, 3562, էջ 297ա, բ, 3369, էջ 64ա։

Հող. Ի, էջ 234 (հուն. հող. 20. էջ 498)։ „῞Οτι οὐ δεῖ διάκονον ἔμπροσθεν πρεσβυτέρου καθέζεσθαι, ἀλλὰ μετὰ κελεύσεως τοῦ πρεσβυτέρου καθέζεσθαι. Ὁμοίως δὲ ἔχειν τιμὴν καὶ τοὺς διακόνους ὑπὸ τῶν ὑπηρετῶν, καὶ πάντων τῶν κληρικῶν“։ Թարգմանությունը բառացի չէ, թեև այստեղ հունարենի միտքն արտահայտված է պարզ։ Այս հոդվածից սկսած հուն. հոդվածները սկսվում են ὅτι οὐ δεῖ-ով, որը թարգմանված է «Չէ մարթ»։

Հող. ԻԱ, էջ 234 (հուն. հող. 21, էջ 498)։ „῞Οτι οὐ δεῖ ὑπηρέτας ἔχειν χώραν ἐν τῷ διακονικῷ, καὶ ἅπτεσθαι δεσποτικῶν (տ. Σύν., III, τῶν ἱερῶν փխ. δεσποτικῶν) σκευῶν“.

Հայերենն ընդարձակ է և վերջին «առ սրբել... մատչիցի» մասը հունարենը չունի։ Հունարենի ὑπηρέτην (հյուպերետ) բառը գործածվում է սպասավոր իմաստով։ Հենց այդպես է գործածել նաև Մ. Խորենացին իր Պատմության մեջ «ի ծերունւոյ քահանայէն Դանիէլէ, որ աշակերտ էր սրբոյն Գրիգորի և հիւպերէտ» (III, ԺԴ, համտ. Մ. Խորենացու Պատմության Ստ. Մալխասյանցի աշխարհաբար թարգմանությունը, Երևան, 1961, էջ 278)։ «Սպասաւոր» իմաստով է գործածված նաև Նիկիայի կանոնախմբի ԺԸ կանոնում՝ «և սարկաւագին իշխանութիւն լիցի... ի սպասու կալ եպիսկոպոսին» (համտ. հուն. καὶ ἐμμενέτωσαν οἱ διάκονοι · · · · τοῦ μὲν ἐπισκόπου ὑπηρέται εἰσίν էջ 565-ում, տես նաև այդ հոդվածի Զոնարասի մեկնությունը՝ Σύνταγμα, II, 455 և համտ. Սարդիկեի կանոնախմբի Ժ, ԺԱ, ԺԳ, ԺԵ հոդվածները և այլն)։ Սակայն, Լավոդիկեի սույն հոդվածի իրենց մեկնությունների մեջ Զոնարասը և Բալսամոնը հյուպերետը նույնացնում են կիսասարկավագի հետ՝ Զոնարաս՝ ὑπηρέται λέγονται οἱ ὑποδιάκονοι, Բալսամոն՝ ὑπηρέται λέγονται οἱ ὑποδιάκονοι (Σύνταγμα, III, Ἀθήνησιν, 1853, էջ 190)։ Այդ պատճառով էլ այս և հետագայի մի քանի հոդվածներում ὁ ὑπηρέτες-ը թարգմանված է «կէսսարկաւագ»։

Հող. ԻԲ, էջ 234 (հուն. հող. 22. էջ 498)։ „῞Οτι οὐ δεῖ ὑπηρέτην ὠράριον φορεῖν, οὐδὲ τὰς θύρας ἐγκαταλιμπάνειν“։ Հայերենում հոդվածի վերջին «և ի դուռն պահելոյ... աղաւթից» մասն ընդարձակ է։ Մի քանի ձեռագրերում ամբողջ հոդվածը ընդարձակ է. «Չէ մարթ կէսսարկաւագին կտաւ դուսովք արկանել և այնպէս կարդալ կամ սաղմոսել և ի դուռն պահելոյ հեռանալ ընաւին և ոչ ի պատճառս աղաւթից» (№ № 650, էջ 50բ, 651, էջ 37ա, 2964, էջ 67բ, 3369, էջ 64բ)։

Հող. ԻԳ, էջ 234։ № № 650, 651, 2964 ձեռագրերն այս հոդվածը չունենն։

Հոդ. ԻԴ, էջ 234 (հուՑ. հոդ. 24. էջ 488): „"Οτι οὐ δεῖ ἱερατικοὺς ἀπὸ πρεσβυτέρων ἕως διακόνων. καὶ ἑξῆς τῆς ἐκκλησιαστικῆς τάξεως ἕως ὑπηρετῶν ἢ ἀναγνωστῶν ἢ ψαλτῶν ἢ ἐπορκιστῶν ἢ θυρωρων, ἢ τοῦ τάγματος τῶν ἀσκητῶν, εἰς καπηλεῖον εἰσιέναι". Հայերենը համառոտ է, ուր կոնկրետ թվարկված չէ հոգևոր պաշտոնյաների շարքը, իսկ հունարենը չունի, «և շռայլել... մտանել և ճաշակել» հատվածը։

Հոդ. ԻԵ, էջ 234 (հուՑ. հոդ. 25, էջ 499): Հունարենում չենք գտնում միայն «կամ գրակարդացի» բառերը։

Հոդ. ԻԶ, էջ 235 (հուՑ. հոդ. 26. էջ 499): Հայերենն ունի լրացումներ՝ «կշտամբել կամ», «կամ աշտիճան ինչ», «չեն իշխան կշտամբել» հատվածները. Մնացածը համապատասխանում է հունարենին։

Հոդ. ԻԸ, էջ 235 (հուՑ. հոդ. 28, էջ 499): Հայերենը չունի հուն.-ի ἐν τοις κυριακοις (տիրոջ տաճարում) և τάς λεγομένας (այսպես ասած) բառերը, իսկ հուն.-ը՝ «ճաշ» բառը։

Հոդ. ԻԹ, էջ 235 (հուՑ. հոդ. 29, էջ 499): Բնագրի «նզովեալ լիցի» բառերին հունարենում համապատասխանում են παρὰ Χριστῷ բառերը, իսկ «բանդագուշել են»-ը հունարենում չենք գտնում։

Այս և հաջորդ՝ Լ հոդվածները չեն պահվել № № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում։

Հոդ. Լ, էջ 235—236 (հուՑ, հոդ. 30. էջ 499): „"Οτι οὐ δει ἱερατικοὺς ἢ κληρικοὺς ἢ ἀσκητὰς, ἐν βαλανείῳ μετὰ γυναικῶν ἀπολούεσθαι, μηδὲ πάντα χριστιανὸν, ἢ λαικόν. Αὕτη γὰρ πρώτη κατάγνωσις παρὰ τοῖς ἔθνεσιν". Հայերենը թեև հունարենի ուղղակի թարգմանությունը չէ, բայց միտքը արտահայտում է բավական ճիշտ։

Հոդ. ԼԱ, էջ 236 (հուՑ. հոդ. 31, էջ 499): „"Οτι οὐ δεῖ πρὸς πάντας αἱρετικοὺς ἐπιγαμίας ποιεῖν, ἢ διδόναι υἱοὺς ἢ θυγατέρας· ἀλλὰ μᾶλλον λαμβάνειν, εἴγε ἐπαγγέλλοιντο χριστιανοὶ γίνεσθαι". Հայերենում «այլազգիս»-ի հետ գրված է նաև «կամ առ հերձուածողս», որ հուն.-ը չունի։ Հունարենի ἢ διδόναι υἱοὺς ἢ θυγατέρας ἀλλὰ μᾶλλον λαμβάνειν հատվածը հայերենը չունի, իսկ հուն.-ի εἴγε ἐπαγγέλλοιντο χριστιανοὶ γίνεσθαι հատվածը թարգմանված է՝ «եթէ յանձն առնուցուն հաւատալ ի սուրբ կաթողիկէ եկեղեցի»։ Ընդհանուր առմամբ հուն.-ի միտքը տրված է ճիշտ, թեև մի փոքր համառոտ։

№ 3369 ձեռագրում ԻԸ և ԼԱ հոդվածները միացված են և գրված ԻԴ համար տակ։

Հոդ. ԼԲ, էջ 236 (հուՑ. հոդ. 32, էջ 500): Հուն.-ում չենք գտնում հայերենի միայն «և բարկութիւն» բառը։ № 650 ձեռագիրը չունի այս հոդվածը, իսկ № 651, 2964 ձեռագրերում ԼԲ հոդվածը գրված է ԼԳ համարի տակ և ընդհակառակը։

Հոդ. ԼԴ, էջ 236 (հուՑ. հոդ. 34, էջ 500): Հուն.-ում «քրիստոնէից» բառին նախորդում է πάντα բառը։ Հուն.-ի ընդարձակ τουτέστιν αἱρετικοὺς, ἢ αὐτοὺς πρὸς προειρημένους αἱρετικοὺς γενομένους հատվածը հայերենում գրված է մեկ բառով՝ «այլազգեաց»։ Մնացածը դուրս է ընկել։

Այս և հաջորդ ԼԵ հոդվածները № № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում չեն պահվել։

Հոդ. ԼԵ, էջ 236—237 (հուՑ. հոդ. 35, էջ 500): Հայերենի «ի տեղիս ուրեք» հատվածը հուն.-ում չենք հանդիպում, իսկ «ժողովս առնել» բառերին հուն.-ում հաջորդում է ἅπερ ἀπηγόρευται. Նման բան գտնում ենք նաև այլ տեղ՝ «եթող զՔրիստոս» բառերի միջև հունարենն ունի κύριον ἡμῶν Ἰησοῦν, որոնք չեն պահվել հայերենում։ Հայերենի «և յայսպիսիս համարձակեցաւ» հատվածի փոխարեն հուն.-ն ունի καὶ εἰδωλολατρείᾳ προσῆλθεν.

Հոդ. ԼԶ, էջ 237 (հուՑ. հոդ. 36, էջ 500)· Հունարենի ἢ μαθηματικοὺς ἢ ἀστρολόγους բառերը թարգմանված են «եւ դիւթս եւ վհուկս» (հմմտ. նաև Գրիգոր Մագիստրոսի Նամակները կաթողիկոսին՝ Սմբատ Զարեհավանցու ուսուցչի մասին. «ուսեալ գչար մոլութիւն յումեմնէ պարսկական բժշկէ եւ յաստեղաբաշխէ մոգէ» (Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 153)։ Հունարենի φυλακτήρια բառը հայերենում արտահայտված է հոմանիշ երկու բառով «հմայեակս և պահպանս»։ Հունարենում չենք հանդիպում «որ ճշմարտութեամբ չեն պահպանք» բացատրականը։ Հունարենի վերջին ἐκελεύσαμεν բառը հայերենը չունի։ Հուն.-ի վերջին հատվածը, ուրեմն, կլինի այսպես. «արտաքսել զեկեղեցի ընկենուլ հրամայեցաք»։

Հոդ. ԼԷ, էջ 237 (հուՑ. հոդ. 37, էջ 500). Հայերենում ավելացված է «նոցա կամ զնուէրս» ու վերջին «և մեղաց» բառերը, որ հուն.-ը չունի. մնացածը համապատասխան է։

Հունարենի 38-րդ հոդվածը հասկանալի պատճառով տեղ չի գտել Կանոնագրքում Այս հոդվածում քննադատվում է հրյաների այն սովորությունը, ըստ որի բաղարջը նրանք պատրաստում էին անխմոր (այսինքն առանց թթխմորի, ἄζυμα), և որովհետև հայ եկեղեցում էլ այդպես էր, բնական է, որ այդ հոդվածով քննադատվում էր նաև հայ եկեղեցու ծիսական մի սկզբունքը, ուստի այն բաց են թողել և չեն թարգմանել։

Հոդ. ԼԲ, էջ 237 (հուն. հոդ. 39, էջ 501): Հուն.-ի καὶ κοινωνεῖν τῇ ἀθεότητι αὐτῶν (և հաղորդակից լինել նրանց անաստվածությանը) հատվածը հայերենում գտնում ենք «որ առանց Աստուծոյ է» ձևով։

Հոդ. ԼԹ, էջ 237—238 (հուն. հոդ. 40. էջ 501): Հայերենի միայն «ուրեք կամ ի ժողովուրդ», «և ի հաւատս» բառերը հուն.-ը չունի։

Հոդ. Խ, էջ 238 (հուն. հոդ. 42, էջ 501): „Ὅτι οὐ δεῖ ἱερατικὸν ἢ κληρικὸν ἄνευ κελεύσεως ἐπισκόπου ὁδεύειν". Հուն.-ի 41-րդ հոդվածը վերաբերում է քահանաներին և եկեղեցու ավելի ցածր սպասավորներին, որոնց արգելում է որևէ տեղ գնալ առանց կանոնական թղթի։ Հուն.-ի 42-րդ հոդվածը նույն բանն արգելում է առանց եպիսկոպոսի հրամանի։ Ըստ երևույթին թարգմանիչը դրանք նույնացրել է և հուն.-ի 41-րդ հոդվածը դուրս է գցել։ Σύνταγμα-ում 42-րդ հոդվածը դրված է 41-րդ №-ի տակ և հակառակը։

Հուն.-ի 43-րդ հոդվածը, որը վերաբերում է եկեղեցու ցածր սպասավորներին, հայերենում նույնպես չի պահվել։

Հոդ. ԽԱ, էջ 238 (հուն. հոդ. 44, էջ 501): Հունարենում չենք գտնում հայերենի վերջին «բայց զնորակնիք յաւուր աւուրն մերձ առ բեմն կացուցանել» մասը և «զլոկ» բառը. մնացածը համապատասխանում է հուն.-ին։

Հոդ. ԽԲ, էջ 238 (հուն. հոդ. 45, էջ 501): Հայերենը համապատասխանում է հունարենին, միայն թե առաջինի «առանց ուսուցանելոյ» բառերը հունարենում չենք գտնում։

Հոդ. ԽԴ, էջ 239 (հուն. հոդ. 47, էջ 502): Հայերենի «ուսանել զի» բառերի միջև հուն.-ն ունի τὴν πίστιν, (հավատը), «որոյ» բառի փոխարեն՝ θείας (աստվածային), իսկ հուն.-ում չենք գտնում «և պատուէ» բառերը։

Այս հոդվածը չունեն №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերը։

Հոդ. ԽԵ, էջ 238 (հուն. հոդ. 48, էջ 502): Հուն.-ի μετόχους (մասնակից) բառը հայերենում թարգմանված է «արժանաւորք», իսկ τοῦ Χριστοῦ-ն հայերենը չունի։

Հոդ. ԽԶ, էջ 239 (հուն. հոդ. 49, էջ 502): Հունարենի նախավերջին κυριακῇ բառին հաջորդում է μόνον (միայն) բառը, որ հայերենը չունի։

Հոդ. ԽԷ, էջ 239 (հուն. հոդ. 50, էջ 502): Հուն.-ը չունի հայերենի «մխիթարել զանձինս» բառերը միայն։

Հոդ. ԾԱ, էջ 240 (հուն. հոդ. 54, էջ 502): Հուն.-ի ἱερατικοὺς-ը փոխարինված է «քահանայից» բառով, այնուհետև հուն.-ը չունի «կամ երգս» և «այլ ցած ուտել» բառերը։

Հոդ. ԾԳ, էջ 240 (հուն. հոդ. 56, էջ 503): Հունարենում չենք հանդիպում «համարձակեալ լեցի երիցանց մտանել՝ նստել» հատվածին, իսկ հայերենի «զժուարոտ իցէ եպիսկոպոսն» բառերի միջև հուն.-ում գտնում ենք ἢ ἀπούσης (կամ բացակա է) բառերը։

Հունարենի 57-րդ հոդվածը, որը վերաբերում է գյուղերում և գյուղաքաղաքներում եպիսկոպոսներ հաստատելու կամ չհաստատելու հարցին, հայերենում չի պահվել։

Հոդ. ԾԵ, էջ 240—242 (հուն. հոդ. 59—60, էջ 503—504): Հունարենի 59 և 60-րդ հոդվածները հայերենում միացված են մեկ հոդվածում։ Սկզբի մասը մինչև երկրորդ տողի «զՀին կտակարանս» բառերը 59-րդ հոդվածն է, որը հայերենում մի փոքր ընդարձակ է. ահա հուն.-ը։ „Ὅτι οὐ δεῖ ἰδιωτικοὺς ψαλμοὺς λέγεσθαι ἐν τῇ ἐκκλησίᾳ οὐδὲ ἀκανόνιστα βιβλία, ἀλλὰ μόνα τὰ κανονικὰ τῆς παλαιᾶς καὶ καινῆς (ու. L., τῆς καινῆς καὶ παλαιᾶς) διαθήκης»։

Հուն.-ի 60-րդ հոդվածն սկսվում է հայերենի սույն հոդվածի «Զինչ արժան է կարդալ» հատվածից։ Հայերենը համապատասխանում է հունարենին փոքրիկ տարբերություններով։

## ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՎՈՐՉԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Ցանկ, էջ 243—244: *№ 659 ձեռագրի ցանկը գրչի կողմից նոր է կազմված և փաստորեն երեսուն հոդվածների վերնագրերի փոխարեն այնտեղ գանում ենք 27 հոդվածների վերնագրեր, ընդ որում երկու վերնագիր վերաբերում է մեկից ավելի հոդվածների: Հոդվածների վերնագրերի դիմաց հայկական տառերով գրված են հոդվածների համարները: Ահա այդ ցանկը.*

*«Ցանգ կանոնաց Լուսաւորչին*

*Թահանայից Ա, Բ, Գ*
*Հնթանոսաց Դ*
*Երկեակի եւ կուսի Ե*
*Երկ[ր]որդաց ամուսնացելոց Զ*
*Ցանդէպ ուտողաց Է*
*Գաղտ պսակի Ը*
*Արեւանկաց Թ*
*Ջիամոլաց Ժ*
*Իգացելոց ԺԱ*
*Թովչաց ԺԲ*
*Կուսանաց ԺԳ*
*Մանկանց առանց կնքոյ մեռանելոյ ԺԴ*
*Զգերեզմանս բացողաց ԺԵ*
*Զգիսն եղոպտելոյ ԺԶ*
*Կոծ դնողաց ԺԷ*
*Նշխարաց մարտիրոսի ԺԸ*
*Նկատողաց գխոռնակուհն անասնոց ԺԹ*
*Անապատաւորաց Ի*
*Արհամարհողաց դկուք (SIC) մեռելոյ ԻԱ*
*Խոստովանութիւն յայտնողաց ԻԲ*
*Կնոջ արձակելոյ ԻԳ, ԻԴ*
*Արբեցողաց ԻԵ*
*Կաշառառուաց ԻԶ*
*Ջեռնածուաց ԻԷ*
*Կիրակէի ԻԸ*
*Վայրապար նզովողաց ԻԹ*
*Նուիրելոց կուսից Լ» (էջ 103 ա, բ):*

*Ինչպես դժվար չէ նկատել, այս վերնագրերը կազմված են հոդվածների հաջորդականության համապատասխան: Համեմատությունների համար չօգտագործված մյուս ձեռագրերը առաջին վերնագիր և ցանկ չունեն (տես № № 648, էջ 31ա, 649, էջ 77բ, 650, էջ 86բ, 651, էջ 64բ—65ա, 2964, էջ 110բ, 3562, էջ 303ա):*

Երկրորդ վերնագիր. էջ 245: *Այս վերնագրին մի փոքր հավելում ունեն երեք ձեռագրերի բնագրերը. «Կանոն սրբոյն Գրիգորի Պարթեւի յաւելուած Նիկիական» (№ 659, էջ 105բ). «Կանոնք առաջ[ելոյն] ի (№ 657* ունի *առաքելսյն ի) սրբոյն Գրիգորէ (№ 657՝ Գրիգորի) Պարթեւի Հայոց Լուսաւորչի եւ առաքելաշնորհ վկայի (№ 657՝ արհի) յաւելուած ի Նիկիական կանոնս (№ 657՝ գլուխք Լ)» (№ 8459; էջ 83բ, 657, էջ 135ա): «Յաւելուածն Նիկիական» և «Յաւելուածն ի Նիկիական կանոնս» բառերը հմմտ. Մ. Խորենացու «Պատմութիւն Հայոց»-ի (Տփղիս, 1913, գիրք 2-րդ, գլ. Ղ, էջ 241) «սուղ ինչ գլուխս* յիշեցէ ի կանոնս ժողովոյն յաւելուլ» *կամ Ագաթանգեղոսի «Պատմութիւն Հայոց»-ի (Տփխիս, 1909, էջ 465—466) «ի նոյն լուսաւոր* կանոնս յաւելեալ» *(ընդգծումը մերն է—Վ. Հ.) հատվածների հետ:*

*№ 657 ձեռագրում վերոհիշյալ վերնագրի տակ նշված են 83 հոդվածներ (էջ 135ա—146ա). կանոնագրքում եղած Գրիգոր Լուսավորչի կանոնախմբի 30 հոդվածներից 17-ը՝ Ա, Բ, Գ, Ե, ԺԳ,—ԺԹ, ԻԲ—ԻԵ, ԻԸ, ԻԹ գանում ենք № 657 ձեռագրում, իսկ 13 հոդվածներ՝ Գ, Զ—ԺԲ, Ի, ԻԱ. ԻԶ, ԻԷ, Լ չեն պահվել այս ձեռագրում. մնացած 66 հոդվածները այլ բնագիր են և գրված են Գր. Լուսավորչի անվան տակ:*

Հոդ. Դ, էջ 245: *Սույն հոդվածը ամենայն հավանականությամբ Անկյուրիայի ժողովի Ը հոդվածի համառոտումն է: Ինչպես այստեղ խոսքը վերաբերում է ոչ թե հեթանոսների տուն գնալուն, այլ նրանց տոներին մասնակցելուն: Այստեղից էլ բնագրի «ի տունս»

պետք է ուղղել «ի տունս», ինչպես վարվեցինք Անկյուրիայի ժողովի վերոհիշյալ հոդվածի համապատասխան հատվածի հետ, քանի որ ձեռագրերի մի մասը տալիս էր «ի տունս»։ Այստեղ այդպես չվարվեցինք, որովհետև բոլոր ձեռագրերն ունեին «ի տունս» ընթերցումը։

Հոդ. ԺԲ, էջ 246։ № 651 ձեռագրում չի պահվել այս հոդվածը։

Հոդ. Լ, էջ 249։ *Մի քանի ձեռագրերում Լ հոդվածը վերջից շարունակվում է. «Իսկ որ խոտորեսցի եւ յանցանիցէ զփրկական խորհրդովն՝ զամենայն ժամանակս կենաց իւրոց պարտի լալ այնպիսին եւ խոստովանել եւ ի ժամանակի ելից իւրոց յաշխարհէս արժանի լիցի սուրբ հաղորդութեանն» (№ 2964, էջ 112բ. տես նաև №№ 649, էջ 79ա, 650, էջ 86բ—87ա, 651, էջ 66ա)։ Իսկ № 659 ձեռագրում «մարդասիրեսցէ» բառին հաջորդում է մի այլ հատված, որը, սակայն, մեր կարծիքով, կապ չունի Լ հոդվածի հետ և հանդիսանում է գրչի բացատրությունը. ահա այդ հավելումը. «Եւ արդ, զայս ամենայն գրեցաք առ ի փորձելոյ զիւրաքանչիւր չափ ապաշխարութեան, զի մի՛ զոք կորուսցուք յայնպիսեաց անտի, այլ դարձուցեալք ի ծանր դատաստանէն և յահագին եւ ի մեծ հատուցման աւուրն ահաւոր մերոյ ընկալցուք զայնպիսիսն եւ աւգտեսցուք զնոսա հանդերձ աղաւթիւք եւ պատարագաւք եւ յափշտակեսցուք զնոսա յորոգայթից սատանայի. որպէսզի եւ զանձինս մերկ արասցուք զերծուցանել յահագին տանջանացն Քրիստոսիւ Յիսուսիւ տէրամբ մերով, որում փառք յաւիտեանս. ամէն» (էջ 108ա)։ Այս հատվածը № 8459 ձեռագրում գրված է որպես ԼԱ հոդված (էջ 89բ—90ա)։*

## ՍԱՐԴԻԿԵԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր և ցանկ, էջ 250—252: *№ № 650 651, 3964 ձեռագրերում Սարդիկեի ժողովի կանոնախմբի վերնագիրը թեև այսպես է՝ «Սարգիկէ կանոնին գլուխք ԻԱ» բայց բնագրում չեն բերվում 21 հոդվածները, այլ նշվում են նրանցից միայն յոթը: № № 648, 3562 ձեռագրերում այս կանոնախմբի վերնագիրը համարյա նույնն է, ինչ որ վերևում նշվածը. «Սարգիկէ կանոն գլուխ», կամ № 649 ձեռագրինը՝ «Սարգիկէ կանոնին գլուխք է»․ վերջին երեք ձեռագրերում ևս պահվել է միայն յոթ հոդված: Այս ձեռագրերից և ոչ մեկը չունի հոդվածների վերնագրերի ցանկը: Իսկ № 3369 ձեռագիրն ունի «Գիր կանոնական Սարդիկեայ որք ժողովեցան» (էջ 51ա)։ Թեև այս ձեռագիրը նույնպես ցանկ չունի, բայց հոդվածների հաջորդականությունը համապատասխանում է Կանոնագրքի ունեցածին։*

*Ցանկի և հոդվածների միջև միայն* ՈՂ *ձեռագրում պահվել է ընդարձակ առաջաբան, որ բերում ենք ամբողջությամբ. «Եղև այս ժողովն որ ի քաղաքն Սարդիկեա վասն Աթանասի Աղեքսանդրու հայրապետին եւ Պաւղոսի Կոստանդնուպոլսի եւ նման նոցին խորհողաց ուղղափառաց, որք զժողովոյն խոստովանին զՆիկիա կանոնեալ սահման: Եւ զի ամենայն արեւելեան յաթոռոցն ուղղափառ հայրապետքն յարիանոսացն հալածեալք էին եւ ինքեանք արիանոսքն զաթոռս նոցա տիրեալ էին եւ ամենայն քրիստոնեայք բազում չարչարանս կրէին հրամանաւ Կոստաս յարեւելեան թագաւորի, որ էր աղանդովն Արիոսի: Եւ զի յարեւմտեան՝ Կոստանդինոս ուղղափառ թագաւորն, եղբայրն Կոստասա, հրաման եհան, զի յարեւմտեան եպիսկոպոսքն ժողովեսցին ի քաղաքն Սարդիկեա, նոյնպէս եւ առ եղբայրն իւր առ Կոստաս գրեաց, զի եւ նա հրամայեսցէ զԱթանաս ընդունել դարձեալ յառաջին աթոռն իւր եւ զժողովն առնել, որպէս զի տեսցեն վասն խնդրոյն, որ ի մէջ նոցա: Եւ ժողովեցան ի քաղաքն Սարդիկեա յարեւմտից եպիսկոպոսք Ց եւ յարեւելից ՀԶ: Եւ զի ոչ գային յարեւելեանքն ամենեքեան ի մոգովն պատճառեալ զպատճառս ինչ եւ որք եկին ասեն՝ «Ոչ է արժան զալ Աթանասի եւ Պաւղոսի ի ժողովս». եւ հաւանեալ վասն աղմկին՝ ոչ եկին ի ժողովն Աթանասու եւ Պաւղոսու Եւ եկեալ ի Փիլիպպուպաւլիս ժողովն յարեւելից յայտնապէս զխոստովանութիւն ոչ խոստովանէին զՆիկիոյ, որ եւ թղթովք յայտ առնէին յարեւմտեան ժողովոյն որ ի Սարդիկեա, զԱննման կարծիսն հաւատոյն, իսկ յարեւմտեանքն հաստատեցին զհաւատն որ ի Նիկիայ եւ ինքեանք զայս կանոն կարգեցին, գլուխս ԻԱ» (էջ 117աբ)։*

Հոդ. Ա, էջ 252—253 (հուն. հոդ. 1, էջ 468): *Հայերենի «եպիսկոպոս ասաց» բառերի միջև հուն.-ն ունի քաղաքի անունը՝* πολεως Κορδούβης. *իսկ հայերենի «ումեք իշխանութիւն» բառերի միջև հուն.-ն ունի* τῶν ἐπισκόπων *բառը. մնացածը համապատասխանում է հունարենին։*

*Որոշ ձեռագրերում, պահվել են Սարդիկեի ժողովի միայն յոթ հոդվածները. դրանք կազմում են այս ժողովի կանոնական որոշումների համառոտ խմբագրությունը: Ահա Ա հոդվածը. «Ոչ է պարտ եպիսկոպոսի իւրմէ վիճակէն յայլ վիճակ փոխել, զի այնպիսին յագահութենէ է տռչորեալ. քանզի ոչ երբեք ուրեք եպիսկոպոս կարացի գտանել, որ ի մեծ քաղաքէ ի նուաստագոյնսն փոխեցաւ» (№ № 648, էջ 26ա, 649, էջ 48ա, 650, էջ 52ա, 651, էջ 38ա, 2964, էջ 69բ, 3562, էջ 299ա)։*

Հոդ. Բ, էջ 253—254 (հուն, հոդ. 2, էջ 469): *Հայերենի «արուեստս տանջելիս»-ի միջև հուն.-ն ունի* οὐ σεκτέατ ἀλλα *բառերը. մնացածը համապատասխանում է վերջինիս։*

*Համառոտ խմբագրությունը այս է. «Բ. Վասն եպիսկոպոսի որ խաբէութեամբ թղթով փոխի վիճակէ ի վիճակ, սակաւ վարձակուք ապականէ զմանս եւ յերեսաց ժողովրդոց*

*թուղթ ի մէջ բերէ. այնպիսին եւ ոչ ընդ աշխարհականին ի վաղճանին արժանի լիցի հաղորդութեան» (№ № 648, էջ 26ա, 649, էջ 48ա, 650, էջ 52ա, բ, 651, էջ 38բ, 2964, էջ 70ա, 3562 էջ 299ա)։*

Հոդ. Գ, էջ 254—255 (հուն. հոդ. 3, էջ 469—470)։ *Հայերենի «Յուլիոսի Հռոմայ» բառերի միջև հուն.-ն ունի* τῷ ἐπισκόπῳ *բառը, «են որպէս» բառերի միջև՝* ἀναπεμφθῆναι τὸ δικαστήριον *հատվածը. մնացածը համապատասխանում է հունարենին։*

*Համառոտ խմբագրությունը խիստ սուղ է իմաստից. «Գ. Մի՛ ոք եպիսկոպոս իւր գաւառ երթիցէ, բայց թէ յեպիսկոպոսակցէ իւրմէ կոչեսցի, զի մի՛ փակեսցի դուռն» (№ № 648, էջ 26ա, 649, էջ 48ա, 650, էջ 52բ, 651, էջ 38բ, 2964, էջ 70ա, 3562, էջ 299ա)։*

Հոդ. Դ, էջ 255 (հուն. հոդ. 4, էջ 470—471)։ *Հայերենի «և հաճոյ» ու «գրով» բառերը հուն.-ը չունի։ № № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։*

Հոդ. Ե, էջ 255—257, (հուն. հոդ. 5, էջ 471—472)։ *Հայերենի «Հռոմայ եպիսկոպոսն» բառերի միջև հուն.-ն ունի* ἐκκλησίας *բառը, մնացածը համապատասխան է միմյանց։ № № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։*

Հոդ. Զ, էջ 257—258 (հուն. հոդ. 6, էջ 472—473)։ *Նախքան Զ հոդվածի սկսվելը Կանոնագրքի համահավաք բնագրի համար օգտագործված մի քանի՝* ABCKLMNOPQ *ձեռագրերում գրված է «Նորին», իսկ* E *ձեռագրում՝ «Նոցին». սրանք վերաբերում են հոդվածի սկզբի* Ὅσιος ἐπίσκοπος εἶπε *սովորական դարձվածքին, որ այս հոդվածում չի բերվել և փոխարեն գրվել է «Նորին» կամ «Նոցին», այսինքն Զ հոդվածը ևս Հոսիոս եպիսկոպոսի ասածն է։ Հայերեն թարգմանությունը համապատասխանում է հունարենին, միայն թե հունարենի* χρὴ πρότερον ἐκεῖνον τὸν ἐναπομείναντα ἐπίσκοπον *հատվածը հայերենը չունի, այն պետք է գտնվեր «եպիսկոպոս որ» բառերի միջև. ինչպես նաև «և առնէին»-ի միջև հուն.-ն ունի* πρότερον ετύγχανον γεγονότες *հատվածը։*

*Հայերենի «բազմութեան թուովք ժողովուրդք և քաղաք»-ի դիմաց հուն.-ն ունի* ἐν πολλῷ ἀριθμῷ λαοῦ πόλις, *այսինքն՝ բազմամարդ քաղաք։*

*Այս հոդվածը համառոտ խմբագրության մեջ տրված է այսպես. «Զ. Ոսիոս եպիսկոպոս [աս]աց. թէ դէպ լինիցի բազում եպիսկոպոսաց ի մի վայր ժողովել եւ մի եպիսկոպոսի մնալ անարէն ի սան, արժան է թղթով կոչել զնա եւ մնալ նմա։ Ապա թէ ոչ եկեսցէ, ձեռնարկեսցեն յոր ինչ ժողովեցաննւ Եւ ոչ է արժան եպիսկոպոս կարգել ի գեաւղ կամ ի զուղնաքեա քաղաքի ուր երիցունք բնական են. զի մի՛ արհամարհեսցի եպիսկոպոսին անունն եւ իշխանութիւնն» (№ № 648, էջ 26ա, 649, էջ 48ա, 650, էջ 52բ, 651, էջ 38բ. 2964, էջ 70ա, 3562, էջ 299ա)։*

Հոդ. Է, էջ 258—260 (հուն. հոդ. 7, էջ 473—474). *Հայերենում մի քանի տեղ նկատվում են շեղումներ, օրինակ, հուն.* αἱ ἄδικοι *բառի դիմաց գրված է «աշխարհական»,* παρὰ τοῦ ἀδελφοῦ *«եղբաւրակցէն»,* συνεπισκόπου *«և պաշտաւնակցէ եպիսկոպոսակցէ», իսկ «աշխարհականաց պատիւս» բառերի միջև հուն.-ն ունի* ἢ ταῖς χήραις συναίρεσθαι καὶ ἐπικουρεῖν. ἀλλὰ κοσμικὰ *հատվածը, որը դուրս է ընկել հայերեն բնագրից։ Մի երկու տեղ հուն.-ի* εἰς τὸ στρατόπεδον *թարգմանված է «ի պաղատն» (այսպես նաև այլ հոդվածներում), թեև հոդվածի սկզբում գրված է ճիշտ թարգմանությամբ՝ «ի բանակս» (=ճամբար)։ Հայերենի «յանապատ տեղի վասն» հատվածը հուն.-ը չունի, դրա փոխարեն այնտեղ կարդում ենք* οἴκτου δεομένους, *«կամ անիրաւ դատապարտեալ պահեսցի» հատվածի դիմաց հուն.-ն ունի* εἰς περιορισμὸν ἢ νῆσον καταδικασθέντας *և այլն։*

Հոդ. Թ, էջ 261—262 (հուն. հոդ. 9, էջ 474—475)։ *Հայերենի «Նոցա աւգնականութիւն» բառերի միջև հուն.-ն ունի* ἀγαθήν. *մնացածը համապատասխանում է հուն.-ին։*

Հոդ. Ժ, էջ 262—263 (հուն. հոդ. 10, էջ 475—476)։ *Եթե բացառենք որոշ շեղումներ, օրինակ, «դրակարգացի սպասաւորութիւն» բառերի միջև հուն.-ն ունի* καὶ πρεσβυτέρου. *«ընդունել թեթևութեամբ» բառերի միջև՝* τολμηρῶς καὶ, *իսկ հայերենի «եղև առաջեալ»-ի փոխարեն հուն.-ն ունի* ἐγένετο διδάσκαλος *և այլն, ապա հայերենը համապատասխանում է հունարենին։*

*Մի քանի ձեռագրերում սույն հոդվածի համառոտ խմբագրությունն այսպես է. «Ժ. Ոսիոս եպիսկոպոս ասաց. զի թէ ոք զմեծատուն կամ զաքողիստիկոս ի հրապարակէ աղաչեսցէ լինել եպիսկոպոս՝ ոչ յառաջ նախ կարգեսցի եթէ ոչ նախ սարկաւագի եւ դրակարգացի սպասաւորութիւն կատարեսցէ. զի թէ ընդ ամենայն աստիճան արժանաւոր կարծեսցի ի կամարն եպիսկոպոսութեան, յաստջադիմութեան անցանել կարասցէ եւ յիւրա-*

քանչիւր աշտիճանի յերկարանալ, զի փորձեսցի հաւատն եւ վարքն»։ (№ № 648, էջ 26ա, բ, 649, էջ 48ա, բ, 650, էջ 52բ. 651, էջ 38բ, 2964 էջ 70ա, բ. 3562. էջ 299բ)։

Հոդ. ԺԱ, էջ 263—265 (հուն. հոդ. 11. էջ 476—477)։ Հայերենում առկա են փոքրիկ եղումներ միայն, օրինակ՝ «առնելով որ» բառերի միջև հուն.-ն ունի αὐτόθι բառը. «Թերահաւատելով որ» բառերի միջև՝ ἐκκλησίαν, իսկ «սովորութենէ» բառը գրված է πανουργία բառի դիմաց։ Հուն.-ի մի հատվածը՝ Μέμνησθε δὲ ἐν τῷ προάγοντι χρόνῳ . . . ἀποκινοῖτο τῆς κοινωνίας կանոնագրքում մի փոքր խմբագրված է՝ «Բայց յիշել ի յառաջեալ ժամանակին...ի բաց շարժեսցին յաւրինաց անտի»։

Ահա և այս հոդվածի համառոտ խմբագրությունը. «ԺԱ. Ոչ է պարտ եպիսկոպոսի դոռոզութեան աղագաւ յիւր քաղաքէն յայլոյ քաղաք գնալ եւ յաճախ բեմասացութիւնս առնել եւ տգիտութեան աղագաւ քամահել դեպիսկոպոս տեղոյն. զի այնպիսին գնորա զաթոռն յինքն ջանա կորզել։ Արդ՝ հայրն մեր սահմանեց, զի թէ ոք դուր ի Նորին քաղաքի եղեցի քան զերիս շաբաթս եւ ոչ հաղորդեսցի, ի բաց շարժեսցի ի հաղորդութենէ։ Զի թէ ի վերայ աշխարհականաց այդպէս հրամայեալ է, ապա ոչ է աւրէն եպիսկոպոսաց առանց ծանր հարկի ի բաց թողուլ դհօտն» (№ № 648, էջ 26բ, 649, էջ 48բ, 650. էջ 53ա, 651, էջ 38բ—39ա, 2964, էջ 70բ—71ա, 3562, էջ 299բ)։

Հոդ. ԺԳ, էջ 266 (հուն. հոդ. 13, էջ 478—479)։ Մի երկու շեղում էլ նկատվում է այս հոդվածում, օրինակ՝ «զարձեալ» բառի փոխարեն հուն.-ն ունի πάσιν, «եպիսկոպոսակցին» բառի փոխարեն՝ τῷ ἐπισκόπῳ, իսկ հոդվածի վերջին «զիմաստութիւն»-ը գրված է հուն.-ի ὁμόνοιαν (համամիտ, միաբան) բառի դիմաց։

Հոդ. ԺԴ. էջ 266—268 (հուն. հոդ. 14, էջ 479—480)։ Հայերենում դարձյալ առկա է մի-երկու փոքրիկ շեղում, օրինակ՝ հայերենի ունեցած «վաղվաղակի» ձևը համապատասխանում է Լաուխերտի ταχέως (արագ, շտապ, շուտ) և ոչ թէ Պիտրայի τάχιον (խիստ, դաժան) ընթերցմանը. «ամենեքեան ասացին» բառերի միջև հուն.-ն ունի ἐπίσκοποι բառը, «բերել զի» բառերի միջև՝ ὀφείλει «Ընթասցի» բառին նախորդող «եպիսկոպոսն» բառը հուն.-ը չունի։

Հոդ. ԺԶ—ԺԷ, էջ 268—269 (հուն. հոդ. 16, 480—481). Կանոնագրքում եղածը համապատասխանում է հունարենին. բայց հայերենում որոշ իմաստով տուժել է հոդվածի ամբողջականությունը՝ բաժանված լինելով երկու մասի. սակայն ըստ էության հայերենը հունարենի համեմատությամբ ավելի ոչինչ չունի։ Հավանաբար Հովհաննես Օձնեցին, երբ կազմում էր Կանոնագիրքը, ԺԶ հոդվածը բաժանել է երկու մասի՝ մեկը քահանաների մասին, մյուսը՝ սարկավագների. դրան համապատասխան Սարդիկեի ժողովի հոդվածների վերնագրերի ցանկում գրել է երկու վերնագիր՝ «ԺԶ. Վասն երիցանց՝ ոչ լինել անհաղորդ զերիս կիւրակէս. ԺԷ. Վասն սարկաւագաց նոյնպէս»։ Այդ բանը տեղի է ունեցել այսպես. Սարդիկեի ժողովի հոդվածների մեծ մասը սկսվում է. «Ոսիոս եպիսկոպոս ասաց» արտահայտությամբ, և քանի որ հունարենում ԺԶ հոդվածի վերջին մասում նույնպես նշված է "Ὅσιος ἐπίσκοπος εἶπεν, ուստի այդ հատվածից առանձնացրել են վերջին մասը և նշել որպես ԺԷ հոդված. երկրորդ՝ այդպես են վարվել, որպեսզի, հավանաբար, սարկավագների մասին եղած որոշումը ցայտուն երևա։

Հայերենում մի շեղում կա, «տեղիս» բառի փոխարեն հուն.-ում գրված է ἐκκλησίας բառը։ ԺԶ հոդվածի վերնագրում՝ նշված է «զերիս կիւրակէս», բուն հոդվածում այդպիսի բան չենք գտնում, բայց որովհետև հունարենում ասված է. Οὗτοι οἱ ὅροι, οἱ καὶ ἐπὶ τῶν ἐπισκόπων ὡρισμένοι, φυλαττέσθωσαν καὶ ἐπὶ τούτων τῶν προσώπων (այն սահմանումները, որոնք եպիսկոպոսների վերաբերյալ որոշվեցին, թող պահպանվեն և այս անձերի վերաբերյալ) և քանի որ ԺԱ, ԺԲ հոդվածներում եպիսկոպոսների համար նշվում է երեք կիրակի ժամանակամիջոցը, այստեղից էլ Հովհաննես Օձնեցին նշված հոդվածի վերնագրում գրում է. «զերիս կիւրակէս»։

Ե ձեռագրում ԺԷ հոդվածը գրված է ԺԸ-ի տեղը և ընդհակառակը. № 3369 ձեռագիրը չունի ԺԷ հոդվածը։

Հոդ. Ի, էջ 270—271 (հուն. հոդ. 19. էջ 482)։ Այս հոդվածը ևս համապատասխանում է հունարենին, միայն թե հունարենի τῆς ἐμῆς μετριότητος ἡ ἀπόφασίς ἐστιν αὕτη (այս իմ համեստ (չափավոր) որոշումն է հատվածը Կանոնագրքում թարգմանված է. «Իմոյ Նուաստութեանս է այս դատաւճիռ»։ Ἀπόφασις թարգմանված է «դատավճիռ», ավելի ճիշտ է «որոշում» նշանակությունը։ Այնուհետև հուն.-ի μὴ βούλοιντο և μὴ ὑποδέχεσθαι բառերը հայերե-

*՝նում գրված են «կամեցին» և «ընդունել» ձևով։ Թարգմանությունը սխալ չէ, միայն հունարենի նախադասության ժխտական կառուցվածքը հայերենում փոխարինված է դրական կառուցվածքով։*

*Ահա համառոտ խմբագրությունը. «Ի. Վասն պաշտելոյ դկարգն որ ի հերձուածս անդր թիւրին եւ անդրէն դառնան, որք միանգամ ի վիճակէ եկեղեցական յառաջ մատեան յումանց յեղբարց մերոց, եթէ կամեցան դառնալ անդրէն յորս եւ անուանեցան յեկեղեցիս՝ յայսմհետէ ընդունել։ Բայց Նաւիրիանոսի՝ ոչ է եպիսկոպոսի անուն՝ անձին պարտ է վրէժխնդրել, այլ եւ ոչ զՄովսէս եպիսկոպոսութեան արժանի գոլ կարծել։ Իսկ եթէ աշխարհական հաղորդութեան պահանջեսցեն՝ ոչ էր պարտ նոցա ուրանալ» (№ № 648, էջ 26բ, 649, էջ 48բ, 650, էջ 53ա, 651, էջ 39ա, 2964, էջ 71ա, 3562, էջ 300ա)։*

Հոդ. ԻԱ, էջ 271—272 (հուն. հոդ. 20—21, էջ 482—483)։ *Պիտրայի հրատարակության բնագրում գրված է երկու՝ 20 և 21-րդ հոդվածների տակ, այդպես է նաև Σύνταγμα-ում (III, էջ 280, 282), մինչդեռ Հեֆելեի և Լաուխերտի հրատարակություններում հունարեն այս երկու հոդվածները նշված են իբրև մեկ՝ 20-րդ հոդված։ Պիտրայի հրատարակության 20-րդ հոդվածը սկսվում է հայերեն սույն հոդվածի սկզբից և վերջանում «Ամենեքին պատասխանի արարին. Վայել է և հաճոյ են այսպիսի կամք (համա. հուն.* Ἅπαντες ἀπεκρίναντο· Πρέπει καὶ ἀρέσκει ἡμῖν ἡ τοιαύτη γνώμη *հատվածը)։ Հուն.-ի 21-րդ հոդվածն սկսվում է հայերենի «Եւ այս անտի եւ եթ, մանաւանդ ճանաչելի եղիցի եւ կատարեսցի» հատվածից (համա. հուն.* καὶ τοῦτο δὲ ἐκεῖθεν μάλιστα γνώριμον γενήσεται καὶ πληρωθήσεται) *և ավարտվում հայերեն 21-րդ հոդվածով՝ «Ամենեքին ասացին. Սահմանեսցի այսպէս»։ Հայերենի այս հոդվածում նկատվում են փոքրիկ շեղումներ հունարենից, օրինակ՝ «կամաց» բառի փոխարեն հուն.-ն ունի* ἡ τῷ Θεῷ *(հոդ. 20-րդ),* κανάλιω *(հոդ. 21-րդ) բառը հայերենում գրված է «յոահս» ձևով, «ին տեսնելով»-ի միջև հուն.-ն ունի* ἐπισκόπων *և այլն։*

*Սակայն. այս կանոնախմբի հոդվածների հաջորդականությունը Լաուխերտի մոտ գրված է ըստ լատիներեն բնագրի հաջորդականության, թեև հոդվածների սկզբում նշված են հունարենի կարգահամարները, օրինակ հունարենի 20-րդ հոդվածը լատիներենում գրված 11-րդ №-ի տակ, 10-րդը՝ 13-րդի, 11-րդը՝ 14-րդի (էջ 60—64) և այլն։*

*№ № 648, 649, 651, 2964, 3562 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։*

# ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 273: *Համեմատությունների համար չօգտագործված մի քանի ձեռագրերի ցանկերում և բուն ձեռագրերում նշված են 2 հոդված (№ № 648, էջ 26բ, 649, էջ 49բ, 3369, էջ 67ա, 3562, էջ 300ա), իսկ № № 650 (էջ 53ա), 651 (էջ 39ա), 2964 (էջ 71ա) ձեռագրերում՝ 3 հոդված, բայց բոլոր դեպքերում էլ այդ ձեռագրերում պահվել է երկու հոդված։*

Ցանկ և առաջաբան, էջ 273—274 (հուն. էջ 507—508): *Վերևում նշված և ոչ մի ձեռագրում չեն պահվել ցանկը և առաջաբանը։ Պիտրայի հրատարակության հունարեն բնագրում Կոստանդնուպոլսի ժողովի որոշումները պահվել են Թեոդոս մեծին ուղղված մի նամակին առընթեր (էջ 507)։*

*Ինարկե, կանոնագրքում եղած այս կանոնախմբի առաջաբանը, որ գրել է Հովհաննես Օձնեցին, կապ չունի հուն.-ի հետ։ Հունարենում այնուհետև բերվում են ժողովի կանոնները, որոնք թվով յոթն են։ Կանոնագրքում պահվել են հունարենի 1—4-րդ կանոնները։ Թե ինչու կանոնագրքում չեն պահվել 5-րդ, 6-րդ և 7-րդ հոդվածները, կամ արդյոք երբևէ այդ կանոնները հայերեն թարգմանվել, բայց կանոնագրքի մեջ չեն մտել՝ դժվար է հաստատ բան ասել։ Սակայն, ավելի ուշ, հավանաբար 18-րդ դարում, վերևում նշված նամակը և սրան առընթեր կանոնները և այլ նյութեր թարգմանվել են «Ի նուաստ Յակոբ դպրէ ի լեզուէն Յունաց եւ Լատինացւոց...» (№ 1490, էջ 35ա, նամակը և կանոնները տես 64բ—67բ էջերում)։ Իսկ* Σύνταγμα*-ում բոլորովին այլ առաջաբան է, խիստ համառոտ և գրված է Զոնարասի և Բալսամոնի անունով։*

Հոդ. Ա, էջ 274: *Մի քանի ձեռագրերում այս հոդվածը շարադրված է այսպես. «Ա. Ոչ է պարտ<է>խոտել զհաւատսն, որ ի Նիկիայ, այլ նզովել զամենայն հերձուածողս եւ յայտնապէս զԵւնոմիանոսացն, այսինքն Աննմանիցն եւ զՍաբելիանոսացն, եւ զԱրիանոսացն, այսինքն Եւդոքսիանոսացն եւ զԿեսարիանոսացն, այսինքն Հոգէմարտացն եւ զՄարկեղիանոսացն եւ զՓոտիանոսացն եւ զԱպողինարիոսացն» (№ 648, էջ 26բ—27ա, հմմտ. նաև № № 649, էջ 49ա, 650, էջ 53ա, 651, էջ 39ա, 2964, էջ 71ա, 3562, էջ 300ա)։ № 3369 ձեռագրում հոդվածների հաջորդականությունն այլ է. կանոնագրքի Ա հոդվածը գրված է Գ համարի տակ, Բ-ն՝ Բ, Գ-ն՝ Դ (էջ 67ա)։*

Հոդ. Բ, էջ 274—276 (հուն. հոդ. 2—3, էջ 508—509): *Այս հոդվածը հունարենում գրված է երկու հոդվածների տակ՝ 2-րդ և 3-րդ։ 3-րդ հոդվածը հունարենում սկսվում է* Τὸν μὲν τοι Κωνσταντινουπόλεως ἐπίσκοπον*-ից (հմմտ. հայ. թարգմանությունը. «Կոստանդնուպաւլսացւոյ եպիսկոպոսին»)։ Ի դեպ, այս հոդվածը 18-րդ դարում Հակոբ Դպրի կատարած հայ թարգմանության մեջ տրված է չորս հոդվածով՝ Բ, Գ, Դ, Ե (№ 1490, էջ 65բ—66ա)։*

*Սույն հոդվածը չի պահվել № № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում։ Իսկ № 3369 ձեռագրի նույն հոդվածում չի պահվել «Իսկ որ յարեւելս եպիսկոպոսքն են... միայն կարգաւորութիւն է անաւրինել» հատվածը։*

Հոդ. Գ, էջ 276 (հուն. հոդ. 4, էջ 509): *Այս հոդվածի առթիվ Ն. Մելիք-Թանգյանը գրում է. «Մեր ձեռագրերում... բոլորի մեջ Մաքսիմ շնականը (հմմտ. հուն.* Μαξίμου τοῦ κυνικοῦ *— Վ. Հ.) թարգմանված է Մաքսիմ շինական, շնական բառի միտքը չհասկանալուն համար» (ընդգծումը Ն. Մելիք-Թանգյանինն է.—Վ. Հ., տե՛ս «Հայոց եկեղեցական իրաւունքը», Ա գիրք, էջ 168)։ Իզուր է Մելիք-Թանգյանը կշտամբում թարգմանչին. այդ շփոթումը գալիս է ոչ թե թարգմանիչից, այլ հետագա դարերի գրիչներից, որոնք ընդօրինակել են կանոնագիրքը։ Եվ պատահական չէ, որ համեմատության համար մեր օգտագործած մի շարք ձեռագրեր ունեն ոչ թե «շինական», այլ «շնական»։ Ի դեպ կանոնագրքի տարբեր կանոնախմբերի թարգմանիչների հասցեին Մելիք-Թանգյանը նման անտեղի կշտամբանքների շատ է գիմում։*

# ԵՓԵՍՈՍԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 277։ Համեմատական բնագրի համար չօգտագործված մի քանի ձեռագրերում այս վերնագիրը նշված է տարբերակներով։ Օրինակ. «Եփեսոսի սուրբ ժողովոյն կանոնքին գլուխ Զ» (№ № 650, էջ 55բ, 651, էջ 39ա, 2964, էջ 71բ), «Կանոնք Եփեսոսի գլուխ» № № 648, էջ 27ա, 3562, էջ 300ա), «Եփեսոսի ժողովոյն կանոնացին, գլուխք Բ» (№ 649, էջ 49ա), «Կանոնք սրբոց հարցն Եփեսոսի սուրբ ժողովոյն» (№ 3369, էջ 68ա)։ Նշված բոլոր ձեռագրերում էլ Եփեսոսի ժողովի վեց հոդվածներից պահվել է երկուսը՝ Բ և Գ։ Իսկ № 659 ձեռագրում որպես վերնագիր թեև նշված է «Կանոնք սուրբ ժողովոյն Եփեսոսի որ ժողովեցան ի հոգւոյն սրբոյ երկերիւրքն եւ կարգեցին տունք ԺԶ» (էջ 214բ), սակայն այդ վերնագրի ներքո բերած կանոնները Սեանտոս եպիսկոպոսի կանոնախումբն են (տես վերևում, էջ 469—474)։

Ցանկ և առաջաբան, էջ 277—278։ Վերևում նշված ձեռագրերից և ոչ մեկը չունի ցանկը և առաջաբանը։ Պիտրայի մոտ հունարենում կա ընդարձակ առաջաբան (էջ 515), որը բոլորովին տարբեր է Կանոնագրքի ունեցածից։ Այս առաջաբանը նույնությամբ գտնում ենք Եփեսոսի ժողովի կանոնախմբի մի այլ՝ 18-րդ դարի թարգմանության մեջ (տես № 1490, էջ 296բ—297ա), միայն թե վերջինիս մեջ նշված են նաև Անտիոքի եպիսկոպոս Հովհաննեսի և նրա 34 կողմնակիցների անունները, որոնց չենք հանդիպում Պիտրայի հրատարակության բնագրում, Σύνταγμα-ում (II, էջ 192) և Լաուխերտի մոտ։ Σύνταγμα-ում առաջաբանը ևս տարբեր է Կանոնագրքում և Պիտրայի մոտ եղածից։ Այս առաջաբաններից և ոչ մեկը չկա Լաուխերտի մոտ (տես էջ 87)։ Պիտրայի բերած առաջաբանի վերջին հատվածը՝ 'Επειδή δὲ ἐχρῆν · · ·καὶ ἀγάπη. ὅτι περ. Σύνταγμα-ում (II, էջ 192) գրված է որպես 1-ին հոդվածի սկզբի մաս. այդպես է նաև Կանոնագրքում։

Հոդ. Ա, էջ 278—279 (հուն. հոդ. 1, էջ 515—516)։ Σύνταγμα-ում սույն հոդվածն սկսվում է „'Επειδή ἐχρῆν καὶ τοὺς ἀπολειφθέντας τῆς ἁγίας συνόδου · · · · · ·ἁγιότητι καὶ ἀγάπῃ. ὅτι περ ձևով, ինչպես Պիտրայի բերած առաջաբանի վերջին հատվածը. այնուհետև՝ ինչպես Պիտրայի մոտ։

Հայերենում հոդվածի սկզբի մասը (ըստ Σύνταγμα-ի II, և ըստ Պիտրայի առաջաբանի վերջին մասը) խիստ համառոտ է։ Հուն.-ի 'Επειδή δὲ ἐχρῆν καὶ τοὺς ἀπολειφθέντας τῆς ἁγίας συνόδου · · · ·ἁγιότητι καὶ ἀγάπῃ, ὅτι περ հատվածի դիմաց հայերենն ունի «Քանզի պիտոյ էր · · · · · ·ձերումդ սրբութեան, զի թէպէտ եւ»։ Հայերենի «Հռոմայ եպիսկոպոսապետին» հատվածը հունարենում չենք գտնում։ Ի դեպ այս հատվածը „Кормчая книга"-ում հայերենի նման ևս նշված է „Келестина епископа римского" (գլ. 12, թերթ 36)։

Այս հոդվածը համեմատական բնագրի կազմման համար չօգտագործված վերևում նշված ձեռագրերը չունեն։

Հոդ. Բ, էջ 279—280 (հուն. հոդ. 2, էջ 516)։ Հուն.-ի τῇ ἀποστασίᾳ, τῆς ἀποστασίας բառերը հայերենում թարգմանված է «ի բացակայսն», «ի բացակայ»՝ հեռավոր, օտար իմաստով։ № 648 և նրան հարող ձեռագրերում այս հոդվածը նույնն է ինչ որ Կանոնագրքինը, միայն թե առաջիններում «ոչ գտան ի»-ի փոխարեն կարդում ենք. «ո՛չ գնան ի»։

Հոդ. Գ, էջ 280 (հուն. հոդ. 3, էջ 516)։ „Εἰ δέ τινες καὶ (ա. Συν., II, չիք καὶ) τῶν ἐν ἑκάστῃ πόλει ἢ χώρᾳ κληρικῶν, ὑπὸ Νεστορίου καὶ τῶν σὺν αὐτῷ ὄντων τῆς ἱερωσύνης ἐκωλύθησαν. διὰ τὸ ὀρθῶς φρονεῖν, ἐδικαιώσαμεν καὶ τούτους τὸν ἴδιον ἀπολαβεῖν βαθμόν· κοινῶς δὲ τοὺς τῇ ὀρθοδόξῳ καὶ τῇ (m. L., չիք τῇ) οἰκουμενικῇ συνόδῳ συμφρονοῦντας κληρικούς, κελεύομεν τοῖς ἀποστατήσασιν ἢ ἀφισταμένοις ἐπισκόποις, μηδ' ὅλως ὑποκεῖσθαι κατὰ μηδένα τρόπον". Հայերենում հունարենի միտքն արտահայտված է ընդհանուր առմամբ ճիշտ, թեև ոչ բառացի թարգմանությամբ։

Հոդ. Դ. էջ 290 (հուն. հոդ. 4, էջ 517)։ *Այս հոդվածը համապատասխանում է հունարենին, միայն թե հայերենում նկատվում են աղճատման հետքեր, բայց ոչ թարգմանչի կողմից, այլ ընդօրինակողների. օրինակ՝ «կամ առանձին»-ը ենթադրել է տալիս, որ մինչև «ընդդէմ»-ը պետք է մի բառ էլ լինի, օրինակ. «կամ հրապարակաւ», այսինքն «կամ առանձին կամ հրապարակաւ»։ Վերջինս հուն.-ում գտնում ենք՝* ἢ κατ' ἰδίαν ἢ δημοσίᾳ։ *Հայերենը չունի նաև* τοῦ Νεστορίου *և* οεοιχαιωται *(արդարացի)։*

*Այս և մնացած հոդվածները №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերը չունեն, իսկ № 3369 ձեռագրում Գ հոդվածից հետո գրել են Սեանտոսի կանոնախմբում։*

Հոդ. Զ, էջ 291 (հուն. հոդ. 6, էջ 517)։ *Հուն.-ի* τὰ περὶ ἑκάστου πεπραγμένα ἐν τῇ ἁγίᾳ συνόδῳ τῇ ἐν Ἐφέσῳ οἱωδήποτε τρόπῳ παρασαλεύειν *հատվածը հայերենում գրված է «որ ինչ գրով ասացաւ... որով տարաղու և իցէ շարժել» ձևով, որն այնքան էլ հստակ չէ։ Ուղում է ասել՝ որևէ կերպ խախտել այն, ինչ նրանցից յուրաքանչյուրի մասին Եփեսոսի սուրբ ժողովը կարգադրություն է արել։*

*Հայերեն թարգմանությունը ավարտվում է Զ հոդվածով։ Մովսես Խորենացին ևս հիշում է, որ թարգմանիչները վերադառնալով Հայաստան, Սահակ Պարթևին և Մաշտոցին «մատուցին զթուղթսն եւ զկանոնս ժողովոյն Եփեսոսի, վեց սահմանեալ կանոնաւ» («Պատմութիւն Հայոց», Գ, գլ. ԿԱ)։ Այսպիսով, Եփեսոսի ժողովի կանոնախումբը հենց սկզբից էլ մեր մատենագրության մեջ և ապա Կանոնագրքում մտել է վեց հոդվածով։*

*Հունարեն բնագրում այս վեց հոդվածին հաջորդում են երկու այլ բնագրեր, որոնք համարակալված են՝ 7-րդ և 8-րդ։ Սրանցից առաջինը՝ 7-րդը վերաբերում է Փիլադելփիայի Կարիսիոս քահանային և Նիկիայի ժողովի հանգանակին (տես Պիտրա, էջ 517—518), իսկ մյուսը՝ 8-րդը Կիպրոսի եպիսկոպոսների բողոքին Անտիոքի մետրոպոլիտի դեմ (նույն տեղում, էջ 518—519)։ Հունարեն բնագրում սրանից հետո ևս գտնում ենք մի երրորդ գրություն՝ Նամակ, ուղղված Պամփյուլիայի ժողովին՝ Պամփյուլիայի եպիսկոպոսի վերաբերյալ (նույն տեղում, էջ 520)։ Այս երեքն էլ ունի* Σύνταγμα*-ն, տես* II, *էջ 200—208։ Մինչդեռ Լաուխերտի մոտ հունարեն բնագիրն ավարտվում է 6 հոդվածով միայն (էջ 88)։*

*Վերևում մեջ բերված հատվածում Խորենացին «զթուղթս» ասելով, հավանաբար ակնարկում է այս երեք գրությունները, որոնք թեև արժանացել են Եփեսոսի ժողովի ուշադրությանը, սակայն, իրականում չեն մտել ժողովի կանոնական որոշումների մեջ, այլ մնացել են սոսկ որոշումներ։*

Եզ *ձեռագրերում վեց հոդվածներից հետո Եփեսոսի ժողովի կանոնախումբը շարունակվում է մի քանի այլ հոդվածներով, որոնք ունեն Կանոնագրքին հատուկ հոդվածների ընդհանուր և մասնավոր համարներ։ Ահա այդ շարունակությունը.*

*«Է. ՌԼԳ. Քահանայ որ կոյս իցէ կամ այրի եւ աշխարհի քահանայութիւն առնէ՝ նաեւ ժողովուրդքն եւ ընդունողքն նորա նզովեալ ե[ղիցին]։*

*Ը. ՌԼԴ. Քահանայ որ կին ունիցի եւ ի շնութիւն անկանիցի կամ յայլ վատթարութիւն եւ վկայութեամբ յայտնեսցի՝ լուծցի ի քահանայութենէն։ Ահա եթէ անազնութեամբ արասցէ՝ նզովեալ [եղիցի], նաև ժողովուրդն եւ ընդունողքն նորա եւ ի կեանս և ի մահ, ապայ եթէ ապաշխարութեամբ մաքրեսցի՝ ըստ կամաց եպիսկոպոսին հաղորդ[եսցի]։*

*Թ. ՌԼԵ. Որք ամուսնացեալք են ընդ հեթանոսաց եւ տացէ նոցա Աստուած ժամանակ ապաշխարութեան արտասուօք եւ ողորմութեամբ, որպէսզի ամենայն ինչս իւրեանց տացեն աղքատաց, ի տարոջն միանգամ հաղորդեսցին աւրինացն, ապա թէ ոչ զոյ տեղի եւ զերծանի ի կապանացն անաւրէնութեան, գնեսցեն ծառայս եւ ազատեսցեն քանի եւ կարասցեն եւ ապայ յետին թաւշակին արժանի լիցին։*

*Ժ. ՌԼԶ. Որք զժառանգս հեթանոսական առն ունի սնունդ այնպէս որպէս զոք զուէձն խնամարկեալ պաշաեսցէ ի ձեռն սովորութեան ամուսնացելոցն ի հեթանոսական ազգին, ուսան զանաստուածպաշտութիւնս նոցա, նոքա զթովչացս ապաշխարութիւնս ընկալցին՝ Գ ամ արտաքոյ ապաշխարեսցեն եւ Գ ամ ընդ ապաշխարողս եկցեն. եւ ապայ հաղորդեսցին աւրինացն Աստուծոյ։*

*[ԺԱ. ՌԼԷ]. Քահանայ որ աւրհնէ զմթերս ըմպելեաց յորս անկանի մուկն կամ այլ զազանի սողուն, կամ ի հընձան, ապայ անիծեալ լինի քահանայն եւ անսուրբ իբրեւ զմուկ, ի կարգէն լուծցի եւ անհաղորդ կացցէ, զամս Գ արտաքոյ ապաւթեսցէ ջերմեռանդ ապաշխարութեամբ եւ ապա հաղորդեսցի աւրինացն Աստուծոյ»* (Ե *էջ 177բ—178ա հմմտ.* Զ *ձեռագրի հետ, էջ 146աբ)։*

# ԱԹԱՆԱՍ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՈՒ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր. Լջ 292: *Բնագիրը կազմելիս չօգտագործված մի քանի ձեռագրերում այս վերնագիրն ունի տարբերակներ, օրինակ՝ «Ցանկ կանոնին Աթանասի գլուխք Ղ» (№ № 648, էջ 32բ, 3562, էջ 307ա), «Կանոնք սրբոյն Աթանասին գլուխք ՋՁ» (№ 657, էջ 107բ), «Ցանգ Աթանասի» (№ 659, էջ 118բ), «Կանոնք սրբոյն Աթանասի» (№ № 8439, էջ 62ա, 9311, էջ 59ա)։ № № 649, 650, 651, 2964, 3369 ձեռագրերն սույն վերնագիրը չունեն։*

*Թեև «Ս. Աթանասի Աղեքսանդրիոյ հայրապետի ճառք, թուղթք և ընդդիմասացութիւնք» (Վենետիկ, 1899) ժողովածուում կան մի շարք հարց ու պատասխաններ (էջ 134—234, 347—477), սակայն դրանք այլ բաներ են։ Հունարենում այս կանոնները հայտնի են Տիմոթեոս Աղեքսանդրացու անունով։ Ընդհանուր այս վերնագրի տակ դրված է երկու վերնագիր ևս. առաջին.* 'Αποκρίσεις κανονικαὶ Τιμοθέου τοῦ ἁγιωτάτου, ἐπισκόπου 'Αλεξανδρείας *(էջ 636—638. Աղեքսանդրացի ամենասուրբ եպիսկոպոս Տիմոթեոսի կանոնական պատասխանները), 37 հարց ու պատասխան հոդվածներով, որոնց սկզբի 14 հարցերին և պատասխաններին է համապատասխանում Կանոնագրքի ունեցածի սկզբի մասը, իսկ մնացածը միմյանցից տարբեր բաներ են. ապա երկրորդ վերնագիրը՝* Τοῦ αὐτοῦ Τιμοθέου ἕτερα διάφορα κεφάλαια *(էջ 638—643. Նույն Տիմոթեոսի ուրիշ, տարբեր գլուխները), 24 հարց ու պատասխան հոդվածներով, որ, բացառությամբ 23-րդ հոդվածի (էջ 643), չենք գտնում Կանոնագրքում։*

Ցանկ, էջ 282–288: *Այս ցանկը մի քանի ձեռագրերում ևս ունի տարբերակներ. օրինակ՝ № № 648, 3562 ձեռագրերում եղած ցանկը կազմել են հիմք ընդունելով Կանոնագրքի ունեցածը և ապա որոշ խմբագրական աշխատանք կատարել. № № 8439, 9311 ձեռագրերում այն կազմել են հետագայում՝ Կանոնագրքի ունեցածից անկախ. № 657 ձեռագրում եղածը նույնպես տարբեր է մյուսներից և կազմվել է առանձին. իսկ № 659 ձեռագրինը ոչ միայն տարբեր է մյուսներից, այլև այդտեղ հոդվածների վերնագրերը տրված են այբբենական կարգով, զիմացը նշելով հոդվածների համարները։ Որպեսզի այդ ցանկերի մասին ընթերցողը լրիվ գաղափար ունենա, բերենք ամբողջական ձևով № 648 ձեռագրի օրինակը.*

*«ա. Վասն որք երախայութեան հաղորդեսցի։*

*բ. Վասն երախայի որ գիւահար է եւ մկրտել խնդրէ։*

*գ. Վասն այսահարի որ օրէնս խնդրէ։*

*դ. Վասն երեխայի որ հիւանդանա եւ ի մտաց թափել եւ մկրտել խնդրէ։*

*ե. Ցաղագս թէ յաւուր տօնի լեցի կին ընդ առն իւրոյ։*

*զ. Յաղագս թէ կին երեխա ի մկրտութեան աւուր լինի կանանցն կարգ։*

*է Կինոյ որ ծնանի ի պատարագս սուրբ Զատկին։*

*ը. Յաղագս որ կոչեն զվիճակեալն ի զուգաւորելն, որոց խնամութիւն ի միջի կայ։*

*թ. Վասն որ հիւանդանա ի պահս սուրբ Զատկին։*

*ժ. Աշխարհ[ակա]ն որ յերագս լինի և խնդրել հաղորդել։*

*ժա. Վասն որ յիւր միտս չէ և սպանէ զինքն։*

*ժբ. Վասն ոչ մերձելոյ առն ի կին իւր աւուր շաբաթու և կիրակէի։*

*ժգ. Վասն առն որոյ կինն այսահար իցէ։*

*ժդ. Վասն որոշելոյ զԱրիոսն յորժամ պատարագն մատչի։*

*ժե. Վասն որք մտաբերեն միայն գործեն զմեղս։*

*ժզ. Վասն որք զազգական կին առնել։*

*ժէ. Վասն ոչ ամուսնասցեն զհարազատաց որդիս։*

*ժը. Վասն ոչ առնել առն զքենին իւր կին։*

ժթ. Վասն որք ի հեթանոսութեան զազգական իւր կին առեալ իցէ։
ի. Վասն կնոջ որոյ այրն խառնագնաց է։
իա. Վասն այր մարդոյն որ չիցէ ի գործ այրութեան։
իբ. Վասն երեխայի որ զկին թողեալ է և այլ արարեալ՝ մկրտել խնդրէ։
իգ. Վասն որոյ իւր կին հաշմեսցի և յորդորէ զայր իւր կին առնել։
իդ. Վասն որոյ կին պոռնկեսցի եւ ագաչեսցէ զայր իւր չթողուլ ի բաց։
իե. Վասն յանցաւորի որ մահու ցաւք հասանիցեն եւ հաղորդէ։
իզ. Վասն որ ընդ անասնոյ պղծի եւ կին խնդրէ առնել։
իէ. Վասն անասնոյ որ զմարդ սպանէ։
իը. Վասն կնոջ որ բռնադատիցի ամուսնանալն եւ յանձնապան լինի։
իթ. Վասն որ եղբայր զեղբայր իւր ի փախուստ դնէ եւ զառնա սպանանէ։
իը. (sic) Վասն որ զծառայն իւր սպանանէ ի հարկանելն։
լա. Վասն որ ի գողութիւն սպանի։
լբ. Վասն քահանայի որ աւաղակաց դիպեսցի եւ սպանցէ զոք։
լգ. Վասն յերախայութեան զեղբայր իւր սպանանէ մկրտել խնդրէ։
լդ. Վասն որք դիւահարի եւ սպանանէ զոք։
լե. Վասն որ զմահապարտ ոք սպանանէ։
լզ. Վասն որք անյուսութեամբ լան զմեռեալսն։
Վասն որ ի կենդանութեան ոչ կամէր մկրտել եւ ի ժամ մահուն կապեցաւ բերանն, միայն ակնարկէ եւ խնդրէ մկրտել։
լէ. Վասն երեխայից որ բաղմամեղ իցէ եւ խնդրէ մկրտութիւն, տա՞լ մկրտութիւն, թէ ոչ։
լը. Վասն որ ի կենդանութեան ոչ կամէր մկրտել եւ կապեցաւ լեզուն, միայն ակնարկէ եւ խնդրէ մկրտել։
լթ. Վասն մկրտելոյ զմանուկն։
խ. Վասն որ առ ստեամբ մեռանի մանուկն։
խա. Վասն զազանաբեկի։
խբ. Վասն քահանայի որ ի թողեալ կին զառնայ։
խգ. Վասն քահանայի ոչ թողուլ զկին իւր։
խդ. Վասն ակամայ սպանանելոյ։
խե. Վասն քահանայից որ բանադրէ զոք և վախճանի քահանայն։
խզ. Վասն քահանայի որ երդնու։
խէ. Վասն քահանայից ոչ է պարտ երդնուլ։
խը. Վասն քահանայի որն ակամայ երդնու։
խթ. Վասն որ ի սուտ քահանայէ մկրտի։
ծ. Վասն որ ի լուծեալ քահանայէ մկրտի։
ծա. Վասն ոչ առնել քահանայ զխեղն։
ծբ. Վասն քահանայի որ յետ ձեռնադրութեան ուրուկ լինի։
ծգ. Վասն քահանայի կնոջ որ ի դիւթս երթայ։
ծդ. Վասն երեխայ մեռանելոյ ի ծուլութենէ քահանայից։
ծե. Վասն առն որոյ կինն հիւանդանայ։
ծզ. Վասն առն որ զամուսին թողու եւ այլ կին առնէ։
ծէ. Վասն որ զկին թողու եւ այլ արար։
ծը. Վասն կնոջն որ յօտարէ բռնադատի։
ծթ. Վասն որ զկին թողու վասն ամլութեան։
կ. Վասն կնաթողի։
կա. Վասն պոռնկութեան կամ վասն այլ ինչ չարութենէ թողու զկին։
կբ. Վասն ոչ հաղորդել կնահանի։
կգ. Վասն կնոջն որ մեկնի յառնէ։
կդ. Վասն կնահանից եւ այլն։
կե. Վասն որ կուսութիւն խոստանայ պահել։
կզ. Վասն որ զայրի կին առնէ, արժան է քահանայութեան։
կէ. Վասն երկրորդ կին առցէ։
կը. Վասն որ զկնի մկրտութեան սուրբ եկաց։
կթ. Վասն քահանայի որ կին առնէ։

հ. Վասն քահանայ որ գիրքն կորէ:
հա. Վասն քահանայի որոյ ձեռամբ մահ գործի:
հբ. Վասն քահանայից որ յակամայ մահ գործէ այլոց:
հգ. Վասն քահանայի որ ի խրատելն զոք հարուածով մահ գործի:
հդ. Վասն կին քահանային որ գերի երթիցէ:
հե. Վասն ոչ ըմպել զպղծե[ա]լ գինի:
հզ. Վասն որք երդմունս գրեն:
հէ. Վասն որք ուլն կապեն՝ զարիւն արգիլու:
հը. Վասն դեղահատաց:
հթ. Վասն չմկրտել զայսահարն մինչև սրբեսցի:
ղ. Վասն քրիստոնեա անուն է հաղորդս ոչ տալ:
ղա. Վասն դիւահարին որ ի վարս սուրբ իցէ, հաղորդ տալ:
ղբ. Վասն կին մոգի որ քրիստոնեա կամի լինել եւ մկրտութիւն խնդրէ:
ղգ. Վասն թէ ոք ի քրիստոնէից մոգ իցէ եւ կինն նորա օրէնս խնդրէ:
ղդ. Վասն կախարդաց որ պանիր տան ծամել:
ղե. Վասն ոք երախա զիպի րանակի կամ ի պատերազմի եւ աղաչէ զքահանայ մկրտել:
ղզ. Վասն յանդաւորի որ ցաւք մահու հասանի:
ղէ. Վասն որք յերեխայութեան եւ յետ մկրտութեան մահ հասանի:
ղը. Վասն որք զՔրիստոս ուրանա.
ղթ. Վասն անասնադիաաց:
գ. Վասն երդման քահանայից» (№ № 648, էջ 32բ—34ա, հմմտ. ձեռ. № 3562, էջ 307ա—308բ, տես նաև ձեռ. № № 8459, էջ 62բ—67ա, 9311, էջ 59բ—64բ, 657 էջ 107բ—108բ):

№ 659 ձեռագրի ունեցած ցանկը նույնպես անկախ է կազմված կանոնագրքի բնագրում եղածից: Ահա այն.

«Ցանգ Աթանասի.

ե. Առնակնոջ:
մ. Աշխարհականաց:
ժբ. Այսահարաց:
ժդ. Ամուսնացելոց:
ժգ. Արիանոսաց:
իե. Անասնադիտաց:
իզ. Անասուն որ զմարդ սպանանէ:
իէ. Ակամայից:
ծէ. Ամուլից:
հ. Անդաստանից:
ձե. Ամպարըշտաց:
ժա. Դահավիժաց:
լ. Գողոց:
խ. Գազանաբեկից:
բ, լգ, հթ. Դիւահարաց:
խե. Դատաստանի:
հէ, հը. Դիւահարաց:
ա. գ. խա. Երախայից:
գ. Երախա կնոջ:
իը. Եղբարց:
լբ. Երախայից սպանողաց:
լգ, լէ. Երախայից
խգ, խէ. Եր[դ]մնահարաց:
կգ, ձգ. Երախայից:
հզ. Երդմանց:
հգ. Թովչաց:
ծբ. Ժողովրդական:
ծթ. Խառնաղնացից:
է, լը. Ծննդականաց:
իթ. Ծառայից:
կթ. Ծառայից քահանայից:
ծա, հբ. Կանանց քահանայից:
ծդ, ծը. Կնահանաց:
ծե, ծգ. Կնաթողաց:
կ. կբ. Կնահանաց:
կդ. Կուսանաց:
կէ. Կարդընկեցաց:
ձբ. Կարասից:
ժգ. Հարազատ եղբարց:
ժէ. Հարազատ որդւոց:
ժը. Հեթանոսաց:
իբ. Հաշմանդամոց:
հա. Հարկանողաց:
հդ. Հնձանաց:
գ. Մկրտելոց:
ժե. Մեղանչողաց:
ծ. Միականից:
ձ, ձա. Մողից:
ձգ. Ցանցաւորաց:
ծգ. Ուրուկաց:
հե. Ուլն կապողաց:
ի. Ջեզոքաց:
իգ. Պոռնիկ կնոջ:
ծթ. Պոռնկաց:

կա. Պատճառաւ հաւատոց մեկնողաց։
լդ, խգ. Սպանողաց։
լթ. Ստեամբ սպանողաց։
խր. Սուտ քահանայից։
թ. Վիճակելոց։
իդ. Վնասակարից։
կգ. Վանականաց։
ը. Տկարաց։
կե. Տղայոց առնակնաց։
լա, խա, խբ. Քահանայից։
լե. Քրիստոնէից։
խդ, խթ. Քահանայից։
կը. Քահանայից կրձատելոց։
ձգ. Քահանայից երդմանց» (էջ 118բ—119բ)։

Այստեղ ևս պակասում են կանոնագրքի ԺԸ, ԾԻ հոդվածները և սրանց վերնագրերը։ Իսկ №№ 649, 650, 651, 2964, 3369 ձեռագրերում չի պահվել այս կանոնախմբի ցանկը։

Երկրորդ վերնագիր, էջ 289: Վերևում նշված ձեռագրերում այս վերնագիրը ևս ունի տարբերակներ. «Հարցմունք պէսպէս եւ պատասխանիք Աթանասի Աղէքսանդրու եպիսկոպոսի. սորին կանոնիս գլուխք Ղ» (№№ 048, էջ 34ա, 3562, էջ 308բ, հմմտ. նաև №№ 649, էջ 51ա, 650, էջ 55բ, 651, էջ 41ա, 2964, էջ 74ա). «Կանոնք սրբոյն Աթանասի հարցումն եւ պատասխանիք» (№№ 8459, էջ 67ա, 9311, էջ 64բ). «Հարցմունք պէսպէս առ (№ 657՝ աւէ) երանելին սուրբ Աթանասն եպիսկոպոսապէտն Աղէկսանդրի եւ պատասխանիք նմին» (№№ 659, էջ 120ա, 657, էջ 108բ. «Հարցմունք պէսպէս եւ ղան[ազ]ան պատասխանիք սրբոյն Աթանասի Աղէքսանդրացոյ եպիսկոպոսի է ասացեալ» (№ 3369, էջ 69բ)։

Առաջաբան, էջ 289—290: Մի քանի ձեռագրերում առաջաբանը համառոտ է և զգալի շեղումներ ունի կանոնագրքում եղածից. «Ի ժամանակին յայնմիկ երեեցաւ այր մի արիանոս Գորգոս անուն ի Կապողակիէ և հասեալ յԱղէքսանդր, շարժէր զքաղաքն ի վերայ Աթանասի, աւգնէին նմա եւ իշխանքն. զոր երանելին Աթանաս որոշեալ էր յեկեղեցւոյ, բայց մեծ մասն քաղաքին ընդդիմադարձ լինէին ազանդոյն։ Իսկ չարքն հալածական արարեալ զԱթանաս յաթոռոյն եւ հասեալ Գորգիանոս՝ի Սելեկիա ժողով արարեալ հաստատէր զաղանդն։ Իսկ Աթանաս գրչէր արտասուօք առ Աստուած հանդերձ սուրբ ճգնաւորօքն, որ էին ի ժամանակին, մինչեւ բառնայր Աստուած զԳորդիանոս ի կենաց։ Եւ ապա դարձաւ Աթանաս յԱղէքսանդրա եւ կարգէ կանոնս եկեղեցոյն գլուխս» (№ 648, էջ 34ա, բ, հմմտ. նաև №№ 649, էջ 51բ—52ա, 650, էջ 56ա, 651, էջ 41ա, 3369, էջ 69բ, 2964, էջ 74ա, բ, 3562, էջ 309ա)։ №№ 8459 (էջ 62աբ) և 9311 (էջ 59աբ) ձեռագրերում առաջաբանը, որը համառոտ է քան նախորդը և կազմված է, հավանաբար, կանոնագրքում եղած համապատասխան առաջաբանից, գտնվում է ոչ թե ցանկից հետո, ինչպես կանոնագրքում է, այլ ցանկից առաջ. ահա այդ առաջաբանը. «Երեւեցաւ այր անօրէն մի Գորգիանոս անունև Արիոս անուն։ Իսկ երանելին յորդարուք արտասուօք եւ աղօթիւք ընրերանէր եւ կանոնք կարգէր գլուխս ՂԱ»։ Իսկ №№ 659 և 657 ձեռագրերը առաջաբանը չեն պահել:

Հոդ. Ա, էջ 290—291 (հուն. հոդ. 1, էջ 630): Հունարենի հարցի ὡς ἐτῶν ἑπτά, ἢ ἄνθρωπος τέλειος հատվածը հայերենում արտահայտված է միայն «կատարեալ իցէ» բառերով։

Հոդ. Բ, էջ 291 (հուն. հոդ. 2, էջ 630) Հայերեն հարցի վերջին «գիւահարն» բառը հուն.-ը չունի: Հունարեն Պատասխանի սկզբի „Ἐὰν ὁ δαιμονιζόμενος μὴ καθαρισθῇ ἀπὸ τοῦ ἀκαθάρτου πνεύματος հատվածը կանոնագրքում այսպես է. «Եթէ ոչ սրբեսցի ի պիղծ այսոյն», ուր չի պահվել δαιμονιζόμενος (դիվահար) բառը։

№ 659 և 057 ձեռագրերը չունեն հարցի «պարտ է առնուլ, թէ ոչ» հատվածը։

Հոդ. Գ, էջ 291 (հուն. հոդ. 3, էջ 630): Հուն. հարցի πιστός-ի դիմաց հայերենն ունի «կնքաւոր». Թարգմանությունը բառացի չէ՝ «հաւատացյալ», այլ իմաստով նույնն է՝ «կնքված»։

Հոդ. Դ, էջ 291—292 (հուն. հոդ. 4, էջ 630—631): Տարբեր է միայն մի հատվածը, հուն.-ի ἕως ὧδε (մինչ ուր է) բառերի դիմաց հայերենում կարդում ենք մի ընդարձակ հատված՝ «այլ գի եւ աղաչանքն եւս յերկար լինիցին մինչև յաւուրս է»։

Հոդ. Ե, էջ 292 (հուն. հոդ. 5, էջ 631): Հունարեն հարցի ἢ ἀνὴρ μετὰ γυναικός հատվածը չի պահվել հայերենում, հավանաբար միտքը նախորդ նախադասության մեջ կրկնված լինելու պատճառով։ Այդ հատվածը հաջորդում է «ի գիշերին» բառին։ Իսկ հայերեն հարցի «յաւուրն» և Պատասխանի «ասելով ի սովորութենէն աւէ» բառերը հունարենը չունի։

Հոդ. Զ, էջ 292—293 (հուն. հոդ. 6, էջ 631): Հունարեն հարցի ἵνα φωτισθῇ (որպեսզի մկրտվի (բառացի լուսավորվի) բառերի դիմաց հայերենն ունի «լինել երախայ»։ Հայերեն հարցի վերջին մասը համառոտ է, քան հունարենը, վերջինիս καὶ ὑπερτίθεσθαι καὶ πόσον ὑπερθέσθαι (և հետաձգել և ինչքան (ժամանակ) հետաձգել) հատվածը հայերենը չունի։

*Մի քանի ձեռագրերում այս հոդվածի սկզբի մասն ավելի պարզ է գրված. «Եթէ կին երեխայ յորժամ կամիցի մկրտել» (№ 651, էջ 41բ, 2964, էջ 75ա, 3369, էջ 70ա)։*

*Ռ ձեռագրում նախքան հոդվածը կարդում ենք. «ուր մխտոն ոչ իցէ և երթիցէ գիւղովի» հատվածը (էջ 64ա), որը ԺԱ հարցի սկիզբն է և այստեղ կրկնված է։ Հունարենի 7-րդ հոդվածը, որը վերաբերում է դաշտան ունեցող կանանց «սուրբ խորհրդին» մասնակցելուն, հայերենում չի պահվել, որովհետև նախորդ 6-րդ հոդվածում խոսվում է այդ մասին։*

Հոդ. Է, էջ 293, (հուն. հոդ. 9. էջ 631): *Հունարեն հարցի* τῆς νηστείας καὶ τοῦ μὴ πίνειν οἶνον *հատվածը որը պետք է գանվեր «տալ վասն» բառերի միջև հայերենում չի պահվել։ Հունարեն Պատասխանում* ἀσθένεια *(թույլ, ակար) բառը հայերենում գրված է «ի չարչարանս», իսկ հունարենի* μεταλαβεῖν καθὼς βούλεται *(ընդունի ինչպես ուզում է) հատվածի փոխարեն հայերենում գրված են «սակաւիկ ինչ» բառերը։*

Հոդ. Ը, էջ 293 (հուն. հոդ. 10, էջ 632): *Հայերեն հարցի «պահք» բառը հունարենը չունի։ Հարցի վերջին հատվածը հայերենում մի փոքր համառոտ է. հուն.-ի* ἢ ἀπολῦσαι αὐτὸν ὁ κληρικὸς λαμβάνειν ὃ δύναται, ἢ καὶ ἔλαιον καὶ οἶνον, διὰ τὴν πολλὴν αὐτοῦ ἀσθένειαν *հատվածը հայերենում գրված է «Թէ արձակեսցի ճաշակել . . . վասն հիւանդութեանն» ձևով։ Հայերենը շեղվում է հունարենից նաև Պատասխանում. նախ հուն.-ի* ὁ ἀσθενῶν *բառը հայերենում փոխարինված է «զայնպիսին»* (այսինքն *հիվանդին, ուժասպառ մարդուն) բառով, իսկ հուն.-ի* τὸ γὰρ μεταλαμβάνειν ἔλαιον τὸν ἅπαξ ἐκτακέντα δίκαιόν ἐστιν *(որովհետև հյուծվածին ձեթ ընդունելն արդեն արդար է) հատվածը հայերենում փոխարինված է բոլորովին այլ իմաստով՝ «բայց յետ Պենտակոստէին հատուսցէ», որը ոչ մի կապ չունի հուն.-ի հետ։*

Հոդ. Թ, էջ 294 (հուն. հոդ. 11, էջ 632): *Հայերեն հարցում եղած «լպրշիցէ» բառը գրված է հուն.-ի* ἀκούσῃ *(լսի) բասի փոխարեն, իսկ հուն.-ի* ἀκολουθῆσαι *(հետևել) բառը հայերենում գրված է «զգուշութս առնել ի վերայ նորա» ձևով։*

*№ № 8459, 9311 ձեռագրերում այս հոդվածի հարցը ավելի պարզեցված է. «Թ. Եթէ կոչեսցէ ոք զնշանածն յամուսնութիւն եւ ինքն պղծուել է անօրէնութեամբ կամ ի քոր այն կնոջն մերձեցեալ է, որ իւր նշանած էր, պարտ է առնել, թէ ոչ» (էջ 69բ, էջ 67ա)։ Իսկ Պատասխանը նշված երկու ձեռագրերում էլ շատ համառոտ է. «Ոչ է պարտ առնել» (№ № 8459, էջ 69բ, 93111, էջ 67ա)։*

Հոդ. Ժ, էջ 294—295 (հուն. հոդ. 12, էջ 632—633): *Հուն. հարցի* ἐπιτρέψαι *(թույլատրել) բառը միայն հայերեն չունի։*

*№ № 8459 և 9311 ձեռագրերում հարցը գրված է այսպես. «Եթէ մարդ որ խաբէ սատանայ յերազս, պա՞րտ է հաղորդել յայն օրն, թէ ոչ։ Պատասխանի. Գ աւուրս սրբեսցէ զանձն եւ հաղորդեսցի, ապա թէ ոչ դադարէ փորձելն նա ոչ հաղորդի մինչեւ դադարի փորձութիւնն ի նմանէ» (№ № 8459, էջ 69բ—70ա, 9311, էջ67աբ)։ Իսկ № 649 ձեռագրում չի պահվել Պատասխանի «ապա թէ ոչ, եւ ոչ եւս դադարէ փորձիչն, յայնժ ժամանակի յորժամ պարտ է նմա հաղորդել» հատվածը (էջ 52բ)։*

Հոդ. ԺԱ, էջ 295 (հուն. հոդ. 14, էջ 633): *Հայերեն հարցի «և երթիցէ գիւղովի» բառերը գրված են հուն.-ի* χειρισθῆναι *(իր վրա ձեռք բարձրացնի)—ի փոխարեն։ Հայերենի «կամ այլ ինչ մահու մեռանի» հատվածը հունարենը չունի։ Հայերեն Պատասխանը ընդհանուր առմամբ համապատասխանում է հունարենին, միայն հայերենը չունի հուն.-ի* ὀλιγωρίας *(արհամարհանք) և* τὸν κληρικὸν *(հոգևորականը) բառերը։*

*№ № 8459, 9311 ձեռագրերում և՛ հարցը և՛ Պատասխանը ավելի պարզեցված են, և դա, խմիջիայլոց, վերաբերում է բազմաթիվ հոդվածների. «Հարցումն. Որ յիւր միտս ոչ իցէ եւ երթայ անդնի յորոգայթ կամ ի քար ի վայր կամ ի գետ կամ յայլ ցեղ վնաս լինի նմա եւ մեռանի, պա՞րտ է ի վերայ նորա պատարագս մատուցանել, թէ ոչ։*

*Պատասխանի. Եթէ իւր կամաւն գնաց անգաւ յորոգայթն, եւ ինքն գիտէր որ վնաս կու լինէր ի ճանապարհին, եւ այլք ասացին նմա եւ ոչ լուաւ նոցա, նա ոչ է պարտ նմա պատարագ մատուցանել։ Ապա թէ ակամայ եղեւ մահն, պարտ է մատուցանել պատարագ» (№ № 8459, էջ 70ա, բ, 9311, էջ 67բ—68ա)։*

Հոդ. ԺԲ, էջ 295—296 (հուն. հոդ. 15, էջ 633): *Հայերեն հարցի «յորժ» և «կին» (առնել) բառերը հուն.-ը չունի, իսկ վերջին* ὀφείλει λαβεῖν ἑτέραν *(պետք է ուրիշին առնել) հատվածը հայերենում և՛ համառոտ է և՛ տարբեր։ Սրա դիմաց հայերենն ունի «աւրէն է»։*

*Հուն. Պատասխանի վերջին* καὶ περὶ τούτου τι ἀποκρίνεσθαι οὐκ ἔχω ἢ ἐφευρίσκω κατὰ δὲ πνευματικὴν ἀπόφασιν, οὐκ ὀφείλει *մասը հայերենը չունի։*

Ահա այս հոդվածը երկու այլ ձեռագրերի նյութերով. «Հարց. Եթէ կինն այսահարի յոյժ եւ ոչ ազատի եւ այրն նորա ոչ համբերէ կամի այլ կին առնուլ, օրէ՞ն է, թէ ոչ։

Պատասխանի. Եթէ օր քան զաւր ցաւն սաստկանայ՝ պարտ է արձակել, ապա եթէ ազատի, ոչ է պարտ թողուլ». (№ № 8459, էջ 70բ, 9311. էջ 68ա)։ № № 648, 3362 ձեռագրերում այս հոդվածը դրված է ԺԳ համարի տակ, իսկ ԺԳ-ն՝ ԺԲ-ի։

Հոդ. ԺԳ, էջ 296 (հուն. հոդ. 13, էջ 633)։ Հայերեն Հարցում «յաւուր շաբաթու և կիւրակէի» հատվածի դիմաց հուն.-ն ունի ἡμερῶν τῆς ἑβδομάδος. հայերենում Հարցը դրված է կոնկրետ, իսկ հունարենում ընդհանուր՝ «շաբաթվա որ օրերը» ձևով։ Հունարենի ἡμερῶν τῆς ἑβδομάδος հատվածի թարգմանությունը նույնությամբ գտնում ենք № № 659 և 657 ձեռագրերում (էջ 123ա, էջ 109բ)։

Ահա № № 8459, 9311 ձեռագրերի ունեցածը. «Հարց. Եթէ այր եւ կին ամուսնանան յաւուրս պահոց եւ կիրակէի եւ յայլ սուրբ յաւուրսն, զի՞նչ պարտ է առնել նոցա։

Պատասխանի. Ապա եթէ անխափան գործէ եւ զսուրբ աւուրսն ոչ պահէ, ոչ հաղորդի մինչև դառնա ի գործոյն, զղջայ եւ խոստովանի» (էջ 70բ—71ա, էջ 68ա, բ)։

Հոդ. ԺԴ, էջ 296—297 (հուն. հոդ. 9, էջ 632)։ „Ἐρώτησις θ΄. Εἰ ὀφείλει κληρικὸς εὔχεσθαι παρόντων Ἀρειανῶν, ἢ ἄλλων αἱρετικῶν, ἢ εἰ οὐδὲν αὐτὸν βλάπτει, ὁπόταν αὐτὸς ποιῇ τὴν εὐχήν, ἤγουν τὴν προσφοράν;

Ἀπόκρισις. Ἐν τῇ θείᾳ ἀναφορᾷ ὁ διάκονος προσφωνεῖ πρὸ τοῦ ἀσπασμοῦ· Οἱ ἀκοινώνητοι περιπατήσατε. Οὐκ ὀφείλουσιν οὖν παρεῖναι, εἰ μὴ ἂν ἐπαγγέλλωνται μετανοεῖν καὶ ἐκφεύγειν τὴν αἵρεσιν".

Հայերենի և՛ Հարցը և՛ Պատասխանը խիստ համառոտ են.

№ 3369 ձեռագրում Պատասխանը շարունակվում է. «եւ ապա մատուցանէ զպատարագն» (էջ 71բ)։

Հոդ. ԺԱ, էջ 297։ Սկսած այս հոդվածից՝ հայերենում բոլորովին տարբեր հոդվածներ են նշված, որ նույնիսկ մոտավոր կերպով չենք գտնում հունարենում։ Իսկ թե հայերենի թարգմանության հունարեն բնագիրը ինչպիսի՛ն է եղել՝ չկարողացանք պարզել։ Այսուհետև կնշենք Ծանոթագրություններում օգտագործված ձեռագրերի տված տարբերությունները։

Հոդ. ԺԶ, էջ 297։ № 3369 ձեռագրում Պատասխանը ընդարձակ է. «Ոչ է պարտ եւ ընրոն այնպիսի չար եւ պիղծն մերձենալ ի սրբութիւնսն սրբոց» (էջ 72ա)։

Հոդ. ԺԷ, էջ 297։ № 3369 ձեռագրում Պատասխանը դարձյալ ընդարձակ է. «Ոչ է ընրոն եւ արժան, չեն միմեանց այր եւ կամ կին, այլ շնութիւն եւ պոռնկութիւն է» (էջ 72ա)։ bcfgq ձեռագրերում այս հոդվածը դրված է ՁԷ և ՁԸ հոդվածների միջև՝ ՁԸ համարի տակ։

Հոդ. ԺԸ, էջ 298։ № № 659, 657 ձեռագրերում չի պահվել այս հոդվածը. իսկ № № 8459, 9311 ձեռագրերում թեև նույնպես չի պահվել, բայց գրիչը ավելորդ չի համարել գրել. «Չ̅ց ԺԸ գրած է» (էջ 71բ, էջ 69ա)։ Հավանաբար գրիչն հարկ չի համարել այդ Հարցը ընդօրինակել, քանի որ նախորդ՝ ԺԶ, ԺԷ հոդվածները ևս վերաբերում են հարազատների ամուսնության խնդրին։ Ուստի ընդօրինակելով վերջին երկու հոդվածները, հաջորդ՝ ԺԸ-ը բաց է թողել։ Այս ցույց է տալիս, թե ինչպես մի շարք ձեռագրերում, որ չենք օգտագործել ո՛չ Կանոնագրքի համահավաք բնագիրը կազմելիս և ոչ էլ Ծանոթագրություններում, Կանոնագիրքը երբեմն քմահաճ կերպով խմբագրել են կամ «թեթևացրել» հոդվածներից։ № 3369 ձեռագրում Պատասխանը դարձյալ ընդարձակ է. «Ոչ է ընրոն եւ պարտ, զի կատարեալ գիջութիւն եւ չար պոռնկութիւն է» (էջ 72ա)։

Հոդ. ԻԱ, էջ 298—299։ Հմմտ. № № 8459 և 9311 ձեռագրերի ունեցածը. «Հարց. Եթէ մարդ որ այր ոչ է եւ կինն ելանէ եւ այլ այր առնէ, պա՞րտ է իրկաթող առնել զայն, եթէ խեղճ ունել եւ կամ թէ այրն չարձակէ զկինն եւ ասէ. «Զքեզ Աստուած ինձ է տուեալ, կաց եւ պաշտեա զիս», զի՞նչ է առնել նոցա, արձակե՞լ պարտ է, որ այլ չար չլինի, բայց ապաշխարել։ [Պատ.] Պարտ է եւ ապա օրէնս առնուլ» (էջ 72ա, էջ 69բ—70ա)։ № 3369 ձեռագիրը չի պահել «չարձակէ զկինն ի բաց եւ ասէ այսպէս, թէ ինձ» հատվածը։

Հոդ. ԻԲ, էջ 299։ № № 8459, 9311 ձեռագրերում այս հոդվածը նույնպես չի բերված, փոխարենը՝ գրիչը նշել է. «Գրած է ԻԲ» (էջ 70ա)։

Հոդ. ԻԳ, էջ 299—300։ Հմմտ. № № 8459, 9311 ձեռագրերում եղածը. «ԻԳ. Հարց. Եթէ կին ուրուք հաշմիցէ և ասէ ցայր իւր «Ոչ եմ ի կարգ կանանց, արա դու քեզ կին, որ զքո տուն ի շէն պահէ և ինձ օր զաւուր հաց տուր և ես ինձ աղօթք առնեմ մինչև յօր մահ-

ւան իմոյ», և ասէ այրն. «Առնեմ զամենայն զոր ասես»։ Զի՞նչ պարտ է առնել նոցա։ Պատ. Վնասակար է, ոչ է արժան այլ կին առնուլ, մինչև այն կինն մեռանի» (էջ 72ա, բ, էջ 70ա)։

Հոդ. ԻԵ, էջ 300—301: Բնագրի «Թէ յանցաւոր ոք է և յանդգնեալ» հատվածի փոխարեն № № 8459, 9311 ձեռագրերում կարդում ենք. «Եթէ ոք անդանի» (էջ 73ա, էջ 72ա)։ Իսկ № 651 ձեռագրում չի պահվել «յաղտ մահու անկանել եւ աւրէնս խնդրէ» հատվածը։

Հոդ. ԻԶ, էջ 301: № 3369 ձեռագրում Պատասխանն այսպես է. «Կինն իշխէ մեկնիլ այրէն, ոչ է պարտ այլ կին կամ այր առնել նրկոքին» (էջ 73ա)։

Հոդ. ԻԷ, էջ 301: № 651 ձեռագրում չի պահվել այս հոդվածը։ Իսկ № № 3369, 650 ձեռագրերում Պատասխանն ընդարձակ է. «Որպէս եւ օրէնքն ասեն՝ որ սպանանէ զմարդ, փախանակ նորա հեղցեն զարիւն նորա» (էջ 72ա, էջ 60բ)։

Հոդ. ԻԹ, էջ 302: № № 8459, 9311 ձեռագրերում չի պահվել այս հոդվածի «իւրեւ վկայիցեն բաղումք, որ ականատես յեալ են այնմ ամենայնի» հատվածը։

Հոդ. Լ, ԼԲ, էջ 303: № № 8459, 9311 ձեռագրերում այս երկու հոդվածները չեն ընդօրինակված, քանի որ դրչի կարծիքով վերջիններիս միտքն արտահայտված է ԻԹ հոդվածում. ուստի այս հոդվածների փոխարեն գրում է. «Լ, ԼԲ այս Բ տունս գրած է» (էջ 74բ, էջ 72բ)։

Հոդ. ԼԱ, էջ 303: Մի քանի ձեռագրերում Պատասխանն ընդարձակ է. «Քննել հաւաստեաւ. ըստ օրինացն եւ պատասխանի տալ դարժանն» (№ 648, էջ 38ա. տես նաև № № 649, էջ 55ա, 650, էջ 61ա, 651, էջ 45ա, 3369, էջ 73բ, 3562, էջ 313ա)։

Հոդ. ԼԲ, էջ 303: № 659 ձեռագրում Պատասխանն այսպես է. «Ոչ է արժան կալ ի քահանայութեան, վասն զի ոչ է իշխանութիւն քահանայի սպանանել զոք՝ ոչ զմարդ եւ ոչ զանասուն» (էջ 127ա)։ Թերևս այս ավելի ճիշտ է։

Հոդ. ԼԴ, էջ 304: № 8459 ձեռագրում գրիչն այս հոդվածը չընդօրինակելով նշում է. «ԼԴ գրած է» (էջ 74բ). հավանաբար նկատի ունի ԻԹ հոդվածը։ Իսկ № 9311 ձեռագրում այս հոդվածը նույնպես չի պահված, բայց ընդօրինակելով հաջորդ՝ ԼԴ հոդվածը, դիմացը նշում է երկու համար՝ ԼԴ և ԼԴ (էջ 73ա)։

Հոդ. ԼԷ, էջ 305—306: № № 8459, 9311 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել, իսկ № 651 ձեռագրում ԼԷ—ԽԶ հոդվածները գրված են ոչ թե կանոնագրքի բնագրի հաջորդականությամբ, այլ վերջինիս Ծ և ԾԱ հոդվածների միջև։ № № 3369, 650 ձեռագրերում Պատասխանն ընդարձակ է. «Պարտ է տալ, թէ ի հակէ լինի, զի խոստովանող Քրիստոսի է» (էջ 74բ, էջ 62ա), իսկ № № 659, 657 ձեռագրերում Պատասխանը համառոտ է. «Մկրտել արժան է» (էջ 128ա, էջ 111բ)։

Հոդ. ԼԸ, էջ 306: Մի քանի ձեռագրերում Հարցը ընդարձակ է. «Թէ ոք յերախայից ընդ որում հանապազ ջանայք յիշեցուցանել զպատուիրանն Աստուծոյ եւ ոչ կամեցաւ գալ ի մկրտութիւն, եւ հասին նմա յանկարծօրէն ցաւք եւ կապեցաւ բերան նորա, ոչ զմեղս իւր խոստովանել կարաց և ոչ զհաւատն զաւանել ի սուրբ երրորդութիւնն, որպէս վայել էր, այլ միայն ակնարկեաց, թէ «Տուք ինձ կնիք». պարտ է տալ, թէ ոչ» (№ 648, էջ 38բ. տես նաև № № 649, էջ 56ա, բ. 650, էջ 62ա, բ, 651, էջ 46բ, 657, էջ 111բ, 659, էջ 127բ, 2964, էջ 31ա, բ. 3369, էջ 74բ, 3562, էջ 314ա)։ № № 8459, 9311 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։

Հոդ. ԼԹ, Խ, 306: Հմմտ. «Հարց. Եթէ կին յորժամ ծնանի և մանուկն ի պատահմանէ մերձ ի մահ լինի ի նմին աւուր, պա՞րտ է մկրտել։

Պատ. Յորժամ եւ հանդիպի, պարտ է մկրտել» (№ № 8459, էջ 76ա, 9311, էջ 74ա)։

Հոդ. Խ, էջ 307: Հմմտ. «Հարց. Եթէ ի ծիծ տալ կնոջն զերախայն խեղդէ» (№ № 8459, էջ 76ա, 9311, էջ 74ա)։ № 659 ձեռագրում Պատասխանն այսպես է. «Ապաշխարել պարտ է, զոր հրամայայց Նիկիականն Ե ամ» (էջ 129ա)։ Նկատի է առնված Նիկիական Երկրորդ կանոնախմբի ԼԲ հոդվածը, ուր ասված է. «Որք զակամայ սպանութիւնս առնեն Ե ամ ապաշխարեսցեն» (№ 659, էջ 88բ)։

Հոդ. ԽԲ, էջ 307—308: № № 8459 և 9311 ձեռագրերում չի պահվել այս հոդվածի «պաշտել զպաշտաւն քահանայութեան, և յետ ժամանակի անդրէն ի կին իւր դարձցի» հատվածը (էջ 76բ, էջ 74բ)։

Հոդ. ԽԴ, էջ 308: № № 8459 և 9311 ձեռագրերում Պատասխանը համառոտ է. «Պարտ է ապաշխարել» (էջ 77ա, էջ 75բ)։

Հոդ. ԽԵ, էջ 308—309: *Բնագրում Հարցի «յաղաւթից» բառի փոխարեն երկու ձեռագրեր ունեն «յեկեղեցոյ» բառը (№№ 8459, էջ 77ա, 9311, էջ 75բ)։ Պատասխանը երկու այլ ձեռագրերում շարունակվում է. «Արժան է ի ներքս ածել, որ կացցէ ի տեղոջ պաշտման նորա» (№ № 3369, էջ 75բ, 650, էջ 63ա) հմմտ. № № 659 և 657 ձեռագրերի ունեցածը (էջ 130ա, էջ 112ա)։*

Հոդ. ԽԶ, էջ 309: *Հմմտ. № № 8459 և 9311 ձեռագրերը. «Եթէ դատաստան ինչ լինիցի ընդ քահանայի եւ ընդ այլ ումեք ի մարդկանէ եւ յերդումն տան զքահանայն, վասն բազում ընչից եւ ոչ կարէ քահանայն զերծանիլ ի զրպարտողացն եւ ոչ ունի ինչք, որ վճարէ եւ ընդանիք քահանային ոչ առնուն յանձն զտուգանս տալ իբրեւ բռնազատեցի քահանայն եւ երդնու արդար, պարտ է անխեղճ կալ ի քահանայութեանն, թէ ոչ» (էջ 77բ, էջ 75բ—76ա)։ Կանոնագրքի բնագրի «բազում կարասւոյ, որ զրպարտեն» հատվածը № 3369 ձեռագրում, կարծես, աղճատված է. «բազում ի կարօտոյ զի որպէս զիցեն» (էջ 75բ)։*

Հոդ. ԽԷ, էջ 309—310: *Հմմտ. №№ 8459 և 9311 ձեռագրերի ունեցածը. «Հարց. Եթէ ոք ի քահանայից վկայ եւ միջնորդ իցէ մեծ իրաց, զի՞նչ եւ իցէ եւ դատախազն ոչ հաւատայ վկայութեան քահանային, այլ խեռ ունելով յերդումն տայ զքահանայն. պա՛րտ է քահանային երդնուլ զճշմարիտն եւ ոչ թողուլ զրկանք լինել ի մէջ նոցա, թէ ոչ, առնու յանձն զերդումն եւ մին զմէկ այլն զրկէ և խլէ զնորա ապրանքն» (էջ 77բ—78ա, էջ 76ա)։ Իսկ Պատասխանի վերջին մասը. «այլ եղիցին ձեր բանն . . . . այսինքն է ի սատանայէ» չի պահվել նշված ձեռագրերում։ Ն ձեռագրում Հարցի մեջ կրկնվել է սկզբի «Եթէ ոք ի քահանայից... բաժնից եւ զաւուրից» հատվածը։*

Հոդ. ԽԸ, էջ 310—311: *Հոդվածի փոխարեն № № 8459 և 9311 ձեռագրերում գրիչը նշել է. «ԽԸ գրած է» (էջ 78ա, էջ 76բ), նկատի է առել ԽԷ հոդվածը և ԽԸ-ն չի ընդօրինակել*

Հոդ. ԽԹ, էջ 311: *Բնագրի «Թէ ոք յանդուգն ի մարդկանէ» հատվածի փոխարեն № 3369 ձեռագրում պահվել է «Եթէ ոք յանդգնութիւն արասցէ աշխարհական գոլով» (էջ 76ա)։*

Հոդ. Ծ, էջ 311—312: *Մի քանի ձեռագրերում Պատասխանը շարունակվում է. «ընկենուլ արժան է եւ զվրէժխնդրութիւն գործոյն Աստուծոյ թողուլ» (№ № 648, էջ 40ա, 650, էջ 64ա, բ, 3562, էջ 316ա)։*

Հոդ. ԾԲ, էջ 312: *№ № 659 և 657 ձեռագրերում չի պահվել այս հոդվածը։*

Հոդ. ԾԳ, էջ 312: *Բնագրի «առ հարկի եւ ապաշաւէ» հատվածի փոխարեն երկու ձեռագրերում կարդում ենք. «յահէ քահանայիցն եւ փոշիմանի» (№ № 8459, էջ 79բ 9311, էջ 77բ)։ Երեք ձեռագրերում Պատասխանը շարունակվում է. «Չէ արժան ունել վասն զի զինքն նուիրեաց զիւաց» (№ 648, էջ 40ա, տես նաև № № 3369, էջ 77բ, 3562, էջ 316ա)։*

Հոդ. ԾԵ, էջ 313: *Երկու ձեռագրերում Պատասխանը շարունակվում է. «Չէ արժան այլ կին առնել, զի եւ ոչ մեք ունիմք համարձակութիւն յաղագս այգորիկ հրաման տալ» (№ № 648, էջ 40ա, 3562, էջ 316բ)։ Այս և ԾԶ հոդվածները № № 8459 և 9311 ձեռագրերում գրիչը դուրս է նետել, նշելով «ԾԵ, ԾԶ գրած է» (էջ 80ա, էջ 78բ)։ Նույն բանը կրկնված է նաև ԾԸ և Կ հոդվածների նկատմամբ։*

Հոդ. ԿԲ, էջ 315—316: *Պատասխանը № 3369 ձեռագրում այսպես է. «Ոչ է պարտ եւ ընրոն ընգունելի» (էջ 77բ)։*

Հոդ. ԿԴ, էջ 316: *Երկու ձեռագրերում հոդվածն ընդարձակ է. «Հարց. Եթէ ոք ի պատճառս հաւատոց կամեսցի մեկնել յառնէ իւրմէ, կամ այր ի կնոջէ իւրմէ եւ անյաւժարն ի նոցանէ այլ առնիցէ կին կամ կինն՝ այր, զի՞նչ պարտ է առնել։ Պատասխանի. Ոչ է արժան մեկնել ի միմեանց եւ հաւատքն չեն ընդունելի» (№ 659, էջ 133բ. տես նաև № 657, էջ 113ա)։ № 3369 ձեռագրում ԿԳ հոդվածը գրված է ԿԴ հոդվածի տեղը և ընդհակառակը։*

Հոդ. ԿԵ, էջ 317 (Բուն. հոդ. 23, էջ 643): „Πεῦσις κγ'. Τινὲς μονάσαντες καὶ κατολιγωρήσαντες ὕστερον, ἐξῆλθον ἐκ τῶν μοναστηρίων ἑαυτῶν καὶ ἐχειροτονήθησαν, εἶτα μετὰ τὴν χειροτονίαν ἀποβαλλόμενοι τελείως τὸ σχῆμα τὸ μοναχικόν, ἐδέξαντο γυναῖκας, εἰ δέον αὐτοὺς δέχεσθαι εἰς λειτουργίαν, ἢ οὔ;

Ἀπόκρισις. "Ἄδεκτοι παντελῶς εἰσὶν εἰς λειτουργίαν' οἷα δὴ καὶ ἀπὸ μοναχῶν ὄντες καὶ μετὰ χειροτονίαν γάμῳ προσομιλήσαντες". *Հայերենի Հարցը ընդհանուր ձևով է արտահայտում հունարենի միտքը, իսկ Պատասխանները երկու բնագրում էլ բացասական են և տարբեր։*

Հոդ. ԿԷ, էջ 317—318: *Հմմտ. № № 8459 և 9311 ձեռագրերում եղածը. «Հարց. Եթէ ոք ի տղայութեանն կին առեալ է պսակաւ եւ օրինօք եւ կինն շուտով մեռաւ եւ դեռ զմիմեանս չեն տեսեալ վասն տղայութեանն եւ իբրեւ ի չափ հասակի եհաս կին մի այլ*

էառ, այնպիսին պարտ է դալ ի քահանայութեան կարգ, թէ ոչ» (էջ 81բ—82ա, էջ 80բ)։

Հոդ. ԿԸ, էջ 318։ Պատասխանը միևնույն ձեռագրերում այսպես է. «Արժան է» (№ № 8459, էջ 82ա, 9311, էջ 81ա), իսկ № № 659, 657 ձեռագրերում՝ «Եթե ի մեղացն ի բաց եկաց եւ արդարութեամբ գնաց, արժանի է քահանայութեան» (էջ 135ա, էջ 113բ)։

Հոդ. ՀԱ, էջ 319—320։ № № 8459 և 9311 ձեռագրերում այս հոդվածը գրիչը չընդօրինակելով ավելացրել է՝ «ՀԱ գրած է» (էջ 82բ, էջ 81բ)։

Հոդ. ՀԲ, էջ 320—321։ Համտ. №№ 8459 և 9311 ձեռագրերում եղածը. «Հարց. Եթէ ոք ի քահանայից շինուածս առնէ և կամ այլ ցեղ բան եւ գործ և կամ քար դիպեսցի մարդոյ և կամ ի բարձր տեղաց անգանի եւ մեռանի, զի՞նչ պարտ է առնել, վասն կարգի քահանայութեանն։ Եւ եթէ ոմանք յաշխարհականաց նոյնպէս սպանումն դիպեսցի, որպէս պարտ է տալ ապաշխարութիւն» (էջ 82բ—83ա, էջ 81բ—82ա)։

Հոդ. ՀԴ, էջ 321։ № № 8459 և 9311 ձեռագրերում այս հոդվածը գրիչը չընդօրինակելով ավելացրել է. «ՀԴ գրած է» (էջ 83ա, էջ 82ա)։

Հոդ. ՀԵ, էջ 321—322։ Մի քանի ձեռագրերում Պատասխանն ընդարձակ է. «Խզճել պարտ է, և ի բաց հեզուլ քրիստոնէից, զի պիղծ է» (№ 648, էջ 42ա. տես նաև № № 650, էջ 67բ, 651, էջ 50բ, 2964, էջ 88ա, 3562, էջ 319ա)։ Նույն բանը № 3369 ձեռագրում պահվել է այսպես. «Խրզճել պարտ է և ի բաց հեզուլ ըմբոն է, զի պղծեալ է» (էջ 79ա)։ Մինչդեռ № 649 ձեռագիրն այս հոդվածը չունի ամբողջությամբ։

Հոդ. ՀԶ—ՀԹ, էջ 322—323։ Այս չորս հոդվածները № № 8459 և 9311 ձեռագրերում չընդօրինակելով ավելացրել է. «Գրած է այս Դ տունս» (էջ 83ա, էջ 82բ)։

Հոդ. ՀԷ, էջ 322։ Երկու ձեռագրերում Հարցը մի փոքր ընդարձակ է. «Որ ուլն ինչ արկանէ ոք այնոցիկ որոց արիւնն հատանի և կամ այլ ինչ այնպիսի յաղագս արեան եւ այլ ցնոտի բաժանմունք, արդար բժշկութիւն համարի՞լ պարտ է, թէ նենգութիւն եւ զի լինիցի ինչ բաս կարծեաց գործն» (№ № 648, էջ 42ա, բ, 3562, էջ 319բ)։

Հոդ. ՀԸ, էջ 322—323։ Մի քանի ձեռագրերում Հարցը մի փոքր ընդարձակ է. «Թէ ոք թովիչ է և կամ ձեռն ինչ որ ածէ յաչաղոյ եւ կամ այլ ցաւոց եւ դեղ հատանէ ջերման և ասէ. Բժշկութիւն լինի. եւ զգրարարսն եւ զայլ ամենայն նոյնպիսիս որ սոցին նման են սխալանս ի զայթակղութիւն տղիաաց ի կարգ եկեղեցոյ, ո՞րպէս պարտ է համարել զնոսա կամ որպիսի՞ պատուհասի արժանի համարել կամ թէ համարձակութիւն կալ թովչացն, զի բժշկեսցեն զօձահարսն, թէ ոչ» (№ 648, էջ 42բ. տես նաև № № 649, էջ 61ա, 650, էջ 68ա, 651, էջ 50բ, 2964, էջ 88ա, բ, 3369, էջ 79բ, 3562, էջ 319բ)։

Հոդ. ՁԱ—ՁԵ, էջ 324—326։ Այս հինգ հոդվածները գրիչը չընդօրինակելով ավելացրել է. «Գրած է այս Դ (պետք է լինի Ե—Վ. Հ.) տունս» (№ № 8459, էջ 83բ, 9311, էջ 82բ)։

Հոդ. ՁԲ, էջ 324։ Երկու ձեռագրերում այս հոդվածը համառոտ է. «Հարց. Եթե մոգի ուրուք կին կամեսցի քրիստոնեայ լինել և այրն չարդեացէ ի քրիստոնէութենէն եւ ի կնութենէ իւրմէ չարձակիցէ, պա՞րտ է տալ ի նոյն ամուսնութեան կնիք, թէ ոչ։ Պատ. Պարտ է մկրտել» (№ № 659, էջ 137բ—138ա, 657, էջ 114բ)։

Հոդ. ՁԴ, էջ 324—325։ Երկու ձեռագրերում Հարցը ունի որոշ շեղումներ. «Եթե ոք ի քրիստոնէից լինիցի մոգ եւ կին նորա յառաջին քրիստոնէութեանն հաստատուն կայցէ, պա՞րտ է կալ ի նոյն ամուսնութեանն կամ խեղճ ի՞նչ իցէ կնոջն ընդ մոգի առն կեալ, եթէ ոչ, կամ ալրէնս առնուլ, համարձակութիւն իցէ, թէ ոչ» (№ № 659, էջ 138ա, 657, էջ 114բ—115ա)։ Իսկ մի քանի ձեռագրերում Պատասխանն ավելի ընդարձակ է. «Ի սրբութիւնսն չէ իշխանութիւն ինչ մերժենալ, վասն զի նա եւ այրն իւր մի մարմին են, որպէս եւ Պաւղոս առաքեալն ասէ, թէ որ մերձենա ի պոռնիկն մի մարմին են եւ եղիցի երկոքին մի մարմին» (№ 651, էջ 51ա, բ, տես նաև № № 649, էջ 62ա, 2964, էջ 89ա, բ, 3369, էջ 80ա. համտ. № № 659, էջ 138ա, 657, էջ 115ա)։

Հոդ. ՁԵ, էջ 325—326։ Մի քանի ձեռագրերում Պատասխանը շարունակվում է. «Արդ՝ ոչինչ թերութիւն համարել յաղագս եւղոյ օծմանն չքաւորութեան, զի ուր հոգին տեառն է, անդ ազատութիւն է եւ ինքն լնու զամենայն յամենայնի» (№ 648, էջ 43բ. տես նաև № № 649, էջ 62ա, 650, էջ 69բ, 651, էջ 51բ—52ա, 2964, էջ 90ա, 3369, էջ 80բ, 3562, էջ 321ա)։

Հոդ. ՁԷ—ՁԸ էջ 327—328։ Այս երկու հոդվածների միջև մի շարք ձեռագրերում տեղ է գտել երկու նոր հոդված, որոնք չենք գտնում Կանոնագրքի հնագույն և լավագույն ձեռագրերում։ Այդ հոդվածներն են. «ՁԸ. Հարց. Որ զՔրիստոս ուրասցի եւ յանցանիցէ զփրկական խորհրդովս, զի՞նչ պարա է առնել։ Պատ. Զամենայն ժամանակս կենաց իւրոց պարտի

*լալ եւ ապաշխարել եւ ի ժամանակի ելից իւրոյ յաշխարհէս արժանի լիցի սուրբ խորհրդոյն հաւատով Աստուծոյ մարդասիրութեանն։ ԶԹ. Հարց. Թէ ոք յանասնագիտաց զսահմանեալ ապաշխարհութիւնն կատարեաց եւ դառնայ ի ղուղակիցն իւր, իսկ նա հարկաւորեալ ոչ առնու յանձն, խե՞ղճ համարել զիրսն. եւ սա բողոքիցէ չտանել վտանգիցն, զի ոչ հրաման տացեմք։ Պատ. Պարտ է կարէկից լինել իւրում վշտագնեալ անդամոյն, վասն զի ապաշխարութեամբ եւ հաղորդութեամբ սրբեցաւ. ապա թէ ոչ հաւանեսցի եւ յաղագս երկեղածութեան առնէ զայն, իշխանութիւն լիցի ի վերայ կամաց իւրոց անայր մնալոյ, եւ սա թէ ոչ ունիցի ժոյժ ինքն գիտասցէ, զի ինքն զինչ կամիցի արասցէ» (№ 648, էջ 43բ—44ա. տես նաև №№ 649, էջ 62բ—63ա, 650, էջ 70ա, 651, էջ 52ա, 2964, էջ 90բ—91ա, 3369, էջ 81ա, բ, 3562, էջ 321բ)։ Վերևում բերված երկու հոդվածը նույնությամբ գտնում ենք նաև կանոնագրքի մի քանի ձեռագրերում ևս՝* ê *(էջ 110ա, բ),* b *(էջ 87բ—88ա),* e *(էջ 68ո),* f *(էջ 105ա,բ),* g *(էջ 62ա),* h *(էջ 64բ),* o *(էջ 71բ),* q *(էջ 30բ—51ա)* l *(էջ 69ա,բ)։ Այս հոդվածների մասին* f *ձեռագրի 105ա էջի աջ լուսանցքում, գրիչը, թե մեկ ուրիշ, թողել է իր տարակուսանքը. «Այս Գ գլուխս (պետք է լինի Բ—Վ. Հ.) ոչ ցանկն կայ եւ ոչ Ղարասու ի կանոնքն» (իմա՝ Ղարասույում ընդօրինակված կամ ավելի ճիշտ Ղարասույում գտնվող կանոնագրքում—Վ. Հ.)։ Այդ պատճառով էլ վերոհիշյալ ձեռագրերի մի մասում Աթանասի կանոնախմբի հոդվածների թիվը հասնում է 90-ի, իսկ մի այլ մասում՝ 91-ի։*

Հոդ. ՁԸ, էջ 327—328։ *Այս հոդվածը չի պահվել №№ 8459 և 9311 ձեռագրերում և ոչ մի նշում էլ չկա այդ մասին, ինչպես երբեմն հանդիպում ենք։ Սակայն դրա փոխարեն ընդօրինակված է երկու հոդված. առաջինն այն է, ինչ վերևում նշեցինք՝ «Եթէ ոք զՔրիստոս ուրասցի» և այլն, իսկ երկրորդը՝ նոր է և չունեն վերևում նշված ձեռագրերը. «ԶԹ. Հարց. Վասն զի ահա ոմանք ձեռնարկեցին կարգեալ յինքեանց զասացեալ ծածուկսն եւ մակախ առնել զայս Աստուածաշունչ գիրս յաղագս որոց հաւատացաք, որպէս աւանդեցին հարքն, որք ի սկզբանէ ականատեսք եւ սպասաւորք եղեն բանին։ Կամ եղեւ ինձ զառ ի սեփհական եղբարց եւ ուսեալ ի վերուստ արտապատմել զկանոնեալ եւ զաւանդեալ աստուածային գիրս, զիւրաքանչիւր ոք պատմեցաւ եւ Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն») (№№ 8459, էջ 85ա, 9311, էջ 83բ—84ա)։ Վերջինս հոդված չէ, այլ հավանաբար գրչի մտորումները։*

*№ 657 ձեռագրում այս հոդվածի հարցը, որը չունեն մյուս ձեռագրերը, պահվել է այսպես. «Պա՞րտ է քահանային երդնուլ, թէ ոչ» (էջ 115բ), այնուհետև հետևում է նույն Պատասխանը, ինչ գտնում ենք կանոնագրքում։*

## ԲԱՐՍԵՂ ԿԵՍԱՐԱՑՈՒ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 329: *Համեմատական բնագիրը կազմելիս չօգտագործված ձեռագրերից երեքում ցանկի վերնագիրը փոխարինում է սույն վերնագրին՝ №№ 648, 3562 ձեռագրերը ունեն. «Ցանկ կանոնք Բարսեղի առ Ամփիլոքոս գլուխք Ծ» (էջ 44ա, էջ 322ա). իսկ № 659-ը՝ «Ցանգ Բարսղի երկրորդ» (էջ 185ա): Մնացած ձեռագրերը՝ №№ 649, 650, 651, 2964, 3369 այս վերնագիրը չունեն:*

Ցանկ, էջ 329—334: *№№ 649, 650, 651, 2964, 3369 ձեռագրերը ցանկ չունեն: №№ 648, 3562 ձեռագրերում եղած ցանկը համապատասխանում է կանոնագրքի ունեցածին միայն հետևյալ շեղումներով. ա) ԼԶ, ԼԷ վերնագրի փոխարեն ունեն մեկ վերնագիր «ԼԶ. Վասն մոնոզանացն» (№№ 648, էջ 44բ, 3562, էջ 322բ). բ) ԽԸ հոդվածի վերնագիրը գրված է ԽԷ հոդվածի վերնագրի տեղը և հակառակը: գ) Ծ հոդվածի վերնագրի փոխարեն ունեն. «ԽԹ. Վասն ոչ յիշել զմեղս յանցաւորին» (№№ 648, էջ 45ա, 3562, էջ 322բ): դ) ԾԱ հոդվածի վերնագրի՝ 334 էջի 1-ին և 2-րդ տողերը չունեն: Մնացածը նույնն է ինչ որ կանոնագրքինը: №№ 618 և 3562 ձեռագրերում եթե ցանկում նշված է 49 հոդվածի վերնագիր, ապա ձեռագրում բերված է 40 հոդված, նշանակում է Բարսեղի կանոնախումբն այս ձեռագրերում բերված են թերի:*

*№ 659 ձեռագրում եղած ցանկը տարբեր է կանոնագրքի ունեցածից, այն կազմել է ձեռագրի գրիչը. ահա այդ ցանկը.*

*ա. Սպանութեան:*
*բ. Ակամայ մեղաց:*
*գ. Դեղատուաց:*
*դ. Երդման:*
*ե. Երկրորդ ամուսնութեան:*
*զ. Գառներազմաց:*
*է. Վաշխից:*
*ը. Կուսանաց:*
*թ. Դաւատուորաց:*
*ժ. Երիցանց անպատեհ ամուսնութեան:*
*ժա. Որ յառաջ ապականեցան քան զամուսնութիւնն:*
*ժբ. Յափրշտակողաց:*
*ժգ. Մեկնելոյ արանց ի կանանց:*
*ժդ. Ծնաւղաց արհամարհելոյ:*
*ժե. Ծառայից եւ աղախնեաց արհամարհելոյ զտեարս:*
*ժզ. Այրեաց:*
*ժէ. Ինքնակամութեան:*
*ժը. Խիստ հարուածոց մահու:*
*ժթ. Հեթանոսաց պոռնկութեան:*
*ի. Կանանց որ թողին զարս իւրեանց:*
*իա. Կնաթողաց:*
*իբ. Ակամայ պոռնկութեան:*
*իգ. Ուխտաւորաց:*
*իդ. Երդման:*
*իե. Կախարդաց:*
*իզ. Արուագիտաց:*
*իէ. Ընդ եղբաւր պոռնըկելոյ:*
*իը. Ընդ ազգայի[ն] պոռնըկելոյ:*
*իթ. Որք զհարսանիսն զողանան:*
*լ. Որք շրթամբք պղծին:*
*լա. Որք ընդ քուրս պղծին:*
*լբ. Համաւրէն զամենայն մեղուցեալս կանոնելոյ:*
*լգ. Ողջ եց[է] մարմնով:*
*լդ. Սխալողի յանդիմանութեան:*
*լե. Դիտակաց մեղաց ուրուք:*
*լզ. Թշնամանողաց:*
*լէ. Դատարկաբանից:*
*լը. Երդման:*
*լթ. Թողացելոյ զյանցանս ուրուք:*
*խ. Թողլոյ զմեղս ուրուք:*
*խա. Ցածողաց աւելորդաւք:*
*խբ. Բարկացողաց:*
*խգ. Թշնամանողաց (էջ 185ա, բ):*

Բարսեղի կանոնախմբի ցանկում նշված են 43 հոդվածների վերնագրեր: Վերջիններս երբ համեմատում ենք ձեռագրում եղած հոդվածների հետ, ապա նկատում ենք, որ ԻԳ հոդվածը ցանկում չունի համապատասխան վերնագիր, իսկ ցանկում նշված ԻԳ վերնագիրը, հոդվածների շարքում, չունի համապատասխանը: Այսպիսով ցանկի ԻԳ վերնագիրը և ԻԳ հոդվածը միմյանց չեն համապատասխանում: Ցանկի ԼԳ վերնագիրը հոդվածների շարքում չունի իր հոդվածը: Այս ձեռագրում պակասում են կանոնագրքի ունեցած 11 հոդվածները:

Երկրորդ վերնագիր, էջ 334: Վերոհիշյալ ձեռագրերում այս ես ունի տարբերակներ. օրինակ՝ №№ 648, 3562 ձեռագրերում հանդիպում ենք «կանոնք սրբոյն Բարսեղի» ձևով, №№ 649, 650, 651, 2964 ձեռագրերում՝ «Գիր կանոնական մեծի և գիտնականի երանելոյն Բարսեղի եպիսկոպոսի կեսարացւոյ գլուխք Ծ», № 3369 ձեռագրում՝ «Գիր կանոնական մեծի և գիտնականի երանելոյն սրբոյ հօրն մերոյ եօթնալոյս Բարսեղի հայրապետին եպիսկոպոս կեսարիոյ» (էջ 81բ), իսկ № 659 ձեռագրում «Գիր կանոնական մեծի և գիտնաւոր Բարսղի եպիսկոպոսի առ սուրբն Փիլիքս Ցիկոնացոց եպիսկոպոս, գլուխք ԽԳ» (էջ 86ա):

Հոդ. Ա—Բ, էջ 334—336 (հուն. հոդ. 1, էջ 576—579): Պիտրայի մոտ հուն.-ի առաջին հոդվածին նախորդում է մի փոքրիկ ներածական (սկիզբ. 'Ανόητω. φησίν. ἐπερωτήσαντι. σοφὸς λογισθήσεται· վերջ. καὶ τὰ συγγενῆ ὧν ἐδιδάχθημεν. παρ' ἑαυτῶν ἐπιλογίσασθαι.), որը չի պահվել կանոնագրքում:

Հունարենի այս հոդվածը բավական ընդարձակ է: Հոդվածի սկզբի մասը, որը վերաբերում է կատարների մկրտության խորհրդին, հայերենում չի պահվել: Իսկ մնացած մասից խիստ համառոտ վերաշարադրել են Բարսեղ կեսարացու կանոնախմբի Ա և Բ հոդվածները: Այնպես որ այստեղ թարգմանության մասին խոսք լինել չի կարող:

Ա հոդվածի «Արտաքսեալքն յեկեղեցւոյ՝ ամենայն՝ հերձուածողք ասին» հատվածում ներծվածող բառը, ըստ երևույթին, խմբագրողը երկու տարբեր առումով է գործածել. նախ՝ հերձվածող ասելով հասկանում է ընդհանուր առմամբ և՛ աղանդավորներին, և՛ եկեղեցու ներսում հանդես եկող պառակտողներին, երկրորդ՝ հերձվածող անվան տակ հասկանում է աղանդավորներին, որոնց անունները թվում է ներքևում:

№ 659 ձեռագրում այս հոդվածի սկզբի մի փոքրիկ հատվածը՝ «Եւ որչափ պատուհասք արտաքսեալքն յեկեղեցւոյ ամենեքեան հերձուածողք ասին, այլ դէմն հերձուածողս կոչեցին», միացրել են Բ հոդվածին և այդ երկուսը միասին դրել ցանկի և երկրորդ վերնագրի միջև որպես ներածական (էջ 185բ—186ա): Այստեղ որպես Ա հոդված դրված է կանոնագրքի Գ հոդվածը: Մնացած ձեռագրերում՝ №№ 648, 649, և սրանց հարող, հոդվածը սկսվում է այսպես. «Արտաքսեալքն յեկեղեցւոյ ոչ ամենայն»: Երկու ձեռագրերում «քահանայութեանն» բառի փոխարեն կարդում ենք «գահ երիցութեան» (№№ 648, էջ 43ա, 3562, էջ 323ա):

Հոդ. Գ, էջ 336, (հուն. հոդ. 2, էջ 379): „Ἡ φθείρασα κατ' ἐπιτήδευσιν, φόνου δίκην ὑπέχει· ἀκριβολογία δὲ ἐκμεμορφωμένου καὶ ἀνεξεικονίστου παρ' ἡμῖν οὐκ ἔστιν· ἐνταῦθα γὰρ ἐκδικεῖται οὐ μόνον τὸ γεννηθησόμενον, ἀλλὰ καὶ αὐτὴ ἡ ἑαυτῇ ἐπιβουλεύσασα· διότι ὡς ἐπὶ τὸ πολὺ ἐναποθνήσκουσι ταῖς τοιαύταις ἐπιχειρήσεσιν αἱ γυναῖκες. Πρόσεστι δὲ τούτῳ καὶ ἡ φθορὰ τοῦ ἐμβρύου, ἕτερος φόνος κατά γε τὴν ἐπίνοιαν τῶν ταῦτα τολμώντων. Δεῖ μέντοι μὴ μέχρι τῆς ἐξόδου παρατείνειν αὐτῶν τὴν ἐξομολόγησιν, ἀλλὰ δέχεσθαι μὲν τὸ μέτρον τῶν δέκα ἐτῶν· ὁρίζειν δὲ μὴ χρόνῳ, ἀλλὰ τρόπῳ τῆς μετανοίας τὴν θεραπείαν".

Հայերենում հոդվածի սկիզբը խախտված է. հուն.-ի Ἡ φθείρασα κατ' ἐπιτήδευσιν, φόνου δίκην ὑπέχει հատվածի դիմաց հայերենում կարդում ենք. «եթէ ոք ապականեսցէ զէգ յանկարծաւրէն», որը սխալ է: Հոդվածի մնացած մասը վերաշարադրմամբ ընդհանուր ձևով է արտահայտում հուն.-ի միտքը:

№ 659 ձեռագրում վերևի մեջբերված հատվածն այսպես է: «Եթէ ոք սպանանէ զոք յանկարծաւրէն մահապարտութեան դատաստան ընկալցի» (էջ 186ա):

Հունարենի 3-րդ հոդվածը, որը վերաբերում է պոռնկացող սարկավագների խնդրին (էջ 579—580) կանոնագրքում չի պահվել:

Հոդ. Դ, էջ 337—339 (հուն. հոդ. 4, էջ 580): „Περὶ τριγάμων καὶ πολυγάμων τὸν αὐτὸν ὥρισαν κανόνα, ὃν καὶ ἐπὶ τῶν διγάμων ἀναλόγως· ἐνιαυτὸν μὲν γὰρ ἐπὶ τῶν διγάμων, ἄλλοι δὲ δύο ἔτη, τοὺς δὲ τριγάμους ἐν τρισὶ καὶ τετράσι πολλάκις ἔτεσιν ἀφορίζουσιν. Ὀνομάζουσι δὲ τὸ τοιοῦτον οὐχ ἔτι γάμον, ἀλλὰ πολυγαμίαν, μᾶλλον δὲ πορνείαν κεκολασμένην· διὸ καὶ ὁ Κύριος τῇ Σαμαρείτιδι πέντε ἄνδρας διαμειψάσῃ· ὃν νῦν, φησίν, ἔχεις οὐκ ἔστι σου ἀνήρ· ὡς οὐκέτι ἀξίων

ὥστε τῶν ὑπερεκπεσόντων τοῦ μέτρου τῆς δυνάμεως τῷ τοῦ ἀνδρὸς ἢ τῆς γυναικὸς καλεῖσθαι προσρήματι. Συνήθειαν δὲ κατειλήφαμεν ἐπὶ τῶν τοιούτων πενταετίας ἀφορισμόν, οὐκ ἀπὸ κανόνων, ἀλλ' ἀπὸ τῆς τῶν προειληφότων ἀκολουθίας. Δεῖ δὲ μὴ πάντῃ αὐτοὺς ἀπείργειν τῆς ἐκκλησίας, ἀλλ' ἀκροάσεως αὐτοὺς ἀξιοῦν ἐν δύο που ἔτεσιν ἢ τρισί, καὶ μετὰ ταῦτα ἐπιτρέπειν συστήκειν μέν, τῆς δὲ κοινωνίας τοῦ ἀγαθοῦ ἀπέχεσθαι, καὶ οὕτως ἐπιδειξαμένους καρπόν τινα μετανοίας ἀποκαθιστᾶν τῷ τόπῳ τῆς κοινωνίας".

*Հուն.-ի այս հոդվածը ընդարձակ է քան հայերենը, որը վերաշարադրված է որոշ կրճատումներով, իսկ պատժի չափերը տարբեր են։*

*№ 650 ձեռագրում այս հոդվածը միացված է նախորդին՝ Գ-ին, իսկ № 650 ձեռագրում Գ. Դ, Ե հոդվածներն են միմյանց միացված։*

*Հունարենի 5-րդ, 6-րդ և 7-րդ հոդվածները, որոնք վերաբերում են հերետիկոսներին, կույսերին, արվագետներին և անասնագիտներին, Կանոնագրքում չեն պահվել։*

Հոդ. Ե, էջ 338—341 (հուն. հոդ. 8—9, էջ 581—583)։ *Հայերենի այս հոդվածում միացված են հուն.-ի 8—9-րդ հոդվածները։ Սակայն այս հոդվածը թարգմանություն չէ, այլ վերաշարադրում, ուր բնագրից ընդարձակ հատվածներ դուրս են գցված և նոր օրինակներով համեմված։ Երբ կարդում ես հունարենը, զգում ես որ դա նամակ է, մինչդեռ այդ բանը հայերենում չի զգացվում, որովհետև այդպիսի տեղերը հայերենից հանված են և այստեղ շարադրանքն իրավաբանական բնորոշումների բնույթ ունի, օրինակ՝ հուն.-ի սկիզբը՝ «Դրդված ժամանակ իր կնոջ կյանքի վրա կացին գործադրողը սպանող է։ Բայց լավ (արդարայի) և արժանավոր է քո բարեմտությունը, որ հիշեցրեց ինձ ասել ավելի ընդարձակ, որովհետև զգալի տարբերություն կա կամայության (կամա սպանության) և ակամայության (ակամա սպանության) միջև» հայերենում չենք գտնում։ Հուն.-ի 9-րդ հոդվածն հայերենում սկսվում է «Եւ վճիռն Տեառն հատեալ է ի վերայ նորա» հատվածից։ Հուն.-ի երկու հոդվածի միայն էլ հայերենում ընդհանուր առմամբ ճիշտ է արտահայտված։*

*Այս հոդվածը № 650 ձեռագրում բաժանված է երկու մասի, առանձին համարներով. երկրորդ հոդվածը սկսվում է «Իսկ ոմանք դեղս խառնեալս»-ից (էջ 188ա)։ № 3369 ձեռագրում «ակամայութիւն» բառի փոխարեն հանդիպում ենք «դկամաւորութիւն» (էջ 88բ)։*

Հոդ. Զ, էջ 341 (հուն. հոդ. 10, էջ 583—584։ *Հունարենում քանի որ այս հոդվածը վերաբերում է ոմն Սեվերիոսի քահանա ձեռնադրվելու մասնավոր դեպքին, շարադրված է մանրամասն։ Այդ մանրամասնությունները Կանոնագրքում չեն պահվել։ Այստեղ լրիվ և ճշտությամբ բերված է կանոնական որոշումը միայն։*

*Հունարենի 11-րդ հոդվածում խոսվում է ակամա (ոչ դիտավորյալ) սպանություն կատարողի մասին և բերում է զանազան օրինակներ։ Այս հոդվածը, ըստ երևույթին, Ե հոդվածի կրկնությունն է, ուստի Կանոնագրքում չի պահվել։*

Հոդ. Թ, էջ 341—342 (հուն. հոդ. 14, էջ 585)։ „Ὁ τόκους λαμβάνων ἐὰν καταδέξηται τὸ ἄδικον κέρδος εἰς πτωχοὺς ἀναλῶσαι, καὶ τοῦ λοιποῦ, τοῦ νοσήματος τῆς φιλοχρηματίας ἀπαλλαγῆναι, δεκτός ἐστιν εἰς ἱερωσύνην". *Միայն վերջին մասն է տարբեր, օրինակ, հուն.-ի* φιλοχρηματίας *բառը հայերենում գտնում ենք «քրիստոսասէր» թարգմանությամբ։ Բանն այն է, որ հունարեն բնագրի* φιλοχρήματος *բառը նշանակում է* շահասեր, դրամասեր, ընչաքաղց, ագահ, *սակայն, ըստ երևույթին հայերենի թարգմանության հիմք հանդիսացող հունարեն բնագիրն ունեցել է ոչ թե* φιλοχρηματίας, *ինչպես Պիտրայի մոտ է, այլ* φιλόχρηστος, *որը նշանակում է* բարի, բարեսեր, բարեգործ, պատվասեր, *բայց որը հայ թարգմանիչի կողմից, հավանաբար շփոթմամբ, թարգմանվել է «քրիստոսասէր» (իբր* φιλόχριστος), *հետևապես «քրիստոսասէր» բառի փոխարեն պետք է լիներ* φιλόχρηστος (բարի *կամ* բարեսեր *և կամ* բարեգործ) *բառի սեռական հոլովը։ Այդպես, նման մի շփոթում էլ կատարել է Սոկրատի եկեղեցական պատմության թարգմանիչ Փիլոն Տիրակացին.* τοῦ χρηστοῦ *բառը (տե՛ս* Socratis Scholastici ecclesiastica historia, tomus I, p., 124. „Ἀλλὰ μεταξὺ τοῦ χρηστοῦ σίτου εἴωθε καὶ ζιζάνια φύεσθαι") *թարգմանելով* Քրիստոսի, *փոխանակ՝* բարի (*տես «Սոկրատայ Սքոլաստիկոս եկեղեցական պատմութիւն», հ. Ա, էջ 68, «Այլ ի մէջ ցորենոյն* Քրիստոսի *սովորութիւն և որոմն բուսանին»)։ Այս վերջին շփոթը մատնացույց է արել Սոկրատի հրատարակիչ Մ. Տեր-Մովսիսյանը։*

*Հուն.-ը չունի «մերձեցին առ մեզ» հատվածը, իսկ վերջին «Կանոնք եկեղեցւոյ» հատվածի փոխարեն հուն.-ն ունի* εἰς ἱερωσύνην: *Մնացածը համապատասխանում է հունարենին։*

Հունարենի 15-րդ, 16-րդ և 17-րդ հոդվածները մասնավոր դեպքերի կապակցությամբ տրված հարցումների պատասխան նամակներ են, օրինակ՝ 15-րդ հոդվածը վերաբերում է ս. գրքի մեկնությանը: 16-րդ հոդվածում Բարսեղը խորհուրդ է տալիս ուշադիր վերաբերվել սուրբ գրքին, որտեղ հարցի պարզաբանումը կգտնվի անմիջապես: 17-րդ հոդվածից մինչև 50-րդը Պիտրայի մոտ դրված է առանձին վերնագրի ներքո τῷ αὐτῷ περὶ κανόνων ἐπιστολή, որին հետևում է 17-րդ հոդվածը՝ Բիանորոս քահանային վերաբերող հարցման պատասխանը. Ինչպես տեսնում ենք այս երեք հոդված կոչվածներն էլ կանոնական գրություններ չեն, այլ մասնավոր դեպքերի մասին եղած հարցերի պատասխաններ, որոնք, իրավամբ, չեն թարգմանվել և կամ, ավելի ճիշտ, չեն մտել կանոնագրքի համապատասխան բնագրում:

Հոդ. Ժ, էջ 342—343 (հուն. հոդ. 18, 586—588): Հայերենը խիստ համառոտ է. «եղին առ Աստուածս»-ից հետո հունարենի մի ընդարձակ οἱ μὲν πατέρες ἡμῶν . . . . ἣν δυνατὸν ἐξευρεῖν ἀπὸ τοῦ ἀκολούθου հատվածը հայերենը չունի: Բանն այդպես է մի այլ ավելի ընդարձակ հատվածի նկատմամբ՝ Μέγα μὲν ἁμάρτημα-ից մինչև τοσαῦτα ἀκολαστοῖς ἑαυτὴν ἐπιδοῦναι հատվածը: Ὥσπερ οὖν τὴν ἀλλοτρίαν-ից մինչև վերջ հայերենը գործյալ չունի: Իսկ հայերենի սկզբի «և զգաստութեամբ և համեստութեամբ գնալ» հատվածը հունարենը չունի:

Հուն.-ի 19-րդ հոդվածը վերաբերում է կուսակրոններին. այն կանոնագրքում չի պահվել:

Հոդ. ԺԱ, էջ 343 (հուն. հոդ. 20, էջ 588): „Ὅσαι γυναῖκες ἐν αἱρέσει οὖσαι παρθενίαν ὡμολόγησαν, εἶτα μετὰ ταῦτα γάμον προείλοντο, οὐχ ἡγοῦμαι χρῆναι καταδικάζεσθαι ταύτας· ὅσα γὰρ ὁ νόμος λαλεῖ, τοῖς ἐν τῷ νόμῳ λαλεῖ· αἱ δὲ μήπω ὑπελθοῦσαι τὸν ζυγὸν τοῦ Χριστοῦ, οὐδὲ τὴν νομοθεσίαν ἐπιγινώσκουσι τοῦ δεσπότου· ὥστε δεκταί εἰσι τῇ ἐκκλησίᾳ μετὰ πάντων, καὶ τὴν ἐπὶ τούτοις ἄφεσιν ἔχουσαι ἐκ τῆς πίστεως τῆς εἰς Χριστόν. Καὶ καθόλου, τὰ ἐν τῷ κατηχουμένῳ βίῳ γενόμενα, εἰς εὐθύνας οὐκ ἄγεται· τούτους δὲ δῆλον ὅτι ἄνευ βαπτίσματος ἡ ἐκκλησία οὐ παραδέχεται, ὥστε ἀναγκαιότατον ἐπὶ τούτοις τὰ πρεσβεῖα τῆς γενέσεως".

Այս հոդվածը եթե հուն.-ի 20-րդ հոդվածն է, ապա այն շատ է հեռացել իր նախնական իմաստից և համառոտ է:

Հուն.-ի 21-րդ հոդվածը, որը վերաբերում է ամուսնացած մարդու պոռնկությանը, կանոնագիրքը չունի:

Հոդ. ԺԲ, էջ 343—344 (հուն. հոդ. 22, էջ 589): Այստեղ հուն.-ի միտքը բավական ճիշտ է արտահայտված, թեև մի քիչ համառոտ է:

№ 649 ձեռագրում բացակայում է՝ «Իսկ երկրորդ անգամ մերձեցուցանել զնոսա ի սեղանն» հատվածը (էջ 66ր): Իսկ № 659 ձեռագրում այս հոդվածը միացված է նախորդին և դրված Թ համարի տակ:

Հունարենի 23-րդ, 24-րդ, 25-րդ, 26-րդ հոդվածները, որոնք վերաբերում են քույրերի կամ երկու եղբայրների հետ ամուսնանալուն, այրիների ամուսնանալուն, պսակից առաջ, կամ առանց պսակի կենակցողներին, կանոնագրքում չեն պահվել:

Հոդ. ԺԳ, էջ 344—345 (հուն. հոդ. 27, էջ 590): „Περὶ τοῦ πρεσβυτέρου τοῦ κατὰ ἄγνοιαν ἀθέσμῳ γάμῳ περιπαρέντος, ὥρισα ἃ ἔχρην, καθέδρας μὲν μετέχειν, τῶν δὲ λοιπῶν ἐνεργειῶν ἀπέχεσθαι· ἀρκετὸν γὰρ τῷ τοιούτῳ ἡ συγγνώμη. Εὐλογεῖν δὲ ἕτερον, τὸν τὰ οἰκεῖα θεραπεύειν ὀφείλοντα τραύματα, ἀνακόλουθον· εὐλογία γάρ, ἁγιασμοῦ μετάδοσίς ἐστιν· ὁ δὲ τοῦτο μὴ ἔχων διὰ τὸ ἐκ τῆς ἀγνοίας παράπτωμα, πῶς ἑτέρῳ μεταδώσει; Μήτε τοίνυν δημοσίᾳ, μήτε ἰδίᾳ εὐλογείτω, μήτε τὸ σῶμα τοῦ Χριστοῦ κατανεμέτω ἑτέροις, μήτε τι ἄλλο λειτουργείτω, ἀλλὰ ἀρκούμενος τῇ προεδρίᾳ, προσκλαιέτω τῷ Κυρίῳ, συγχωρηθῆναι αὐτῷ τὸ ἐκ τῆς ἀγνοίας ἀνόμημα".

Հայերենը բառացի թարգմանություն չէ, թեև վերաշարադրմամբ ընդհանուր ձևով է արտահայտում հունարենի միտքը:

Հոդ. ԺԴ, էջ 345—346: Այս հոդվածը հունարենում չի պահվել. իսկ հունարենի 28-րդ և 29-րդ հոդվածները, որոնք վերաբերում են խոսքի մեջ հրաժարվելուն և առաջնորդների երդմանը, չեն պահվել կանոնագրքում:

№ 3369 ձեռագրում չի պահվել «յաղագս յառաջադոյն ապականութեանն» հատվածից մինչև Հովհաննես Օձնեցու կանոնախումբը ներառյալ՝ էջ 335:

Հոդ. ԺԵ, էջ 346 (հուն. հոդ. 30, էջ 591): „Περὶ τῶν ἁρπαζόντων κανόνα μὲν παλαιὸν οὐκ ἔχομεν, ἰδίαν δὲ γνώμην ἐποιησάμεθα, τρία ἔτη καὶ αὐτοὺς καὶ τοὺς συναρπάζοντας αὐτοῖς ἔξω τῶν εὐχῶν γίνεσθαι. Τὸ δὲ μὴ βιαίως γινόμενον, ἀνεύθυνόν ἐστι, ὅταν μὴ φθορὰ ᾖ, μηδὲ κλο-

πη γενομένη του πράγματος. ἀποδέξονται δὲ ἡ χήρα. καὶ ἐπ' αὐτῇ τὸ ἀκολουθῆσαι, ὥστε τῶν σχημάτων ἡμῖν οὐ φροντιστέον„.

*Հայերենի միայն երկրորդ մասն է հուն.-ից շեղվում.* Τὸ δὲ μὴ βιαίως γινόμενον-*ից մինչև վերջ հատվածի դիմաց հայերենն ունի «ոչ գողութիւն . . . -շուն կոչի»։*

Հոդ. ԺԶ, էջ 346: *№ 659 ձեռագրում այս և նախորդ հոդվածները միացված են և գրված ԺԷ համարի տակ։*

Հոդ. ԺԷ, 347 (հուն. հոդ. 32, էջ 591): *Հայերենը համառոտ է, օրինակ՝ հայերենում ասվում է թե «մեղանչենն», բայց ինչո՞ւ, իսկ հուն.-ն ասում է «սպանութեան հանցանքով»* (οἱ τὴν πρὸς θάνατον ἁμαρτίαν) *կամ հուն.-ի* τῆς κοινωνίας δὲ τῶν λαϊκῶν οὐκ ἐξείργονται *(բայց չզրկվեն աշխարհականների հետ հաղորդակից լինելուց) հատվածը գրված է «ս̄ ողո-րմութեան... իշխեսցեն բաշխել» ոչ ճիշտ ձևով։*

Հոդ. ԺԸ, էջ 347 (հուն. հոդ. 33—34, էջ 592): *Հուն.-ի 33—34-րդ հոդվածները հայ-րենում միացրել են այս հոդվածում։ «Իսկ դշնացող կանայսն» հատվածից սկսվում է 34-րդ հոդվածը։ Հայերենի «մանուանդ եթէ անուանիք իցեն և յառաջագոյն» հատվածը հուն.-ը չունի։*

Հոդ. ԺԹ, էջ 347 (հուն. հոդ. 35, էջ 592): „Ἐπὶ δὲ τοῦ καταλειφθέντος ἀνδρὸς ὑπὸ τῆς γυναικὸς, τὴν αἰτίαν χρὴ σκοπεῖν τῆς ἐγκαταλείψεως· κἂν φανῇ ἀλόγως ἀναχωρήσασα, ὁ μὲν συγγνώμης ἐστὶν ἄξιος, ἡ δὲ ἐπιτιμίου· ἡ δὲ συγγνώμη τούτῳ πρὸς τὸ κοινωνεῖν τῇ ἐκκλησίᾳ δοθήσεται".

*Հայերենը թարգմանություն չէ, այլ համառոտ վերաշարադրում, թեև հունարենի միտքն արտահայտում է։*

*Հունարենի 36—37-րդ հոդվածները, որոնք վերաբերում են զինվորների մահից հետո նրանց կանանց ամուսնության և պոռնկությամբ գրաղվող ամուսնացած մարդկանց՝ Կանոնագրքում չեն պահվել։*

Հոդ. Ի, էջ 347—348 (հուն. հոդ. 38—39, էջ 592): *Հուն.-ի 38—39-րդ հոդվածները Կանոնագրքում միացրել են Ի հոդվածում։ 39-րդ հոդվածն սկսվում է «զի որ կեայ ընդ շնացողի» հատվածից։*

*№ № 651, 2964 ձեռագրերում «զերեամ» բառը գտնում ենք «զերկեամ» ձևով (էջ 57ա, էջ 98ա)։*

Հոդ. ԻԱ, էջ 348 (հուն. հոդ. 40 էջ 592): *Միայն հոդվածի վերջին մասն է շեղվում. հայերենի «և ոչ եւս հաստատուն լինի... ի վերայ նորա» հատվածի դիմաց հուն.-ը բոլորովին այլ բան ունի՝* ἐγήματο, ὥστε ἐκεῖνο μὲν πορνεία, τοῦτο δὲ γάμος· αἱ γὰρ συνθῆκαι τῶν ὑπεξουσίων οὐδὲν ἔχουσι βέβαιον".

Հոդ. ԻԲ, էջ 348 (հուն. հոդ. 41, էջ 593): *Տարբերությունը վերաբերում է վերջին* Ἐὰν δὲ ἀποθάνῃ... μόνον ἐν Κυρίῳ *հատվածին, որը բերված է Պողոս առաքյալի առ Կորնթացիս առաջին նամակի է—39 հատվածից (հմմտ. նաև նույնի առ Հռոմ է—2), մինչդեռ հայերենում բերվածը՝ նույնի առ Հռոմայեցիս նամակի է—3 հատվածն է։*

Հոդ. ԻԳ, էջ 348—349 (հուն. հոդ. 42, էջ 593): *Կանոնագրքում չի պահվել հուն.-ի* οὔτε οὖν πατρὸς ζῶντος, οὔτε δεσπότου οἱ συνιόντες ἀνεύθυνοί εἰσιν, ὡς ἐὰν ἐπινεύσωσιν οἱ κύριοι τὴν συνοίκησιν *հատվածը, մնացածը նույնն է։*

Հոդ. ԻԴ, էջ 349 (հուն. հոդ. 43, էջ 593): *Տարբեր է միայն վերջին* εἴτε ἧσσε τῆς πληγῆς, εἴτε ἠμύνατο *մասը, որա փոխարեն հայերենը ունի «այնպիսւոյն վրէժխնդրութիւն եղիցի»։*

Հոդ. ԻԵ, էջ 349 (հուն. հոդ. 44—45, էջ 593): *Հուն.-ի 44—45-րդ հոդվածները Կանոնագրքում միավորել են ԻԵ հոդվածում։ Հուն.-ի 45-րդ հոդվածը սկսվում է «Որոց միանգամ դանուն Քրիստոսի» հատվածից։ 44-րդ հոդվածի վերջին՝* ὁ δὲ μετὰ τὴν πίστιν ἐλθὼν πάλιν τῇ ἱεροσυλίᾳ προσιὼν ἐπὶ τὸν ἔμετον ὑποστρέφει· ἡμεῖς οὖν τῆς διακόνου τὸ σῶμα, ὡς καθιερωμένον, οὐκ ἐπιτρέπομεν ἐν χρήσει εἶναι σαρκικῇ. *մասը Կանոնագիրքը չունի։ Իսկ հուն.-ի μὲ այլ՝* δεκτή ἐστιν εἰς μετάνοιαν *հատվածը հայերենում գրված է «անընդունելի է եկեղեցւոյ»։ Միայն ՐՀ և № 656 ձեռագրերը բնագրի «անընդունելի է» բառի փոխարեն ունեն «ընդունելի է» (№ 650, էջ 75բ)։ Հետաքրքիրն այն է, որ մեր բոլոր ձեռագրերը* ἡ διάκονος *(սարկավագուհի)-ի փոխարեն ունեն «սարկաւագաց»։*

*Հուն.-ի 47-րդ հոդվածը, որը վերաբերում է ենկրատիտների, սակկոֆորների և ապոտակտիտների կրկին կնքելուն, Կանոնագրքում չի պահվել։*

Հոդ. ԻԷ. էջ 350. (հուն. հոդ. 48, էջ 594): „Ἡ δὲ ἐγκαταλειφθεῖσα παρὰ τοῦ ἀνδρὸς, κατὰ τὴν ἐμὴν γνώμην, μένειν ὀφείλει. Εἰ γὰρ ὁ Κύριος εἶπεν, ὅτι ἐάν τις καταλίπῃ γυναῖκα ἐκτὸς λόγου πορνείας, ποιεῖ αὐτὴν μοιχᾶσθαι, ἐκ τοῦ μοιχαλίδα αὐτὴν ὀνομάσαι, ἀπέκλεισεν αὐτὴν τῆς πρὸς ἕτερον κοινωνίας. Πῶς γὰρ δύναται ὁ μὲν ἀνὴρ ὑπεύθυνος εἶναι, ὡς μοιχείας αἴτιος, ἡ δὲ γυνὴ ἀνέγκλητος εἶναι, ἡ μοιχαλὶς παρὰ Κυρίου διὰ τὴν πρὸς ἕτερον ἄνδρα κοινωνίαν προσαγορευθεῖσα".

*Հայերենը համառոտ և ընդհանուր ձևով է արտահայտում հուն.-ի միտքը, հայերենը փոխված ունի հուն.-ի* ἐκ τοῦ μοιχαλίδα αὐτὴν ὀνομάσαι *հատվածից մինչև վերջ (հմմտ. «իսկ կինն եթէ պահեսցէ զանձն իւր... զի ոչ միաւորեցաւ ընդ առն այլում»)։*

Հոդ. ԻԸ. էջ 350 (հուն. հոդ. 49, էջ 594): *Հայերենը համապատասխանում է հունարենին, միայն առաջինում, որպես բացատրություն, որը հուն.-ը չունի, ավելացված է «քանզի ոչ ի կամաց եղև, այլ ակամայ»։*

*Հուն.-ում գտնվող մի շարք հոդվածներ՝ 50-րդից մինչև 59-րդը, որոնք վերաբերում են երրորդ անգամ ամուսնության, կամա և ակամա սպանությունների և այլն, կանոնագրքում չեն պահվել, որովհետև այս հոդվածներում նշված հարցերն այս կամ այն չափով արծարծվել են նախորդ հոդվածներում, օրինակ՝ 50-րդ հոդվածը՝ 4-րդում, 52-րդը՝ 33-րդում, 54, 56, 57-րդը՝ 8-րդում։*

Հոդ. ԻԹ. էջ 350—351 (հուն. հոդ. 60, էջ 596): *Տարբեր է* τὸν χρόνον τοῦ ἐπὶ τῆς μοιχείας ἁμαρτήματος ἐν τῇ οἰκονομίᾳ τῆς καθ' ἑαυτὴν ζωῆς πληρώσει *հատվածը, որի փոխարեն հայերենն ունի «զամենայն... ապաշխարեսցեն»։*

*Կանոնագրքում չեն պահվել հուն.-ի 61-րդ և 63-րդ հոդվածները, որոնք վերաբերում են գողության և անասնապղծության։*

Հոդ. Լ. էջ 351 (հուն. հոդ, 64, էջ 597): „Ὁ ἐπίορκος ἐν δέκα ἔτεσιν ἀκοινώνητος ἔσται. δύσιν ἔτεσι προσκλαίων, τρισὶν ἀκροώμενος, τέσσαρσιν ὑποπίπτων, ἐνιαυτὸν συνεστὼς μόνον, καὶ τότε τῆς κοινωνίας ἀξιούμενος".

*Կանոնագրքում տարբեր են նշված պատժի չափերը։*

Հոդ. ԼԱ, էջ 351 (հուն. հոդ. 65, էջ 597): „Ὁ γοητείαν ἢ φαρμακείαν ἐξαγορεύων, τὸν τοῦ φονέως χρόνον ἐξομολογήσεται, οὕτως οἰκονομούμενος, ὡς ὁ ἐν ἐκείνῳ τῷ ἁμαρτήματι ἑαυτὸν ἐλέγξας". *Հայերենը բավական հեռացած է հունարենից։*

*Այս հոդվածը մի փոքր ուրիշ ձևով է շարադրված մի քանի այլ ձեռագրերում. «Եթե ոք ի կախարդաց կամ ի դեղատուաց եկեալ խոստովանեսցին, նոյնպէս որք սահմանեցին եւ ի վերայ նոցա, զի անձամբք իւրեանց խոստովանեցան» № 659, էջ 194բ—195ա, հմմտ. №№ 648, էջ 50ա, 649, էջ 69ա, 659, էջ 76բ, 651, էջ 58ա, 2964, էջ 99բ, 3562, էջ 328բ)։*

Հոդ. ԼԲ, էջ 351 (հուն. հոդ. 62, էջ 597): *Միակ տարբերությունն այն է, որ հայերենի «որ անցուցանիցէ» բառը դրված է հուն.* ἐπιδεικνύμενος *(որ ցուցանիցէ, այսինքն՝ ցույց տվողը) բառի փոխարեն։ Թեև ոչ մի ձեռագիր չի պահել «որ ցուցանիցէ» ձևը, սակայն այս հոդվածը մի այլ կանոնախմբում՝ դարձյալ վերագրված Բարսեղ Կեսարացուն երկու ձեռագրերում պահվել է հունարենին համապատասխան՝ «որ ցուցանիցէ» ձևը (տե՛ս Կանոնագիրք Հայոց, հտ. Բ, էջ 116, ձեռագիր)։ Վերջին ընթերցումը հնագույն և լավագույնն է, թէ՞ պատահական զուգադիպություն, դժվարանում ենք ասել։*

*Հուն.-ի 66-րդ հոդվածը, որը վերաբերում է գերեզման բացողներին և կողոպտողներին, կանոնագրքում չի պահվել։*

Հոդ. ԼԳ. էջ 352 (հուն. հոդ. 67, էջ 597): „Ἀδελφομιξία τὸν τοῦ φονέως χρόνον ἐξομολογήσεται".

*Հայերենն ազատ է շարադրված, թեև հուն.-ի միտքն արտահայտում է ճիշտ։*

Հոդ. ԼԴ, էջ 352 (հուն. հոդ. 68, էջ 597): „Ἡ τῆς ἀπειρημένης συγγενείας εἰς γάμον ἀνθρώπων σύστασις, εἰ φωραθείη, ὡς ἐν ἁμαρτήμασιν ἀνθρώπων γινομένη, τὰ τῶν μοιχῶν ἐπιτίμια δέξεται".

*Հունարենը հայերենում վերաշարադրված է համառոտ և տրված է հիմնական միտքը,*

Հոդ. ԼԵ, էջ 352 (հուն. հոդ. 69, էջ 597): *Հոդվածի երկրորդ մասն հայերենում համառոտ է (հմմտ. հուն.* ἐνιαυτὸν ἀργήσας*-ից մինչև վերջ. հայ. «դատարկ մի արգելեալ...» և այլն)։*

Հոդ. ԼԶ, էջ 352 (հուն. հոդ. 70, էջ 597): „Διάκονος ἐν χείλεσι μιανθείς, καὶ μέχρι τούτου ἡμαρτηκέναι ὁμολογήσας, τῆς λειτουργίας ἐπισχεθήσεται· τοῦ δὲ μετέχειν τῶν ἁγιασμάτων, μετὰ τῶν διακόνων, ἀξιωθήσεται· τὸ αὐτὸ δὲ καὶ πρεσβύτερος. Εἰ δέ τι πλέον τούτου φωραθείη τις ἡμαρτηκώς, ἐν οἵῳ ἂν ᾖ βαθμῷ, καθαιρεθήσεται".

*Հայերենը թարգմանություն չէ, այլ վերաշարադրված է և համառոտված, իսկ հուն.-ի τῆς ἱερωσύνης... τῆς ἁγιστείας հատվածը հայերենում չի պահվել։*

*Հուն.-ի 71-րդ հոդվածը, որը վերաբերում է 70-րդ հոդվածում նշված հանցանքի մեղսակիցներին և 72-րդ հոդվածը՝ ով անձնատուր է լինում կախարդության, կանոնագրքում չեն պահվել։*

Հոդ. ԼԷ, էջ 352–353 (հուն. հոդ. 73, էջ 598)։ *Հայերենը չունի հունարենի միայն վերջին πίστει τῆς πρὸς θεὸν φιλανθρωπίας մասը։*

*№ 659 ձեռագիրը այս հոդվածը չունի, իսկ մի քանի այլ ձեռագրերում բոլորովին ուրիշ բան է. «Ալ. Զմոնոզանաց զարանց ոչ յուսաք, բայց միայն այնոցիկ որ իւրեանց կամաւ եաուն զանձինս ի կարգ մոնոզութեան, որք ի ձեռն լռութեան համարեցան հրաժարել յաշխարհէ, սակայն և ի նոսա պարտ և արժան է յառաջագոյն եկեղցին ի կարգս հարցանել և քննել զայժմ նկեալսն և առնուլ ի նոցանէ խոստովանութիւն չլինել նոցա ժամանաւէր և ոչ յանզգնութեան վարս վարել։ Իսկ ապա թէ վրիպումն ինչ լինիցի ումեք անկանել յարատ պոռնկութեան, արժան է զայնպիսին խրատել և ի կարգ ուղղութեան ածել։ Զի այր որ ընդ կնոջ միաւորեալ բնակէ և ոչ շատացի իւրով ամուսնովն և անկանիցի ի պոռնկութիւն, զայնպիսին ընդ պոռնիկս համարեսցուք եւ առաւել յաճախեսցուք ի վերայ նորա զպատուհաս. քանզի եւ կանոնս այսպէս ունիմք ի վերայ յանցանաց աշխարհականաց սաստկապէս (ի վերայ... սաստկապէս* հատվածը № 651 ձեռագիրը չունի) *եւ ի վերայ չնացելոց նմա ինչ եւ առողջացին ի հաւատս ապաշխարութեան» №№ 648, էջ 50բ, 619, էջ 70ա, 650, էջ 77ա, 651, էջ 58բ, 2964, էջ 100աբ, 3562, էջ 329ա)։ Այս հոդվածն ուղղագրական աննշան տարբերություններով գանում ենք hlo ձեռագրերում։*

*Հունարենի 74-րդ հոդվածը, որը վերաբերում է ապաշխարության, կանոնագիրքը չունի։*

Հոդ. ԼԸ, էջ 353—354 (հուն. հոդ. 75, 76. 79, էջ 598—599)։ *Ընդհանուր առմամբ այստեղ ճիշտ են արտահայտված հուն.-ի 75, 76 և 79-րդ հոդվածների մտքերը, թեև կանոնագրքում կան առանձին հատվածների և բառերի բացթողումներ և ավելացումներ։*

*Հուն.-ի 77, 78, 80. 81-րդ և 82-րդ հոդվածները, որոնք վերաբերում են կնաթողներին, տարբեր ժամանակներում երկու քրոջ հետ ամուսնացողներին, բազմամուսնությամբ զբաղվողներին, հավատուրացներին և երդմնազանցներին, կանոնագրքում չեն պահվել։*

Հոդ. ԼԹ, էջ 354—355 (հուն. հոդ. 83, էջ 600)։ *Հայերենում չի պահվել* ἤ εἰσάγοντες τινας εἰς τοὺς ἑαυτῶν οἴκους ἐπὶ ἀνευρήσει φαρμακειῶν καὶ καθάρσει, ὑπὸ τὸν κανόνα πιπτέτωσαν τῆς ἑξαετίας *հատվածը, իսկ հունարենում բացակայում են «և զարձցին և խոստովան եղիցին» և «հեռացեալք յեկեղեցւոյ» հատվածները։*

*№ 659 ձեռագրում այս հոդվածը չի պահվել։*

Հոդ. Խ—Ծ, էջ 355—358. *Այս հոդվածները հունարենը չունի, սրան հակառակ հունարենն ունի բոլորովին այլ նյութեր՝ 84-րդ հոդվածից մինչև 86-րդ հոդվածը և 88-րդից մինչև 92-րդ հոդվածները (էջ 600—601, 605—612) մասամբ խրատական բնույթի և ուղղված տարբեր մարդկանց. օրինակ՝ 84-րդ և 85-րդ հոդվածները վերաբերում են նրանց, որոնք չեն մտածում իրենց հոգու փրկության մասին, 86-րդ հոդվածում հեղինակը բացատրում է, թե ինչու քրիստոնյաները ամեն կենդանու միս չեն ուտում, 88-րդ հոդվածում գրում է ոմն Գրիգորի քահանայի՝ կնոջից բաժանվելու մասին, 91-րդ և 92-րդ հոդվածներում մանրամասն խոսում է եկեղեցու կյանքում դեր խաղացած ավանդությունների մասին և այլն, և այլն։*

*№ 648 ձեռագրում չի պահվել Խ հոդվածից մինչև ԾԱ հոդվածը։ № 3562 ձեռագրում Խ և ԽԱ, իսկ № 651 ձեռագրում՝ ԽԳ և ԽԴ հոդվածները միացված են միմյանց։*

*ԽԴ հոդվածի առաջին տողը խախտված է, մեզ թվում է թերևս պետք է կարդալ այսպես՝ «Եթէ որ յեղբաւրէ ըստ կարի հրամայեալ՝ թշնամանէ կամ ընդդէմ կայ»։*

Հոդ. ԾԱ, էջ 358—362 (հուն. հոդ. 87, էջ 602—605)։ *Այս հոդվածը մի քանի ձեռագրերում ունի ավելի համառոտ վերնագիր. «Դարձեալ սրբոյն Բարսեղի, վասն ամենեին հեռանալոյ (№ 651՝ հեռանալու) յաղգաին կին առնելոյ» (№№ 650, էջ 79ա, 649, էջ 71բ, 631, էջ 60բ, 2964, էջ 103ա), իսկ № 3562 ձեռագրում չի պահվել ոչ վերնագիրը և ոչ էլ այս հոդվածը։ kmps ձեռագրերում այս հոդվածը չի գրված որպես ԾԱ հոդված այլ առանձին կանոնախումբ, այդ պատճառով էլ ցանկից առաջ ունի վերնագիր. «Գիր կանոնական վասն չամուսնանալոյ առ ընտանիս», սրանից հետո հոդվածի բովանդակության վերնագիր ցանկում. «Վասն չամուսնանալոյ առ ընտանիս». սրա և բուն հոդվածի միջև երրորդ վերնա-*

գիրը. «Գիր կանոնական սրբոյն Բարսղի առ քահանայ մեծ Թէոդորոս Ցանտիոքիա վասն ամենեւին հեռանալոյ և զազգային չառնել, Ա բանն։ Վերջինիս, արդեն, հաջորդում է բուն հոդվածը։

Ն. Ակինյանը 1949 թ. «Հանդէս Ամսօրեայ»-ում (№ № 4—12) գրում է, թե «Տակաւին չէ գտնուած կանոնացս ինքնակաց օրինակ մը, արտաքոյ կանոնագրոց» (էջ 86)։ Այս խոսքերը վերաբերում են Շահապիվանի կանոնախմբին։ Սակայն, այժմ, կարելի է ասել, որ կանոնագրքի ունեցածից դուրս ու անկախ գտնվել է Բարսեղ Կեսարացու այն նամակի հայերեն թարգմանության մի օրինակը, որը 373 թ. ուղղված էր Տարսոնի եպիսկոպոս Դիոդորին և որը հանդիսանում է Կանոնագրքում տեղ գտած Բարսեղ Կեսարացու կանոնախմբի ԾԱ հոդվածը։ Այս բնագիրը, ինչպես հիմա է պարզվում իր ինքնուրույն գոյությունը պահպանել է կանոնագրքից (8-րդ դարի սկիզբը) շատ առաջ. հետագայում Հովհաննես Օձնեցին խիստ համառոտելով օգտագործել է այն կանոնագիրքը կազմելիս։ Այդ բնագիրը գտնվում է մեր Մատենադարանի № 659 ձեռագրի 198ա—204 էջերում. ահա այդ նամակը.

«Բարսղի եպիսկոպոսի Դեոդորայ երիցու Անտիոքու.

Ոհաս առ մեզ դիր որ ովերագիր ունէր Դիոդորա, իսկ որ զկնի այսորիկն զայր այլում ումեմն վայելուչ էր բանն առաւել քան թէ Դիոդորայն, քանզի թուի ինձ ոմն ի զըժընդակ արուեստականացն ընդ քոյոյ զիմաւքդ մտեալ և այնպէս զինքն կամեցեալ հաւատոյ արժանի առնել լսաւղացն. որ իբրև հարցեալ եղև յումեմնէ, թէ պարտ և արժան իցէ նմա կին առնել զկնոջն իւրոյ իբրև վախճանեցաւ քոյրն. ոչ սոսկացաւ. զողացաւ ի հարցմանէն, այլ յոյժ խնդութեամբ ընկալաւ զլուրն և զդէջ ցանկութիւնն կարի քաջ մեծապէս ցանկութեամբ ընդ նմա գործեաց։ Արդ՝ եթե էր առ իս զդիրն, իսկ զնորա առաքէի քեզ և շատ և բաւական լինէիր անձին աւգնել և ճշմարտութեանն։ Եւ վասն զի որ եւտն և դարձեալ եհան իբրև գյաղթութեան իմն նշանակ զմէնջ գնայր կրէր, որբ իսկ գրան անդ արգելար իբրև զգրով ունել զքոյ իշխանութիւն. թողացուցանել զայն գործել։ Արդ՝ գրեցի բեզ թուղթ զի երկոքումք ձեռաւք եղիցի գալ մեզ յանաւրէն բանն յայն և մի մի ինչ թողուլ զաւրութիւն. զի մի՛ ունիցի բան որով կարիցէ փնաս գործել որ պատահին նմա։

Եւ նախ առաջին, որ բուն իսկ մեծ է ի վերայ այսպիսի իրաց սովորութիւն, որ ի բազում ժամանակաց հետէ այժմ առ մեզ կրի, զոր առաջի է գնել, որ զաւրինաց ունի զաւրութիւն, վասն ի սուրբ արանց զկրաւնս մեզ աւանդել. և զայս զոր ասեմս այսպիսի իմն եթե ոք ախտիւ պղծութեան յաղթեալ երբեք անկցի յերկուց բեոց յանկրաւնս՞ խառնակութիւն, ոչ ամուսնութիւն վարկանել զայս և ոչ բնաւ ամենեւին յեկեղեցւոյ միաբնութիւն արժան է ընդունել յառաջ մինչև (հետագայում ուղղված է՝ *մինչ չև—Վ.Հ.*) *քակեալ է զնոսա ի միմեանց։ Բայց սակայն, զի թէպէտ ոչ զոյր ասել շատ և բաւական էր չարութիւնս առ չարին պահպանութիւն, վասն զի որ զթուղթն գրեաց անարգ և խոտան ձեռնարկութեամբ, զայսքան աննհարին չար փորձեցաւ ի վարս զնացից մերոց ածել մուծանել, հարկ է և մեզ որչափ և խորհրդոց ածեալ է, աւգնականութիւն մատուցանել և ոչ տալ թոյլ. և սակայն առ յոյժ առաքինիսն՝ մեծ և ի վեր քան զբան էառ իւրաքանչիւր ումեք յորում ըմբռնեալն ոք է ի հաւատս, գրեալ ի Ղեւտականին՝ զքոյր կին ի վերայ քեռ իւրոյ մի՛ առջիր. հակառակ միմիեանց մերկանալ զամաւթ խայտառականաց նորա առ նովաւ, մինչ կենդանի է քոյր. և արդ յայտ յայտնանէ ասէ, զի թողացուցէ առնուլ իբրև վախճանին։ Եւ արդ առ այ՞ նախ առաջին զայն ասեմ, զի զոր ինչ միանգամ առ* աւրէնքն ասեմ այնոցիկ ասեն, որ ընդ աւրինաւքն են, ապա եթէ ոչ այս այսպէս է հարկ է և ընդ բլփաաուր եանն *և ընդ շաբաթուն ընդ խտրութեամբ* կերակրոցն անկանել *մեզ. քանզի ոչ* եթե զոցուք ինչ որ բստ կամաց հեշ՞տութեան մերոյ ընդ լծով ծառայութեան աւրինաց զանձինս արկանեմք *և եթէ երեեսցի ինձ* (հետագայում ուղղված է՝ *ինչ)* ծանր աւրինացն եղելոյ *յայնժամ* այսա առ Քրիստոսի ազատութիւնն փախուցեալ անկանիցիմք։ *Հարցեալ եղեաք եթե գրեալ է առնուլ զքոյր (զքոյր*—աջ լուսանցքում) *կին ի վերայ քեռ իւրոյ. սասացուք, որ մեզ զգոյշ և հաստատուն և ճշմարիտ է, թե ոչ գրեալ և իսկ յայնմանէ որ զկնի զայ բանիս, զոր ոչն է ճառեցեալ այնուջանալ հաւանեցուցանել, այնորիկ է որ աւրէնս գնէ, ոչ եթե որ զաւրինացն բանս ասէ, ապա եթե ոչ այսպէս է, զոյ հնար ամենայն ումեք որ կամի համարձակ յանդըղնել, և մինչդեռ կենդանի կայ քոյրն առնուլ զմիւս ևս քոյր կին. քանզի նոյն այս իմաստ և ի վերայ նորա յարմարեալ պատկանի, քանզի գրեալ է, ասէ, եթե ոչ առցես հակառակ նախանձաւոր միմիեանց, իսկ ապա թէ այդպէս է, որ ոչ հեռի հակառակութեամբն ոչ արգել առնուլ. բայց որ ջատագով նախատիս անհեռ և աննախանձ զոլ ասէ, զբաբս քեռց առ*

միմիեանս. ի բաց բարձելոյ այսուհետեւ պատճառին, վասն որոյ հրաժարեցոյցն զերկոցունցն առ միմեանս զընկերութիւնն։ Զի՞նչ է որ արգելուն առնուլ զքոյր կանայս, այլ ոչ զերեալ զայդ ասասցուք, այլ և ոչ զայն որ որոշեալ և մեկնեալ է, բայց միտք բանից որ զհետ զայ, նոյնպէս երկոցունց զաներկիւղ անխտրութիւն մատուցանէ, բայց թէ պարտ և արժան է, յաս սակաւ մի յետոյս օրէնսդրութեանն անդրէն զառնալ և թափէր ի բամբասանաց, քանզի երեւեալ ոչ զամենայն օրինաց մեղաց ի ներքս փակել օրէնսդրիս, այլ առանձինն հրաժարեցոյց զեգիպտացոցն, ուստի համբարձեալ զնա Իսրայէլ ի վերայ Քանանացւոցն, առ որ փոխեցաւ, քանզի ունի այսպէս բանս ըստ գնացից երկրին Եգիպտացւոց՝ մի՛ գնասջիք, յորում բնակեալն էիք դուք ի նմա, մի՛ առնիջիք. և ըստ գնացից երկրին Քանանացւոց յոր ես տարայց զձեզ անդր ոչ առնիջիք և աւրինաւք նոցա ոչ վարեսջիք, իսկ ապա ուրեմն ի գլուխ եղեալ, զի ազգ մեղանացս այսոցիկ, ոչ գտանէր յազգն յայնոսիկ յայնժամ, վասն որոյ և ոչ պահպանութեան պէտք և օրէնսդրին վասն մեղանացս այսոցիկ շատ և բաւական համարեալ անուսումնական սովորութեան բարուցն վարժեալ առ զարշ պղծութեան որովայնս. բայց զի առ զմեծն հրաժարեցուցեալ, զփոքրն լուռ եկեալ եկաց, զի թուէր բազում մարմնաւորացն երկուս քոյրս միանգամայն կանայս առնել՝ է՞ սաս առնել իբրացս աւրինակ հայրապետին, բայց մեզ զինչ պարտ և արժան է գործել զզեհալն ասել, թէ զլռեցեալն առաւել խուզել և հետազօտել։ Արդ՝ ասէն իսկ ոչ պարտ և արժան է ընդ միում բոզի խառնակել հաւր և որդւոյ, յաւրէնս յայսոսիկ ոչ է գրեալ, բայց ի մարգարէին ամբաստանութիւն հասեալ է, քանզի որդի ասէ և հայր <ասէ> առ մի բոզ մտանէին։ Բայց քանի և այլ ազգ պիղծ ախտից զորս զիւաց վարդապետանոց եգիտ, իսկ աստուածային գիրս լուռ կացին զպարկեշտն սուրբ գրոց զազիր և զարշ անուանակոչութեամբք ախտեղել ոչ կամեցեալ, այլ ընդհանուր ի մի վայր բովանդակիչ անուամբք զազտեղութիւնս նոցա բամբասեաց, որպէս ինքն առաքեալն Պաւղոս ասէ. «Պոռնկութիւն և ամենայն ազտեղութիւն մի՛ անուանեսցի ի ձեզ, որպէս և վայել է սրբոց»։ Ազտեղութեանն անուամբ զարուացն զանճառագործութիւնս և զիգացն ի մի ի վայր ածեալ փակեաց. իսկ ապա ուրեմն ոչ ամենայն իբրաւք լուռն կալ աներկիւղ մատուցանէ ցանկասիրացն։ Բայց ես և ոչ լուռ կալ ասեմ զմասն զայս և կարի քաջ ի բաց հրաժարեցուցեալ աւրէնսդրին, քանզի ոչն մտցես առ ամենայն ընտանիս մարմնոյ քո (քո ձայն լուսանցքում). մերկանալ զամաւթ խայտառակութեան իւրեանց և այս ի մի վայր ածեալ փակէ զազգ ընտանութեանն, քանզի զինչ այլ ինչ ընտանեգոյն լիցի ուրուք քան զիւր կին, զի ոչ ասեն երկու, այլ մի մարմին։ Իսկ ապա ուրեմն ի ձեռն կնոջն քոյրն առնն ընտանութիւն շրջեալ փոխեցաւ, զի որպէս զմայր կնոջն ոչ առնէ և ոչ զդուստր կնոջն, այսպէս և ոչ զքոյր կնոջն, վասն որոյ և ոչ զքոյր իւր և այս անդրէն զարձեալ նոյն աւրինակ և ոչ կնոջն արժան է ընդ ընտանիս առնն յամուսնութիւն գալ և քանզի հասարակ է ի վերայ երկոցունց ազգականութեանն իրաւունք։ Բայց ես ամենեցուն, որք յազագս ամուսնութեան խորհին բողոքեմ, թէ անցանէ ձև աշխարհիս այսորիկ. և ժամանակս կարճեալ է, զի որ ունիցին կանայս, իբրև ոչ ունիցին։ Ապա թէ ինձ բերեալ ընթեռնուցու, որք զայն որ աճիցէքն ասէ և բազմացարուք, ծաղր առնեմ զայնու, որ զժամանակս աւրէնսդրութեանն ոչ գիտաց որոշել՝ պոռնկութեան սփոփանք երկրորդ ամուսնութիւնն է, ոչ եթէ պաշար անյագ զիջութիւն, թէ ոչ կարեն արգելուլ զանձինս ի պոռնկութենէ ամուսնասցին, բայց նոքա աւազիք և ի բնութիւնն ոչ հային, որոց աչք ողւոցն բժոտեալ են ախտիւ անարգ պղծութեանն, զայն որ ի վաղընջուցն հետէ որոշեալ է և մեկնել զանուանս ըստ ազգ լինին։ Արդ յորմէ ազգակցութենէ զծնեալն անուանեցին զնոսա միմիեանց, թէ քեռորդիս անուանեսցին, քանզի երկոքին անուանք նոցա ի գէպ և ի ճահեն, վասն շփոթեալ խառնակութեանն. մի՛ առնէր այր զու զմաւրաքոյրն, մաւրու մատաղ մանկանցն և մի՛ զայն որ ի տեղ մաւր զմանկունսն զրգել և սնուցանել պարտի, զսա լինել անհաշտ և անհամբոյր քինու և նախանձու, քանզի միայն ազգ մաւրուաց և քան զմահ անգր ես վարէ զթշնամութիւնն և մանուանց զի որք այլ ազգ ինչ են, թշնամիք են միմեանց, ընդ մեռեալսն հաշտութիւն բերեն այնուհետև. իսկ մաւրու յետ մահուանն թշնամութեան սկիզբն առնեն։ Եւ զլուխ ճառելոցս եր՛ սուրբնաւք դիմեալ է որ յամուսնութիւն բացեալ կայ առաջի ամենայն աշխարհի. ապա ոչ ախտաւոր է ումեք փոյթ ամուսնութեանն. վասն այսորիկ ես տաւել արգելլի է, զի ուսցի ամենայն որ զանձն իւր սրբութեամբ ստանալ մի՛ յախտս. ցանկութեան շատ ասել յարձակել և յիրազ այլ չափ խղթոյն արգել զիս, բայց ազաւթիւք խնդրեմ, զի խրատս մեր հզաւրագոյն քան զախտն գտանիցի կամ ոչ զալ հասանել ի մեր վարս ցաւն այն, այլ յոր վայրս համարձակեալ զործեցաւ ի նմին տեղիս կալ մնալ։

*Այս բնագրում չեղատառ նշված են այն հատվածները, որոնք մտել են Կանոնագրքի Բարսեղ Կեսարացու կանոնախմբի ԾԱ հոդվածում։*

*Հայերենին հակառակ հունարենի վերնագրում նշված է.* τοῦ αὐτοῦ πρὸς Διόδωρον ἐπίσκοπον Ταρσοῦ περὶ τοῦ δύο ἀδελφὰς ἀγομένου εἰς γάμον.

*Այստեղ Դիոդորը նշվում է Տարսոնի եպիսկոպոս, իսկ հայերենում՝ Անտիոքի մեծ քահանա։ Կանոնագրքում եղած սկզբի մի քանի տողը վերաշարադրված է վերևում բերված բնագրի միջին մասից, մնացածը նույնությամբ բերված է հատվածաբար։ Հայերենը միանգամայն համապատասխանում է հունարենին։*

*Նորահայտ այս բնագրի նշանակությունը շատ մեծ է։ Այն նախ և առաջ օգնում է մեզ պարզելու, թե Հովհաննես Օձնեցին կանոնագիրքը կազմելիս ինչպես է օգտագործել իր ձեռքի տակ գտնված նյութերը։*

## ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Տե՛ս. էջ 363—367: *Սահակ Պարթևի կանոնախումբը Կանոնագրքում կազմված է կանոնական առանձին շրջաբերական նամակներից, որոնք ունեն հետևյալ հաջորդականություն և ենթավերնագրերը։*

*1. Ցաղագս քորեպիսկոպոսաց թէ որպէս պարտ է զկանոնական կարգն հաստատուն պահել յեկեղեցիս (բաժանված է 12 հոդվածի)։*

*2. Կարգ քահանայից առ ժողովրդականս եւ նոցին ժողովրդականաց հնազանդութիւն եւ կարգ ուղղութեան առ քահանայս (բաժանված է 23 հոդվածի)։*

*3. Թէ որպէս սահմանեցաւ կարգ ուխտի եւ որոշման վանաց (բաժանված է 9 հոդվածի)։*

*4. Թէ որպէս պարտ է եպիսկոպոսաց ունել զընտանիս սուրբ եկեղեցւոյ (բաժանված է 5 հոդվածի)։*

*5. Թէ որպէս պարտ է եպիսկոպոսաց պահել զգանձս եկեղեցւոյ կամ որոց որպէս մատակարարել (բաժանված է 6 հոդվածի)։*

*Ընդամենը 55 հոդված է հինգ ենթավերնագրերի տակ։ Երբեմն պատահում է, որ այդ ձեռագրերում այս ենթախմբերի հաջորդականությունը տարբեր է, օրինակ՝ № 659 ձեռագրում տարբեր է ոչ միայն վերևում նշված հաջորդականությունը, այլև ձեռագրի տարբեր տեղերում, միջանկյալ նյութերից հետո, իրարից հեռու, գտնվում են կանոնական այս թղթերի տարբեր ենթախմբերը։ Եթե հետևելու լինենք Կանոնագրքում այս ենթախմբերի հաջորդականությանը, ապա № 659 ձեռագրի և Սոփերքի Ի հատորում եղածը կունենան հետևյալ հերթականությունը.*

| *Կանոնագիրք* | *№ 659 ձեռ.* | *Սոփերք Ի հատ.* |
|---|---|---|
| 1 | (չունի) | *2 (էջ 80—87)* |
| 2 | *4 (էջ 255ա—261բ)* | *3 (էջ 88—99)* |
| 3 | *3 (էջ 227բ—233բ, ընդարձակ հատված չի պահվել, այնուհետև առանձին վերնագրի տակ գրված է Կանոնագրքի ԽԱ—ԽԴ հոդվածները՝ էջ 261բ—263բ)։* | *4 (էջ 100—116)* |
| 4 | *1 (էջ 216բ—221բ)* | *1 (էջ 71—79)* |
| 5 | *2 (էջ 221բ—227ա)* | *5 (էջ 117—126)* |
| (չունի) | (չունի) | *6 (Գիր աւանդութեան, էջ 127—134)* |

*Ինչպես որ այս ենթախմբերի հաջորդական կարգը փոփոխական է, № 659 ձեռագրում էլ ենթախմբերի վերնագրերը հաճախ նշված են տարբեր, որ ցույց կտանք իր տեղում, եղած նյութերն էլ բաժանված չեն հոդվածների (հմմտ. նաև № № 649, 650, 651, 2964 ձեռագրերը). որոշ հոդվածներ բառի բուն իմաստով հոդվածներ չեն, այլ ներածական, օրինակ՝ ԺԳ հոդվածը և այլն։ Այս բոլորը ցույց են տալիս, որ դրանք տարբեր առիթներով գրված կանոնական առանձին թղթեր են, որոնք բաժանվել են հոդվածների հետագայում, ամենայն հավականությամբ Կանոնագրքի մեջ մտնելու ժամանակ։ Կանոնագրքի բնագրի կազմման համար օգտագործված ձեռագրերից չորսի ցանկում հոդվածների վերնագրերը թեև, ըստ էության, չեն տարբերվում եղածից, սակայն բոլոր այդ վերնագրերը գրված են ոչ թե հոդվածների սկզբում, ինչպես Կանոնագրքում է, այլ Սահակ Պարթևի կանոնախմբի տար-*

րեր ենթախմբերի սկզբում. օրինակ՝ km ձեռագրերի ցանկում նշված են Ա—Լb հոդվածների վերնագրերը, իսկ հետո գրված են համապատասխան հոդվածները՝ Ա—Լb, ապա հաջորդ ենթախմբի հոդվածների ցանկը՝ ԼՁ—ԽԴ, սրան համապատասխան հոդվածները. նորից ցանկ՝ Խb—ԽԹ, և ապա սրան համապատասխան հոդվածներ. ի վերջո էլի ցանկ՝ Ծ—Ծb, և սրա համապատասխան հոդվածները։ ps ձեռագրերում ցանկը կազմված է ճիշտ այդ ձևով, միայն այն տարբերությամբ, որ այս երկու ձեռագրերում ցանկի վերնագրերի համարակալումը վերևում նշվածի նման չէ, այլ ամեն անգամ սկսվում է սկզբից. այսպես՝ Ա—Լb, Ա—Թ, Ա—b, Ա—Ձ։ Ի միջի այլոց k ձեռագրում հոդվածների ցանկում եղած վերնագրերը թեև կանոնագրքի ունեցածի համեմատությամբ երբեմն գրվում են ետ ու առաջ, բայց հոդվածների հերթականությունը նույնն է, ինչ կանոնագրքում։

Ձեռագրերի ցանկում նշված «ԽԹ. Վասն եպիսկոպոսաց և վարդապետաց» վերնագիրը հոդվածների շարքում համապատասխան հոդված չունի, սակայն ուշադիր քննությունը ցույց տվեց, որ ԽԸ հոդվածի երկրորդ մասը՝ «Հրեշտակական վարուց»-ից մինչև նույն հոդվածի վերջը, պետք է լինի առանձին հոդված՝ համապատասխան ցանկի ԽԹ վերնագրին։ Ըստ երևույթին՝ ընդօրինակությունների ժամանակ ինչ-ինչ պատճառով հոդվածի համարը՝ ԽԹ դուրս է ընկել և հոդվածը միացվել նախորդ՝ ԽԸ հոդվածին և այդ ձևով մնացել մինչև այժմ։ Նկատի ունենալով այս հանգամանքը, հոդվածների շարքում ԽԸ հոդվածից անջատեցինք վերջինիս կցված մասը և դրեցինք առանձին՝ ՇԿԸ—ԽԹ համարի տակ։ Ըստ այնմ էլ ԽԹ հոդվածին հաջորդող մի քանի հոդվածների համարները նույնպես փոխեցինք մեկով, որով հոդվածների համարակալումը համապատասխանեց ցանկում եղածին։ Իսկ «Վասն սրոյ պղաչեմ եւ վկայութիւն դնեմ» հատվածից, որը ձեռագրերում գրված է ՇՁ—Ծb համարի տակ, համարակալումը հանեցինք, որովհետև չէր համապատասխանում ցանկի վերնագրին. այն շատ ավելի նման է վերջաբանի, քան թե հոդվածի։ №№ 649, 650, 651, 2964 ձեռագրերը ցանկ չունեն։ n ձեռագրում ԾԱ հոդվածի վերնագիրը ցանկում այսպես է. «Վասն եպիսկոպոսի թէ որպէս պարտ է լինել տեսուչ եկեղեցւոյ»։ Այնուհետև ընդգծված բառերի վերևում ավելացրել են. «Պահել զի նշա»։

Հոդ. Ա, էջ 369։ Հոդվածի սկզբում հեղինակը գրում է. «Վերագոյն ճառեցաւ ի մէնջ»։ Այս առթիվ Մ. Աբեղյանը գրում է. «Իսկ վերևում բան չկա ասված» (տես Հայոց հին գրականության պատմություն, գիրք Ա, Երևան, 1944, էջ 116, ծանոթ. 1)։ «Ինչպես երևում է—ավելացնում է Մ. Աբեղյանը,—այս խմբագրությունը (իմա Կանոնագիրք Հայոց, Արսեն Ղլտճյան, Թիֆլիս, 1914—Վ. Հ.) թերի է» (Նույն տեղում)։ Նախորդ ծանոթագրության մեջ նշեցինք, որ Սահակ Պարթևի կանոնախումբը (ըստ Կանոնագրքի) բաղկացած է հինգ ենթախմբերից, որոնք տարբեր գրություններ են և տարբեր ժողովածուներում ունեն տարբեր հերթականություն։ Այստեղից էլ «Վերագոյն ճառեցաւ ի մէնջ»-ի բովանդակությունը պետք է փնտրել Սահակ Պարթևի կանոնախմբերի մյուս ենթախմբերում. օրինակ՝ Ն. Ակինյանը կարծում է, որ կանոնագրքի Սահակ Պարթևի առաջին ենթախմբին՝ «Ցաղագս քորեպիսկոպոսաց թէ որպէս պարտ է զկանոնական կարգն հաստատուն պահել յեկեղեցիս», նախորդել է կանոնագրքի չորրորդ՝ «Թէ որպէս պարտ է եպիսկոպոսաց ունել զընտանիս սրբոյ եկեղեցւոյ» ենթախումբը և վերջինիցս վերցնելով «տեսուչ... դի սրբոց եւ նախանձաւորաց ուրինաց և հմուտ եղելոց վարդապետութեան արժանաւոր է տալ զայնպիսի պատիւ, որք զժողովուրդն բավական լիցին խրատել...» (տե՛ս Հանդէս Ամսօրեայ, 1946, № 1—12, էջ 52) հատվածը, ենթադրում է, որ «Վերագոյն ճառեցւ ի մէնջ» ասելով հեղինակը նկատի ունի այս հատվածը։ Ն. Ակինյանը ճիշտ է այնքանով, որ կանոնագրքում եղած Սահակ Պարթևի չորրորդ ենթախումբը պետք է գրված լինի առաջին տեղում, ինչպես նշվում է Սոփերքում։ Մեր կարծիքով Սահակ Պարթևը «Վերագոյն ճառեցաւ ի մէնջ»-ով նկատի ունի չորրորդ ենթախմբի ոչ թե այս կամ այն առույթը, ինչպես փորձում է ցույց տալ Ն. Ակինյանը, այլ ամբողջ չորրորդ ենթախումբը, որովհետև այս ենթախմբի ԽԹ հոդվածում ևս հանդիպում ենք նման բնորոշման, ինչպես Ն. Ակինյանի նշածն է։ Ի դեպ Սահակ Պարթևի ենթախմբերի վերնագրերի ուշադիր քննությունը նույնպես բերում է տրամաբանական այդ եզրակացության։ Մի քանի ձեռագրերում «Վերագոյն ճառեցաւ ի մէնջ որոց» հատվածի «ի մէնջ որոց»-ի միջև գտնում ենք միջանկյալ նախադասություն. «Վերագոյն ճառեցաւ ի մէնջ եւ ընտրել կացուցանել յաթոռ քորեպիսկոպոսութեան զայնոսիկ որոց» այնուհետև ինչպես բնագրում է (№№ 649, էջ 86բ, 650, էջ 96ա, 651, էջ 74բ, 2964, էջ 123բ)։ № 659 ձեռագիրը չունի Ա—ԺԲ հոդվածները։

Հոդ. Ը, էջ 371: 371-րդ էջի 11-րդ տողի «Աստուծոյ զի» բառերի միջև մի քանի ձեռագրերում գտնում ենք ընդարձակ հատված. «զարդարուն ճշմարիտ հաւատովք եւ գործովք առաքինութեան ցանկալի ամենեցուն եւ պատուական որպէս եւ վայել է իսկ պաշտօնէից Աստուծոյ» (№ № 649, էջ 88ա, 650, էջ 97բ, 651, էջ 75բ, 2964, էջ 125ա)։

Ներածություն, էջ 375: № 659 ձեռագրում ԺԳ—ԼԵ հոդվածների ենթախումբը հաջորդում է Շահապիվանի ժողովի կանոնախմբին, հետևյալ ուշագրավ վերնագրով. «Կանոնական թուղթ վարդապետացն Հայոց, կարգ քահանայից առ ժողովրդականսն և նոցին առ ժողովրդականացն հնազանդութիւն և կարգ ուղղութեան առ քահանայսն» (էջ 255ա)։ Այս ենթախմբի վերնագիրը հենց այդպես է դրված նաև նույն ձեռագրի բովանդակած նյութերի ցանկում. «Յանգ վարդապետացն Հայոց» (էջ 1ր)։ Քանի որ № 659 ձեռագրում այս ենթախումբը հաջորդում է Շահապիվանի ժողովի կանոնախմբին մի կողմից և վերնագրում էլ նշված է «Կանոնական թուղթ վարդապետացն Հայոց» մյուս կողմից, կարող է ստեղծել սխալ այն տպավորությունը, որ Սահակ Պարթևի կանոնախմբի այս ենթախումբը մինչև այժմ թյուրիմացաբար է վերագրվել Սահակ Պարթևին և նրա իսկական հեղինակը Շահապիվանի ժողովի մասնակից վարդապետներն են եղել։ Սակայն այս երկու բնագրերի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ այն չէր կարող ժողովի մասնակիցների անունից գրվել, այլ անհատ մարդու անունից միայն։ Թե ինչպես է վերնագրում տեղ գտել նշված թյուրիմացությունը, դժվար է հաստատ բան ասել ,սակայն հաստատ կարելի է նշել, որ նման թյուրիմացությունը եզակի չէ, օրինակ՝ № №8459, 9311 ձեռագրերում Հարանցն հետեողաց կանոնախումբը վերնագրված է Կղեմեսի անվամբ. «Սահմանք եւ կանոնք, զոր եդին առաքեալքն ի ձեռն Կղեմայի» (էջ 3ա, էջ 2ա), կամ № № 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում Սահակ Ձորոփորեցու կանոնախումբը դրված է Մովսես Քերթողահոր անունով։

Մի քան այլ ձեռագրերում այս ենթախումբն ունի «Կանոն սրբոյն Սահակայ Հայոց կաթուղիկոսի ի լրումն հաւատոյ ամենայն աշխարհիս Հայոց մեծաց, գլուխք ԺԹ» (№ 2964, էջ 127ա, հմմտ. նաև № № 649, էջ 89բ, 650, էջ 99ա, 651, էջ 77ա)։

Հոդ. ԺԳ, էջ 375 376: Մի քանի ձեռագրերում հոդվածի սկիզբն այսպես է. «Եղբարց սիրելեաց երիցանց և վանականաց եւ ճամաւրէն ժողովրդականաց որպէս ամբաստանութիւն եղեւ» և այլն (№ 659, էջ 255ա, տես նաև № № 649, էջ 89բ, 650, էջ 99ա, 651,էջ 77ա, 2964, էջ 127ա)։ Ընդգծված հատվածը բացակայում է Կանոնագրքում։

Հոդ. ԺԴ, էջ 377: Այս հոդվածի վերջին մասը մի քանի ձեռագրերում ընդարձակ է, համեմված Աստվածաշնչից վերցրած մեջբերումներով, օրինակ՝ «քահանայից, լուայք ի մարգարէէն... անձանձրոյթ հոգ տանել» հատվածը ներքոհիշյալ ձեռագրերում այսպես է «Քահանայից որպէս լուաք ի մարգարէիցն, որպէս Եզեկիէլ գոչէ հոգով սրբով եւ ասէ, թէ ով հովիւ տարապարտ արօտ, որ թողի զխաշինս իմ յաշ բազուկ քո և յաջ ակն քո, այլ զի մի՛ լուիցուք զնորին պատուհասն, այլ օրինակ ճշմարիտ կացուցէք զանձինս ձեր ժողովրդականացդ ամենայն պարկեշտութեամբ աղօթից եւ պահոց, անձանձրոյթ հոգ տանել եւ ի մի առնուլ զասացեալսն ի Մաղաքիայէ, թէ շրթունք քահանային գիտութեան զգուշասցին, զի աւրէնք հարցանին ի բերանո քահանային, քանզի հրեշտակ է հզաւրի Աստուծոյ» (№ 649, էջ 90ա, բ, տես նաև № № 650, էջ 100ա, 651, էջ 78ա, բ, 2964, էջ 128ա)։

Հոդ. ԻԹ, էջ 380: Հոդվածի վերջին մասը № 659 ձեռագրում մի փոքր ընդարձակ է. «...Ի կարգէն իւրմէ ղաղարեալ լիցի ժողովրդեանն և միասին եկեղեցւոյ իշխան մի՛ լիցի եւ ընկերք իւր ընդ նմա հաղորդել մի՛ իշխեսցեն եւ ժողովրդականքն զայնպիսիսն» (էջ 258ա) ընդգծված մասը Կանոնագիրքը չունի։

Հոդ. ԻԳ, էջ 380: № 651 ձեռագիրն այս հոդվածը չունի։ Իսկ № 659 ձեռագրում չի պահվել սկզբի «տղէտ երէցեզբարբ ժողովուրդ մի՛ իշխեսցեն ունել» հատվածը։

Հոդ. ԻԴ, էջ 380—381: № № 651 և 2964 ձեռագրերում չի պահվել հոդվածի սկզբից մինչև «յառաջ մի՛ իշխեսցեն առնել» հատվածը։ ԻԴ հոդվածի մնացած մի փոքր մասը կցված է ԻԲ հոդվածին։

Հոդ. ԻԸ, էջ 382—383: № 2964 ձեռագիրը չունի հոդվածի սկզբի «ապա եթէ լսեմ» բառերը։

Հոդ. ԼԶ. էջ 386—391: Այս հոդվածին նախորդող վերնագրից մինչև Սահակի կանոնախմբի վերջը (421 էջ) չի պահվել № № 649, 650, 651, 2964 ձեռագրերում։ Սակայն հետաքրքիր է այս ենթախմբի № 659 ձեռագրում ունեցած վերնագիրը. «Սահմանադրութիւն կարգաց ընկալեալ ի նահատակէն տեառնէ Գրիգորէ թարգմանեցաւ ի ձեռն Եզնակայ, հրամանաւ երանելոյն Սահակայ եպիսկոպոսապետին Հայոց եւ նորին աթոռակցաց, թէ որպէս սահմանեցաւ կարգ ուխտի եւ որոշումն վանաց» (էջ 227բ., հմմտ. Արել Մխիթարյան, Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ, էջ 25—31)։ Հմմտ. ԽԴ հոդվածի և համապատասխան ծանոթագրու-

թյան հետ։ Աբել Մխիթարյանը այս ենթախումբը նշում է Գրիգոր Լուսավորչի անունով։

Այս հոդվածում կան տեղեր, որոնք № 659 ձեռագրում համառոտ են, տեղեր էլ կան, որ ընդհարձակ են. այդ բանը ցույց կտանք համապատասխան հատվածները բերելով, օրինակ. 1. 388-րդ էջի 5—6 տողերի «եւ գնա իսկապէս... ի Քրիստոս հաւատացելոց» հատվածը № 659 ձեռագրում այսպես է. «և զհաւատն դնա իսկապէս խոստովանիմք ասել մայր եկեղեցւոյ ի Քրիստոս հաւատացելոց» (էջ 288բ)։ 2. 390-րդ էջի 8-րդ տողից «Տեսե՞ր զճշմարիտ հիմն եկեղեցւոյ» հատվածից մինչև 391-րդ էջի 1-ին տողի «եկեղեցի» բառը № 659 ձեռագրում գրված է այսպես. «վասն որոյ փրկիչն տէր ասաց խնդալ զառաքեալս, թէ խնդացէք զի անուանք ձեր գրեալ են ի դպրութիւն կենաց տեսեր զճշմարիտ հիմն եկեղեցւոյ» (էջ 230ա)։

Հոդ. ԼԹ, էջ 395—390: № 659 ձեռագրում չի պահվել այս հոդվածի «այլ միենոյն..... և ոմն փոքր» հատվածը (էջ 233ա)։

Հոդ. Խ, էջ 397—399: № 659 ձեռագրում պահվել է այս հոդվածի սկզբի մի փոքր մասը, իսկ «Տան սրբոյն Յովհաննու Մկրտչի եւ վկայի» հատվածից մինչև հոդվածի վերջը՝ «յայնր մտեալ հիւրքն և ապրհնեսցեն» հատվածը չի պահվել № 659 ձեռագրում, սրան հաջորդում է Շահապիվանի ժողովի կանոնախումբը, վերջինիս էլ՝ Սահակ Պարթևի կանոնախմբի Բ ենթախումբը։

Հոդ. ԽԱ, էջ 399—400: № 659 ձեռագրում ԽԱ—ԽԴ հոդվածները գրված են առանձին վերնագրի տակ. «Կանոն Լուսաւորչին» (էջ 261բ), որոնք այստեղ նշված են որպես մեկ կանոնական թուղթ առանց հոդվածների բաժանելու։ Նույնը տես C ձեռագրում, (էջ 114ա)։ Այստեղ սկզբում այս կանոնախումբը գրված է այնպես, ինչպես A-ում, բայց հետո ԽԱ հոդվածի սկրզբից, տողամեջ, կարմիր թանաքով գրիչն ավելացրել է՝ «Կանոն Լուսաւորչին», նույն թանաքով և ձեռագրով էջի ներքևի լուսանցքում ավելացնելով՝ «յօրինակէ դրեցի»։ Թերևս սա նշանակում է այլ օրինակից է գրել, որի մեջ այս մի քանի հոդվածը վերնագրված է Գրիգոր Լուսավորչի անունով, ինչպես և № 659 ձեռագրում։ Աբել Մխիթարյանի հրատարակության բնագրում ևս այս ենթախումբը բերված է «Կանոնք Ս. Գրիգորի Պարթևի» (էջ 31—32) անունով և դրված է վերջինիս կանոնախմբերի շարքում. դա մեզ ենթադրել է տալիս, որ հրատարակիչը հավանաբար օգտվել է մեր Մատենադարանի № 659 կամ C ձեռագրերից։

Հոդ. ԽԳ, էջ 400—402: Բնագրի «ի վեր կիւրակէըն ամենայն... և Վարդավառն» հատվածը № 659 ձեռագրում շարադրված է այսպես. «Եւ ի վեր կիրակէ այն ամենայն յիսներրէկին և տաւն սրբոյ Պենդակոստէին յորում հոգին սուրբ առաքելոցն շնորհեաց լեզուս և տաւն սրբոյ Աստուածածնին և միշտ կուսին և Վարդեվարն» (էջ 262ա) ձեռվ։

Հոդ. ԽԴ, էջ 402—403: Սրա սկզբի մասը հիշատակարանն է և կարող է հնության կնիք ունենալ, բայց հաջորդ մեծ մասը՝ «Արդ՝ եթէ ոք» (էջ 402 տող 8) հատվածից մինչև հոդվածի վերջը ավելացվել է ուրիշի, հավանաբար Հով. Օձնեցու կողմից։ Հենց այդ մասն է, որ կարող է այս կամ այն չափով իրավաբանական հոդվածի (որոշում է հանցանքը և պատիժը) տպավորություն թողնել։ Նկատի ունենալով, որ Սահակ Պարթևի կանոնախմբի Գ ենթախումբը № 659 ձեռագրում ունի երկու վերնագիր (տես ԼՁ և ԽԱ հոդվածների ծանոթագրությունը), իսկ այդ ենթախումբն էլ ավարտվում է թարգմանության մասին եղած վերոհիշյալ հիշատակարանով (տես ԽԴ հոդվածը), կարող ենք ենթադրել, որ միայն այս ենթախումբը՝ ԼՁ—ԽԴ հոդվածները, սակայն ոչ այս ծավալով, այլ համառոտ, եղել է հունարեն, Գրիգոր Լուսավորչի անվամբ, որը հետագայում՝ Ե դարում թարգմանվել է հայերենի։ Թարգմանելուց հետո Սահակ Պարթևը լրացրել է և ճոխացրել դրանք և որպես կանոնական շրջաբերական ուղարկել տեղերը։ Ի դեպ Սահակ Պարթևի կանոնների վավերականությունը հայագիտության մեջ կասկածի է ենթարկվել (տես Հ. Գաթրճեան, Սրբազան պատարագամատոյցք Հայոց, Վիեննա, 1897, էջ 141, ծանոթ. 103, էջ 231, ծանոթ. 38, էջ 323, 733. Ն. Ակինեան, Ս. Սահակի վերագրուած կանոնները, Հանդէս Ամսօրեայ, 1946, № 1—12, էջ 48—70, 1947, № 1, էջ 1—25)։

Հոդ. ԽԵ, էջ 403: Այս հոդվածը № 659 ձեռագրում սկսվում է այսպես. «Այցելեու հասարակաց հայր վիճակեալս եպիսկոպոսն» (էջ 216բ)։ Գ ձեռագրում «Թէ որպէս պարտ է եպիսկոպոսաց ունել զընտանիս սրբոյ եկեղեցւոյ» ենթախումբը սխալմամբ կրկնված է (էջ 114բ—115բ), թեև թերի, համեմատության համար օգտագործեցինք 115բ—117բ էջերում գրվածը միայն։ Հմմտ. Ե, էջ 191ա—195ա։

Հոդ. ԽԹ, էջ 409—410: № 659 ձեռագրում դուրս է ընկել սույն հոդվածի «պարտի բերել յինքեան եպիսկոպոսն եւ ամենայն վարդապետք, ուր ոչ ազգականութիւն եւ ոչ ակնառութիւն է եւ» հատվածը, (էջ 220ա)։

(Հոդ. ԾԵ) էջ 420—421։ № 659 ձեռագրում չի պահվել սույն հոդվածի «աղքատք խնամեալք, տնանկք յապահովացեալք» հատվածը (էջ 227ա)։

## ՇԱՀԱՊԻՎԱՆԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Ցանկ, էջ 422—423: № 659 ձեռագրում, հակառակ Կանոնագրքում եղածի, սկզբում գրված է առաջաբանը, ապա՝ ցանկը. ահա այն.

*«Ցանկ կանոնաց վարդապետաց Հայոց.*

*ա. Եպիսկոպոսաց։*
*բ. Երիցանց։*
*գ. Գոռնըկաց։*
*դ. Կնաթողաց։*
*ե. Ամուսնաց։*
*զ. Աղջականաց, որ յաւնէ ելանիցեն։*
*է. Բռնութեամբ առեանկաց։*
*ը. Կախարդաց։*
*թ. Հարցկաց և դիւթից։*
*ժ. [Դ]իւթից։*
*ժա. Կծողաց մեռելոյ։*
*ժբ. Որդի որ զկին հաւր ունիցի։*
*ժգ. Ազգական կնոջ։*
*ժդ. Եպիսկոպոսաց և երիցանց։*
*ժե. Պաշտաւնէից և ուխտի մանկանց։*
*ժզ. Եպիսկոպոսի և վանաց երիցու։*
*ժէ. Նշխարացն մարտիրոսաց։*
*ժը. Վարդապետի և աշակերտի։*
*ժթ. Մծղնէից։*
*ի. Մծղնէից» (էջ 236բ)։*

*Այս ցանկը կազմված է Կանոնագրքում եղածից անկախ, ձեռագրի գրչի կողմից։ № № 648 և 3562 ձեռագրերում Շահապիվանի ժողովի կանոնախումբը ընդօրինակել են երկու անգամ՝ № 648, 28ա—31ա (կնշենք որպես առաջին ընդօրինակություն) և 132ա—193ա (կնշենք որպես երկրորդ ընդօրինակություն) էջերում, № 3562, 301բ—305ա (կնշենք որպես առաջին ընդօրինակություն) և 440բ—451ա (կնշենք որպես երկրորդ ընդօրինակություն) էջերում։ Վերջին չորս բնագրերից միայն № 3562 ձեռագրի երկրորդ ընդօրինակության մեջ է պահվել ցանկը, մնացածները չունեն այն։ Այս վերջինս նույնն է ինչ որ Կանոնագրքում եղածը, միայն ցանկի երեք հոդվածների վերնագրերում նկատում ենք աննշան շեղում. «ժբ. Վասն որ ընդ մաւրուն շնայ։ ժդ. Վասն որ տանուտէկին ունի ի տան։ ի. Վասն եպիսկոպոսի որ դիտէ զայն»։*

*Բացի սրանից, ցանկում բոլոր հոդվածների վերնագրերի սկզբում հանդիպում ենք «Վասն» բառին, օրինակ՝ գ. Վասն շնացողաց, և այլն։*

Առաջաբան, էջ 424—429: *Կանոնագրքում, Շահապիվանի ժողովի կանոնախմբի ցանկից հետո, կա միջանկյալ մի հատված. «Եղեալ միաբանութեամբ ազգ Հայոց յեւթներորդ ամի վախճանելոյն սրբոյն Սահակայ կարգեցան կանոնքս այսոքիկ»։ Արդարացի կերպով այդ հատվածը վաղուց արդեն վերագրել են Հովհ. Օձնեցու գրչին։ Այդ հատվածին անմիջապես հաջորդում է ընդարձակ վերնագիր։ Վերջինս № № 648 և 3562 ձեռագրերի առաջին ընդօրինակության մեջ տարբեր է. «Կանոնք զոր եդին հայրապետք Հայոց ի Շահապիվանի ի բանակեալ թագաւորաց Հայոց» (էջ 28ա, էջ 301բ)։ № 659 ձեռագրում առաջաբանին նախորդում է «Նախադրութիւն» վերնագիրը, իսկ մնացած ձեռագրերի համապատասխան վերնագրերը նույնն են, ինչ որ Կանոնագրքինը։*

*Առաջաբանում նշվում է, թե ե՛րբ, ի՛նչ նկատառումներով է գումարվել Շահապիվանի ժողովը։ Որոշ ուսումնասիրողներ այդ առաջաբանի զգալի մասը համարում են ուշ ժամանակներում կատարված ընդմիջարկություն (տե՛ս Ա. Ղլտճյան, Կանոնդիրք Հայոց, էջ 58. հմմտ. Ն. Ակինյան, Հանդէս Ամսօրեայ, 1949, № 4—12, էջ 98)։*

*№ 659 ձեռագրում առաջաբանն ունի բավականին ընդարձակ հատված, որ չունի Կանոնգիրքը. և որովհետև դա չափազանց կարևոր է, ուստի պատկերացումն ամբողջական դարձնելու համար այդ առաջաբանը կբերենք լրիվ։*

«Նախադրութիւն. Պարտ և պատշաճ է նաւավարին հոգալ զիրս նաւին և զշաւիղս ծովուն նկատել և ըստ հողմոյն աջողութեան գնալով ի վերայ մկանաց ծովուն. նոյնպէս և ղաւրավարին յամենայն ժամ զզաւրսն տեսանելով և ի հանգիսի անցանել զայրընտիր, զձիընտիր, ըզէն զանձամբ ե ապա սպառաղէն դերիվարաւն ակն ունել ճակատուն յաղթող գտանել և առնուլ զպսակն ի թագաւորէն. ապա առաւելապէս արժան է վարդապետաց եկեղեցւոյ հովուաց և առաջնորդաց, արդարութեամբ և ստոյգ պտուիրանին Աստուծոյ կենդանւոյ յամենայն ժամ յաւրէնսն տեառն խորհել ի տուէ և ի գիշերի և զմանկունս եկեղեցւոյ նորափետուր զարդարել ի տէր։

Յետ փոխելոյն յերկրէս վարդապետացն հարցն արդարոց ե ճշմարիտ աւրէնսդիր առաջնորդացն մանաւանդ սրբոյ քահանային Սահակայ Հայոց կաթողիկոսի և հոգիկից, հոգէկիր ճշմարիտ վարդապետին Մեսրովբայ, որ լուսաւորեաց ղերկիր Հայոց, ի փոխել նոցա յերկրէն (ուրիշներ ուղղել են յերկրէս—Վ. Հ.) լինէր եղծումն և բայքայումն կարգաց և աւրինաց սրբոյ եկեղեցւոյ, որպէս տեսանէր յառաջագոյն ի տեսլեան քահանայապետն Սահակ և կամ ևս յառաջ մեծն Գրիգորիոս։ Եւ բազմանային, որք յաճախէին ի գործս պղծութեան և յետս ընդդէմ դնացից ի չամարել սիրոյն բազմանայր անաւրէնութիւնն. և ոչ ոք էր, որ քաղէր զորոմն և կտրէր զդաղձն վնասակար, քանզի արմատացեալ էր սեղն և տարածէր աւր ըստ աւրէ և լինէր յաճախումն մծղնէից, ինահանէից, պոռնկաց, անձնակամաց, գողոց, և ամենայն չարագործաց յաշխարհին Հայոց ի մէջ տանն Թորգոմայ։ Եւ լինէր սուգ և տրտմութիւն, որ էին ի ժամանակին վարդապետք, եպիսկոպոսք, երիցունք և. ոյք ունէին զուխտ սուրբ պաշտամանեայք Քրիստոսի և մանկունք եկեղեցւոյ սրբոյ, այլև յուխտէ քահանայիցն ոչ գնային ըստ սրբութեան ճանապարհին և մանաւանդ զի ոչ էր ի ժամանակին յայնմիկ իշխանութիւն ի ձեռն նախանձայոյզ ազգին Մամիկոնէից. զի հնազանդեալ էին համարձակելոց Պարսկային թագաւորութեանն։ Զի թէպէտ և հեծէին և մռնչէին ի նմանութիւն կորեանց առիւծոյ Վարդանն Մամիկոնեան ազգաւ իւրով հանդերձ եղբարբք, այլ կային իբրև ի զառագզի արգելեալք և ակն ունէին վերին աւգնականութեանն։ Քանզի չարահնար ազգն Պարսից ի կասկածանս կային և յերկիւղի և տային զիշխանութիւնն ի ձեռս նոցա։ Ապա աւր աւուր բղխէ զբան և գիշեր գիշերի ցուցանէ զգործսն արդարութեան, բան առ բան հասանէր մարդ ի մարդոյ, հնչիւն լինէր յիւրաքանչիւր լսելիս։ Եւ գային ժողովէին ի հրամանէ միաբանութեան յեդեալ կէտն ի Շահապիվանի բանակետղ թագաւորացն Հայոց ի ժամս նորաբեր տաւնին. և լինէր այս ի ԻԶ ամի թագաւորութեանն Յազկերտի Պարսից արքայի, և Վասակայ Սիւնոյ մարզպանին Հայոց, և Վահանայ Ամատունոյ հազարապետի, և Վրուայ Խոռխոռունւոյ մաղխ[ա]ղի։ Եւ գային ժողովէին եպիսկոպոսք Ի և երիցունք բազումք, սարկաւագք և նախանձայոյզ պաշտաւնեայք Քրիստոսի և համաւրէն ուխտք եկեղեցւոյ, իշխանք, գաւառապետք, գաւառակալք, պետք, բռնաւորք, զաւրագլուխ հարիւրաւորք, ազատք, կուսակալք կողմանց կողմանց մեծ աշխարհին Հայոց, նախարարք ամենայն առաջի Վասակայ մարզպանի և Վահանայ հազարապետի և Վրուայ մաղխ[ա]զի և առաջի գլխաւոր եպիսկոպոսաց Ղազա, Տաճատա, Արտակա, Գադա, Եփրեմի և այլոց բազմաց երիցանց գլխաւորաց՝ Յովսեբայ (ուղղված ուրիշների կողմից Յովսեփայ—Վ. Հ.), Յովհաննայ, Մեղտայ, Երեմիայի, Ասպուրակայ, Դանիէլի, Ղեւոնդի սրբոյ, Եղիշէի դրան երիցու և այլոց սրբասէր քահանայից, որք էին նախանձախնդիր աւրինացն առաջի աւագ նախարարացն՝ քաջին և կորովոյն Վարդանայ Մամկոնենւոյ և Արշա[ւ]րայ (գրիչն ուղղել է Արշուրայ—Վ. Հ.) Կամսարականի և Մանաճիհ[ր]ի Ռշտունւոյ սպարապետին Հայոց, Զրկա Դիմաքսենի և այլոց նախարարաց։ Որք միաբանեալք էին և հաւանեալք արդար աւրինաց և քրիստոսական պաշտամանն և միաբան բարբառէին այսպէս, եթէ «Զեղեալ զկարգն սրբոյն Գրիգորի և զՆերսէսի և զՍահակայ և զՄաշգոցի դուք այդրէն հաստատեցէք և այլ ևս լաւ որպէս ձեր կամք են և մեք ախորժելով յանձին ունիմք, զի կարգք եկեղեցւոյ թուլացան և մարդիկ յանաւրէնութիւն դարձան։ Արդ՝ որ աւրէնք Աստուծոյ հաճոյ են և եկեղեցւոյ, դուք զայն կարգեցէք և մեք հնազանդիմք. և եթէ ոք հաստատուն ոչ պահէ զկարգս աւրինացն եպիսկոպոս կամ երէց կամ ազատ կամ շինական՝ պատուհասեսցի և տուգանս տացէ»։ Եւ զայս ասացեալ քահանայապետիցն եթէ «Առաքելականն և Նիկիականն հաստատեալ կացցէ, որպէս և էն իսկ և մեք հնազանդ եմք, բայց որ ինչ պիտոյ է ի լրութիւնս ի նոյն կանոնս և մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ հաստատեսցի»։ Ապա կարգեցին և եդին այսպէս» (Ն° 659, էջ 233բ—236ա. հմմտ. Աբէլ Մխիթարեանց, Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ, էջ 57—60)։

Առաջաբանի մի այլ խմբագրության գտնում ենք մի քանի ուրիշ ձեռագրերում ևս. «Յետ փոխելոյ յերկրէս վարդապետացն Հայոց հարցն առաջնոց արդարոց եւ ճշմարիտ առաջնորդաց և մանաւանդ սրբոյ քահանայապետին երանելոյն Իսահակայ Հայոց կաթողիկոսի եւ հոգէլից, հոգէկիր, ճշմարտասէր վարդապետին Մեսրովպայ, որ լուսաւորեաց երկիրս Հայոց վարդապետու-

*Թեամբ իւրով. ի փոխելն նոցա յերկրէս առ արարիչն եւ տէր, լինէր եղծումն եւ քակտումն եւ քայքայումն կարգաց եւ օրինաց սրբոյ եկեղեցւոյ։ Ապա օր աւուր բխէր բան առ բան եւ գիշերոյ առ գիշեր ցուցանէր զգործս արդարութեան բան առ բան հասանէր մարդ ի մարդոյ հնչումն լինէր յիւրաքանչիւր լսելիս։ Եւ գային հասանէին ժողովեալք ի հրամանէ միաբանութեանցն յեղեալ կլտն ի Շահապիվանն բանակետղ Թագաւորացն Հայոց ի ժամամայ* (sic) *նորաբեր տօնին։ Եւ գային ժողովէին եպիսկոպոսք խ և երիցունք բազումք եւ սարկաւագունք եւ նախանձաւորք պաշտօնեայք Քրիստոսի եւ համօրէն ուխտ սրբոյ եկեղեցւոյ եւ իշխանք՝ ամենայն գաւառատեարք, պետք եւ բռնաւորք եւ ազատք կողմանց կողմանց աշխարհիս Հայոց առաջի գլխաւոր եպիսկոպոսաց՝ Ղօղայ, Տաճատու, Արտակայ, Գադայ, Եփրեմայ եւ այլոց բազմաց եւ իրիցանց գլխաւորաց՝ Յովսեփու, Յոհանայ, Մէղիտայ, Երեմիայի, Ասպուրակեայ, Դանիելի, տեառն Ղեւոնդի, տեառն Եղիշայի և այլոց բազմաց սրբասէր քահանայից, որք էին նախանձախնդիր օրինացն սրբութեան եկեղեցւոյ Աստուծոյ։ Ժողովեալ առաջի աւագ նախարարացն քաջին եւ կրօնաւորին սրբոյն Վարդանայ Մամգոնենի եւ ամենայն իշխանացն Հայոց եւ ազատաց բազմաց եւ միայնխորհուրդ միաբան բարբառէին այսպէս, եթէ «Զեղեալ կարգսն սրբոյն Գրիգորի եւ զՆերսեսի եւ զՍահակայ եւ զՄաշտոցի դուք անդրէն հաստատեցէք, եւ այլ եւս զլաւն որպէս եւ ձեռ կամք են. եւ մեք ախորժիւք եւ յօժարութեամբ յանձին ունիմք կատարել, քանզի կարգք եկեղեցւոյ թուլացան եւ մարդիկք յանօրէնութիւն հատան եւ թողին զպատուիրանս տեառն։ Արդ օրէնք որ Աստուծոյ հաճոյ են եւ եկեղեցւոյ նորա իշխանութիւն, դուք զայն կարգեցէք եւ մեք հնազանդիմք եւ հաստատուն պահեմք. եթէ ոք հաստատուն ոչ պահիցէ զկարգ օրէնացն կամ եպիսկոպոս կամ էրէց կամ սարկաւագ կամ ազատ կամ շինական՝ պատուհաս կրեսցէ եւ տուգանս տացցէ»։ Եւ զայս ասացեալ միաբան քահանայապետիցն եւ քահանայիցն եթէ «Առաքելական կանոնն եւ Նիկիականն հաստատուն կացցէ եւ մեք հնազանդեալ եմք, բայց որ ինչ պիտոյ է ի Նոսա ի լրութիւն եւ մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ եւ կողմանցս արեւելեացս՝ հաստատեսցուք»։ Ապայ կարգեցին եւ եդին այսպէս» (№ 2964, էջ 132բ—134ա. հմմտ. նաև № № 649, էջ 94աբ, 650, էջ 103բ—104բ, 651, էջ 82բ—83ա։ Հմմտ. Ալիշան, Հայապատում, էջ 159—160. Այրարատ, էջ 519)։*

*Առաջաբանի մի երրորդ խմբագրություն պահվել է № № 648 և 3562 ձեռագրերի առաջին ընդօրինակության բնագրում. «Ի Ժ և Զ ամի Թագաւորութեան Յազկերտի Պարսից արքայի, յաւուրս սրբոյն Վարդանա ժողովեցան Խ եպիսկոպոսք յաղագս եղծանելոյ ոմանց զկարգս եկեղեցւոյ ըստ տեսլեան սրբոյն Գրիգորի եւ սրբոյն Սահակայ. եւ սահմանեցին գլուխս Ի» (№ № 648, էջ 28ա, բ, 3562, էջ 301բ)։*

*Առաջին և երկրորդ խմբագրությունների մեջ հիշված մի շարք անձնանունները, ինչպես ճիշտ նկատել է Ն. Ակինյանը (Հանդէս Ամսօրեայ, 1949, № 4—12, էջ 90—91), հետագայի մուծում են և կապ չունեն առաջաբանի սկզբնական բնագրի հետ։ Ներսես Ակինյանի կարծիքով առաջաբանը սկզբնապես պետք է լիներ այսպես. «Պարտ եւ պատշաճ է նաւավարին հոգալ զարուեստագործութենէ նաւին եւ վչաւիղս ծովուն նկատել եւ ըստ հողմոյն աջողութեան գնալ ի վերայ մկանանց ծովուն, նոյնպէս եւ զաւրավարին զզաւրսն ի հանդիսի անցուցանել զայընտիր* (sic) *եւ զձիընտիր, զէն զարամբ եւ ասպարազէն զերիվարաւ եւ ակն ունել ի ճակատուն յաղթող գտանել եւ առնուլ պսակ եւ պատիւ ի թագաւորէն։ Ապա առաւել արժան եւ իրաւ է վարդապետաց սրբոյ եկեղեցւոյ աւրինաց արդարութեան <պատկառ կալ> և զմանկունս եկեղեցւոյ նորափետուր զարդարել ի Տէր։*

*Յետ փոխելոյ յերկրէ վարդապետացն հարցն արդարոց՝ Սահակայ... եւ Մաշտոցի... գային ժողովէին ի հրամանէ միաբանելոցն յեղեալ կէտն ի Շահապիվանս, ի բանակետղն Թագաւորացն Հայոց, ի ժամանակի ամանորաբեր տաւնին։ Եւ լինէր այս ի Զ ամի Թագաւորութեան Յազկերտի Պարսից արքայի եւ Վասակայ Սիւնւոյ մարզպանութեան Հայոց եւ Վահանայ Ամատունւոյ հազարապետութեան եւ Վրուայ Խորխոռունւոյ մաղխազութեան։ Եւ ժողովէին համօրէն ուխտ սրբոյ եկեղեցւոյ եւ իշխանք ամենայն..., կողմանց կողմանց, աւագք նախարարք աշխարհիս Հայոց... <Աւագ նախարարք> միաբան ասէին այսպէս... Աւրէնք, որ Աստուծոյ հաճոյ են եւ եկեղեցւոյ նորա ի շինութիւն, դուք զայն կարգեցէք եւ մեք հնազանդիմք եւ հաստատուն պահեմք. եւ եթէ ոք հաստատուն ոչ պահեսցէ զկարգ աւրինացն, աղատ կամ շինական, պատուհաս կրեսցէ եւ տուգանս տացէ։*

*Եւ զայս ասացեալ միաբան քահանայապետիցն, եթէ Առաքելական եւ Նիկիական կանոնք հաստատուն կացցեն եւ մեք հնազանդեալ եմք. բայց որ ինչ պիտոյ է ի լրութիւն ի նոյն կանոնս, մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ եւ կողմանցս արեւելեայց, <որպէս եւ ձեր կամք են. եւ մեք կամօք եւ ախորժելով յանձն առնումք։ ...Եւ եթէ ոք հաստատուն ոչ պահեսցէ զկարգս*

օրինաց՝ կամ եպիսկոպոս կամ երէց պատուհաս կրեսցէ եւ տուգանս տացէ>։ Ապա կարգեցին եւ եդին այսպէս» (Հանդէս Ամսօրեայ, 1949 թ., Հ՝ 4—12, էջ 102—103)։

№ 659 ձեռագրում մինչև Ա հոդվածը գտնում ենք վերնագիր. «Սահմանք եւ կանոնք զոր եդին վարդապետք Հայոց ի նոյն լրութիւն Առաքելական եւ Նիկիական կանոնաց հաստատութեան» (էջ 236բ)։

Հոդ. Ա, էջ 429—430: № 659 ձեռագիրն այս հոդվածն ունի աննշան շեղումներով. օրինակ՝ «ի տուն եւ ի գիշերի եւ զպատուիրանս», «եւ ոչ յաճախ» հատվածները ձեռագրում բացակայում են, իսկ մի քանի բառեր էլ փոխարինված են այլ բառերով, օրինակ՝ վատթարութեան փխ. ի վատթար գործս, զվինակ փխ. զրամին, ի սուրբ արտոն փխ. եկեղեցւոյն, զարտուղի փխ. բստ արդուղի. մատուցեն փխ. վատ ուսումն ուսցին (էջ 237ա)։ Մի քանի ձեռագրում էլ «ըր պարտ է նմա... ընոյն վատ ուսումն ուսցին» հատվածը բացակայում է (№ № 649, 650, 651, 2964)։ № № 648 և 3562 ձեռագրերի առաջին ընդօրինակությունում Շահապիվանի ժողովի կանոնախումբը դանում ենք համառոտ ձևով, այդ համառոտումը կատարվել է հետագայում։ Վերջիններիս տարբերությունը ցույց տալու համար այստեղ, Կանոնագրքի հոդվածներին զուգահեռ կբերենք այդ բնագրերը։ «Ա. Եթէ եպիսկոպոս որ գացի ի պղծութեան կամ կամի պոռնկութեան կամ զինչ եւ իցէ ի վատթար գործս եւ ղառաքելական պատիւն անարգեսցէ եւ վկայութեամբ յայտ եկեսցէ, անկցի յաթոռոյն եւ զքահանայութիւնն մի՛ պաշտեսցէ, ՌՄ դրամ տուգանս տացէ սուրբ աթոռոյն» (№ № 648, էջ 28բ, 3562 էջ 301բ)։

Հոդ. Բ, էջ 430—432: Հմմտ. «Բ. Եթէ քահանայ ի նոյն յանցանս գտանի եւ վկայիւք իրքն յայտ եկեսցեն՝ Յ դրամ տուգանս տացէ եւ ինքն լուծցի եւ ի դպրաց կարգի կացցէ. ապա թէ ոչ դարձցի՝ և՛ւ ի դպրաց կարգէն ելցէ, և՛ւ զկնի ծանր ապաշխարութեան տեսանելով եպիսկոպոսին ի դպրաց կարգի կացուսցէ. եւ թէ կին ու իցէ քահանայ կամ սարկաւագ՝ Յ դրամ տուգանս տայցեն եւ ինքեան ընդ պաշտօնեայս մի՛ խառնեսցին, այլ ի կարգի զինուորաց ի բաժին և ի հարկ արքունի [կացցեն]։ Եւ թէ դուստր քահանային պոռնկեսցի՝ եկեղեցւոյ բաժնին մի՛ իշխեսցէ և ի քահանայական տանէն ի բաց ելցէ ընելով ծանր ապաշխարութիւն, սոյնպէս թէ որդի քահանայի արասցէ՝ պատուհաս կրեսցէ։ Եւ աղախին պոռնիկ ի տան քահանայի մի՛ կացցէ» (№ № 648, էջ 28բ, 3562, էջ 301բ—302ա)։ Թեև № 659 ձեռագրում այս հոդվածը համառոտված չէ և բավական մոտ է Կանոնագրքի բնագրին, բայց ունենալով որոշ շեղումներ ունենալով կարող է պատմաբաններին և բանասերներին հետաքրքրության առարկա դառնալ, ուստի բերում ենք այդ հոդվածն ամբողջությամբ. «Բ. Երէց որ գացի ի պղծութիւն կամ ի պոռնկութիւն կամ յայլ վատթարութիւն, եւ վկայութեամբ իրքն ի մէջ եկին, զերիցութիւնն մի՛ պաշտեսցէ, Յ դրամ տուղանեսցի յաղքատս եւ նա ի դպրաց կարգի կացցէ։ Ապա եթէ ի դպրութեան ի նոյն պղծութիւն գտցի՝ ի կարգէն ելցէ եւ ի դպրութենէն կենաց, մինչև ի կարգ ուղղութեան եկեսցէ ապաշխարութեամբ. եւ տեսեալ եպիսկոպոսին զճանապարհս նորա՝ ի դպրաց կարգ մտցէ։ Երիցու եւ սարկաւագի կանոն այդ կացցէ։ Զի եկեղեցի եւ սուրբ սեղանն, մանաւանդ տէրունական խորհուրդն զանարատս ընդունի. զի մի՛ բարկութիւնն Աստուծոյ զարթիցէ ի վերայ երկրի ի ձեռն առաջնորդի։ Եթէ կնաւ երէց գտցի ի պղծութեան և կամ յայլ գործս, և ստուգեսցէ վկայուիւք, քահանայութիւնն լուծցի եւ յեկեղեցւոյ բաժնէ հեռասցի, Յ գրամ տուգանս տացէ, զայն ի կարատելոյս տացեն։ Թէ՛ երէց թէ՛ սարկաւագ կանոն այդ լիցի։ Եւ նոքա ի զինուորաց կարգի կացցեն ի բաժնի և ի հարկ արքունի և ընդ պաշտաւնեայս մի՛ խառնեսցին։ Ապա եթէ կին երիցուն կամ սարկաւագին ի շնութեան գտցին՝ ընտրոյ տեարք նոցա լիցին, կա՛մ զեկեղեցին ընտրեսցեն եւ զքահանայութիւնն, կա՛մ զկինն։ Եթէ զքահանայութիւնն՝ զկինն ի բաց թողցէ եւ ապաշխարութիւն խիստ ի վերայ դիցեն։ Ապա թէ դուստր քահանայի գտցի ի պոռնկութեան՝ եկեղեցւոյ բաժնի մի՛ իշխեսցէ եւ խիստ ապաշխարութիւն դիցեն եւ պատուհաս։ Եւ որդւոյ երիցու նոյն լիցի։ Եթէ երէցն մեռցի՝ կինն առն չիշխէ լինել, նոյնպէս երէցն։ Եւ աղախին պոռնիկ ի քահանային տան մի՛ լիցի, զի սրբութիւն տեառն է» (էջ 237ա—238բ)։

Հոդ. Գ, էջ 432—435: № 659 ձեռագրում այս հոդվածը նույնն է Կանոնագրքի բնագրի հետ, բացառությամբ մի քանի բառերի, որ չունի № 659 ձեռագրի բնագիրը. օրինակ՝ 432-րդ էջի 11-րդ տողը՝ «որ սրբութեամբ զուգին», 433-րդ էջի 1-ին տող «զփառաւորութիւն», 2-րդ տող «առ ուտեհարս», «զոր աստուած եառ», 7-րդ և 434-րդ էջի 1-ին տողերի «բաշխեսցեն», 435-րդ էջի 2—3-րդ տողերի «ուռ... ի գլուխ դիցի»։ 433-րդ էջի 9—10-րդ տողերի «Մ դրամ կարաւտելոց»-ի փոխարեն № 659 ձեռագիրը ունի «Մ գրամ յեկեղեցի Մ գրամ կարօտելոց» (էջ 239ա)։

№ № 648 և 3562 ձեռագրերում այս հոդվածը պահվել է այսպես. «Գ. Եթէ ոք կին ունի եւ պոռնկի, թէ շինական է՝ գան արբցէ, Ճ դրամ տուգան եւ ամ մի ապաշխարեսցէ եւ ապա խառնեսցի յընկերս, ապա թէ ազատ է՝ զան չմարթի հարկանել, բայց Մ դրամ յեկեղեցի և Մ յաղքա-

տրս տացէ եւ Ռ ամ ապաշխարեսցէ եւ հաղորդեսցի։ Ապա եթէ ոք յառաջ քան զամուսնութիւնն ընդ աւտարի կամ ընդ իւր խօսած պոռնկի, ընդ անարգանցն տուգան տացէ, զինչ արկցեն հայր եւ մայր կուսին, որպէս Մովսէս հրամայէ յօրէնսն տեառն։ Եթէ կամեսցի զնոյն աղջիկ կին առնուլ՝ առաջի ի ձեռն ապաշխարութեան սրբեսցին, մի՛ իբրեւ զկուստնաց պսակ աւրհնեսցեն, այլ իբրեւ զերեկին ու տեառնագրեսցեն լոկ։ Ապա թէ աղջկանն կամօք լեալ է պոռնկութիւնն, տուգանին (sic) հայր եւ մայր աղջկանն մի՛ իշխեսցեն, այլ Ճ դրամ այրն եւ Մ դրամ աղջիկն տուգանք տացեն յեկեղեցի եւ յաղքատս։ Ապա թէ միւնն կուսան է եւ միւսն պոռնիկ՝ կուսանին պսակ եւ պոռնկին ու վասն յաղթութեան թշնամոյն» (էջ 28բ—29ա, էջ 302ա, բ)։

Այս հոդվածը, ըստ Ն. Ակինյանի, սկզբնապես պետք է եղած լիներ այսպես. «Եթէ ոք կին ունիցի եւ պոռնկեսցի... տուգանս տացեն յեկեղեցի եւ ի կարօտեալս բաշխեսցեն... Եթէ ազատ է՝ Մ դրամ տուգանս տացէ եւ Ռ ամս ապաշխարեսցէ. եթէ շինական է՝ դան յոլով արբցէ, Ճ դրամ տուգանս տացէ եւ տարի մի ապաշխարեսցէ, ապա խառնեսցի։ Եթէ այր եւ եթէ կին կանոն այդ կացցէ» (ՀԱ, 1949, № 4—12, էջ 116)։

Հոդ. Դ, էջ 435—436: Հմմտ. «Եթէ ոք զկին թողցէ զորդոց մայր առանց բանի պոռնկութեան կամ կախարդութեան կամ թէ արատ ինչ ի մարմինն իցէ եւ ինքն այլում ակն իցէ եդեալ՝ զատաստան այս լիցի. զորդիս եւ զստացուածս, զհող եւ զջուր եւ զամենայն ինչ հաւասար բաժանեսցեն. եւ կինն թէ այր կամեսցի առնել ի տանն, առցէ։ Եւ այրն կնաթող է ամ ապաշխարեսցէ եւ թէ ազատ է՝ Յ դրամ տուգանս տացէ. ապա թէ շինական է՝ զանալից լիցի եւ Ճ դրամ տացէ։ Ապա թէ տարի մի ի վերայ չիցէ անցեալ, եւ կին ոք յանդուգն լինել կնահանին՝ կալցին զկինն եւ Ի գաղենոց տացեն եւ տարի մի աղասցէ, զի պատճառ զտաւ զառաջին կինն թողլոյ. ապա թէ ազատ է եւ չերթա ի գաղիսն՝ Ճ դրամ տուգանս տացէ» (№ № 648, էջ 29ա, 3562, էջ 302բ)։

Հոդ. Ե, էջ 436—438: Այս հոդվածը մի քանի ձեռագրերում այսպես է. «Ե. Եթէ ոք կին արար եւ նա ամուլ դիպեցաւ եւ արձակեաց այրն, զոր ինչ կինն բերեալ է՝ զայն տարցի. և եթէ քան զամլութիւնն այլ ինչ արատ չկայցէ, տուգանս տացէ վասն անարգանացն, ազատն՝ ՌՄ դրամ, շինականն՝ Ռ։ Եւ թէ ամ մի չիցէ անցեալ ի վերայ եւ այլ ոք կին լինիցի նմա, այնպէս արասցէ որպէս վերագոյնն ասացաք։ Ապա թէ յառաջագոյն այրն եւ կինն ընդ միմեանս պոռնկեալ իցեն՝ այրն Ճ դրամ տուգանս տացէ եւ Գ ամ արտաքոյ դրանն եւ ամ մի ի ներքս մտցէ եւ ելցէ եւ ապա հաղորդեսցի. որ զամուլ եւ զորդոց մայր թողու, ապաշխարութիւնն այդ է» (№ 648, էջ 29ա, բ, Հմմտ. № № 649, էջ 97բ, 650, էջ 107բ, 651, էջ 86բ, 2964, էջ 137ա, բ, 3562, էջ 302բ—303ա)։

Հոդ. Զ, էջ 438: Հմմտ. նաև «Զ. Եթէ կին յառնէ ելանիցէ, կալցին եւ անդրէն դարձուսցեն. եւ թէ այրն պոռնիկ է կամ հանկանակող եւ արբեցող զանիւ խրատեսցեն եւ առ իրեարս դարձուսցէն» (№ 648, էջ 29բ, Հմմտ. նաև № № 649, էջ 97բ, 650, էջ 107բ, 651, էջ 86բ, 2964, էջ 137բ, 3562, էջ 303ա)։

Հոդ. Է, էջ 439—440: Հոդվածի սկիզբը № 659 ձեռագրում այսպես է. «Է. Որ բռնութեամբ եւ անիրաւութեամբ առեանգեն» (էջ 241բ), այնուհետև ինչպես Կանոնագրքի բնագրում։ Մինչդեռ մի քանի ձեռագրերում այս հոդվածը համառոտված է. «Ոյք առեւանկ (№ № 648, 3562 ձեռագրում՝ անկ և առ, էջ 29բ, էջ 303ա) արասցեն, անդրէն առ հայրն եւ մայրն դարձուսցեն զկինն և տուգան տացէ ընդ անարգանացն, ազատն՝ Ռ դրամ, շինականն՝ Շ (№ № 648, էջ 29բ, 3562, էջ 303ա՝ Ռ, № 659, էջ 241բ՝ Ռ), և սուտ փեսային օգնականքն Ճ տացեն յեկեղեցի եւ յաղքատս։ Ապա թէ ապականեաց սուտ փեսան զկինն՝ Ճ դրամ անարգանացն տացէ եւ Գ ամ ապաշխարեսցէ եւ քահանայն որ պսակեացն՝ լուծցի եւ պսակն անվաւեր լիցի։ Ապա թէ եամ լիցի աղջկանն կամ ծնօղացն եւ ի հաւանութիւն գան՝ պսակ մի՛ դիցեն, բայց միայն ու (շարունակությունը № № 648, 3562 ձեռագրերը չունեն) տեառնագրեալ դիցի ի գլուխն։ Ապա թէ կուսանք կացեալ են ըստ օրինին՝ աւրհնեսցի. եթէ ազատ, եթէ շինական կանոն այդ կացցէ» (№ 2964, էջ 137բ, Հմմտ. նաև № № 648, էջ 29բ, 649, էջ 97բ—98ա, 650, էջ 107բ—108ա, 651, էջ 86բ, 3562, էջ 303ա)։

Հոդ. Ը, էջ 440: Հմմտ. «Ը. Եթէ ոք ի կախարդութեան գացի կամ յուրացութեան եւ կամ յայլ ի չար գործս եւ ի զղջումն եւ յապաշխարութիւն ոչ եկեսցէն ըստ դրոց հրամանի՝ քարկոծ լիցին։ Ապս. եթէ խոստովանեսցի՝ մինչև ցմահ իւր ապաշխարեսցէ, ԺԲ ամ ընդ ունկնդիրս եւ մտեալ յեկեղեցի ելցէ ընդ ապաշխարողսն մի՛ լոկ ի քառասներորդսն, այլ յամենայն ժամ, եւ քննեալ հետքն ի ձեռն ողորմութեանն բազում ինչ ծախել ի կարաւտեալս, վասն փրկութեան անձինն իւրոյ, չերմ արտասուաւք զյետին թաւշակն առցէ» (№ 659, էջ 242բ)։ Մինչդեռ մի քանի ձեռագրերում այս հոդվածը խիստ համառոտ է. «Ը. Եթէ ոք ի կախարդութեան գտցի և ոչ խոս-

տովանեսցի՝ քարկոծեսցի րոտ գրոց. ապա թէ խոստովանի՝ ԺԲ ամ առ դրանն ապաշխարեսցէ» (№ № 648, Լէ 29բ, 3562, էջ 303ա, բ), № 2964 ձեռագիրը «եւցէ եւ» (Կանոնագիրք էջ 440 տող 11) բառերի միջև ունի մի փոքր հատված. «միմեայն ի քառասներորդսն այլ» (էջ 138ա)։

Հոդ. Թ, էջ 441—442: Հմմտ. «Թ. Ոյք ի հարցուկս երթան կամ ի դիւթս՝ ազատն Մ դրամ տացէ եւ շինականն՝ զանիւ հանդերձ Ճ, եւ ապաշխարել Գ ամք, ապա հաղորդեսցին։ Ապա թէ եպիսկոպոս կամ երէց երթան ի հարցուկս եւ Բ կամ Գ վկայիւք յայտնեսցին իբք՝ եպիսկոպոս Ռ դրամ, երէցն Շ տացեն, եւ ինքեանք ի կարգէն լուծցին։ Ապա թէ ի հարեզայից կամ ուխտաւորաց գտցի ոք՝ զաշխարհականայն տացէ դատաստանն» (№ № 648, Լջ 30ա, 3562, էջ 303բ)։ Կանոնագրքի 441-րդ էջի 2-րդ տողի «ԺԵ կրկին» հատվածը մի քանի ձեռագրերում գտնում ենք «Լ րիր» (№ № 649, էջ 98ա, 651, Լջ 87բ, 2964, էջ 138ա), իսկ № 650 ձեռագրում. «Լ բերա ձևով (էջ 108ա)։ Ն. Ակինյանի կարծիքով այս հոդվածը սկզբնապես պետք է եղած լիներ այսպես. «Որք ի հարցուկս երթան, տուգանս տացեն եթէ ազատ է՝ Մ դրամ, եթէ շինական՝ գան արբցէ ԺԵ կրկին, Ճ դրամ տուգանս տացէ յեկեղեցի եւ կարօտելոց բաշխեսցեն, Գ ամս ապաշխարեալ՝ հաղորդեսցի։ Ապա եթէ եպիսկոպոս կամ երեց իցէ, եպիսկոպոսն յեպիսկոպոսութենէն եւ երէցն յերիցութենէն լուծցի։ Ռ դրամ եպիսկոպոսն տուգանս տացէ, Շ՝ երէցն։ Ապա թէ ի կարգէ պաշտօնէիցն իցէ կամ որդի երիցու իցէ, զպատուհաս, զտուգանս եւ զապաշխարութիւն զաշխարհականացն կրեսցէ եւ ի կարգէ պաշօնէիցն ի բաց կացցէ։ Եթէ այր եւ եթէ կին կանոն այդ կացցէ» (Հանդէս Ամսօրեայ, 1949, № 4—12, էջ 121—122)։

Հոդ. Ժ, էջ 442: Հմմտ. «Ժ. Որ ի դիւթութեան գտցին՝ ԺԵ կրկին գան արբցեն, խանձեսցեն, մրեսցեն, ոսկերս արկցեն եւ յաւրկանոց տարցեն եւ Բ ամս աղասցէ գողեացն, եւ այլ զինչ տան գործել։ Թէ ազատ է եւ ի գողենոց չերթայ՝ Լ դրամ ի գողիսն տացէ և ինքն Բ ամս յիւր եկեղեցւոյն ապաշխարեսցէ եւ հաղորդեսցի եւ այլ մի մեղիցէ» (№ 659, էջ 243բ)։ Այս հոդվածի մի այլ տարբերակը տես նաև № № 648 և 3562 ձեռագրերում. «Ժ. Իսկ որ լոկ դիւթեն եւ ոչ կախարդեն՝ գան արբցեն, խանձեսցին, մրեսցին եւ զԲ ամ գողեացն աղասցէ. ապա թէ ազատ է՝ Շ դրամ տացէ եւ Բ ամ ապաշխարեսցէ» (էջ 30ա, էջ 303բ)։

Հոդ. ԺԱ, էջ 443—444: Հմմտ. «ԺԱ. Եթէ ոք կոծ դիցէ մեռելոյ անյուսաբար, նզովեալ լիցին դնել ի[ն]քն եւ կոծողքն, Շ դրամ տուգանս տացեն, եւ շինականն՝ Ծ, եւ տարի մի յեկեղեցի մի՛ մտցեն եւ մեռելոյն ընդանիքն պատարագ մի՛ արասցեն, զի ինքեանք ընդ բանիւ են։ Բայց երիցունքն եւ պաշտօնեայքն յիւրեանց անձանց արասցեն պատարագ հանգուցելոյն։ Ապա թէ մեռեալն պատուիրեաց կոծ դնել, զտուգանն կրկին տացեն եւ պատարագ մի՛ մատուցեն եւ յիշատակ մի՛ արասցեն» (№ № 648, էջ 30ա, 3562, էջ 303բ—304ա)։

Հոդ. ԺԲ, էջ 444—446: Այս հոդվածը № 648 ձեռագրում խիստ է համառոտված. «ԺԲ. Որ զկին հօր իւրոյ ունի, նզովեալ լիցի, Է ամ ընդ ունկնդիրս եւ Գ ամ ընդ ձեռամբ կացցէ եւ Ճ դրամ տուգանս տացէ» (էջ 30ա, հմմտ. № 3562, էջ 304ա)։

Հոդ. ԺԳ, էջ 446—450: Այս հոդվածը չունեն № № 648 և 3562 ձեռագրերի առաջին ընդօրինակությունները, մինչդեռ նույն ձեռագրերի երկրորդ ընդօրինակությունների մեջ այն պահվել է, միայն թե կցված է նախորդ՝ ԺԲ հոդվածին (№ № 648, էջ 188ա, 3562, էջ 446ա)։ Իսկ մի քանի ձեռագրեր «աղտախանս մարմնոյ»-ի (Կանոնագիրք, էջ 446, տող 5) փոխարեն ունեն «աղտահանս արգանդի մարմնոյ» (№ 659, էջ 245ա, 649, էջ 100ա, 650, Լջ 108ա, 651, էջ 89ա, 2964, էջ 140բ)։ Ակինյանի կարծիքով, որը մեզ հավանական է թվում, «ԺԲ և ԺԳ կանոնները… նախնարար հավանօրէն մէկ կանոն կը կազմէին։ Խմբագրողը ընդլայնած է զայն կրկնութիւններով և Աստուածաշնչէն հանած այլ և այլ վկայութիւններով»։ Եվ նա փորձում է վերականգնել այդ հոդվածները այսպես. «Եթէ ոք զկին հօր իւրոյ ունիցի, ի սուրբ եկեղեցի նա մի՛ մտցէ. ապաշխարեսցէ Է ամ ընդ ունկնդիրս, Գ ամս ընդ ձեռամբ, Ծ դրամ աղքատաց, Ծ յեկեղեցի տուգանս տացէ։ Եթէ հայր զորդւոյ կին ունիցի կամ եղբայր զեղբօր, նոյն պատուհաս եւ տուգանք կացցեն։ Զեբրմ հարազատի եւ զազգականի զկին ոք մի՛ իշխեսցէ ունել ի կնութեան եւ կամ շնալ։ Եւ եթէ կնոջն կամօք իցէ խառնակութիւնն՝ պատուհաս եւ տուգանս զնոյն կրեսցէ։ Զկինն յաւրկանոց տացեն, Ժ տարի աղասցէ գողեացն. ապա եթէ ազատ է եւ ի գողիս չերթայ՝ Յ դրամ տացէ նոցա։ Զքոյր կամ զքեռորդի կամ զեղբօրորդի կամ զհօրաքոյր կամ զայլ ոք յազգի անդ իւրում մինչև ի չորրորդ զարմ կին ոք մի՛ իշխեսցէ առնել։ Եկեղեցի զապաշխարութիւն նոցա ոչ ընդունի մինչև մեկնեսցին ի միմեանց։ Որ ի խորհրդին էին եւ որ զպսակն օրհնեաց՝ տուգանս տացեն եւ յաղքատս բաշխեսցեն Շ դրամ եպիսկոպոսն, Մ՝ երէցն և Մ՝ որ զպսակն օրհնեաց։ Թէ ազատ է, թէ շինական՝ կանոնք այդ կացցեն» (Հանդէս Ամսօրեայ, 1949 թ., № 4—12, էջ 123)։

Հոդ. ԺԴ, էջ 450։ Հմմտ. «ԺԵ. Եպիսկոպոս կամ քահանայ կամ սարկաւագ կամ ո եւ իցէ

յուխտէ եւ տանդիկին անուն ունիցի ըստ սովորութեան մծղնէից՝ ի կարգէն լուծցի» (№ Ա, 648, էջ 30ա, 3562, էջ 304ա)։

Հոդ. ԺԵ, էջ 450—454: № № 648 և 3562 ձեռագրերում այս հոդվածը չի ընդօրինակվել։ Իսկ №: 659 ձեռագիրը թեև ունի այն, բայց նկատում ենք խմբագրման որոշ հետքեր, ուստի հոդվածը բերում ենք ամբողջությամբ. «ԺԵ. Զի եթէ ոք ի պաշտաւնէից և յուխտէ մանկանց ի հաւատս կայցէ, կամ մինակեաց կամ գին, եւ է զսրբութիւն կամ զկուսութիւն պահել եւ կենացն յաւիտէնից հասնել ընդ ընկերս կացցէ, ընդ ճշմարիտս եւ ի միմեանց շինեսցին սիրովն Քրիստոսի. զի եղբայր յեղբաւրէ աւգնի որպէս քաղաք ամուր եւ թէ աստուած բնակեցու <ցու>ցանէ զմիակրաւնս ի տան աստուծոյ. եւ թէ «Երկու կամ երեք ժողովեալ են յանուն իմ, անդ եւ եմ». և դարձեալ «Ուր երկու եւ երեք խնդրեսցեն միաբանութեամբ ի հաւրէ իմմէ՝ տացի նոցա» և «Յայսմ ծանիցեն թէ իմ էք, յորժամ զմիմեանս սիրիցէք»։ Մի՛ լիցի սովորութիւն մի մի լինել. ապա թէ դիւ՞րդ կարեն դիտել զկարգս հաւատոյն կամ զյանցուածս իւրոյ իմասցի կամ զհնազանդութիւն եւ զսէր առ ընկերս։ Այնպէս եւ գազանք են ի լերինս թէ ոչ ոք մերձանայ խաղաղկանս Այլ հաւատ ճշմարիտ այս է, հնազանդութիւն առ ընկերս և սէր առ միմեանս և առ Քրիստոս, ի մէջ մարդկան լինել աւրինակ բարի եւ մի՛ ոք նախանկար, զի շահել ի միմեանց եւ նախանձել ի գործս բարիս տեսցեն և փառաւորեսցեն զհայր յերկինս «և զանարգ և զգայթակղօտ եղբայր ի ձեռն հոգևոր խրատու պատուական համարեալ բերան Աստուծոյ կոչեսցի»։ «Եկայք, որդիք իմ, և լուարուք և զերկիւղ Տեառն ուսուցից ձեզ», «ծանուցանեմք, լուարուք և ուսարուք [որ] Տեառն հաճոյ է և զկեանս յաւիտենից ձեզ առթէ», «լռեցոյ զլեզու ի չարութենէ» «լուր, լեզու չար հաստատեալ է ի մարմնի», «լոյծ զկնճիռ անիրաւութեան», «դիր դուռն ամուր շրթանց և պահապան բերանոյ», «և մի՛ խոտորեսցես ի բանս դարս». «Ջարծաթ ի վարձու ոչ տալ, տոկոսեաւք ոչ պահանջել». «Զգրաւ պարտապանի դարձուցանել». «Որդիք մարդկան մինչև յե՞րբ խստասիրտք». առ Նեղասրտի ով ոմիցի ժոյժ։ Ցարենէ, ի հեղձուցելոյ, ի շնութենէ, ի պոռնկութենէ, ի գողութենէ, յագահութենէ, ի ստու երդմանէ, ի բանասարկութենէ, յարբեցութենէ, յորկորստութենէ յանձնկամութենէ, ի կամակորութենէ, ի սիգութենէ, ի վիսութենէ. մի՛ հպարտ, մի՛ չարակամ, մի՛ ամբարտաւան, մի՛ խաղերգող, մի՛ յերգս լկտեաց, մի՛ ի հտպանս, մի՛ վայրապար ի ծաղր, մի՛ յահուր, մի՛ զրկող, մի՛ տրտնջող, մի՛ յանդուգն, մի՛ ատեցող, մի՛ շատախաւս, մի՛ խաւսիր զումեքէ, որ քեզ չար թուի՝ այլում մի՛ առներ, մի՛ ցանկացող, մի՛ քնէած, մի՛ կամակոր յուսմանէ՝ զի մի ի չարիս անկիցիս, մի՛ հեղգալ յաղաւթս, մի՛ ատել զաղքատս՝ զի յաւուր չարի փրկէ զնա աէր, մի՛ ատել զպահս և զճգնութիւնս՝ որ զհուր շիջուցանէ և զառիծս սանձէ, ընդ Աստուծոյ բանս ի կիր արկանէ, որպէս Մովսէս և այլ որ ինչ գործք են, սիրել զտէր յամենայն սրտէ և զպատուիրանս նորա պահել ընդ ամենայն մարդոյ զխաղաղութիւն ունել՝ հեզ խոնարհ և յամենայն ժամ դողալ և երկիւղիւ կալ և լսել բանից նորա, զոր ասէն՝ «յո՞ւմ բնակեցայց եթէ ոչ ի հեզս և ի խոնարհս և որք դողան ի բանից իմոց», «խնդրէ խաղաղութիւն և երթ զհետ նորա». յուսոյն ակն ունել և մի՛ վայրապար ի սուգ և ի տրտմութիւն ընկղմել, այլ բարիս գործել մի՛ ձանձրանար՝ մարդ կատարեալ և յերկրի հրեշտակ երևեալ։ Որ միայնակեաց կամի լինել և կուսան և զհարեղայութիւն յանձն առնուլ՝ զկանոնդ զայդ կալցի, ամենայն ոյք ի հաւատս կացցէ» (էջ 247բ—249բ)։

Հոդ. ԺԶ, էջ 455—459: №: 659 ձեռագրի այս հոդվածում ևս նկատելի են խմբագրման հետքեր. «ԺԶ. [Ո]ր էպիսկոպոս կամ վանաց երէց կամ անապատասէր կա՛մ սաղարութեան ցանկանայ կա՛մ գաւառի կա՛մ գիւղից, լուիցէ զինչ ասէ. «Մեծութիւն թէ գայցէ մի՛ յաւժարեսցիս» տաղանդ առեր յԱստուծոյ, ի վարձու շահել պարտի, գուցէ տոկոսեաւք պահանջէ. հովիւ հաւտի պատրաստ։ Բայց որ գլխաւոր եպիսկոպոսն է աշխարհին՝ առանց նորա կամացն եպիսկոպոսք մի՛ լիցին։ Եւ վանաց երէց կամ անապատաւոր առանց գաւառին եպիսկոպոսին չիշխէ լինել։ Եպիսկոպոս ոք կամ երէց կամ ազատ կամ շինական վասն առաջնորդս կարգելոյ եւ հովիւս պատրաստելոյ եկեղեցւոյ և աւրինադիրս, զի ծանիցեն հեթանոսք, թէ մարդիկ են նոքա, եւ վասն այնորիկ կաշառ առցեն կամ աչառիցեն եւ ոչ զճշմարիտն ընտրիցեն, թէ կարի յանարգաքոք է եւ յարհամարհելոց եւ միայն նախանձաւոր սրբութեանն եւ աւրինացն է, յառաջ կալցին. Լուր զինչ ասէ. «Զյիմարս եւ զանտոհմս աշխարհիս ընտրեաց Աստուած». եւ յարուցանէ զաղքատն յաղբեւաց նստուցանէ ընդ իշխանս, զի յամաւթ արասցէ զամբարտաւանս եւ զհզաւրս, քանզի «Մարդ ի դէմս հայի (վերջին բառը ավելացրել են ուրիշներ աջ լուսանցքում—Վ. Հ.), իսկ Աստուած՝ ի սիրտ[ս]»։ Եւ սոքա կաշառաւք եւ աչառութեամբ զանարգեալս մեղաւք եւ զպղծեալս աւրինացն ըստ բանին Պաւղոսի. «Եկեղեցւոյ դատաւորս կացուցանէք տալիք արծաթոյն անիծեալ լիցին, որպէս խաչահանուանքն, որ կաշառ եառն պահապանացն, ընդ Սիմովնի կախարդի, որ ընչիւք կամէր ստանալ յառաքելոցն զշնորհս հոգւոյն սրբոյ։ Եւ առնելիք կաշա—

ռին նզովեսցին ի տեառնէ. եւ կաշառն զոր առին՝ ընդ Յուդային համարեսցին, զոր վասն տեառն մատնութեանն առ և երկպատիկ դարձուսցեն անդրէն։ Տալիքն չիշխեն առնել, այլ ի կարաւտեալս տացեն։ Եպիսկոպոսն կամ երէցն, որ վասն այսր կաշառ առնու կամ դինչ եւ է իրաց ըստ գրեցելոյն, թէ «Կաշառ կուրացուցանէ զմիտս իշխանաց» եւ դարձեալ. «Կաշառ ի վերայ իրաւանց մի՛ առցես», յամենայն ժողովոյս նզովեսցի եւ յիշխանութենէն մերժեսցի եւ ի քահանայութենէն. եւ կաշառն, զոր առին ընդ Գեեզի բորոտի ղաղաւնոն համարեսցի եւ անէծք մարդարէին ի վերայ եղիցի, զի ի ձեռաց դիտին խնդրեսցի արիւն զաւրացն, այլ զարժանաւորն կացինէ Լուսաւոր մարգարէին. «Ձեռք իւրեանց յանաւրէնութեան եւ աջ նոցա լի է կաշառաւք, տուր նոցա ըստ գործոց նոցա»։ Թէ հիմն եւ գլուխ հաստատուն՝ ապա միջինք ոչ ի վերայ աւազոյ, կառավար արբեալ՝ կառք ընդ որպէտ ընթանան, նաւավար ի քուն՝ նաւ երազ ծովածուփ, խաշնարած յոյլ՝ խաշինք զվնասուղ խոտ ճարակեն, զի թէ առաջնորդ աւրինացն ճշմարիտք՝ ապա կարգեալքն ընդ նոքաւք առաւելապէս, թէ խարիսխ անշարժ՝ շինած ոչ գետավէժ, եթէ հովիւ քաջ՝ հաւտք ոչ գազանակուր, եթէ դէտ զգոյշ եւ արթուն՝ ապա զաւրքն ի խաղաղութեան։ Քանզի դուք վարդապետք, դէտք ժողովրդեանն եւ աւրինակ աշխարհի, ի ձեզ հայեցեալ ուսումն ձեր յառաջ բերեն զգոյշ» (էջ 249բ—251բ)։ Իսկ № № 648 և 3562 ձեռագրերում այս հոդվածը չափազանց խիստ է համառոտված. «ԺԶ. Որ զանարժան ոք կաշառօք ձեռնադրէ, կաշառ[առ]ուն ընդ Յուդայի եւ ընդ Գեհեզէ, եւ կաշառատուն ընդ հրէիցն որ զարծաթն պահապանացն ետուն և ընդ Սիմոնի կախարդի. եւ ձեռնադրեալն եւ ձեռնադրողն ի կարգէն լուծցին» (էջ 30ա, բ, էջ 304ա)։

Հոդ. ԺԷ, էջ 459—460: Կանոնագրքի «Ձյիշատակս մարտիրոսաց եւ զժողովս առանց եպիսկոպոսին հրամանի մի՛ ոք իշխեսցէ առնել» հատվածը № 659 ձեռագրում հանդիպում ենք այսպես. «եւ զժողովս եպիսկոպոսաց յեպիսկոպոսէն հրաման առնուլ մի՛ իշխեսցէ առնել» (էջ 251բ), մնացածը նույնն է։ Այս հոդվածի սկզբի մասը նույնությամբ գտնում ենք № № 648 և 3562 ձեռագրերի առաջին ընդօրինակության մեջ միայն վերջին մասը՝ «զնեղել, եթէ ոք սեղան կամիցի կանգնել... հասցէ փոխանակ բարեխաւսութեան» (էջ 459, տող 11—12-ից մինչև էջ 460, տող 3) հատվածից չի պահվել։ Իսկ նույն ձեռագրերի երկրորդ ընդօրինակության մեջ այս հոդվածը թեև պահվել է նույնությամբ, սակայն «եթէ ոք սեղան կամիցի» (էջ 459, տող 12) բառերից մինչև վերջ դրված է որպես առանձին հոդված, ԺԸ համարի տակ (№ № 648, էջ 191, 3562, էջ 449բ)։

Հոդ. ԺԸ, էջ 460—461: Բացառությամբ Կանոնագրքում եղած «կամ կապեալ բանիւ վարդապետութեան» հատվածի, որը չունի № 659 ձեռագիրը, մնացածները համապատասխանում են միմյանց։ Իսկ № № 648 և 3562 ձեռագրերում այս հոդվածը վերաշարադրված է համառոտ և դրված է վերջում՝ ԻԱ համարի տակ։ «ԻԱ. Վարդապետի ուրուք եթէ զաշակերտ կամ զժողովրդական կամ զքահանայ նզովեալ իցէ կամ բանադրեալ եւ կապեալ բանիւ վարդապետութեամբ, այլ ոք մի՛ իշխեսցէ լուծանել, բայց եթէ աշակերտն յապաշխարութիւն գայցէ և նա բարեխօսութիւն արասցէ հնազանդեցուցանելով ընդ բուն վարդապետաւն, զի զարժանի է (sic) աւրհնութեանն միաբան աւրհնել եւ զոչ արժանիսն միաբան ըմբերանել եւ պատուհասել, զի կատարեսցի բան տեառն թէ «Յայսմ ծանիցեն ամենեքեան եթէ իմ աշակերտք էք եթէ միաբան կայցէք» (էջ 31ա, էջ 304բ—305ա)։

Հոդ. ԺԹ, էջ 461—462: № 659 ձեռագրի բնագիրը ևս համապատասխանում է Կանոնագրքի այս հոդվածին, միայն երկու տարբերությամբ. նախ՝ № 659 ձեռագիրը չունի Սաղմոսի ԽԸ—13, 21 մեջբերումը. երկրորդ՝ բնագրի «եւ մանկունքն որ չև իցեն գիտացեալ զպղծութիւնն» հատվածը № 659 ձեռագրում գտնում ենք «եւ մանկունքն, որ չգիտեն զպղծութիւնն ճաշակել զանաւրէնութիւնն» (էջ 253ա) ձևով։ Հմմտ. նաև № № 648 և 3562 ձեռագրերի ունեցած հետ. «ԺԹ. Եթէ ոք ի մծղնէութեան գտցի ի քահանայից, ի սարկաւագաց կամ ի հաբեղայից՝ ի ճակատն աղուեսդրոշմ դիցեն եւ ի տեղի ճգնաւորաց ապաշխարեսցէն։ Ապա թէ անդ ի նոյնն գտցին՝ զերկուսին ջիլսն կտրեսցեն եւ ի զոդենոց տաշեսցեն» (էջ 30բ, էջ 305ա)։

Հոդ. Ի, էջ 462—466. Այս հոդվածը № 659 ձեռագրում գտնում ենք զգալիորեն խմբագրված. «Ի. Որ յուրուք ժողովրդենէ մծղնէ գացի եւ երկցքն դիտեն եւ ոչ յայտնեն եպիսկոպոսին, եթէ յայտնի լիցին, թէ դիտէր երէցն զգործս նոցա եւ ոչ բողոքեաց եպիսկոպոսին, զպատուհասն զոր եղին կանոնքս կրեսցեն, զի այլ երէց եւ վանական ոռ իցէ ի տեղի նոցա ընդ նա հայեցեալ ճշմարիտ հովուեսցէ ժողովրդեան իւրոյ։ Ապա թէ երէցն ասիցէ ցեպիսկոպոսն եւ յայտ առնէ, եւ եպիսկոպոսն կարասի առնու եւ ծածկէ կամ աչառի, եւ յայտ լինի թէ արդարեւ եհաս յականջս նորա, բողոքէր ի ցանցն (sic դուցե յանձն) եւ նա արհամարհեաց զպատուիրանն Աստուծոյ եւ կորուսելոցն խնդիր չարար եւ չեղեւ նախանձախնդիր Աստուծոյ իւրոյ։ Ապա թէ եպիսկոպոսն չանացաւ, երիցունքն եւ այլ մարդիկն վկայեսցեն զաշխատութենէ նորա եւ զմծղնեայսն

յայտ արար յիշխանութեան ուրուք, եւ իշխանն, որ էր աշխարհին եւ կամ գեղջ ուրուք, եւ կամիցի պղծութեանն թիկունք լինել եւ զմծղնեայսն թագուցանել կամ վասն կարասւոյ կամ վասն ակնառութեան եւ ծառայութեան եւ ոչ ընտրեաց զՔրիստոս սիրել եւ զպատուիրանսն եւ վրէժխնդիր ուրինացն՝ այնպիսին նզովեալ լիցին եւ յեկեղեցւոյ հեռացի մինչեւ տացէ զպղծագործսն ի ձեռն եպիսկոպոսին։ Եթէ ի նախար[ար]ին զտանիցին պղծութիւնքն կամ կին նորա կամ դուստր կամ որդի կամ ինքն իսկ գլխովին, եւ ոչ զընտանիսն տացէ ի ձեռս եպիսկոպոսին, եւ ոչ ինքն դարձցի ի սրբութիւն, ի բուռն ապստամբ կամի լինել, ամենայն տամբն իւրով եւ ծըննդովք եւ կենաւք նզովեալ լիցին, եւ ի հրապարակ մի՛ իշխեսցէ գալ եւ ընկերք եւ աշխարհք մի հնազանդեսցին նմա մինչև ինքն ի սրբութիւն եկեսցէ։ Ապա եթէ ինքն ոչ իցէ ի պղծութեանն՝ զընտանիսն ի ձեռս տացէ զխաւոր եպիսկոպոսին։ Ապա թէ յոստանդիւնքն (sic) զտանիցին պղծութիւնքն եւ ինքն եւս ընդ ընտանիսն ի պղծութիւն զտցի՝ կալցին միաբան պղծագործքն ընտանեաւքն հանդերձ եւ ի հրապարակ ածցեն առաջի գլխաւոր եպիսկոպոսին եւ առաջի մեծամեծ իշխանաց եւ միաբան վրէժխնդիր լինիցին ուրինացն Աստուծոյ։ Զի տեսեալ այլոցն սրբութեամբ եւ երկիւղիւ պաշտեսցեն զարարիչն արարածոց. զի ողջ եւ կատարեալ լիցին կարգք աստուածպաշտութեան վրէժխնդրութեամբ ուրինացն եւ յարգանաւք սրբոցն. զի նոյնպէս եւ հաստուածոց բարերարին Աստուծոյ ակնկալցուք, արդեամբք ժառանգեսցուք զպարգեւս նորա. ամէն» (էջ 253ա—254բ)։ Անա նաև Ա՝ Ձ։ 648 և 3552 ձեռագրերի նույն հոդվածի համառոտ խմբագրությունը. «Ի. Թէ յուրուք ժողովրդեան մծղնե գտցի եւ երիցունքն գիտասցեն եւ ոչ յայտնեսցեն եպիսկոպոսին՝ մծղնայքն ըստ հրամանի կանոնաց դատեսցին, եւ երիցունքն ի կեան. իւրեանց մի՛ պաշտեսցեն զքահանայութիւնն։ Ապա թէ երէցն վկայիւք եպիսկոպոսին ասաց եւ նա ծածկեաց վասն կաշառոց, երէցն անպարտ եղիցի եւ եպիսկոպոսն լուծցի։ Ապա թէ եպիսկոպոսն ջանաց վրէժխնդիր լինել եւ իշխան ոք վասն արծաթոյ թիկունք եղեւ անօրինացն՝ նզովեալ լիցի ի կեանս եւ ի մահ, եւ յեկեղեցւոյ սրբոյ ի բաց կացցէ, մինչև տացէ զպղծագործն ի ձեռս եպիսկոպոսին։ Ապա թէ ինքն աւագն կամ ընգանիք նորա գտանիցին ի գործն, թէ ինքն ապստամբել եւ ի բուռն ապստամբ կա, նզովեալ լիցի եւ ամենայն հաւատացեալք ի բաց լիցին ի նմանէ, եւ թէ այլ ոք գտցի ի գործն՝ զնոյն արասցեն» (էջ 30բ—31ա, էջ 304բ)։

Т ձեռագրում բնագրի «կործանեսցի յաթոռոյն» (էջ 463, տող 8—9) հատվածի դիմաց, 204բ էջի ձախ լուսանցքում ավելացված է. «որ ծածկեն զչնացողսն»։ Նույն կերպ են վարվել նաև Տ (էջ 201բ—202ա) և Ս (էջ 105բ) ձեռագրերում. այսպիսով, ըստ այդ ձեռագրերի, բնագրի նշված հատվածը պետք է կարդալ. «Կործանեսցի յաթոռոյն որ ծածկեն զչնացողսն», իսկ այնուհետև՝ ինչպես բնագրում։

Մատենադարանի մի քանի ձեռագրերում Շահապիվանի ժողովի Ի կանոնին հաջորդում է վերջաբան։ Այն մեզ հասել է երեք խմբագրությամբ.

1. «Եւ եղեալ միաբան քահանայապետից և քահանայից և ամենայն հաւատացելոց զկարգս զայս եւ զկանոնս եւ ընթերցեալ առաջի ամենայն զաւրացն եւ զաւրագլխացն եւ հաճէին հաւանութեամբ ամենայն աշխարհն Հայոց, ասելով միաբան զաւրացն եւ զաւրագլխացն, իշխանաց եւ նախարարաց, ռամկաց եւ շինականաց, թէ այո՛, այո՛, կարգ եւ աւրէն այդ կացցէ, ինչ որ վասն մեր աւգտի է եւ [ի] փրկութիւն ոգոց մերոց, իշխանութիւն եկեղեցւոյ Աստուծոյ եւ մեզ առաջնորդ եւ առիթ ի կեանսն յաւիտէնից. ամէն» (№ 659, էջ 254բ, հմմտ. Հանդէս Ամսօրեայ, 1949 թ., № 4—12, էջ 170)։

2. «Եղեալ միաբանութեամբ քահանայից եւ քահանայապետիցն եւ ամենայն հաւատացելոցն զկարգս զայս եւ զկանոնս եւ մատուցեալ առաջի մեծամեծ իշխանացն եւ աւագ նախարարացն եւ ընթերձեալ առաջի ամենեցուն, հաճէին հաւանութեամբ, ասելով միաբան զօրացն եւ զօրագլխացն եւ շինականացն թէ այո՛, այո՛, կարգք եւ օրէնք այդ կացցեն ինչ որ վասն մեր օգտի է ի փրկութիւն հոգոց եւ մարմնոց մերոց, իշխանութիւն եկեղեցոյ եւ առիթ փրկութեան մերոյ ի կեանս յաւիտենից։ Կանոնք զոր եդին վարդապետք Հայոց ի Շահապիվանի ի բանակեալ թագաւորաց Հայոց ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր. ամէն եղիցի, եղիցի» (Ա՝ № 2964, էջ 149բ—150ա, 649, էջ 107բ, 650, էջ 117ա)։

3. «Եւ եդեալ միաբանութեամբ քահանայապետից եւ քահանայից ամենայն հաւատացելոց զկարգս զայս եւ զկանոնս եւ մատուցեալ առաջի մեծամեծ իշխանացն եւ աւագ նախարարացն ընթերձեալ առաջի ամենեցուն, հաճէին հաւանութեամբ ամենայն աշխարհս Հայոց, ասելով միաբան զօրացն եւ զօրագլխացն եւ իշխանացն. Այո՛յ, այո՛յ, կարգ եւ կանոն այդ կացցեն ինչ որ վասն մեր օգտի է ի փրկութիւն եկեղեցոյ Աստուծոյ եւ առաջնորդ եւ առիթ կեանսն յաւիտենից» (e էջ 159բ, հմմտ. նաև Ъ էջ 210ա, g էջ 141բ, f էջ 239ա, q էջ 127ա)։

Կանոնագրքի համահավաք բնագրի կազմման համար օգտագործված 48 ձեռագրերից միայն վերջին հինգ ձեռագրերն են, որ պահել են սույն վերջաբանը։

## ՍԵՎԱՆՏՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 467: *Համեմատությունների համար չօգտագործված № № 648, 649, 650, 651, 659, 2964, 3562 ձեռագրերում այս վերնագիրը չի պահվել։*

Ցանկ, էջ 467—468: *Վերևում նշվածներից միայն № 659 ձեռագրում է պահվել ցանկը, որը նույնպես նոր է կազմվել, ընդ որում, եթե Կանոնագրքի բնագրում 14 հոդվածների համար ցանկում նշված են 14 վերնագրեր, ապա այստեղ՝ 16։ Այդ առաջ է եկել նրանից, որ Դ հոդվածը բնագրում բաժանված է երեք առանձին հոդվածների, սրան համապատասխան էլ ցանկում տեղ են գտել 16 հոդվածների վերնագրեր։ Ահա այդ ցանկը.*

*«Ցանկ սուրբ ժողովոյն Նիկեսոսին.*

*ա. Աբիւնահեղաց։*
*բ. Անասնապղծից։*
*գ. Ազգապղծից։*
*դ. Որ զեղբաւր կին պղծէ։*
*ե. Ծնալոյ ընդ քեռ։*
*զ. Այր կամ կին որ Ծ ամեան լցէ եւ կին առնէ։*
*է. Որ ընդ կնքաւորս պղծի։*
*ը. Երիտասարդ որ մեղիցէ։*
*թ. Առնակնոջ չնացելոյ։*
*ժ. Որք ի հաւատս կացցեն։*
*ժա. Ընդ իւր խաւսեալ յաւսեցելոյ։*
*ժբ. Չխաւսեալ յաւսեցելոյ։*
*ժգ. Երէց որ չնայ եւ գողանայ։*
*ժդ. [Ո]ր կին ամուսնութեան։*
*ժե. Հաւատուորաց։*
*ժզ. [Կ]նաթողաց» (էջ 214բ)։*

Երկրորդ վերնագիր, էջ 468։ *Մի քանի ձեռագրերում այս վերնագիրը սխալ է հասցեագրըված. օրինակ՝ № № 659 և 3369 ձեռագրերում. «Կանոնք սուրբ ժողովոյն Նիկեսոսի, որ ժողովեցան ի հոգւոյն սրբոյ երկերիւրքն եւ կարգեցին տունք ժՁ» (էջ 214բ), «Կանոնք սուրբ հարցն Նիկեսոսի» (էջ 68ա)։ Այսպիսով, Սեվանտոսի կանոնախումբը նշված է Նիկեսոսի ժողովի անվան տակ։ Մի քանի ձեռագրերում՝ № № 648, 649, 651, 2964, 3562 այս կանոնախումբը, գտնվելով Նիկեսոսի ժողովի կանոններից հետո, վերնագրում ունի «Նորին», «Նոցա», «Նոցին» բառերը, որ նշանակում է, թե այս կանոնախումբը (իմա Սեվանտոսի) Նիկեսոսի ժողովի մի այլ որոշման հոդվածներն են։ Ահա այդ վերնագրերը. «Դարձեալ նորին (№ № 649, 2964 նոցին, № 651 նոցա) այլ կանովնք գլուխք (№ № 651, 2964 գլուխ) ժՁ» (№ № 649, էջ 49բ, 651, էջ 39բ, 2964, էջ 72ա), «Դարձեալ նորին կանոնք» (№ № 648, էջ 27ա, 2562, էջ 300բ)։ Սակայն № 650 ձեռագրում այս կանոնախումբը գտնվելով Կոստանդնուպոլսի ժողովի կանոններից հետո՝ վերնագրում ունի «նոցա» բառը, որը ցույց է տալիս, որ այս կանոնախումբը Կոստանդնուպոլսի ժողովի մի այլ որոշման հոդվածներն են։ Ահա այդ վերնագիրը. «Դարձեալ նոցա այլ կանովնք գլուխք ժՁ» (էջ 54ա)։*

*Բնագրի փոքրիկ առաջաբանը չունեն վերոնշյալ ձեռագրերը։*

Հոդ. Ա, էջ 469—471: *Սույն հոդվածը սկզբից մինչև «զոր Աստուած անէծ եւ նզովեաց» (էջ 470, տող 12) հատվածը Ն. Ակինյանը, այս կանոնախմբի իր հրատարակության բնագրում, գրել է որպես առաջաբան (տե՛ս Հանդէս Ամսօրեայ, 1949 թ., № 4—12, էջ 74—76)։ Իսկ մի շարք ձեռագրերում այդ մասը՝ «Որպէս ասէ տէրն»-ից մինչև «Այլ ի գրոց, ի մեղաց զոր» հատվածը (էջ 470, տող 12) բացակայում է (№ № 648 (էջ 27ա), 649 (էջ 49բ), 650, (էջ 54ա), 651, (էջ 39բ), 659, (էջ 214բ), 2964, (էջ 72ա), 3562, (էջ 300բ)։ Հիշված ձեռագրերում որպես Ա հոդված նշված է առաջաբանի վերջին մասը. «Աստուած անէծ եւ նզովեաց... եւ յաւուր մահուան իւրոյ խառնեսցի»։ № 3369 ձեռագրում առաջին վերնագրից հետո դրված են Նիկեսոսի ժողովի Ա և Բ հոդվածները. այնուհետև բացակայում են Դ—Ջ հոդվածները, իսկ Ա և Բ հոդ-*

վածներին որպես շարունակություն կցված է Սեանտոսի անունով մեզ հասած կանոններու Վերջինիս Ա հոդվածը նույն ձևով, ինչ որ նշեցինք վերևում, մի քանի ձեռագրերի նման, դրված է որպես Գ հոդված։ Ն. Ակինյանը կարծում է, որ Ա հոդվածը պետք է սկսված լինի այսպես. «Ա. Այր արիմահեղ ապաշխարեսցէ...» (Հանդէս Ամսօրեայ, 1949 թ., № 4—12, էջ 76, ծանոթ. 13)։

Հոդ. Բ, էջ 471: Մի քանի ձեռագրերում այս հոդվածի սկզբի «Որ երեսնամեայ է եւ» հատվածի փոխարեն նշված է «Որբ» կամ «որ» (տես №№ 648, էջ 27բ, 649, էջ 49բ, 650, էջ 54ա, 651, էջ 40ա, 659, էջ 215ա, 2964, էջ 72բ, 3369, էջ 68բ, 3562, էջ 300բ), իսկ «աւէտ»-ի փոխարեն՝ «յաւրինացն քարոզէր ի Մովսիսէ» (տես նույն ձեռագրերը, բացառությամբ №№ 648-ի, 2964-ի և 3562-ի)։ Ն. Ակինյանը կարծում է, որ Բ հոդվածը պետք է սկսված լինի այսպես. «Եթէ այր ոք կամ կին...» (տես նույն տեղում, էջ 76, ծանոթ. 16)։ Խզ ձեռագրում այս հոդվածը դրված է որպես նախավերջին, իսկ Բ հոդվածի փոխարեն դրված է «Բ. Անասնապղծին» (էջ 240ա, էջ 127բ), մինչդեռ նույն ձեռագրի 241բ էջում գրիչը դարձյալ դրում է. «Այս երկու տունս Բ և ԺԲ (իմա Կանոնագրքում եղած Բ և ԺԳ) ի յաւրինակն չկայր, յայլ աւրինակ գտա եւ գրեցի»։ Խե ձեռագրերում Բ հոդվածի տեղը գրված է. «Բ. հոս պիտի անասնապղծին», իսկ նույն հոդվածը դրված է կանոնախմբի նախավերջին հոդվածի տեղը։

Հոդ. Գ, էջ 471—472։ Ինչպես նշեցինք վերևում, այս հոդվածը մի քանի ձեռագրերում բաժանված է երեք առանձին մասերի, ահա դրանք. «Գ. Որ կին առնէ զմայր կամ զդուստր, ի հուր այրեսցէք զնոսա, անիծեալք են։

Դ. Որ առնէ զկին եղբօրն իւրոյ՝ պիղծ է, զի մի են նոքա՝ որ առնէ զհօրեղբօր, որ առնէ զոբանչ, որ առնէ զքենի, որ առնէ զթոռն, որ առնէ զհաւրն կինն, այսպիսիքն նզովեալ եղիցին։

Ե. Որ շնա ընդ քեռ իւրում նզովեալ լիցի, որոշեցէք զնոսա եւ անշատեսցին ի մեղաց, եւ ապաշխարութիւն նոցա ԺԵ ամ դրանն արտաքոյ, Ե ամ՝ ընդ ապաշխարողս, եւ Գ ամ աւրէնս մի՛ առցեն» (№ 648, էջ 27բ. Համտ. նաև №№ 649, էջ 49բ, 650, էջ 54ա, 651, էջ 40ա, 659, էջ 215ա, 2964, էջ 72բ, 3369, էջ 68բ, 3562, էջ 300բ)։

Հոդ. Դ, էջ 472: Որոշ ձեռագրերում այս հոդվածը խմբագրված է այսպես. «Զ. Այր Ծ ամեան եթէ կին առնիցէ. նզովեալ են երկոքեանն, ամենեքեան կարդացէք նոցա աղճատեալս եւ յեկեղեցի մի մտցեն» (№ 648, էջ 27բ, Համտ. նաև №№ 649, էջ 50ա, 650, էջ 54բ, 651, էջ 40ա, 2964, էջ 72բ, 3369, էջ 68բ, 3562, էջ 300բ)։

Հոդ. Զ, էջ 472: Թեթև խմբագրման հետք նկատվում է նաև այստեղ. «Ը. Երիտասարդ եթէ մեղանչէ՝ կին նորա աւրէնս մի առցէ մինչև նախ ապաշխարեսցէ» (է 648, էջ 27բ, Համտ. նաև նախորդ ծանոթագրությունում նշված ձեռագրերը)։

Հոդ. Է, էջ 472: Մասամբ խմբագրված է նաև այս հոդվածը. «Թ. Առնակին եթէ շնայցէ՝ Ժ ամ դրան արտաքոյ ապաշխարեսցէ և Ե՝ ի ներքս, և Դ ամ աւրէնս մի առցէ։ Ապա թէ գաղտ իցէ ապաշխարութիւն՝ դրաց արտաքոյ ապաշխարեսցէ մինչեւ կատարեսցի ԺԵ ամն» (№ 648, էջ 27բ, Համտ. նաև վերևի ծանոթագրությունում նշված ձեռագրերը)։ № 651 ձեռագրում Զ և Է հոդվածները միացված են միմյանց և դրված Թ համարի տակ։

Հոդ. Ը, էջ 473: Վերևում նշված ձեռագրերը «ամիսս երկու»-ի փոխարեն ունեն «ամիսս երիս» (№ 648, էջ 27բ, և մյուս ձեռագրերը)։

Հոդ. Թ, էջ 473: Այս հոդվածը № 659 ձեռագրում բաժանել են երկու առանձին մասերի՝ ա. «Յաւուրս Նոյի եղեւ ջրհեղեղն, վասն այնոցիկ որ յաւսան դդստերսն Կայենի», այս մասը կցված է Ը հոդվածին, իսկ մնացած մասը դրված է որպես առանձին հոդված։ «Գայլ» բառի փոխարեն մի քանի ձեռագրեր ունեն «գող» (№№ 648, էջ 28ա, 649, էջ 50ա, 650, էջ 55ա, 651, էջ 40բ, 659, էջ 216ա, 2964, էջ 73ա, 3369, էջ 69ա, 3562, էջ 301ա), որը, կարծեք, ավելի ճիշտ է։

Հոդ. ԺԴ, էջ 474: Այս հոդվածը բավական փոփոխված է. «ԺԶ. Եթէ ոք դկին իւր հանցէ առանց բանի պոռնկութեան, ինքն տա նմա շնալ, ապա թէ թողցէ և ապաշխարեսցէ՝ ապաշխարութիւն նորա Ը ամ առ դրանն արտաքոյ, Զ՝ ընդ ապաշխարողս եւցէ, եւ Զ ամ օրէնս մի առցէ. այս փոխանակ երկոցունց ընդ իւր եւ ընդ կնոջ (այստեղից № 659 ձեռագիրը չունի Վ. Հ.) իւրոյ։ Ապա թէ անապաշխար մնասցեն՝ մի՛ թաղէք զնոսա, զի այնպիսիքն զարքայութիւն աստուծոյ ոչ ժառանգեն» (№ 648, էջ 28ա, Համտ. նաև №№ 649, էջ 50բ, 650, էջ 55ա, 651, էջ 40բ, 659, էջ 216բ, 2964, էջ 73բ, 3369, էջ 69ա, 3562, էջ 301բ)։

## ՆԵՐՍԵՍԻ ԵՎ ՆԵՐՇԱՊՈՒՀԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Առաջին վերնագիր, էջ 475:** *Այս վերնագիրը չունեն № № 649, 650, 651, 2964 ձեռագրերը, իսկ № № 648, 3562 ձեռագրերը ունեն հետևյալ վերնագիրը. «Կանոնք Ներսէսի եւ Ներշապհոյ Մամիկոնէից» (էջ 54ա, էջ 334ա)։* Ո *ձեռագրում վերնագրի գիմաց, հետագայում (ԺԹ դար), մեկն ավելացրել է. «Ներսէս Բ Աշտարակեցի եւ Դունեայ Բ ժողով» (էջ 188ա)։*

**Ցանկ, էջ 475—478:** *№ № 649, 650, 651, 2964 ձեռագրերը չունեն ցանկ, իսկ № № 648, 3562 ձեռագրերը թեև այն ունեն, բայց նկատվում է, որ վերաշարադրված է Կանոնագրքի ունեցած ցանկից, երբեմն ցույց տալով ինքնուրույնության հետքեր։ № № 648 և 3562 ձեռագրերի սույն ցանկում նշված է 30 հոդվածի վերնագիր. այդ նրանից է, որ ինչպես այս, այնպես էլ վերևում նշված ձեռագրում այս կանոնախումբը ունի 30 հոդված. 31—37-րդ հոդվածները ինչ-ինչ պատճառներով չեն պահվել։ Ահա այդ ցանկը.*

*«ա. Վասն յեկեղեցի տանել զսեղանն և ոչ ի տանս իրեցութեան։*
*բ. Վասն չառնուլ գինս քահանայք պատարագին։*
*գ. Վասն ոչ վաճառել կամ վարձս դնել։*
*դ. Երկկանանց ոչ ուտել զշնորհս եկեղեցոյ։*
*ե. Վասն շաբաթու եւ կիրակէի պատարագ մատուցանել։*
*զ. Վասն բաժակին սուրբ պատարագին։*
*է. Վասն քահանայից որ պատարագ մատուցանեն։*
*ը. Վասն հանձի (sic) եկեղեցոյն ոչ տալ ի հարսանիս։*
*թ. Վասն ոչ առնել մկրտութիւն ի տունս յաշխարհականաց։*
*ժ. Վասն որ ըստ կոչման լինել նախագահ։*
*ժա. Վասն առանց քահանայի ոչ է պարտ առն ժամ։*
*ժբ. Վասն դպրի չհագանել հանդերձ զինուորական։*
*ժգ. Զշնորհս եկեղեցոյ մասնաւորել եկեղեցոյ՝ ըստ իւրաքանչիւր կարգի։*
*ժդ. Սպաս եւ պատարագիչն աւագ երիցուն եղիցի։*
*ժե. Զառնել ի տունս մկրտութիւն։*
*ժզ Կանանց չտալ մօտ առ քահանայսն ի մկրտել։*
*ժէ. Սարկաւագունք մի առցեն մկրտութիւն։*
*ժը. Ոչ առնուլ հաս աշխարհողացն։*
*ժթ. Ոչ յայտնել զբանս խոստովանութեան։*
*ի. Գերեզման յեկեղեցիս մաւտ ոչ առնել։*
*իա. Քահանայ վաշխ ոչ առնուլ։*
*իբ. Յագապս մասունս ոչ առնուլ։*
*իգ. Ոչ երթալ ի պատարագ յորժամ ոչ կայ։*
*իդ. Տղայոց հարսանիս։*
*իե. Զկուսանս այրեաց ոչ տալ։*
*իզ. Զառչառ ոչ ձեռնադրել։*
*իէ. Զ[պ]ոռտանս ոչ աւրհնել։*
*իը. Ոչ առնուլ զկենդանին նուիրեալ։*
*իթ. Զառաջաւորս ոչ լուծանել։*
*լ. Ծրագալուծին շաբաթու թան եւ գինի մի՛ ճաշակեսցեն» (էջ 54ա, բ, էջ 334ա, բ)։*

**Երկրորդ վերնագիր, էջ 478:** *Կանոնագրքի ունեցածին նման է № № 648 և 3562 ձեռագրերինը, որոնք չունեն միայն «տունս լէ»։ Իսկ մյուսները ունեն «Դարձեալ եւ այս կանոնք յաւուրս*

Ներսէսի մեծի եւ Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի գլուխ Լ» ձեով (№ № 649, էջ 80բ, 650, էջ 88բ, 651, էջ 67ա, 2964, էջ 114ա)։ Այս հավանաբար ավելացրել է Հ. Օձնեցին որպես առաջաբան և վերնագիր։

Հոդ. Ա, էջ 478: Ծանոթագրություններում օգտագործված՝ արդեն հայտնի ձեռագրերում այս կանոնախմբի հոդվածները թեև տարբերություն չունեն Կանոնագրքում եղածից, սակայն եղած նյութը այս ձեռագրերի Ա—Ը հոդվածներում բաժանված է տարբեր սահմաններ ունեցող հոդվածների. օրինակ՝ Ա հոդվածը սկսվում է այնպես, ինչպես Կանոնագրքում կա, բայց վերջանում է Բ հոդվածի սկզբի ընդարձակ հատվածով. «Այլ ի նոյն ինքն... եւ ժլատութեամբ թշնամանել զսրբութիւնսն»։ Վերջինս դրված է որպես շարունակություն Ա հոդվածի (տես № № 648, էջ 55ա, 649, 80բ, 650, էջ 88բ, 651, էջ 67բ, 2964, էջ 114բ, 3562, էջ 335ա)։

Հոդ. Բ, էջ 478—479: Վերոհիշյալ ձեռագրերում այս հոդվածի միայն վերջին՝ «Խափանեցին քահանայքն... վասն սուրբ պատարագին» մասն է դրված որպես Բ հոդված (№ № 648, էջ 55ա, 649, էջ 80բ, 650, էջ 88բ, 651, էջ 67բ, 2964, էջ 114բ, 3562, էջ 335ա)։

Հոդ. Գ, էջ 479։ Նշված ձեռագրերում Գ հոդվածի տակ դրված է ինչպես այս, այնպես էլ հաջորդ Դ հոդվածի մեծ մասը՝ սկզբից մինչև «եւ զրկեցան ինքեանք յաւրհնութենէն Աստուծոյ» հատվածը (տես № № 648, էջ 55ա, բ, 3562, էջ 335ա, բ)։ Այս նույն ձեռագրերում, որտեղից սկսվում է հոդվածը, «կէսք» բառից առաջ դրված է «Դ», այսպես՝ «...դահեկանաց իւրեանց Դ կէսք վաճառեցին...» (տես նույն էջերը)։ Նշված «Դ»-ն չորրորդ հոդվածի համարն է, բայց այն հաշվի չեն առել որպես կարգահամար։

Հոդ. Ե, էջ 480: Այս հոդվածը ձեռագրերի մի մասում սկսվում է Դ հոդվածի վերջից մնացած մի հատվածով. «Կարդեցաք եւ հաստատեցաք (Կանոնագրքի բնագրում՝ սահմանեցաք— Վ. Հ.), զի յայսմհետէ հրաժարեսցեն քահանայք եւ ժողովրդականք յայդպիսի անառակ եւ մահաբեր սովորութենէ»։ Այնուհետև սրան կցված է Կանոնագրքում եղած Ե հոդվածն ամբողջությամբ, և այդ բոլորը դրված է Դ համարի տակ (տես № № 648, էջ 55բ, 3562, էջ 335բ), իսկ № № 649, 650, 651, 2964 ձեռագրերում Դ և Ե հոդվածները միացված են միմյանց և դրված են Դ համարի տակ։

Հոդ. Զ, էջ 480—481: Այս հոդվածը նշված ձեռագրերում բաժանված է երեք մասի, որից երկու մասը դրված է տարբեր համարների տակ, որպես առանձին հոդվածներ, իսկ երրորդ մասը մուծված է Կանոնագրքի ունեցած է հոդվածում, այսպես՝ ա. մաս «Քահանայք զշաբաթու... եւ աւետարանաւ կարգաւորաբար» որպես առանձին հոդված, նշված է Ե կամ Զ համարների տակ. բ. մաս «Եւ զբաժակսն հաղորդութեանն... եւ տանջեսցին (Կանոնագրքի բնագրում և տուժեսցին—Վ. Հ.) յաստուծոյ», որպես առանձին հոդված, նշված է Զ կամ Է համարների տակ (№ № 648, էջ 55բ—56ա, 649, էջ 81բ, 650, էջ 89բ, 651, էջ 68ա, 2964, էջ 115բ, 3562, էջ 335բ—336ա)։ գ. մասի վերաբերյալ տես հաջորդ ծանոթագրության մեջ։

Հոդ. Է, էջ 481: Զ հոդվածի մնացած՝ երրորդ մասը՝ «Քահանայք (այս բառը Կանոնագրքի բնագիրը չունի—Վ. Հ.) պատրաստեսցեն կատարել զսուրբ խորհուրդն... ամենայն զգուշութեամբ», նշված ձեռագրերում դրված է որպես սկիզբ է հոդվածի։ Այնուհետև է հոդվածը ամբողջությամբ և Ը հոդվածի սկզբի մասը «Եւ զկտակարանս եւ զմարգարէս... եւ հանդերձ ռամկական սրբոյ սեղանոյն», միասին նշված են որպես է կամ Ը հոդված (№ № 648, էջ 56ա, 649, էջ 81բ—82ա, 650, էջ 89բ, 651, էջ 68ա, 2964, էջ 115բ—116ա, 3562, էջ 336ա)։

Հոդ. Ը, էջ 481—482: Այս հոդվածի մնացած մասը՝ «եւ զեկեղեցւոյ վարագոյր (վերջին բառը Կանոնագրքի բնագիրը չունի—Վ. Հ.) առագաստիկ փեսայի... թէ քահանայ է՝ լուծցի, թէ դպիր՝ որոշեսցի» դրված է որպէս Ը կամ Թ հոդված (№ № 648, էջ 56ա, 649, էջ 82ա, 650, էջ 90ա, 651, էջ 68ա, 2964, էջ 116ա, 3562, էջ 336ա)։

Հոդ. Ժ, էջ 482: Այս հոդվածը թեթև կերպով խմբագրված է. «Ժ. Ամենեւին քահանայք գահասիրութեամբ մի՛ հակառակեսցեն ընդ միմեանս, զի զոր շնորհն Աստուծոյ ընտրեաց նախ ի քահանայութիւն, նա՛յ է նախաթոռ յեկեղեցւոյ եւ ի տանն» (№ № 648, էջ 56բ, 649, էջ 82ա, 650, էջ 90ա, բ, 651, էջ 68բ, 2964, էջ 116բ, 3562, էջ 336բ)։

Հոդ. ԺԳ, էջ 483—484: Ներքոհիշյալ ձեռագրերում այս հոդվածի վերջին հատվածը այսպես է. «եւ ոչ ժողովրդականքն առ քահանայսն ունել զնոցա պաշտաւնն» (№ № 648, էջ 57ա, 649, էջ 82բ, 650, էջ 91ա, 651, էջ 69ա, 2964, էջ 117ա, 3562, էջ 336բ)։ «Պաշտամնն» բառը Կանոնագրքի բնագրում գրված է ԺԴ հոդվածի սկզբում, այսպես. «ԺԴ. Պաշտամն եւ պատարագիք եւ սպասք...» և այլն։

Հոդ. ԺԹ, էջ 486: Վերը նշված ձեռագրերում «աշխարհութեան աշխարհողացն»-ի փո-

*խարեն գտնում ենք միայն «զխոստովանողացն» ձևով (№ 648, էջ 57բ, հմմտ. նաև № № 649, էջ 83բ, 650, էջ 91բ, 651, էջ 69բ, 2964, էջ 118ա, 3562, էջ 337բ)։*

Հոդ. ԻԵ, էջ 487: *Նշված ձեռագրերում այս հոդվածն այսպես է. «Ոչ է պարտ զկուսանս այրեաց տալ» (№ № 648, էջ 58ա, 649, էջ 84ա, 650, էջ 92ա, 651, էջ 70ա, 2964, էջ 119ա, 3562, էջ 338ա)։*

Հոդ. ԻԷ—ԻԸ, էջ 487—488: *Վերոնշյալ ձեռագրերում ԻԷ հոդվածը վերջանում է այսպես. «զսուրբ պատարագն ուրհնէսցեն»։ Կանոնագիրք-ձեռագրերում վերջինիս շարունակությունը կազմող «զարշառս եւ զոչխարս» բառերը իրավամբ տեղափոխեցինք ԻԸ հոդվածի սկզբում, այսպես. «Եւ զարշառս եւ զոչխարս քահանայք ի տունս իւրեանց կենդանի մի իշխեսցեն առնուլ», իսկ այնուհետև՝ ինչպես բնագրում (№ № 648, էջ 58ա, 649, էջ 84ա, 650, էջ 92բ, 651, էջ 70ա, 2964, էջ 119ա, 3562, էջ 338ա)։*

Հոդ. ԼԱ—ԼԷ, էջ 489—490: *Նշված ձեռագրերում, ինչպես արդեն ասել ենք վերևում, չեն ընդօրինակվել այս յոթը հոդվածները։*

## ՀՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆՈՒ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Առաջին վերնագիր**, էջ 491: *№ 659 ձեռագրում պահվել է այլ վերնագիր. «Յոհաննու Մանդակունոյ ի խրատս եկեղեցւոյ համառօտ բան» (էջ 263բ)։ Վերջինս ցույց է տալիս, որ այս վերնագրի տակ շարադրված նյութերը եկեղեցական հարցերին վերաբերող խրատներ են և բերված են համառոտ։ Ամենայն հավանականությամբ № 659 ձեռագրի գրիչ Մաղաքիան այս վերցրել է ոչ թե անմիջապես Կանոնագրքի համապատասխան բնագրից, այլ Կանոնագրքից անկախ գոյություն ունեցող մի այլ բնագրից։*

**Ցանկ**, էջ 491—492: *Ցանկի և բուն կանոնների հաջորդականության մեջ գտնում ենք որոշ անկանոնություն։ Եթե հետևելու լինենք ցանկի հաջորդականությանը, ապա կանոնները կունենան հետևյալ կարգը.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Ցանկի Ա* | *վերնագրին* | *համապատասխանում է* | *Ա* | *հոդվածը։* |
| *Բ* | » | » | *Գ, Ե* | » |
| *Գ* | » | » | *Դ* | » |
| *Դ* | » | » | *Է* | » |
| *Ե* | » | » | *Ը* | » |
| *Զ* | » | » | *Թ* | » |
| *Է* | » | » | *Զ* | » |
| *Ը* | » | » | *Ժ* | » |
| *Թ* | » | » | *ԺԱ* | » |

*Այսպիսով, ցանկում չի նշված Բ հոդվածի վերնագիրը, սակայն Բ հոդվածը պետք է լինի ոչ թե առանձին, որը, մեր կարծիքով, հետագա ընդօրինակությունների սխալի արդյունք է, այլ Ա հոդվածի շարունակությունը։ Այդ երևում է Ա հոդվածի ցանկի վերնագրից, ինչպես նաև Ա և Բ հոդվածների բովանդակությունից։ Այնուհետև Բ հոդվածի ցանկի վերնագիրն արտահայտում է ոչ միայն Գ հոդվածի, այլև Ե հոդվածի բովանդակությունը։ Նշանակում է այստեղ գործ ունենք միևնույն հոդվածի կրկնության հետ։ Վերջապես՝ համարյա բոլոր ձեռագրերում (բացառությամբ յոթ ձեռագրի) Ժ և ԺԱ հոդվածները միացված են և գրված մեկ հոդվածի՝ Ժ-ի տակ, սակայն ցանկում այդ հոդվածն ունի երկու առանձին վերնագիր։ «Ը. Դեւք առանց հրամանի Աստուծոյ ոչ իշխեն մտանել ի մարդ» և «Թ. Դիւահարի չհաղորդել մինչեւ սրբեսցի»։ Ի դեպ՝ Ո ձեռագրի գրիչն ավելի վաղ նկատել է այս անկանոնությունը և ձեռագրի 277բ էջի ներքևի լուսանցքում ավելացրել է. «Ցանկս տարակոյս է, զգոյշ լեր եւ մի՛ մեղադրեր, զի յաւրինակն այսպէս գտաք»։*

*Այս շեղումները ցույց են տալիս, որ ժամանակի ընթացքում, Հովհաննես Օձնեցու Կանոնագրքի կազմվելուց հետո, ընդօրինակությունների միջոցով տեղի են ունեցել որոշ խանգարումներ։*

*Այս ցանկը չի պահպանվել № 659 ձեռագրում։*

**Առաջաբան**, էջ 492: *Այս առաջաբանը մեզ ծանոթ ձեռագրերից ունի միայն № 659 ձեռագիրը երկու տեղ, նախ՝ Հովհ. Մանդակունու կանոնախմբում, ինչպես Կանոնագրքում է, երկրորդ՝ Հովհ. Օձնեցու կանոնախմբի ԼԲ հոդվածին առընթեր (ձեռագրում այդ հոդվածը համարակալված է ԺԸ)։ Վերջինս որոշ շեղումներ ունի Կանոնագրքի ունեցածից. «Զմեծ եւ զսուրբ եւ զմարդասէր եւ զբարերար տեառնէ պարտիմք գոհանալ, որ արար զմեզ բանաւորս եւ հոգեւորս եւ ետ մեզ ճանաչել զանուն իւր սուրբ եւ ասէ. Ես ընդ ձեզ եմ յաւիտեանս ժամանակաց» (էջ 273ա)։*

**Հոդ. Ա, Բ**, էջ 492—493: *Հովհ. Օձնեցու «Սակս ժողովոց ի Հայս» աշխատության Մատենադարանի № 500 ձեռագրի պահված օրինակում, թվելով Մանազկերտի ժողովում վերահաս-*

*տատված կանոնները, վերջում դրված է. «Եւ զկանոնս սրբոյն Սահակայ եւ Յոհաննու Մանդակունոյ վերստին հաստատեցին» (էջ 274բ)։ Նույն բանը երևում է Օձնեցու «Սակս ժողովոց ի Հայս» աշխատության «Գիրք Թղթոց»-ի օրինակից։ Մեջբերելով Հովհ. Մանդակունու մի շարք հոդվածները, որոնք քննվել են Մանազկերտի ժողովում, Հովհաննես Օձնեցին այնուհետև ավելացնում է. «Այս աւանդ կացցէ ի վիճակիս մերում եւ այս մատենագիր եղիցի ամենայն Հայաստանեայց, որք ընդ ձեռամբ մերով հաւանեալ կան ի պահեստի։ Ահաւասիկ ես Յովհաննէս Հայոց կաթուղիկոս գրեցի իմով ձեռամբ դայս կանոնս, հաստատութեամբ սուրբ հաւատոյ...» (էջ 232, տես և հմմտ. № 3076, էջ 119ա, բ, ընդգծումը մերն է—Վ. Հ.)։*

*Հովհ. Օձնեցու կանոնախմբի մի օրինակը, որը պահված է Մատենադարանի № 659 ձեռագրում (էջ 263բ—267ա), բաժանված չէ առանձին հոդվածների։ Կանոնագրքում եղած Ա և Բ հոդվածները չեն տարբերվում № 659 ձեռագրի համապատասխան հոդվածներից։ Մինչդեռ նույն ձեռագրում պահվող՝ Հովհաննես Օձնեցու կանոնախմբի մի այլ տարբերակի (էջ 267ա—273բ) վերջին հոդվածը Հովհան. Մանդակունու Ա և Բ հոդվածներն են, այդ մասը բերում ենք ամբողջությամբ. «ԺԹ. Կանոնք միաշաբաթուն ոչ հրամայեցին պահել և յայտնի է, զի շաբաթն աւր երեկունն ապաշխարողաց ոչ քարոզին մի դէմս ըստ Մովսիսի աւրինադիր հրամանին. եւ այս՝ դի կարապետ է թաղաւորին յառաջընթաց, ընդ առաջ ելանէ ճրագաւք եւ մոմեղինովք կիւրակէին յաղագս կանոնական կարգաւորութեանն, այլ վասն սրբոյ կիւրակէին պահելոյ ոչ կանոնք հրամայեն պահել եւ ոչ վաղապետք, եւ ոչ մեք հրամայեմք. այլ նզովեմք եւ անէծս ի վերայ դնեմք որ[պէս?] առաջինքն որ ի Նիկիայ սուրբ հարքն, այլ և ոչ ծնդրադրութիւն առնելս» (էջ 273ա, բ)։ Համեմատությունը ցույց տվեց, որ այս մեջբերումը համապատասխանում է ոչ թե Հովհաննես Օձնեցու ԼԱ հոդվածին, այլ, Հովհան Մանդակունու կանոնախմբի Ա և Բ հոդվածներին և վերցված է, ամենայն հավանականությամբ, Հովհաննես Օձնեցու «Սակս ժողովոց ի Հայս» աշխատության որևէ տարբերակից, թեև նման տարբերակ մեր Մատենադարանի ձեռագրերում չգտանք։ Մատենադարանի № 948 ձեռագրի տարբեր մասերում, տարբեր վերնագրերով, պահվել են Հովհան Մանդակունու կանոնախմբի երկու ընդարձակ հատվածներ. բերում ենք դրանք լրիվ.*

*«Կանոնք Եկեղեցւոյ սուրբ ժողովոյն.*

*Ոչ հրամայեմք ի շաբաթու կամ ի կիւրակէի պահել եւ յայտ աստի է, զի շաբաթն որ ապաշխարողացն ոչ քարոզի, քանզի նախ յառաջին հրամանէն պատուէր. եւ զարձեալ, զի կարապետ է, ընդ առաջ ելանել մեծի կիւրակէին ճրագօք, ոչ հրամայեցին պահել կանոնք եւ ոչ վարդապետք, այլ նզովս արկին պահողացն ՅԺԸ եպիսկոպոսք որ ի սուրբ ժողովն։*

*Այլ յաւուր կիրակէի եւ զատկէն մինչև ցպենտեկոստէ ծունր ոչ հրամաեցին դնել յաղաւթս կալն եւ ոչ պահել։ Ապա եթէ ասիցէ ոք ի պաս քառասնորդացն եթէ ձէթ ծառոյ բերե եւ ձուկն ջրոյ և գինի որթոյ, ով անհեդեդ սգաարանք, այն իսկ են Նեստորի աղանդն անիծելոյն. քանզի մեծ մարգարէն Մովսէս՝ զձուկն միս ասաց, եւ առաքեալ վկաեաց՝ քանզի մարմին է, եւ Բարսեղ Կեսարացի՝ զազան ասաց զձուկն եւ անյիշելին Նեստոր՝ ջուր։ Արդ՝ ո՞րպես է նա ջուր, զի կենդանի է ամենևին, մի՞թէ իցէ ինչ պակաս արդեաւք կամ մարմնով կամ թռչելով։ Գիրք ասեն զսկեզտն շուն երեք գլխեան եւ դհիտրայն (կարդա զհիդրայն) եւս չար քան զնա, բայց սակայն զիւրեանց որգիսն ոչ ուտեն, այլ ձուկն ուտէ եւ մարդ եւս ուտէ։ Այլ եւ կան հաւք ջրայինքն եւ բնաւ ոչ ոք է, որ առանց ջրոյ սնանի։ Գիրք զձուկն կենդանի ասէ եւ զեղ եւ զձեթ մի ասէ. Եսայի ասէ. «Փայտ իւղոյ». եւ Դաւիթ ասէ. «Ծերութիւն իմ ի ձէթ պարարտութեան». եւ աւետարան ասէ՝ «Տուք մեզ յիւղոյդ ձերմէ», զի ահա յայտ է եթե իւղ եւ ձեթ մի է։ Եւ Ադամ ոչ եթէ պանիր եկեր եւ էլ ի դրախտէն, այլ պտուղ ծառոյ։ Այլ վասն գինոյ ասեն գիրք. «Զարբեցողն չար քան զգիւահարս»։ Եւ առաքեալ ասէ. «Մի արբենայք գինով, յորում զեղխութիւն է». զի եթէ Նոյի հրամաեաց ըմպել գինի վասն տրտմութեանն, այլ ոչ ի զեղխեալ, զի մինչեւ ցնոյ ոչ էր գինի, այլ խաղող միայն։ Ապա Նոյի հրամայեց ըմպել վասն տրտմութեանն, նոյնպէս եւ մեզ տուեալ է յուրախութիւն, այլ ոչ ի զեղխութիւն, այլ կերակուր յորժամ ուտեմք ի Նմին կամք, այլ յորժամ արբենամք՝ զանվաեւլուչն խաւսիմք, զոր մարգարէն Եղկելիս ասէ զայնոսիկ եթէ. «Վա՜յ որ յառնէքն ընդ առաւաւտն եւ զհետ երթան ցքոյնս»։ Եթէ մոլորեցան եւ դանդաղեցին վասն գինւոյ, քահանայքն եւ մարգարեքն նաև յառաջ ուխտաւորքն Սամուել եւ Սամսովն եւ որդիքն Յունադաբա միս ուտէին, բայց գինի եւ իւղ ոչ ըմպէին։ Գիրք ասեն եթէ հացիւղի եւ մեղրիւղի եւ ամբրաւիւղի մի են, եւ պանիր, ձուկն, ձէթ եւ գինի մի են։ Եւ եթէ ասէ՝ եթէ ձու Ի աւր կենդան լինի, այլ եւ ի կենդանի անասնոցն, եւ եթե Ի աւր կերակուր չլինի՝ մեռանի։*

*Զչորեքշաբաթ եւ զուրբաթ պարտ է պահել, բայց ի գործոց պարապեցուցանել մեզք են, նոյնպէս եւ զմարտիրոսաց յիշատակս թէ ի նոսա դիպեսցեն փոխել պարտ է ի հինգշաբաթն եւ*

ոչ պարտի յուրրաթու կատարել, եթէ զմեծ աւր ուրբաթու եկեղեցի ընդ պահաւք հրամայէ արկանել յորում գիրք զկենդանարար խաչելութիւնն պատմեն, որ եւ զմարդիկ ի ծառաութենէ մեղաց փրկեաց. արդ զնա պահել հրամաեցին եւ զայլ ուրբաթսն որ ի զատկէն մինչ ի Պենդեկոս[տ]ն ունել» (էջ 56ա—57ա)։

«Յովհաննու Մանդակունայ ասացեալ.

Դուք առանց հրամանի Աստուծոյ ի մարդ ոչ կարեն մտանել. եւ յայտ ի Սաւուղա է, զի աւէին [ծ]առայքն Սաւուղա. Ահա այս չար ի տեառնէ խեղդէ զքեզ։ Եւ վասն Յովբա Աստուած ետ հրաման, զի աւէ Տէր ցսատանա. Ահա մատնեմ զնա քեզ։ Եւ յերամակն խոզից ոչ կարացին մտանել դեւքն։ Ապա զի՞ արդ իշխեն մտանել ի մարդ առանց հրամանի Աստուծոյ։ Բայց ասեն գիրք. Որ անմեղն է եւ առաքինին՝ անդի իսկ ի յովմանց պատիժս խնդրէ և զոմանս խրատէ, բայց աւրէնս ոչ է պարտ առնուլ մինչեւ սրբեսցի։ Ապա թէ ի նմին վախճանի ընդ մարտիրոսսն պսակի, զոր առաքեալ աւէ. «Մատնել զայնպիսին ի սատակումն մարմնոյն, զի ոգին ապրեսցի». (էջ 29ա)։

Վերևում բերված առաջին հատվածը, որոշ շեղումներով, համապատասխանում է Հովհան Մանդակունու կանոնախմբի Ա, Բ, Դ, Դ, Ը հոդվածներին, որոնք երբեմն ավելի ընդարձակ են. օրինակ՝ № 948 ձեռագրի բնագիրը չունի Դ հոդվածի «Բայց զոր»-ից (էջ 496, տող 6) սկսած մինչև նույն հոդվածի վերջը և այլն։ Իսկ երկրորդ հատվածն աննշան տարբերությամբ ծածկում է Ժ և ԺԱ հոդվածները։

Ինչպես դժվար չէ նկատել, վերը բերված հատվածները բաժանված չեն առանձին հոդվածների (ինչպես № 659 ձեռագրում է), այլ թողնում են այլ և այլ առիթներով, զանազան ժամանակներում դրված, կանոնական տարբեր գրությունների տպավորություն (այդ հատվածների վերնագրերը ավելացված են հետադայում, ընդօրինակությունների ժամանակ)։ Կանոնական այս գրությունների առանձին գոյությունը և վերջիններիս հոդվածների բաժանված չլինելը կարծել է տալիս, որ սրանք մինչև Կանոնագրքի մեջ մուծվելը, և դրանից էլ հետո, գոյություն են ունեցել, որպես անկախ բնագրեր, ինչպես Բարսեղ Կեսարացու կանոնախմբի վերջին՝ ՃԱ. հոդվածը (տես վերևում, էջ 620—621)։ Իսկ ինչ վերաբերում է Հովհան Մանդակունու կանոնախմբի Ե, Զ, Է հոդվածներին, որոնք չեն պահվել № 948 ձեռագրի վերոհիշյալ բնագրերում, ըստ երևույթին սրանք ևս Հովհան Մանդակունու մի այլ կանոնական գրությունից վերցված նյութեր են, որոնց, սակայն, առանձին, Կանոնագրքից անկախ, մեզ չեն հասել, թեև է հոդվածը գտնում ենք սույն աշխատության երկրորդ հատորում զետեղված՝ Հովհան Մանդակունու մի այլ կանոնախմբի մեջ։ Նույն բովանդակություն ունեցող Գ և Ե հոդվածների կրկնությունը Կանոնագրքի Հովհան Մանդակունու կանոնախմբում, հավանաբար, պետք է բացատրել Մանդակունու կանոնական տարբեր գրություններից օգտվելու փաստով։

Հովհան Մանդակունու Կանոնախմբի Դ, Է, Ը, Թ հոդվածները որոշ շեղումներով հանդիպում են «Գիրք թղթոց»-ում (էջ 231—232). սկիզբ. «Ո՛վ անհեթեթ ղղայարան», հմմտ. Կանոնագիրք, էջ 493, տող 12. վերջ. «Յիսուսի ծնունդն էր այսպէս», հմմտ. նույն տեղում, էջ 499 տող 3)։ «Գիրք թղթոց»-ում պահված հատվածների մեջ կան այնպիսիներ, որոնք մոտ են Կանոնագրքի՝ Հովհան Մանդակունու կանոնախմբի հոդվածներին, սակայն կան նաև այնպիսիներ, որոնք մոտ են № 948 ձեռագրի բնագրին։ «Գիրք թղթոց»-ը ևս № 948 ձեռագրի նման չունի Դ հոդվածի «Բայց զոր»-ից (էջ 496, տող 6) սկսած մինչև հոդվածի վերջը։ Մեր նշած հատվածը մուտք է գործել «Գիրք թղթոց»-ում Հովհան. Օձնեցու «Սակս ժողովոց ի Հայս» աշխատության միջոցով, որպես մեջբերում։

Հոդ. Զ, Ը, էջ 497, 498: № 659 ձեռագրում պահված Զ և Ը հոդվածների ոչ այնքան մեծ տարբերությունները ցույց տալու համար կբերենք այդ երկու հոդվածները. «Ի Պենտակոստէից մինչև զվարդեվառն մին շաբաթն ուտի, երկուն պահի։ Վարդեվառն տաւն առաքելոցն է և մատրունք ըստ հնումն, ի Նորումն Նաւակատիք սուրբ եկեղեցւոյ եւ մարտիրոսաց յիշատակ» էջ 266ա, բ)։ «Ը. Եւ որք ի չորեքշաբաթու և յուրբաթու մարտիրոսաց յիշատակ առնեն՝ մեղք են, զի եթէ ի կարգի էր. ապա ի զատկին ուրբաթն աւր պարտ էր առնել մատաղ, զի Քրիստոս աստուած արարիչն երկնի եւ երկրի յուրբաթուն խաչեցաւ եւ ընթերցուածք եւ Սաղմոս եւ Աւետարան այն աւր շատ են. եւ այն աւր ամենայն մարդիկ ազատեցան ի ծառայութենէ մեղաց եւ դրախտն այն աւր բացաւ ի ձեռն աւազակին եւ զմարդիկ ի ծառայութենէ այն աւր զերծոյց Քրիստոս, բայց կարգք եկեղեցւոյ զայն ուրբաթ պահել հրա[մա]յեն եւ փոխանակ նորա ուտել զայլ ուրբաթսն մինչեւ ցՊենտակոստէն» (էջ 266բ—267ա)։ Իսկ Կանոնագրքում պահված Ժ և ԺԱ հոդվածները № 659 ձեռագրում չեն պահվել. այստեղ Հովհան Մանդակունու կանոնախումբը ավարտվում է Կանոնագրքում պահված Թ հոդվածով։

## ԱԲՐԱՀԱՄ ՄԱՄԻԿՈՆԵԻՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Հոդ. Ա, էջ 501—502: *Այս հոդվածը որպես առանձին նամակ, ուղղված Աղվանից Վաչագան թագավորին, գտնում ենք «Մովսէսի Կաղանկատուացւոյ պատմութիւն Աղուանից աշխարհի» (Թիֆլիս, 1912) աշխատության մեջ, որպես Ա հատորի 25-րդ գլուխ՝ «Երանելւոյն Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի առ Վաչական Աղուանից արքայ թուղթ սակս ննջեցելոց» խորագրով (էջ 96—97)։ Մեզ թվում է, որ այս նամակը Կանոնագրքի մեջ մտել է Մովսես Կաղանկատվացու Պատմությունից անկախ։ Իսկ հաջորդ Բ և Գ հոդվածները, որ այլուր չգտանք, ըստ էության Ա հոդվածի նման առանձին նամակներ են և չեն մտել Մովսես Կաղանկատվացու Պատմության մեջ, բայց մտել են Կանոնագրքում։*

## ՍԱՀԱԿ ՁՈՐՈՓՈՐԵՑՈՒ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Առաջին վերնագիր, էջ 506: *Մի քանի ձեռագրերում այս կանոնախումբը սխալմամբ վերագրված է Մովսես Քերթողահորը և վերնագրում էլ վերջինիս անունն է գրված. «Կանոնք Մովսէսի Քերթողահօրն բան (№ № 648, 3562 ձեռագրերում՝ քան) հարցողաց, գլուխք ԺԵ» (№ 649, էջ 113բ. տես նաև № № 648, էջ 52բ, 650, էջ 123ա, 651, էջ 103բ, 2964, էջ 157ա, 3562, էջ 332ա)։*

Ցանկ և երկրորդ վերնագիր, *էջ 506—507։ Վերևում նշված ձեռագրերը այս ցանկը և երկրորդ վերնագիրը չունեն։ Ձեռագրերի մեծ մասը երկրորդ վերնագրում ունի «քաղաքայ», թեև սխալ հոլովաձևով, փոխեցինք փոքրաթիվ ձեռագրերի ունեցածով՝ «քաղաքացս», բայց սա էլ միտքը հասկանալի չի դարձնում։ Մեզ թվում է «Սիւնականի քաղաքացս» բառերի միջև եղել է մի բառ, օրինակ, «ի Միջագետաց», որը և ընկել է։*

Հոդ. Ա, էջ 508: *Հարցը աննշան շեղում ունի նշված ձեռագրերում. «Թէ պար[տ] իցէ եպիսկոպոսին մինչ յեկեղեցոջ անդ իւրում իցէ և գործ եպիսկոպոսութեան իցէ առ նմա երկաբ արկանել յանձն իւր և այնու վարել զտեսչութիւն» (№ 649, էջ 113բ—114ա. տես նաև № № 648, էջ 52բ, 650, էջ 123ա, 651, էջ 103բ—104ա, 2964, էջ 157աբ, 3562, էջ 332ա)։*

Հոդ. Ե, Զ, էջ 509: *Կանոնագրքում նշված Ե հոդվածն այս ձեռագրերում գրված է Զ-ի տեղը և ընդհակառակը։*

Հոդ. Է, էջ 509—510: *Այս հոդվածի Հարցը և Պատասխանը մի քանի ձեռագրերում փոքր ինչ շեղվում են Կանոնագրքի ունեցածից «Հրց. Թէ պա՞րտ է որ ոք կրօնաւորեցաւ յանապատի և ուրկանայ կամ բորոտի, ի նմին յարամնալ ի կրօնաւորութեան յանապատի, թէ ի հիւանդանոցս երթալ։*

*Պատասխանի. Ոչ է պարտ թողուլ զտեղին եւ ի հիւանդանոցս երթալ, այլ ի նմին մըշտընջենաւորիլ կրօնաւորութեամբ յանապատին, բայց եթէ առ ի չընդունելեացն հարկ լինիցի փախչել» (№ 2964, էջ 158աբ. տես նաև № № 648, էջ 53ա, 649, էջ 114բ, 650, էջ 123բ, 651, էջ 104բ, 3562, էջ 332բ—333ա)։ № 650 ձեռագրում այնուհետև այս կանոնախմբից չի ընդօրինակվել և բնագիրը մնում է թերի։*

Հոդ. ԺԽ, էջ 513: *Պատասխանի վերջին «Այս ասպարէսք են նահատակաց... որ է ըստ ախտից մերոց» հատվածի փոխարեն № № 649, 651, 2964 ձեռագրերն ունեն «սուրբ հարցն և հառաջ Աստուծոյ փրկողին արարածոցս» (էջ 116ա, 106ա, 159բ), իսկ № № 648, 3562 ձեռագրերը չունեն «Այս ասպարէսք են նահատակացս» և «Ի սուրբ հոգւոյն որ և մեզ... որ է ըստ ախտից մերոց» հատվածները (էջ 54ա, էջ 333բ)։*

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ՕՁՆԵՑՈՒ ԿԱՆՆԱԽՈՒՄԲ

**Առաջին վերնագիր, էջ 514:** *Տանոթագրություններում օգտագործված՝ մեզ հայտնի ձեռագրերը չունեն այս վերնագիրը. միայն № 659 ձեռագիրը ունի «Ձանգ Յովհաննու Մանդակունւոյ» (էջ 267ա), ջնջված վերնագիրը, որի վերջին բառի վրա ուրիշներ գիծ են քաշել և ուղղել «Իմաստասիրի Օձնեցւոյ»։*

**Ցանկ, էջ 514—516:** *Այս ցանկը պահվել է միայն № 659 ձեռագրում։ Այն տարբեր է Կանոնագրքի ունեցածից և նոր է կազմված. ահա այդ ցանկը.*

*«ա. Եպիսկոպոսաց, երիցանց, սարկաւագաց արբեցութեան։*
*բ. Աշխարհականաց արբեցութեան։*
*գ. Ոչ դնելոյ պսակ ի շաբաթու եւ ի կիւրակէի։*
*դ. Վաղիւն պսակելոց։*
*ե. Ոչ դնելոյ պսակ յաւուրս պենտակոստէից։*
*զ. Ոչ է պարտ ի սուրբ քառասներորդն ի շաբաթ և ի կիւրակէ պատարագ չմատուցանել։*
*է. Պահոց իւրաքանչիւր։*
*ը. Վասն հացի պատարագի։*
*թ. Վասն իւղոյն աւծութեան։*
*ժ. Վասն մկրտութեան ձիթոյն։*
*ժա. Վասն հիւանդաց ձիթոյն։*
*ժբ. Վասն չառնելոյ սեղան փայտեայ։*
*ժգ. Աւազան աւրհնելոյ։*
*ժդ. Մկրտութիւն առնելոյ։*
*ժե. Պսակ առնելոյ։*
*ժզ. Երկրորդ ամուսնութեան։*
*ժէ. Աւուրն չաբաթոյ երեկոյին։*
*ժը. Կիւրակէի։*
*ժթ. Ջարաղանդ մծղնէից։*
*«Ի. Քառասնորդացն պահոց» (էջ 267ա, բ)։*

**Երկրորդ վերնագիր, էջ 516:** *№ 659 ձեռագրում ցանկից հետո եղած վերնագիրը սերտ աղերս ունի «Յովհաննու իմաստասիրի Աւձեցւոյ մատենագրութիւնք» (Վենետիկ, 1953)-ի մեջ պահված «Պատմութիւն վասն իւր ըստ առաջնումն կենցաղին ուսումնասիրոթեան...»-ի վերնագրի (էջ 1) հետ։ Ահա ձեռագրի պահած վերնագիրը. «Երանելւոյն տեառն Յովհաննու Հայոց կաթողիկոսի յառաջին կենցաղն եւ գալ նորա յաթոռ քահանայապետութեան եւ բազմապատիկ եւ զանազան կարգս եկեղեցւոյ հաստատեալ տու[ն]ս Ի» (էջ 267բ)։ Իսկ մի քանի ձեռագրերում գրված է. «նոյն կանոնք գլուխք ԺԸ» (№ № 648, էջ 63բ, 649, էջ 110բ, 650, էջ 120ա, 651, էջ 100բ, 2964, էջ 153բ, 3562, էջ 343բ. № № 649, 650, 651, 2964 ձեռագրերում ԺԸ-ի փոխարեն ԺԹ)։ Նշված ձեռագրերում «նորին կանոնք»-ին նախորդում է «Երանելւոյն Յոհաննու Իմաստասիրի» գրվածքը, որը այլ բան չէ, եթե ոչ «Յովհաննու իմաստասիրի Աւնեցւոյ մատենագրութիւնք»-ի առաջին բնագրի զանազան հատվածների քաղագրություն (տե՛ս § գ, էջ 5, § դ, էջ 8, § ե, էջ 9)։ Դրա համար էլ հիշյալ ձեռագրերում սրանից հետո գրված է. «նորին»՝ Հով. Օձնեցու։*

**Հոդ. Ա, Բ, էջ 516—517:** *Բացառությամբ № 659 ձեռագրի, մյուս ձեռագրերը չունեն Ա և Բ հոդվածները, իսկ վերջինիս ունեցածն առանձին շեղումներ չունի Կանոնագրքի ունեցածից, միակ տարբերությունն այն է, որ № 659 ձեռագիրը չունի «Մի՛ իշխեսցէ պաշտել զկարգն» կամ «մատչելի ի կարգն իւր եւ ի հաղորդութիւն»-ի փոխարեն ունի «մերձանալ ի կարգս իւր եւ հաղորդ լինել» (էջ 268ա)։*

Հոդ. Է, էջ 518—519: *№ 659 ձեռագրում այս հոդվածը միացված է նախորդի հետ և նշված՝ Ջ համարի տակ (էջ 269ա, բ)։*

Հոդ. Ը, էջ 519: *№ 651 ձեռագիրը չունի այս հոդվածի վերջին՝ «և մեզ ի նմին..., նորաձև ինչ» մասը։*

Հոդ. Թ, էջ 519—520: *Բնագրի «եւ իւրաքանչիւրոց եպիսկոպոսացն միանգամ ի Ջատկին հինգշաբթի աւր» (տող 12—13) հատվածի «եպիսկոպոսացն միանգամ» բառերի միջև պետք է լինի բայը, օրինակ՝ «բաշխել», որը և ոչ մի ձեռագիր չունի, այլապես միտքն պարզ չէ։ Մի քանի ձեռագրերում այս հոդվածը ենթարկվել է թեթև խմբագրման, տե՛ս և հմմտ. հետևյալ հատվածը. «... գիւղն անուշահոտութեան, հայրապետին աւրհնել միանգամ ի զատկի հինգշաբթին օր, որպէս եւ հրամայեալն է. եւ իւրաքանչիւր եպիսկոպոսացն եւ քահանայիցն ի նմանէ ընդունել...» (№ 648, էջ 64բ. հմմտ. №№ 649, էջ 112ա, 651, էջ 101բ, 2964, էջ 155ա, 3562, էջ 344բ)։ Իսկ № 650 ձեռագրում չի պահվել «եւ յայլ ի պէտս աւծման..., աւրհնել քահանայն» (էջ 121բ) վերջին հատվածը։*

Հոդ. ԺԴ, էջ 521: *№№ 650, 651 ձեռագրերում չի պահվել այս հոդվածի վերջին մասը. «եւ ապա տանել... եւ մկրտել»։*

Հոդ. ԺԷ, էջ 523: Եզ *ձեռագրերում այս հոդվածը դրված է ԺԸ հոդվածի տեղը և ընդհակառակը։*

Հոդ. ԺԸ—ԼԹ, էջ 523—535: *№№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում չեն ընդօրինակված ԺԸ—ԻՁ, ԻԸ, Լ և ԼԲ հոդվածները, իսկ № 659 ձեռագրում՝ ԺԹ—ԼԱ հոդվածները։*

Հոդ. ԻԴ, էջ 527—530: a *ձեռագրում բնագրի «պատճառին» բառի վրա հատուկ նշանով աջ լուսանցքում կարմիր թանաքով դրված է. «զաւրհնեցէք մանկունք զտէրն ասէ», (էջ 190ա)։*

Հոդ. ԻԹ, էջ 533: *Մի քանի ձեռագրերում այս հոդվածի վերջին «աւանդիչս» բառի փոխարեն գտնում ենք «հարսն մեր» (№№ 648, էջ 66ա, 649, էջ 113բ, 650, էջ 122բ, 651, էջ 103բ, 2964, էջ 157ա, 3562, էջ 346ա)։*

Հոդ. ԼԹ, էջ 534—535: *№ 659 ձեռագրում այս հոդվածի վերջում, որպես շարունակություն, կցված է. «զմեծ եւ զսուրբ եւ զմարգասէր եւ զբարերար տեառնէ պարտիմք ղոհանալ, որ արար զմեզ բանաւորս եւ հոգեւորս եւ ետ մեզ ճանաչել զանուն իւր սուրբ եւ ասէ. «Ես ընդ ձեզ եմ յաւիտեանս ժամանակաւ» (էջ 273ա)։ Սակայն այս մեջբերումը կապ չունի Հովհան Օձնեցու կանոնախմբի հետ և պատկանում է Հովհան Մանդակունու գրչին (տե՛ս և հմմտ. վերևում, էջ 492, 535)։ Եվ պատահական չէ, որ № 659 ձեռագրում այս մեջբերմանը հաջորդում են Հովհան Մանդակունու կանոնախմբի Ա և Բ հոդվածները, որոնք ձեռագրում գրված են որպես Հովհան Օձնեցու կանոնախմբի ԺԹ հոդված։ Քանի որ № 659 ձեռագրում Հովհան Օձնեցու կանոնախմբին նախորդում և հաջորդում են Հովհան Մանդակունու գրվածքները, այդ պատճառով էլ այստեղ Հովհան Օձնեցու կանոնախումբը ներկայացված է Մանդակունու անունով։*

## ԿԱՆՈՆԱԳՐՔԻ ՀՆԱԳՈՒՅՆ ԲԵԿՈՐՆԵՐ

*Կանոնագրքի ունեցած կանոնախմբերի հաջորդականությամբ Հավելվածում հրատարակում ենք մեր Մատենադարանի երկու ձեռագրերի պահպանակների և չորս պատառիկների նկարագրությունը և սրանց բովանդակած բնագրերը ամբողջական ձևով։ Կետադրությունը պահպանված է նույնությամբ, բաց են արված համառոտումները։ Այդ նյութերի գրության ժամանակը որոշված է մոտավորապես, ելնելով նրանց հնագրական տվյալներից։*

*Ա. № 4201 ձեռագրի պահպանակ[1]. 2 թերթ. մեկը ձեռագրի սկզբում, մյուսը՝ վերջում, երկուսն էլ մագաղաթ։ Առաջին թերթի մեծությունն է 25×20,5, երկրորդինը՝ 26×18. գիր՝ միջին մեսրոպյան խոշոր երկաթագիր. երկսյուն։ Առաջին թերթում 20 տող, երկրորդում՝ 18, վերջինս վնասված է՝ պահպանակը ձեռագրի չափսին դարձնելու նպատակով վերևի լուսանցքի հետ երկու տող կտրված է։ Պահվել է վերջաբանի կարգահամարը՝ ԼԳ։ Ժամանակը՝ IX—X դարեր։*

*Պահպանակը բովանդակում է Առաքելական (Ա) կանոնախմբի ԼԳ հոդվածի ընգարձակ հատվածից (հմմտ. Կանոնագրքի 48-րդ էջի 8-րդ տողի «յայտնել զառականս մերձաւորի արեան իւրոյ») մինչև վերջաբանի սկզբի ընդարձակ մասը (հմմտ. Կանոնագրքի 52-րդ էջի 11-րդ տողը «իսկ իբրև լուան ղայս ամենայն որդիք քահանայիցն»)։*

*Բ. Պատառիկ № 347. թերթ 4. մագաղաթ. մեծություն՝ 17×11,8. գիր՝ միջին մեսրոպյան մանր երկաթագիր. միասյուն. տողեր՝ 30։ Պատառիկի 1ա, 2ա և 3բ էջերում մելանը թափված է, գիրը մաշված, աջ և ձախ եզրերը սևացած, համարյա անընթեռնելի, բայց գրչի (գրելու հարմարանքի) ճնշման հետևանքով տառերի հետքերը նկատելի են. մագաղաթյա թերթերը կուչ են եկած, եզրերից տեղ-տեղ պատռված։ Այդ պայմաններում 1ա էջը կարդացվեց մասնակի կերպով, իսկ 3բ էջը չկարողացանք կարդալ։ Պահվել են հոդվածների մի քանի մասնավոր կարգահամարներ. ժամանակ՝ XI—XII դարեր։*

*Պատառիկը բովանդակում է Կղեմեսի կանոնախմբի ԽԵ—ԽՁ, ԾԹ-ից (սկիզբը չի պահվել) մինչև ԾԸ (վերջից չի պահվել)[2] հոդվածները, ԿԹ հոդվածի վերջից մինչև ՀԸ հոդվածը, ՁԳ հոդվածից[3] մինչև ՁԴ և երեք այլ հոդվածներ, որոնք չենք գտնում Կանոնագրքի ձեռագրերի մեծ մասում, բայց հանդիպում ենք Կանոնագրքի մի քանի օրինակներում՝* befgq *և 659 ձեռագրում։ Միայն վերջին ձեռագրում է պահվել պատառիկում նշված ՁԴ հոդվածի «այսոքիկ է յաղագս կանոնացս» հատվածից մինչև վերջ։ Պատառիկի չորրորդ թերթը հարց ու պատասխան է, որը Կանոնագրքի այս հատորի կանոնախմբերին չի պատկանում, այդ պատճառով էլ այստեղ չենք հրատարակում։*

*Գ. № 2151 ձեռագրի[4] պահպանակ. 4 թերթ, երկուսը ձեռագրի սկզբում, երկուսը՝ վերջում, չորսն էլ մագաղաթ. մեծություն՝ 17,5×12,5. գիր՝ միջին մեսրոպյան երկաթագիր. միասյուն. տողեր՝ 20. վերջին երկու թերթը վնասված՝ պահպանակը ձեռագրի չափսին դարձնելու նպատակով վերևի լուսանցքի հետ երկու տող կտրված է։ Վերջին պահպանակի առաջին թերթի մեջտեղում հենց սկզբից եղել է ծակ, 3 սմ տրամագծով. 4 թերթերն էլ մի փոքր դեղնած են, իսկ առաջին թերթի ներքևի մասը կեղտոտված. պահվել է միայն IV հոդվածի կարգահամարը՝ Դ. ժամանակ՝ X դար։*

---

*[1] Ձեռագիրը 1492 թ. ընդօրինակություն է (էջ 364բ)։*

*[2] Բնագրում հոդվածների կարգահամարները Կանոնագրքի ունեցածից մեկով ավել է՝ ԾԴ հոդվածը պատառիկում նշված է ԾԴ և այլն։*

*[3] Կանոնագրքի ՀԸ (պատառիկի ՀԹ) հոդվածին պատառիկում հաջորդում է Ձ, որը Կանոնագրքի ունեցած Կղեմեսի կանոնախմբի ՁԳ հոդվածն է։ Այսպիսով պատառիկում չեն պահվել թվով 4 հոդված՝ ՀԹ—ՁԲ։*

*[4] Ձեռագիրը 1587 թ. ընդօրինակություն է (էջ 174ա)։*

Պատպանակը բովանդակում է Բարսեղ Կեսարացու կանոնախմբի հոդվածների ցանկը՝ սկզբից վնասված, իսկ վերջից թերթ է ընկած, ապա Գ, Դ, Ե, Ժ հոդվածները սկզբից և վերջից պակասավոր, Հունարենի 15, 16, և 47-րդ հոդվածները, որոնք չեն մտել Կանոնագրքի Բարսեղ Կեսարացու կանոնախմբում. վերջից թերի մի հատված, հավանաբար նրա մի այլ նամակից, որի մասին առայժմ ոչինչ չենք կարող ասել։

Դ. Պատառիկ № 1216. թերթ՝ 1. մագաղաթ. մեծություն՝ 15×11,5. գիր՝ միջին մեսրոպյան երկաթագիր. միասյուն. տողեր՝ 17. ընագիրը շատ է վնասված՝ մագաղաթի մեջտեղում 3 սմ տրամագծով ծակ կա. բացի կազմին ամրացված կողմից՝ մնացած եզրերը մաշված են և սեացած. ժամանակ X—XI դարեր։

Պատառիկը բովանդակում է Սահակ Պարթևի կանոնախմբի ԽԴ հոդվածի «ժառանգութեան յարքայութեանն Քրիստոսի եւ աստուծոյ» (էջ 402, տող 10) հատվածից մինչև ԽԶ հոդվածի «զտոհմային գայգականաց պէսպէս» (էջ 405, տող 13) հատվածը։

Ե. Պատառիկ № 608. թերթեր՝ 4. մագաղաթ. մեծություն՝ 23,5×17. գիր՝ միջին մեսրոպյան երկաթագիր. տողեր՝ 26, միասյուն։ Այս պատառիկը ժամանակին եղել է մեր Մատենադարանի № 4979 ձեռագրի պահպանակը[1]։ Այդ պատճառով վերջինս ձեռագրի չափսին դարձնելու նպատակով վերևի լուսանցքի հետ կտրել են նաև 1—2 տողեր. պատառիկի եզրերը մաշված են և կեղտոտված։ Պահվել են հոդվածների մասնավոր կարգահամարներ, բայց և նկատելի են նաև ընդհանուր համարներ, թեև դրանք ավելացվել են հետագայում։ Ժամանակ՝ IX—X դարեր։

Պատառիկը բովանդակում է Շահապիվանի ժողովի կանոնախմբի ԺԶ հոդվածի «նստուցանեն վասն կորուսիչ արծաթոյն» (էջ 456, տող 10) հատվածից մինչև Ի հոդվածը և ապա Ներսեսի և Ներշապուհ եպիսկոպոսի կանոնախմբի ցանկից (էջ 475, տող 1) մինչև ԺԳ հոդվածի «ի սուրբ եկեղեցին հատուցեն ամենայն յաւժարութեամբ» (էջ 483, տող 8) հատվածը։

Զ. Պատառիկ № 1735, թերթ՝ 1, մագաղաթ. մեծություն՝ 15,6×12 և 10. թերթի վերևի մասը լայն է, քան ներքևինը. գիր՝ միջին մեսրոպյան երկաթագիր. միասյուն. տողեր՝ 20. ընագիրը շատ է վնասված, բացի կազմին ամրացված կողմից մնացած եզրերը մաշված են, մելանը շատ հաճախ թափված. ընթերցեցինք գրչի (գրելու հարմարանքի) ճնշման հետևանքով առաջ եկած տառերի հետքերին հետևելով. ժամանակ՝ X—XI դարեր։

Պատառիկը բովանդակում է Հովհաննես Օձնեցու կանոնախմբի Ը հոդվածից մինչև Ժ հոդվածը, ապա ԺԴ հոդվածից մինչև ԺԶ-ի «պարտ է ըստ առաջին կարգին» (էջ 522, տող 7) հատվածը։

---

[1] Այս տեղեկությունը մեզ հաղորդեց Մատենադարանի ձեռագրատան աշխատակից ընկ. Թ. Եղանյանը։

## Ա.

### ԱՌԱՋԻՆ ՊԱՀՊԱՆԱԿ

1ա

յայտնել զառականս
մերձաւորի արեան իւրոյ.
զառականս դստեր քո մի
յայտնես[ց]ես. զառակ
անս քեռ քո թէ առ ի ի(sic) հա
ւրէ իցէ կամ առ ի մաւրէ
[մի] յայտնեսցես, զա
ռականս կնոջ հաւր քո
մի յայտնեսցես, զառ
ականս հաւրաքեռ քո մի
յայտնեսցես, զառակ
ականս հաւրաքեռ քո մի
յայտնեսցես պղծելով
ընդ նոսա, նոյնպէս
եւ յերկրորդումն կար
[գ]եաց աւրէնսդիրն մով
սէս յանէծսն եւ ասէ.
անիծեալ լիցի որ ննջի
ցէ ընդ կնոջ հաւր իւրոյ
զի յայտնեաց զաներւ

ոյթս հաւր իւրոյ. անի
ծեալ որ ննջիցէ ընդ քեռ
իւրում. որ առ ի հաւրէ
իցէ կամ առ ի մաւրէ. եւ
ասասցէ ամենայն ժողով.
ուրդն եղիցի եղիցի,
նոյնպէս սահմանեալ
առաքելական կանոնացս.
մարդ ոք մարդ առ ամեն
այն ընտանութիւն մար
մնոյ իւրոյ մի մերձես
ցի. կամ շնութեամբ.
կամ ամուսնութեամբ
մինչեւ ի ցչորրորդ զա
րմն չունի իշխանութ
իւն առնել:
ԼԳ Եւ արդ զայս ամենայն
զոր ինչ կարգեցին եւ եդ
ին առաքեալքն. ոչ եթէ
անձանց իւրեանց միայն

1բ

կարգեցին. այդ եւ այ
նոցիկ որ եւ զկնի իւրե
անց լինելոց իցեն. քանզի
կսսկա[ծէին թ]է պատրաս
տեալ են գայղք զգենուլ
զգեստ զառանց. եւ առ
նել կոտորած ի մէջ հաւտ
ից քրիստոսի. քանզի ոչ եթէ
նոցա պէտք ինչ էին կարգ
աց եւ աւրինաց. որ ինքե
անք իսկ էին աւրէնսղիրք.
զի խրատեալ եւ վարժեսլք

էին ի ճշմարիտ վարդապ
ետէն. եւ մխիթարիչ
հոգին սուրբ բնակէր ի նո
սա. զի զոր աւրինակ ետ
կարգել նոցա հոգին սու
րբ. զկարգս եւ զաւրէնս
զայսոսիկ առաւել եւս
առաջնորդեսցէ նոցա
ըստ կամաց իւրոց
որք ընկալան ի տեառնէ զ[աւրու
թիւն եւ իշխանութիւն
զիարդ մարթ էր եթէ [յայ]

յ իմիքի դնիցի նոցա [ար]
էնս. նաեւ սպաղոս եւ [տի]
մոթէոս շրջեին ի կ[ողմ]
անս կեսարացւոց եւ կի[լ]
իկեցւոց. զսոյն իսկ
զայս արէնս պատուիրե
ին. զառաքելոցն միմ[ե]
անց. եւ որք եին ընդ ձե
ռամբ առաքելոցն աշ[խա]
րհականքն ամենայն.
քարոզեին եւ աւանդեին
յամենայն եկեղեցիս.
Այղ աշակերտք տեառն յետ
դնելոյ զկարգ աւրինաց,
այսոցիկ, ոչ դադարե
ին ի քարոզելոյ զավետար
անն ///

## ԵՐԿՐՈՐԴ ՊԱՀՊԱՆԱԿ

### 1ա

զոր ասներ տէր ի ձեռս
նոցա. քանզի բազում ժ
ողովուրդք ժողովեին
համապաղ առ նոսա.
եւ հաւ[ա]տացին ի քրիստոս
որպէս եւ երեք հազարքն.
զնոյն հետոց եկեալ աս
են ցպետրոս. զինչ գո
րծեսցուք արք եղբարք.
ասէ պետրոս. ապաշխա
[եցարուք] եւ մկրտեցարուք
յանուն տեառն յիսուսի. եւ յայլ
ոց քաղաքաց քաղաքաց գա
ին առ նոսա եւ լսեին եւ
ընդունեին զբանս նոցա.
նաեւ նիկոդեմոս եւ գամ
աղիել գլխաւորք ժողով
րդեան. գային առ առ ///
[վարդ]ապետութեանն. այղ եւ
յուռա եւ դեւի. եւ փեռի
եւ յովսէփ, եւ յուստոս
որդիք անանիա, եւ կայ
իափայ, եւ ալեքսանդր
ոսի քահանայիցն. զաին
նոքա ի գիշերի, եւ խոս
տովան լինեին ի քրիստոս թե որ
դի աստուծոյ է. այղ երկնչեին
ի ժողովրդենէն յայտն
ել զխորհուրդս իւրեանց
որ առ աշակերտսն. զի
մի կշտամբեսցին ի հրե
իցն եւ ի քահանայապետիցն.
եւ ընկալեալ զնոսա առա
քելոցն սիրով, զաւկտա
կար խրատն ի մէջ առեալ
ասեին ցնոսա, մի վասն ///

Ա զլ առաքելական

### 1բ

/// կորուսան
էք զյաւիտենականսն
ձեր որ առաջի աստուածոյ է, զու
ցէ պահանջիցիք ընդ հա
րսն ձեր զվրէժ արեանն
քրիստոսի. զոր ընկալան ի վեր
այ անձանց եւ որդւոց իւ
րեանց. զի չե ոնդունե
[լի] առաջի աստուծոյ, որպէս եւ
ասաց իսկ եենարարն. ե
թե որ խոստովանեսցի
զիս առաջի մարդկան,
խոստովանեցից եւ ես
զնա առաջի հաւր իմոյ
որ յերկինս է. եւ եթե ոչ
խոստովանեսցի զիս ա
ռաջի մարդկան, ուրա
ցայց եւ ես զնա առաջի հ
աւր իմոյ որ յերկինս է.
/// եր
կրպագութ[իւն դարձ]
եալ երթեալ հաղորդել
ընդ սպանողս որդւոյն
նորա. զիարդ ակն ուն
իցիք ընդունելի լինել [հաւ]
աւրցն ձե[ր]ոց ընդ

ճշմարիտսն, մինչ
դեռ [չ]էք մեկնեալ եւ հեռ
ացեալ յայնցանէ, որք
ստութեամբ իւրեանց
դատապարտեցին զանձ
ինս իւրեանց. այդ ար
ժան է ձեզ խոստովան

նլ յայտնապէս. իբ[րեւ]
զայնոսիկ որք հաւատա
ցինն ի քրիստոս, քարոզութե
ամբ զոր քարոզեմք մեք
իսկ իբրեւ լուան որդիք
քահանայիցն ջա[յս] ամենայն
////

Բ

1ա

եզնութեան. այլ իբրեւ պիղծ վարկանելով [այ]
նոսիկ հեռացի. ոչ յիշելով ///
ինչ բարի է յոյժ. եւ թէ արու եւ էզ արար ///
զմարդն այդ հայհոյելով եւ ///
/// կամ ուղղեսցէ զի ոք ///
լուծցի. եւ յեկեղեցւոյ արտաքս ընկեսցի
նմանապէս եւ ժողովր ///
եպիսկոպոս կամ երէց զդարձ ///
/// ի բաց մերժեսցէ լուծցի
/// տրտմեցուցանէ զքրիստոս ///
///
ապաշխար ///
/// եթէ ոք եպիսկոպ ///
/// ԾԱ եթէ ոք ժառ ///

1բ

կամ զկաղ կամ զկոյր կամ զդէմս վնասել այ
պանեսցէ եւ [ն]շաւակեսցէ եւ պատրեսցէ [ի]
բաց որոշեսցի. նմանապէս եւ ժողովրդականն:
ԾԴ Եպիսկոպոս կամ երեց անփոյթ առնելով ըզ
ծառանգաւորսն խրատել եւ զժողովրդակա[նս?]
նսա ի բարեպաշտութիւն ի բաց որոշես
ցի. իսկ եթէ ի նմին յուղութեան կացցեն լու
ծեալ լիցին: ԾԵ Եթէ ոք եպիսկոպոս կամ եր
էց կարաւտելոց ի պիտոյից ուրուք վիճակելոցն
ոչ լցցէ զկարաւտութիւնն. ի բաց որոշեսցի.
որպէս սպանող եղեալ եղբաւր իւրոյ.
ԾԶ Եթէ ոք զըստ անուն վերագրեալ գրէ անդ.
[ա] յսինքն ծածուկքդ կոչին. իբրեւ զսուրբ եւ
զուղիղ գրեն. համարձակ յեկեղեցւոջ ըն
թերցցի առ վնաս ժողովրդեանն լուծե
ալ լուծցին. ԾԷ Եթէ ամբաստանութիւն
եղիցի զհաւատացելոյ ումեքէ. պոռնկու
թեան եւ կամ շնութեան. կամ այլոյ ինչ ան
պատեհ եւ հրաժարական գործոյ եւ յանդի

մանեալ զացի. ի ժառանգութիւն վիճակի
եկեղեցւոյ սպասաւորութիւն ոչ լիցի արժանի
յառաջ գալ: ԾԸ Եթէ ոք ի վիճակելոց. այս
ինքն երէց կամ սարկաւագ. վասն երկիւղի
մարդկան. հրէի կամ հեթանոսի կամ հերետ
իկոսի որ կ թիւրահաւատ ուրասցի եթէ զանուն
քրիստոսի. ի բաց լուծցի եւ ի բաց որշեսցի. իսկ զան
ուն ժառանգաւորեանն լուծեալ լիցի. ԾԹ
Եթէ ոք եպիսկոպոս կամ երեց կամ սարկաւագ
կամ բնաւ ի քահանայական կարգէ կերիցէ միս
արեամբ շնչոյ իւրոյ. կամ զազանաբեկ կամ ///

2ա

զի ի բերենոյ երկուց եւ երից /// [հաս]
տատեսցի ամենայն բան. ՀԱ Ոչ է պարտ եպիսկո
պոսի ումէք եղբաւր կամ որդւոյ կամ ///
/// շնորհել պատիւ եպիսկոպոսութեան
ձեռնադրել որպէս եւ ինքն կամի ձեռնադր
ել [քան]զի ժառանգ /// եպիսկոպսութեան
/// առնելիս չէ իրաւացի զայս ///
շնորհել մարդկային /// ցանկութեան
եւ ոչ զքրիստոսի եկեղեցին ընդ ժառանգութեամբ
դնել իսկ եթէ արասցէ ոք զայս ձեռնադրու
թիւն /// եղիցի եւ ինքն. ի բաց որոշեսցի.
այսինքն արտաքոյ եկեղեցւոյ եղիցի. ՀԲ Եթէ
ոք ակամբ վնասեալ կամ վիրաւորեալ անդամաւք.
եւ արժանի է եպիսկոպոսութեան եղիցի.
քանզի ոչ խեղութիւն մարմնոյ հրամայէ
լինել. այղ պղծութիւն հոգւոյ. ՀԳ Խուլ եւ
կոյր մի եղիցի եպիսկոպոս. ոչ իբրեւ զպիղծ
եւ զաղտեղի. այղ զի եւ եկեղեցական դաս
ոյն խափանումն մի եղիցի. ՀԴ Եթէ ոք դեւ
ունի քահանայ մի եղիցի. իսկ եթէ սրբեսցի
ընդունեսցի եղիցի. եւ եթէ իցէ արժանի լիցի. ՀԵ
Ի հեթանոսաց եկեալք ի մկրտութիւն. եւ վատ
թարագոյն վարուց. ոչ է իրաւացի վաղվաղա
կի յեպիսկոպոսութիւն յառաջ ածել ///
մի պատահէ որոյ զփորձ ինչ չեւ էցուցե ///
/// լինել վարդապետ. բայց եթէ ///
///շնորհի այս եղիցի. ՀԶ Ասացաք եթէ ոչ է
պարտ եպիսկոպոսի արկանել զինքն յաշխարհ
հական ինչ հոգս մի վարել /// եկ
եղեցական պիտոյից ապա թե ոչ ///

2բ

ել զպատիւն. քանզի կարէ երկուց տերանց

